
HW 6ZKQ 7

# ԱՍՏՈՒԾՈՅ ԾՐԱԳԻՐԸ



ԱՌԱՋՆՈՐԴ
ՍԲ. ԳԻՐՔ
ՈՒՍԱՆՈՂԱՑ

# ՀԱԶԱՐԱՄԵԱՅԻ ԱՐՇԱԼՈՅՍԸ

«Արդարներուն ճամբան ծագող լոյսին պէս է, որ երթալով կը լուսաւորուի, մինչև որ կատարեալ օր ըլլայ»։

## ՀԱՏՈՐ Ա.

# Դարերու Աստուածային Ծրագիրը

4,622,000 Օրինակ

Ջատագովութիւն մը Աստուածային Նկարագրի եւ Կառավարութեան. Բոլոր Ս. Գրոց Ներդաշնակութիւնը ցոյց տալով, թէ ինչպէս ան Ներկայ Չարիքի Թոյլատրումը պատճառաբանելէն ու Նախապատրաստական է, առաջնորդելու մարդկութիւնը դէպի

ՄԱՐԳԱՐԷԱԿԱՆ ՈՍԿԵԴԱՐԸ

INTERNATIONAL
BIBLE STUDENTS' ASSOCIATION
BROOKLYN, N. Y., U. S. A.
1916

# Թագաւորաց Թագաւորին

եւ

# Տէրերու Տէրին

Յօգուտ

**ԻՐ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՍՈՒՐԲԵՐՈՒՆ**

եւ

*«ԱՆՈՆՑ՝ ՈՐ ԱՄԵՆ ՏԵՂ ՏԻՐՈՋԸ ԱՆՈՒՆԸ ԿԸ ԿԱՆՉԵՆ», «ՀԱՒԱՏՔԻ ԸՆՏԱՆԻՔԸ»*

*ու*

*ՀԱԽԱՉՈՂ ՄԱՐԴԿՈՒԹԵԱՆ՝ ՈՐՈՆՔ ԱՍՏՈՒԾՈՅ ՈՐԴԻՆԵՐՈՒՆ ՅԱՅՏՆՈՒԵԼՈՒՆ Կ՚ՍՊԱՍԵՆ*

**ԱՅՍ ՀԱՏՈՐԸ ՁՕՆՈՒԱԾ Է։**

---

«Բոլորին ցոյց տալու թէ ինչ է այն խորհուրդին տ-
նօրէնութիւնը՝ որ 'ի յաւիտենից ծածկուած էր
Աստուծոյ քով»։ «Որպէսզի ժամանակաց
լրանալու տնօրէնութեանը մէջ նա
·ի մի համախմբէ ամէն բան
Քրիստոսի ներքեւ»։
Եփես. Գ. 9։ Ա. 10։

---

Գրուած 1886ին

WATCH TOWER BIBLE & TRACT SOCIETY
BROOKLYN, N. Y., U. S. A.

JUN 12 1931

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Քրիստոնեաները հետզհետէ աւելի որոշ կերպով կը տեսնեն այն իրականութիւնը, թէ անհաւատու-թեան վիթխարի ալիք մը կը տարածուի Քրիստոնէ-ութեան վրայ.—ո՛չ թէ այն հայհոյիչ անաստուա-ծութիւնը որ քարոզուեցաւ Թովմաս Բէյնէն և Ռօ-պըրթ Ինկըրսօլէն, հապա այն զարգացած տեսակը՝ որը մեր օրուայ գիտնական դասով ներկայացուած է, և որը վտանգին ա՛լ աւելի ծանրակշիռ հանգա-մանք մը կուտայ։

Թերևս ոմանց տարօրինակ թուի, երբ ըսենք թէ արդի Գոլէճներն ու Աստուածաբանական Վարժա-րաններն ուսեալ դասակարգին մէջ կը քանդեն հա-ւատքը։ Այս օր եթէ գոլէճի շրջանաւարտ երդող մը համարձակի Ս. Գրոց ներշնչուած ըլլալուն նկատ-մամբ իր հաւատքը արտայայտել՝ իր վրայ պիտի հրաւիրէ ընկերներուն արհամարհանքը—արհամար-հանք մը՝ որուն քիչեր միայն պիտի կրնան տոկալ։ Ամենէն շատը, քիչեր միայն պիտի գտնուին ըսելու որ իրենք կը հաւատան թէ Յիսուս և Իր Առաքեալ-ները անկեղծ էին, թէև անոնք սխալեցան՝ երբ Հին Կտակարանը ներշնչուած համարելով՝ անկէ մէջբե-րումներ ըրին։

Յիսուսի և Իր Առաքեալներուն նկատմամբ տած-ուած այսպիսի հաւատք մը երբե՛ք հաւատք չկրնա-ուիր, որովհետև եթէ ներկայիս «Բարձրագոյն Քննա-դատներ»ը ա՛յնքան իմաստուն են որ կրնան գիտ-նալ՝ թէ ե՛րբ և ո՛ւր սխալեցան Յիսուս և Իր Առաք-եալները իրենց Հին Կտակարանէն ըրած վկայաբե-րութիւններուն ժամանակ, ուրեմն մեր օրուայ այս

իմաստութիւնները ըլլալու են մեր պատեան առաջնորդները—աւելի ներշնչուած քան Յիսուս և Իր Առաքեալները։

Մեր Միութիւնը ըմբռնելով օրուան պահանջը, կը ջանայ իր կրցածին լաւագոյնը ընել եւ մղելու համար այս հոսանքը, «*Ժողովուրդին Համար*» բարձրացնելով Տիրոջը «դրօշը»։ Այս նպատակաւ, մեր ատ մը արգելքներու յաղթելով՝ լոյս կ'ընծայենք այս հատորը (Անգլիերէնէ թարգմանուած). այս կերպով ջանալով օգնութեան ձեռք կարկառել Հայ ազգի տարբեր յարանուանութեանց Քրիստոնեայ հաւատակութեան, որոնք այս «առաջնորդ»*ին* միջոցաւ կարող պիտի ըլլան փարատել թէ՛ իրենց և թէ՛ ուրիշներու կրօնական կեանքը հարցերու շուրջ ունեցած կասկածները ու շփոթութիւնները։ Հատորիս՝ անցեալին մէջ այս ուղղութեամբ կատարած գործը խիստ զարմանալի եղած է. կը համարձակինք ըսելու որ ,աւելի միակ հեղինակութիւնն է որը կրցած է Ս. Գիրքը Ծննդոցէն մինչև Յայտնութիւն իրարու հետ ներդաշնակեցնել, ու խիստ տրամաբանական կերպով վերլուծել կրօնական ատ մը առեղծուածներ, որոնք երկար դարեր մտատանջած են Աստուծոյ ժողովուրդը։ Այս հեղինակութեան վայելած ժողովրդականութիւնը կենդանի վկայ մ'է վերոյիշեալ խօսքերուն։ Մինչև ցարդ քսան տարբեր լեզուներով թարգմանուած է, ու մօտաւորապէս հինգ միլիոն ծախուած, *առանց շահու*, որպէսզի ժողովուրդին ամեն դասակարգերուն ալ մատչելի ըլլայ։ Երեւակայեցէք աւելի քան 500 էջերէ բաղկացած լաթակազմ հատոր մը, ոսկետառերով քանդակուած, միմիայն 35 սէնթի, նանապարհածախսով միասին։ Այսպրողներուն դիւրութեանը համար թղթադրօսմ (*սթէմփ*) ալ կ'ընդունինք։

Հայ ազգը թէև Քրիստոնէութեան դարձող առաջին ազգի պատուովը կը պարծի, սակայն ներկայիս անուանական Քրիստոնեայ աշխարհին մէջ, կրօնքի տեսակէտէ ամենայետամնաց ժողովուրդներէն մէկն է։ Պատճառը խիստ ակներև է. որովհետև կրօնական առողջ դաստիարակութիւն չէ ստացած. որովհետև անցեալ խաւար դարերուն մէջ եկեղեցին ներս սպրդած անհեթեթ ըմբռնումները, որոնք չէ կարելի առողջ տրամախոհութեան հետ հաշտեցնել ներկայիս՝ բոլորովին խրտչեցուցած են քիչ թէ շատ զարգացած հասարակութիւնը, և շատ մը պարագաներու մէջ՝ նո՛յնիսկ կղերականները. որոնցմէ ոմանք սակայն կը ցաւինք ըսելու թէ ա՛յնքան անգէտ են, որ նո՛յնիսկ իրենց չհաւատացած բանը չեն վարանիր ռամիկ ժողովուրդին հրամցնելէ, և կամ, չեն համարձակիր հրապարակաւ յայտարարելու թէ շատո՛նց ի վեր դադրած են անցեալի հերհիւրանքներուն կարևորութիւն տալէ։

Մեր այս ձեռնարկով նպատակ ունինք Հայոց մէջ հրահրել ու արծարծել Ճշմարիտ Քրիստոնէութեան ոգին, մասնաւորապէս անոնց՝ որոնց մէջ դեռ հաւատքի կայծ մը կը պլպլայ, և որոնք դեռ արդարութեան և ճշմարտութեան ծարաւը կ՚զգան։ Կը յուսանք թէ այսպիսիները պիտի ջանան օգուտ քաղել այս չքնաղ պատեհութենէն, ու պիտի աջակցին մեզ մեր ջանքերուն մէջ, այս «Հազարամեայի Արշալոյս»ովը լուսաւորելու ամեն անոնք որ դեռ միջնադարեան խաւարին մէջ կը խարխափեն։

Հեղինակութիւն
ՀՈՎԻՒ Ս. Թ. ՌԸՍԸԼԻ
Գրուած 1886ին

Այս հատորը կարելի է ստանալ քսան տարբեր լեզուներով, Անգլիերէն, Ֆրանսերէն, Գերմաներէն, Յունարէն, Արաբերէն, Իտալերէն, Շուետերէն, ևն., ևն. Ընկերութեանս կեդրոնատեղիէն: Գինը ոեւէ լեզուաւ 35 սէնդ է ճանապարհածախսով միասին: Նամակադրոշմ ալ կ'ընդունուի:

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ


## ԳԼՈՒԽ Ա.

*ԱՇԽԱՐՀԻ ՄԵՂՔԻ ԳԻՇԵՐԸ ՈՒՐԱԽ ԱՌԱՒՕՏՈՎ ՄԸ ՊԻՏԻ ՎԵՐՋԱՆԱՅ*

9

## ԳԼՈՒԽ Բ.

*ԳԻՏԱԿԻՑ ՈՒ ԳԵՐԱԳՈՅՆ ԱՐԱՐՁԻ ՄԸ ԳՈՅՈՒԹԻՒՆԸ ԱՊԱՑՈՒՑՈՒԱԾ*

39

## ԳԼՈՒԽ Գ.

*Ս. ԳԻՐՔԸ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ ՄԸ ԴԻՏՈՒԱԾ ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹԵԱՆ ԼՈՅՍՈՎ*

49

## ԳԼՈՒԽ Դ.

*ԱՅԼԵՒԱՅԼ ԴԱՐԱՇՐՋԱՆՆԵՐ ԵՒ ՏՆՕՐԻՆՈՒԹԻՒՆՆԵՐ ՈՐՈՆՔ ՆՇԱՆԱԿՈՒԱԾ ԵՆ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ՅԱՌԱՋԴԻՄԱԿԱՆ ԾՐԱԳՐԻՆ ՄԷՋ*

89

## ԳԼՈՒԽ Ե.

*«ԱՅՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ ՈՐ ԾԱԾԿՈՒԱԾ ԷՐ ԱՌՋԻ ԴԱՐԵՐԷՆ ՈՒ ԱԶԳԵՐԷՆ, ՀԻՄԱ ԻՐ ՍՈՒՐԲԵՐՈՒՆ ՅԱՅՏՆՈՒԵՑԱՒ»։—ԿՈՂ. Ա. 26։*

105

## ԳԼՈՒԽ Զ.

*ՄԵՐ ՏԻՐՈՋ ՎԵՐԱԴԱՐՁԸ.—ԱՆՈՐ ՆՊԱՏԱԿԸ, ԲՈԼՈՐ ԲԱՆԵՐՈՒ ՎԵՐԱՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆԸ*

121

## ԳԼՈՒԽ Է.

*ԶԱՐԻՔԻՆ ԹՈՅԼԱՏՐՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԱՆՈՐ ԱՌԸՆՉՈՒԹԻՒՆԸ ԱՍՏՈՒԾՈՅ ԾՐԱԳՐԻՆ ՀԵՏ*

163

ԳԼՈՒԽ Ը·
ՓՐԿԱՆՔ ԵՒ ՎԵՐԱՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ
213

ԳԼՈՒԽ Թ·
ԴԱՏԱՍՏԱՆԻ ՕՐԸ
195

ԳԼՈՒԽ Ժ·
ՀՈԳԵՂԷՆ ԵՒ ՄԱՐՄՆԵՂԷՆ ԲՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ
ԱՆՋԱՏ ԵՒ ՈՐՈՇ
249

ԳԼՈՒԽ ԺԱ
ԵՐԵՔ ՃԱՄԲԱՆԵՐԸ—ԼԱՅՆ ՃԱՄԲԱՆ, ՆԵՂ ՃԱՄԲԱՆ, ՊՈՂՈՏԱՆ
295

ԳԼՈՒԽ ԺԲ·
ԴԱՐԵՐՈՒ ԾՐԱԳԻՐԸ ՆԵՐԿԱՅԱՑՆՈՂ ՔԱՐՏԷՍԻՆ
ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆԸ
315

ԳԼՈՒԽ ԺԳ·
ԱՅՍ ԱՇԽԱՐՀԻ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ
355

ԳԼՈՒԽ ԺԴ·
ԱՍՏՈՒԾՈՅ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ
395

ԳԼՈՒԽ ԺԵ·
ԵՀՈՎԱՅԻՆ ՕՐԸ
«ՎՐԷԺԽՆԴՐՈՒԹԵԱՆ ՕՐԸ»—«ԲԱՐԿՈՒԹԵԱՆ ՕՐԸ»
477

ԳԼՈՒԽ ԺԶ·
ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ
501

# ՀԱԶԱՐԱՄԵԱՅԻ ԱՐՇԱԼՈՅՍԸ

---

## ԳԼՈՒԽ Ա·

### ԱՇԽԱՐՀԻ ՄԵՂՔԻ ԳԻՇԵՐԸ ՈՒՐԱԽ ԱՌԱՒՕՏՈՎ ՄԸ ՊԻՏԻ ՎԵՐՋԱՆԱՅ

Լացի Գիշեր մը և Ուրախութեան Առաւօտ մը.— Ճշմարտութիւն Որոնելու Երկու Կերպեր.—Հոս Հետապնդուած Կերպը.— Գործին Սահմանը.— Ս. Գիրքը Ակնածութեամբ Ուսումնասիրելուն և Երևակայելու Վտանգաւոր Սովորութեան Միջև Եղած Տարբերութիւնը.—Մարգարէութեանց Նըպատակը.—Աշխարհի Ներկայ Կրօնական վիճակը՝ Դիտուած Երկու Տարբեր Կէտերէ.—Եգիպտական Խաւար.—Խոստումի Աղեղ մը.—Արդարին Ճամբան Յառաջդիմական է.—Մեծ Հաւատուրացութեան Պատճառը.— Բարեկարգութիւնը.

*ՀԱԶԱՐԱՄԵԱՅԻ ԱՐՇԱԼՈՅՍ վերնագիրը խաւար գիշերի մը խորհուրդը կը թելադրէ, որը տեղի կուտայ փառաւոր օրուայ մը առջև: Ու արդարև, անիկա ճշմարտօրէն կ'արտայայտէ այս ձեռնարկին բուն միտքը: Մենք կը հաւատանք թէ Աստուածային յայտնութեան ուսուցումները այս տեսակէտէ միայն կրնան գեղեցիկ ու ներդաշնակ երևիլ:*

Մեղքի թոյլատրութեան ժամանակաշրջանը մարդկութեան համար խաւար գիշեր մը եղած է, որուն յիշատակը անմոռանալի պիտի մնայ. բայց Աստուածային Շնորհաց և Արդարութեան այն հրաշալի Օրը որ պիտի ներածուի Մեսիային միջոցաւ, ուր Նա իբրև Արդարութեան Արեգակը լիովին ու պայծառօրէն պիտի ծագի ու ցոլայ բոլորին վրայ, «աշխարհի բոլոր ազգերուն» բժշկութիւն և օրհնութիւն պարգևելով՝ մեծապէս պիտի հակակշռէ լացի, ողբի, ցաւի, հիւանդութեան ու մահուան սոսկալի գիշերը, որուն ներքև ա՛յքան ատեն ապրած է հառաչող մարդկային արարածը։ «Իրիկունը լաց կայ բայց ԱՌՏՈՒՆ ուրախութիւն»։—Սաղմ. Լ. 5։

Ամբողջ մարդկութիւնը կարծես թէ ընազդէ մղուած, իր հառաչանաց ու երկունքի ցաւերուն մէջ իսկ կ'սպասէ, կը փափաքի ու կը յուսայ այն Օրուան՝ որը ՈՍԿԵԴԱՐ կ'անուանէ. բայց մարդիկ դեռ կուրօրէն կը խարխափեն ինչու որ մեծ Եհովայի բարեգործ Նպատակներուն անտեղեակ են. իսկ այսպիսի Դարու մը մասին իրենց ունեցած ամենաբարձր գաղափարներն իսկ խիստ թերի են նախասահմանուած ոսկեդարին բաղդատմամբ։ Մեծ Արարիչը «պարարտ բաներու կոչունք» մ'է որ կը պատրաստէ, որը պիտի զարմացնէ իր արարածները, որովհետև անոնց խնդրածէն ու ակնկալածէն շատ աւելի գերազանց ու լիառատ պիտի ըլլայ։ Եւ Նա Իր Աստուածային սիրոյն երկայնքին ու լայնքին, բարձրութեանն ու խորութեանը առջև ապշող արարածներուն ուղղելով խօսքը կ'ըսէ. «Իմ խորհուրդներս ձեր խորհուրդները չեն, ու ձեր ճամբաները իմ ճամբաներս չեն, կ'ըսէ Տէրը, հապա՝ որչափ որ երկինքը երկրէն բարձր է, այնչափ ալ Իմ ճամբաներս

ձեր ճամբաներէն բարձր են, և իմ խորհուրդներս ձեր խորհուրդներէն»։—Ես. ԾԵ. 8, 9։ ԻԵ. 6—9։

Թէև այս գործով պիտի ջանանք, և կը հաւատանք թէ պիտի յաջողինք հետաքրքիր և աննախապաշար ընթերցողին ներկայացնելու Աստուծոյ Ծրագիրը, ընդհանուր ըմբռնումէն աւելի ներդաշնակ, գեղեցիկ ու բանաւոր կերպով մը բացատրելով Անոր անցեալ, ներկայ ու ապագայ վարուելակերպերը, սակայն հեղինակը չ'ընդունիր թէ ասիկա իրեն պատկանող արտակարգ իմաստութեամբը կամ կարողութեամբը գլուխ պիտի կրնայ հանել։ Հազարամեայ Օրուայ առաւօտեան Արդարութեան Արեգակին լոյսն է որ երևան կը բերէ այս բաները իբրև «ներկայ ճշմարտութիւն», որուն կրնան ծանօթանալ անկեղծները—մաքրասիրտները։

Քանի որ սկեպտականութիւնը ընդարձակ ծաւալ գտած է, ճշմարիտ կրօնքին և ճշմարտութեան հիմը նո'յնիսկ անկեղծներու կողմէ խնդրոյ առարկայ դարձած է։ Մենք ջանացած ենք, նո'յնիսկ անհաւատին վստահութիւն ու ապահովութիւն ներշնչելու սատիճան, պարզել այն հիմը—Աստուծոյ Խօսքը—որուն վրայ միայն պէտք է որ հաստատուի ամէն հաւատք։ Եւ մենք աշխատած ենք ատիկա գլուխ հանել այնպիսի կերպով մը, որ առողջ տրամաբանութեան հետ համաձայնի, և ընդունելի ըլլայ որպէս հիմ։ Դարձեալ, ջանացած ենք այդ հիման վրայ ա'յնպէս մը հիւսել Ս. Գրոց վարդապետութիւնները, որ զուտ մարդկային դատողութիւնը իսկ, կարելի եղածին չափ վերէն ի վար իր քննութեան բովէն անցընէ զանոնք, արդարութեան ամենախստապահանջ օրէնքներուն հետ չափելով։

Հաւատալով թէ Ս. Գիրքը կանոնաւոր ու ներդաշնակ Ծրագիր մը կը յայտնէ, որը երբ տեսնուի՝

պէտք է որ ամէն բարեխիղճ անձերէ ընդունուի, ուրեմն այս աշխատասիրութիւնը կը հրատարակուի Աստուծոյ Խօսքը ուսանողներուն օգնելու նպատակաւ. ներկայացնելով խորհուրդներու շարքեր, որոնք համաձայն են թէ՛ իրարու և թէ՛ Աստուածաշունչին հետ։ Ամէն անոնք, որոնք Ս. Գիրքը իբրև Աստուծոյ Ծրագրին յայտնութիւնը կ'ընդունին—և որոնց մասնաւորապէս կ'ուղղենք մեր խօսքը—տարակոյս չկայ որ պիտի համաձայնին՝ թէ եթէ անիկա Աստուծմէ ներշնչուած գրութիւն մ'է, երբ անոր ուսուցումները ամբողջութեամբ նկատի կ'առնուին, պէտք է որ թէ՛ Հեղինակ Աստուծոյ նկարագիրը և թէ՛ անոր հետ համերաշխ ու ներդաշնակ Ծրագիր մը ի յայտ բերեն։ Որպէս ճշմարտախոյզ անձեր, մեր նպատակը պէտք է ըլլայ Աստուածայայտ Ծրագրին ամբողջութեանը տեղեկանալ. բան մը՝ որ իբրև Աստուածորդիներ իրաւունք ունինք ակնկալելու. ինչու որ խոստացուած է թէ ճշմարտութեան հոգին մեզ ամէն ճշմարտութեանց պիտի առաջնորդէ։—Յովհ. ԺԶ. 13։

Որպէս հետազօտներ, մեր առջև երկու մեթոտներ կը տեսնենք։ Մէկն է՝ եկեղեցական ամէն յարանուանութեանց հաւատոյ հանգանակները պըրպըտել, և անոնց ամէն մէկուն մէջէն ընտրել այն, որ կը խորհինք թէ ճշմարտութիւն է—անհատնում գործ մը արդարև։ Այն դժուարութիւնը որուն պիտի հանդիպինք այս մեթոտով, սա է՝ թէ եթէ մեր դատողութիւնները ծուռ են կամ ո՛և է կողմի նախապաշարման հակած՝—և որո՞ւնը չէ—այդ թերութեանց պատճառաւ մեր ընտրութեանց մէջ պիտի սայթաքինք, սխալը ընդունելով և ճշմարտութիւնը մերժելով։ Դարձեալ, եթէ այդ մեթոտին հետևէինք, մեծապէս պիտի տուժէինք, ինչու որ ճշմարտութիւ-

նը յառաջդիմական է, «և երթալով աւելի կը պայծառանայ, մինչև որ կատարեալ օր ըլլայ», ամէն անոնց համար որ անոր ետևէն են ու անոր լոյսին մէջ կը քալեն. մինչդեռ այլևայլ յարանուանութեանց զանազան դաւանանքները հարիւրաւոր տարիներ առաջ հաստատուած են, և անխուսափելիօրէն անոնցմէ ամէն մէկը մեծ քանակութեամբ մոլորութիւններ կը պարունակէ, ինչու որ գիրար կը հակասեն կարգ մը կարևոր խնդիրներու մէջ։ Այս մեթոտը մանուածապատ ու անել լաբիւրինդոսի մը պիտի մատնէր մեզ։ Իսկ միւս մեթոտն է՝ միտքերնիս մաքրել բոլոր նախապաշարումներէն, և յիշել թէ Աստուծոյ Խօսքին ներկայացուցած Ծրագրէն աւելի ո՛չ ոք կրնայ գտնալ, և որը հեզերուն ու խոնարհամիտներուն տրուած է. ու որպէս այսպիսիներ, երբ մեծապէս կը բաղձանք մի՛միայն անկէ առաջնորդուիլ ու խրատուիլ, անոր Հեղինակին միջոցաւ հասկացողութեան մը պիտի գանք Իր յարմար ժամանակին, երբ նախախնամօրէն հայթայթուած այլազան դիւրութիւնները կը գործածենք։ Տե՛ս Եփես. Դ. 11—16։

Ահա՛ այս կարգի ուսանողներուն համար է որ մանաւորապէս պատրաստուած է այս երկասիրութիւնը։ Պիտի տեսնուի թէ անոր վկայութիւնները մի՛միայն Ս. Գրքէն են. բացի այն պարագաներէն, երբ աշխարհային պատմութեան դիմուած է Աստուածաշունչի խօսքերուն իրականացումը ապացուցանելու համար։ Արդի աստուածաբաններուն խօսքերուն կարևորութիւն չենք տուած. իսկ «Հին Հայրեր» յորջորջուողներն ալ զանց ըրած ենք։ Անոնցմէ շատեր՝ հոս արտայայտուած գաղափարներուն ի նպաստ վկայութիւններ տուած են. բայց մենք կը հաւատանք թէ ո՛և է ժամանակի մարդոց համար մեծ

սխալ մ'է հաւատալ կարգ մը վարդապետութիւններու, որովհետև ուրիշներ ալ այդպէս հաւատացած են, որոնց վրայ լաւ համարում ու հաւատք ունինք։ Արդարև, ասիկա մոլորութեան զօրաւոր ազդակ մը եղած է, որով շատ մը պատուական մարդիկ մոլորութեանց հաւատացած ու զանոնք ուրիշներու սորվեցուցած են բոլորովին բարի խղճմտանքով մը։ (Գործ. ԻԶ. 9)։ Ճշմարտախոյզ անհատները իրենց ամանները աւանդութեանց պղտոր ջուրերէն պէտք է մաքրեն ու զանոնք անապական ջուրով լեցնեն, Ճշմարտութեան Աղբիւրէն—Աստուծոյ Խօսքէն։ Իսկ կրօնական ո'և է ուսուցում որ ճշմարտախոյզը այդ աղբիւրին չ'առաջնորդեր, պէտք չէ որ անոր կարևորութիւն տրուի։

Ամբողջ Աստուածաշունչին և անոր ուսուցմանց շուրջ ընդհանուր ու հարևանցի քննութեան մը համար իսկ այս աշխատասիրութիւնը խիստ փոքր է. բայց օրուան պահանջն ու աճապարանքը նկատի առնելով՝ ջանացած ենք այնքան լակոնական ըլլալ, որքան որ նիւթերուն կարևորութիւնը թոյլատրած է։

Կ'ուզենք հետաքրքիր ուսանողին յայտնել թէ՝ եթէ պարզապէս վեր ի վերոյ ուսումնասիրութեան մը պիտի ենթարկէ այս երկասիրութիւնը, և միևնոյն ժամանակ կը յուսայ ներկայացուած Ծրագրին և Ս. Գրոց վկայութեանց ոյժին ու ներդաշնակութեանը տեղեկանալ՝ անօգուտ բան մը պիտի ըլլայ ըրածը։ Մենք ջանացած ենք ճշմարտութեան այլևայլ մասերը ա'յնպիսի լեզուով ու շարքով մը ներկայացնել, որպէսզի մէջ բերուած Դարերու Աստուածային Ծրագիրը ամէն դասակարգի ընթերցողներէ ալ ըմբռնուի։ Եթէ ո'և է դիւրութիւն կարենալ գնահատելու համար պէտք է որ նախ կատարեալ

ու կանոնաւոր ուսումնասիրութեան ենթարկուի, հապա ո՛րքան աւելի Աստուածային յայտնութեան գիտութիւնը. իսկ այս երկասիրութեանը համար կրկնապատիկ անհրաժեշտ է, որովհետև ասիկա Աստուածայայտ ճշմարտութեանց շուրջ աշխատասիրութիւն մը ըլլալէ ի զատ՝ միւս կողմէն ալ, որքան որ գիտենք, այս նիւթը մինչև ցարդ հրատարակուած ո՛և է գործէ բոլորովին տարբեր հայեցակէտէ մը քննութեան ենթարկուած է հոս։

Մենք ներողութիւն հայցելու պէտքը չենք զգար, ուշադրութեան առնելնուս համար այն շատ մը նիւթերը, որոնք առհասարակ մէկ կողմ նետած են Քրիստոնեաները. այդ նիւթերէն են մեր Տիրոջ գալուստը և Հին ու Նոր Կտակարաններու մարգարէութիւններն ու խորհրդաբանութիւնները։ Աստուածաբանական ո՛և է ուսուցում պէտք չէ որ ներկայացուի կամ ընդունուի, երբ նա կ՚անտեսէ Աստուածաշունչի ուսուցմանց ամենաաչքառու կէտերը։ Սակայն կը սիրենք յուսալ թէ մեր ընթերցողները մեծ տարբերութիւն մը պիտի նշմարեն իրականացած պատմական իրողութիւններու լոյսին ներքև մարգարէութիւններն ու Ս. Գրոց ուրիշ համարները ջերմեռանդօրէն, լրջօրէն ու ակնածանքով ուսումնասիրելուն, ու մաքուր ողջմտութեան ներածին չափ եզրակացութիւններ ընելուն՝ և անկաշկանդ երևակայութեանց խիստ հասարակ սովորութեան միջև, որը երբ Աստուածային մարգարէութեանց նկատմամբ ալ կը գործածուի, խիստ ընդունակ է անսանձ ու խելառ կարծիքներու և մթին անուրջներու առաջնորդել։ Ու ամէն անոնք որ այս վտանգաւոր ունակութեան մէջ կը դլորին, ընդհանրապէս, մարգարէներ(*) կը դառնան, փոխանակ մարգարէութեանց ուսանողներ ըլլալու։

*Ո՛չ մէկ գործ այնքան ազնիւ ու ազնուացուցիչ է, որքան Աստուծոյ յայտնած նպատակներուն ակնածելի ուսումնասիրութիւնը—«այն բաները՝ որոնց հրեշտակները կը ցանկան ակնկառոյց նայիլ»։ (Ա. Պետ. Ա. 12)։ Այն իրողութիւնը՝ թէ Եհովան անցեալին, ներկային ու ապագային նկատմամբ յայտնութիւններ ու մարգարէութիւններ ընծայած է, ինքնին յանդիմանութիւն մ'է Իր կարգ մը զաւակներուն համար, որոնք իրենց տգիտութիւնը ու Աստուծոյ Խօսքերուն ուսումնասիրութեան լքումը արդարացընելու համար, կ'ըսեն. «Մատթէոսի հինգերորդ գըլուխը ո՛եւէ մարդ փրկելու չափ բան կը պարունակէ»։ Ո՛չ ալ պէտք է խորհինք թէ մարգարէութիւնները ապագայի նկատմամբ պարզ հետաքրքրութիւն մը գոհացնելու համար տրուեցան։ Անոնց տրուելուն բուն նպատակն էր Աստուծոյ նուիրեալ զաւակը իր Հօրը Ծրագիրներուն ընտելացնել, ու այսպէս՝ այդնոյն Ծրագիրներուն նկատմամբ իր հետաքրքրութիւնը ու համակրանքը շահիլ, և կարելի ընել անոր ներկան ու ապագան Աստուծոյ հայեցակէտովը դիտելու, որպէսզի կարող ըլլայ թէ՛ հոգւով և թէ՛ գիտակցօրէն ծառայելու, ո՛չ թէ պարզ ծառայի մը՝ այլ զաւկի ու ժառանգորդի մը պէս։ Այսպիսիներուն համար ապագայ բաներու յայտնուիլը կը վանէ ներկայ անախորժ ազդեցութիւնները։ Աստուծոյ Խօսքին խնամոտ ուսումնասիրութիւնը հաւատքը կը զօրացընէ ու սրբակեցութեան կը մղէ։*

*Աշխարհը մեղքէն ու անոր արդիւնքներէն փրկելու համար Աստուծոյ նախագծած Ծրագրէն անտեղեակ եղող մը, որը այն սխալ գաղափարովը տոգորուած է՝ թէ անուանական եկեղեցին իր ներկայ վիճակին մէջ աշխարհը դարձի բերող միակ գործակալութիւնն է, ու երբ Աւետարանին մօտաւորապէս*

*տասն և ինը դարեր քարոզուելէն վերջ դեռ աշխարհը ներկայ անհաւատ վիճակին մէջ կը գտնէ, ահա՛ լուրջ կասկածներ կ՚սկսին ծայր տալ այսպիսի չարաչար կերպով խաբուած անհատի մը մտքին մէջ, որոնք ճշմարտութենէն զատ ո՛և է բանով կարելի չէ նուաճել։ Անշուշտ ամէն խոհուն դիտողի համար երկու բաներէ մին իրականութիւն պիտի ըլլայ. կա՛մ եկեղեցին մեծ սխալ մը ըրած է, կարծելով թէ ներկայ Դարուն և իր արդի վիճակին մէջ աշխարհը դարձի բերելու պաշտօնը ունեցած է, և կա՛մ Աստուծոյ Ծրագիրը ողբալի ձախողուածք մը եղած է։ Ասոնցմէ ո՞ր մէկը պիտի ընդունինք. շատեր վերջինը ընտրած են, և տարակոյս չկայ որ ուրիշ շատեր ալ պիտի ընտրեն, ու քօղի տակէ կամ հրապարակաւ անհաւատութեան շարքերը խտացնեն։ Այս ձեռնարկին նպատակներէն մէկն է՝ իրենց անկեղծութեան համար հաւատքէ ինկած այսպիսի անհաւատներուն օգնութեան ձեռք կարկառել։*

20*րդ. էջին վրայ պիտի գտնէք աղիւսակ մը. նախ՝ հրատարակուած «Լոնտոնի Միսիոնարական Ընկերութիւն»էն, իսկ յետոյ՝ արտատպուած Միացեալ Նահանգաց «Տիկնանց Երիցական պաշտօնաժողով»ին կողմէ, որը կը ներկայացնէ տխուր պատմութիւնը այն խաւարին ու տգիտութեան, որուն ենթարկուած է երկնից տակ կամ մարդոց մէջ տրուած այն միակ անունը, որով միայն կրնանք փրկութիւն ստանալ։—Գործ. Դ.* 12։

«Տիք Ուաչմըն» (*Ծիքակոյի «Երիտ. Քրիստ. Ընկ.»եան թերթը) արտատպեց այս միևնոյն աղիւսակը հետևեալ մեկնաբանութիւնով.—*

*«Աշխարհի հոգեղէն վիճակին նկատմամբ ոմանց ունեցած գաղափարները խիստ մառախլապատ ու անորոշ են։ Թէ՛ հոս և թէ՛ արտասահմանի մէջ հո-*

գնոր փառաւոր վերազարթնումի գործերու, զանազան ուղղութեամբ միսիոնարական թարմ ջանքերու, Աւետարանի քարոզութեան համար երկիր երկրի ետեւէ բացուելու, ու անոր տարածմանը համար մեծ գումարներ նուիրելու մասին կը լսենք. ու այն գաղափարը կ'ստանանք՝ թէ երկրիս ազգերուն Աւետարան քարոզելու համար կարող ջանքեր կ'ըլլան։ Այնպէս հաշուըուած է թէ աշխարհի բնակչութեան ներկայ թիւը 1,424,000,000 է. աղիւսակը ուսումնասիրելով պիտի տեսնենք թէ կէսէն բաւական աւելին—մօտաւորապէս երկու երրորդը—տակաւին բոլորովին հեթանոսներ են. և մնացածն ալ կա՛մ մեծաւ մասամբ Մուհամմէտի հետեւորդներ են, և կա՛մ դասալիք մեծ եկեղեցիներու անդամներ, որոնց կրօնքը իրականին մէջ Քրիստոնէացած կռապաշտութիւն մ'է, և դժուար է ըսել թէ Քրիստոսի Աւետարանը կը պաշտպանեն կամ կը քարոզեն։

«Նո՛յնիսկ անուանական Բողոքականութեան 116 միլիոններէն, պէտք է լաւ յիշենք թէ Գերմանիոյ, Անգլիոյ և այս երկրին մէջ մեծ համեմատութեամբ անհաւատութեան դիմած են—խաւար մը՝ որ եթէ կը հաճիք, հեթանոսութենէն ա՛լ աւելի թանձր է. և քանի՛ քանիներ նախապաշարումով կուրցած կամ ծայրայեղ տգիտութեան մէջ թաղուած են։ Ու այսպէս՝ երբ ութը միլիոն Հրէաներ դեռ կը մերժեն Նազովրեցի Յիսուսը, ու երբ 300 միլիոնները Անոր անունը կրելով հանդերձ, Անոր հաւատքէն դասալիք եղած են, անդին՝ 170 միլիոններ ևս Մուհամմէտին կ'երկրպագեն. և մարդկութեան ահագին մնացորդը, այսօր մամոնային և քարերու, իրենց նախահայրերուն, մեռած հերոսներուն կամ նո՛յնիսկ Սատանային երկրպագուներն են. բոլորն ալ այս կամ այն կերպով արարածն է որ կը պաշտեն և

*անոր կըծառայեն, փոխան Արարչին, որ ամէնուն վրայ յաւիտենական օրհնեալ Աստուածն է։ Այսքանը բաւ չէ՞ արդեօք խորհող Քրիստոնեաներու սիրտը տխրեցնելու»։*

*Արդարեւ, տխուր պատկեր մ'է այս։ Եւ թէեւ աղխուսակին մէջ Հեթանոսները, Մահմէտականներն ու Հրէաները իրարմէ տարբեր ու առանձին բաժանումներով ներկայացուած են, սակայն բոլորն ալ անխտիր՝ տգիտութեան մէջ են Քրիստոսի նկատմամբ։ Կարելի է ոմանք առաջին պատեհութեամբ խորհին թէ Քրիստոնեաներու քանակին մասին եղած ակնարկութիւնը խիստ մթին է, ու թերեւս չափազանցուած. բայց մենք կը հաւատանք թէ ատոր հակառակն է ճշմարտութիւնը։ Անիկա անուանական Քրիստոնէութիւնը կը ցուցադրէ, կարելի եղածին չափ փառաւոր գոյներով։ Զորօրինակ՝ Բողոքականներու համար նշանակուած 116,000,000ը իրական թուին խիստ չափազանցութիւնն է. կը հաւատանք թէ 16 միլիոնը եկեղեցիի անդամ դաւանող չափահասներու իրական թուին աւելի լաւ կը համապատասխանէ։ Եւ կը վախնանք ըսելու թէ մէկ միլիոնն իսկ շատ ու շատ մեծ թիւ մ'է «փոքրիկ հօտ»ին համար, «Քրիստոսով սրբուածներուն՝ որոնք ո՛չ թէ մարմնին՝ այլ հոգիին ետեւէն կը քալեն»։ Պէտք չէ մոռնալ թէ եկեղեցիի անդամ հաշուըուածներու մեծագոյն մասը միշտ պզտիկ տղաքներ ու երեխաներ եղած են, մասնաւորապէս Եւրոպայի մէջ, ուր շատ մը տեղեր տղաքները եկեղեցիի անդամ կը նկատուին իրենց ամենափոքր հասակէն, և որը նաև դոյութիւն ունի Հայ Լուսաւորչականաց մէջ, որը երեխային մկրտութեամբը ցուցադրուած է։*

*Իրաւ է թէ ասիկա սև պատկեր մ'է, սակայն անկեալ մարդկութեան ներկայացուցած ամենէն սևը*

## Որ կը Ցուցադրէ Կրօնքի Համեմատ Բաժանուած Մարդկութեան Իրական և Ցատուկ Թիւերը



չէ։ Վերի աղիւսակը միայն ներկայիս ապրող սերունդները կը ներկայացնէ։ Երբ նկատի կ'առնենք այն իրողութիւնը՝ թէ անցեալ վեց հազար տարիներու ամէն մէկ դարերուն ահագին բազմութիւններ ապրած ու մեռած են, գրեթէ բոլորն ալ միեւնոյն տգիտութեամբն ու մեղքովը պարուրուած, ո՛րքան սեւ տեսարան մը կը պարզուի մեր աչքերուն առջեւ, եթէ հաւատք ընծայենք դժոխքի ճիւաղային վարդապետութեան։

Այս օրուան դաւանանքները այնպէս կ'ուսուցանեն թէ մարդկային այս բոլոր երկիլիոնները՝ անտեղեակ երկնքի տակ տրուած այն միակ անունին որով կրնան փրկուիլ, ուղղակի յաւիտենական տանջանաց մատնուեցան. եւ ո՛չ միայն անոնք՝ հապա նաեւ 116 միլիոն բողոքականներէն, նոյնպէս եւ Լուսաւորչականներէն ու Պապականներէն շատերը, բացի փոքրաթիւ սուրբերէն։ Որով, զարմանալի չէ, երբ անոնք որ Եհովայի ծրագիրներուն ու նպատակներուն նկատմամբ այսօրինակ սոսկալի բաներ կը վերագրեն ու կը հաւատան անոնց, միսիոնարական ձեռնարկներ առաջ տանելու խիստ նախանձախնդիր են. զարմանալին այն է՝ թէ այսպիսի քստմնելի ու ճիւաղային վարդապետութեանց հաւատացողները չեն խելագարիր։ Արդարեւ, այսպիսի հաւատք մը կարող է կեանքի ամէն հրճուանքները խլել եւ բնութեան ամէն պայծառ երեւոյթները թախիծով մը պատանքել։

Ցուցնելու համար թէ մենք «Ուղղափառութիւնը» սխալ չենք ներկայացներ հեթանոսներու ճակատագրի խնդրոյն նկատմամբ, «Օտար Առաքելութեանց ի Նպաստ Լուռ Աղերս մը» անուն տետրակին՝ որուն մէջ հրատարակուած էր վերոյիշեալ աղիւսակը՝ վերջին տողերը կը ներկայացնենք հոս. «Հե-

*ռաւոր բազմաթիւ սերունդներուն Աւետարան քարոզեցէ՛ք—Հազար միլիոն հոգիներուն, որոնցմէ 100,000ի չափ կը մեռնին ամէն օր, առանց Քրիստոսը ընդունած ըլլալու, և* անյոյս վիճակի մէջ»։ *Տե՛ս նաև Սահակ քահանայ Տէր Սարգսեանի «Քըննական Կրօնագիտութիւն» հատորին 991—1000 էջերը, ուր ահռելի գոյներով ներկայացուած է յաւիտենական տանջանքի ուսուցման Լուսաւորչական Եկեղեցւոյ ըմբռնումը։*

*Ասիկա մարդկային դաւանանքներու տեսակէտէ դիտուած մառախլապատ ապագան է. սակայն երբ Ս. Գիրքը ուշի ուշով կ'ուսումնասիրենք, չենք կրնար հաւատալ թէ Աստուծոյ Փրկութեան Մեծ Ծրագիրը այսքան թերի ու տկարկերպով նախագծուած է։ Հոգւոյ թեթևացում մը պիտի զգայ Աստուծոյ մըտատանջ զաւակը, երբ նկատէ թէ Եսայի Մարգարէն արդէն նախաձայնած էր այս վիճակին ու անոր դարմանին մասին, ըսելով. «Ահա՛ երկիրը խաւար ու ազգերը մառախուղ պիտի ծածկէ. բայց քու վրադ Տէրը պիտի ծագի, և Անոր փառքը քու վրադ պիտի երևնայ։ Եւ ազգերը (հեթանոսները) քու լոյսիդ պիտի գան»։ (Ես. Կ. 2,3)։ Այս մարգարէութեան մէջ յիշուած թանձր խաւարը խոստումի ծիածանով մը լուսաւորուած է՝ թէ «Ազգերը (աշխարհի ընդհանուր մարդկութիւնը), քու լոյսիդ պիտի գան»։—Սաղմ. ՁԶ. 9։ Մաղք. Ա. 11։*

*Աշխարհի շարունակական թշուառութիւնն ու խաւարը, և ճշմարտութեան յամր ընթացքը առեղծուած մը եղած են ո՛չ միայն Եկեղեցիին՝ հապա նաև աշխարհի մարդկութեան համար ալ, որը ճանչցած ու զգացած է անոր վիճակը։ Եգիպտական խաւարին պէս եղած է որ կրնայ տեսնուիլ։ Իբր ապացոյց ասոր, քննեցէք Ֆիլատէլֆիայի թերթէ մը*

քաղուած հետեւեալ տողերուն ոգին։ Կասկածը ու մէգը, աւելի եւ սաստկացած այլեւայլ աղանդներու զիրար հակառող դաւանանքներով՝ դեռ չեն փարատուած հեղինակին մտքէն Աստուծոյ Խօսքէն ցոլացող ճշմարտութեան ճառագայթներուն շնորհիւ.—

Ո՞վ պիտ՚ մեկնէ մեծ խորհուրդը կեանքին,
Տէրն ինչո՞ւ կազմեց մեր այս խեղճ մարմին·
Հզօր ձեռքով մը նա ինչո՞ւ մեզի
Ընծայեց յամառ կամք, միտք ու հոգի։
Ծնանք մահուան գրովն անեղծ ու սեւ,
Բայց շունչերնիս ո՞ւր թռի մահէն ետեւ,
Ինչո՞ւ ամբոխէն մեռնող, անհամար,
Եւ ո՛չ մէկ հոգի չը վերադառնար,
Անդրշիրիմեան գաղտնիք պատմելու,
Այն վիճակին՝ ուր պիտ՚ դիմենք ես ու դու։
Ո՛վ Տէ՛ր, մեր ճամբուն իբրը առաջնորդ
Տո՛ւր մեզ լուսոյ գոնէ մի ճառագայթ·
Լոյս՝ մ՚առանց հաւատքի վերացական,
Տեսնենք պարզ աչքով միայն ամէն բան։
Ու անոր առջին ի սպառ փարատին,
Գիշերային այս խիտ ամպերն մըթին,
Մեր տարակոյսներն, վախերն դողահար,
Որք մեր վայելքներն սաստ կ՚եղծանեն յար։
Անհանդարտ, անսանձ, կամակոր այս միտք,
Կը մերժէ օրուայ շատ հաւատալիք,
Զորս հակամարտ աղանդներն մեզ կուտան,
Եւ որք արգելք մ՚են ողջամտութեան։
Բայց, ո՛վ Տէր հզօր, Արարի՛չ մարդուն,
Ճանչնալ կ՚ուզենք Քեզ ինչպէս որ ես Դուն,
Առ քեզ ունեցած դիտնալ մեր պարտիք
Ու Ծրագրիդ մէջ մեր խաղացած դեր։
Վերցո՛ւր մեր աչքէն այս սեւ, թանձր քօղ,

Հրամա՛ն տուր կըրկին՝ «Լոյս ըլլայ թող»․
Գահիդ խորհուրդը ա՛լ մեզի ցոյց տուր,
Մութին մէջ անծանօթը կ'որոնենք, զո՛ւր»։
Մեր պատասխանը —
Կեանքի քօղամերկ խորհուրդ նոյն հետայն,
Պիտ՝ ծանօթացնէ աշխարհին համայն՝
Թէ ի՞նչ հըրճուանքով մեր Տէրն երկնային,
Ձեւեց, կանգնեց այս խեղճ հողէ մարմին,
Դըրոշմեց պատկերն վըրան մեր մըտքին։
Զծնանք մեռնելու, ծընունդ մը կըրկին
Հետեւի մահուան այս սեւ անէծքի,
Որ ուժ ըստանանք՝ մեր կեանք նորոգի։
Երկնից բանակէն այն իշխանն արդար,
Որ մահուան դիմեց մեր սիրոյն համար,
Յարեաւ ու յայտնեց Աստուծոյ խորհուրդ,
Թէ մեծ ապագայ մ'ունի ժողովուրդ։
Սուրբ Գըրքէն ցայտող լուսոյ այս նոր փայլ,
Կ'առաջնորդէ մեր խեղճ, յուսահատ քայլ․
Թէեւ հաւատքի վըրայ է հիմնեալ՝
Որպէս պարզ աչքով քալենք անայլայլ․
Ու անոր առջին ա՛լ կը փարատին,
Գիշերային այս խիտ ամպերն մըթին,
Նախկին կասկածներն, վախերն դողահար,
Որոնք վայելքնիս կ'եղծանեն յար։
Եւ ա՛լ՝ այժմ, ո՛վ Տէր, կամակոր այս միտք,
Որ մերժեց օրուայ շատ հաւատալիք,
Զորս հակամարտ աղանդներն մեզ տուին,
Որք արգելք մ'էին ողջամըտութեան՝
Ո՛վ Աստուած հըզօր, Արարի՛չ մարդու,
Թող ճանչնայ զՔեզ ինչպէս որ·ես Դու,
Առ քեզ ունեցած գիտնալ մեր պարտքեր,
Ու Ծըրագրիդ մէջ մեր խաղացած դեր։
Այն որ կը քալէ լոյսիդ մէջ երկնային,

*Դարերէն պահուած իսկ այժմ մեկին,*
*Գահէդ խորհուրդին կ'ընես լաւ տեղեակ,*
*Քօղը վերցնելով, պարզելով համակ։*

*Աստուծոյ նպատակին քօղազերծուելովը և Իր Խօսքին պարզուելովը այսպիսի օրհնութիւն մ'է որ կուգայ աշխարհի վրայ ներկայիս, և կը հաւատանք որ այս հատորը այդ օրհնութեան ու յայտնագործութեան մէկ մասը կը կազմէ։*

*Ամէն անոնք որոնք մարդկային կարծիքներէ հրաժարելով ժամանակ կուտան Ս. Գիրքը պրպտելու, միևնոյն ատեն չդադրելով ուղեղ գործածելէ, ինչ որ Աստուած ալ կը յանձնարարէ (Ես. Ա. 18), երկնակամարին վրայ խոստումի ծիածանի աղեղ մը պիտի տեսնեն։ Զարաչար կերպով կը սխալին անոնք որ կը կարծեն թէ անհաւատներն ու անարդարները պէտք է կարող ըլլան ճշմարտութիւնը յստակօրէն տեսնելու. ո՛չ. անիկա չի կրնար ըլլալ. Սաղմոսերգուն կ'ըսէ. «Արդարին համար լոյս (Ճշմարտութիւն) ցանուեցաւ»։ Սաղմ. Ղէ. 11։ Դան. ԺԲ. 10։*

*Աստուծոյ զաւկին համար ճրագ պատրաստուած է, որուն լոյսը իր ճամբուն վրայ գտնուած խաւարը մեծապէս կը փարատէ։ «Քու խօսքդ իմ ոտքերուս ճրագ է, ու իմ շաւիղներուս լոյս»։ (Սաղմ. ՃԺԹ. 105)։ Բայց միայն, արդարներուն ճամբան «ծագող լոյսի պէս է, որ երթալով կը լուսաւորուի, մինչև որ կատարեալ օր ըլլայ»։ (Առակ. Դ. 18)։ Իրականին մէջ «արդար մը չկայ՝ ո՛չ մէկ հատ»։ (Հռովմ. Գ. 10)։ Վերոյիշեալ դասակարգը «հաւատքով արդարացած» է։ Այս դասակարգը* միայն *առանձնաշնորհուած է քալելու այն ճամբէն որ երթալով կը լուսաւորուի. և անոր վիճակուած է ո՛չ միայն Աստուծոյ Ծրագրին ներկայ յայտնութիւնները տեսնելու, հապա նաև գալիք բաներն ալ։ Ու թէև ճըշ-*

մարտութիւն մ՚է թէ իւրաքանչիւր Հաւատացեալի ճամբան լուսաւորման ընթացքին մէջ է, սակայն այս խօսքը աւելի պատշաճօրէն գործածած կրնանք ըլլալ, եթէ զայն արդար (արդարացած) դասակարգին յատկացնենք։ Նահապետները, Մարգարէները, Առաքեալները, և անցեալի ու ներկայի սուրբերը այդ յարաճուն լոյսին մէջ քալած են ու կը քալեն. և լոյսը պիտի շարունակէ աճիլ ներկայ շրջանէն ալ անդին—«Կատարեալ Օր»ուան մէջ։ Երկարող ճամբան միշտ նոյնն է, և շարունակաբար աճող լոյսը Աստուծոյ Խօսքն է, որը աւելի ու աւելի պայծառօրէն կը յայտնուի ու կը լուսաւորուի իր սահմանեալ ժամանակներուն մէջ։

Ուրեմն, «ուրախացէ՛ք Տիրոջմով, ո՛վ արդարներ», այն ակնկալութեամբ թէ այդ խոստումը պիտի իրականանայ։ Շատերը ա՛յնքան աննշան հաւատք մը ունին որ աւելի լոյս չեն ակնկալեր, ու իրենց այդ անհաւատարմութեան և անհոգութեան պատճառաւ թոյլ տրուած է իրենց որ խաւարին մէջ նստին, մինչդեռ կարելի էր իրենց համար յարաճուն լոյսին մէջ քալել։

Եկեղեցին դէպի ճշմարտութիւն առաջնորդելու համար տրուած Աստուծոյ Հոգին՝ գրուածքներէն առնելով մեզի պիտի ցուցադրէ. բայց գոյութիւն ունեցած գրուածքներէն աւելին պէտք չէ մեզի, ինչու որ Յիսուս Քրիստոսի վրայ ունեցած հաւատքով, Ս. Գրութիւնները կարող են փրկութեան արժանացնելու չափ իմաստուն ընել։—Բ. Տիմ. Գ. 15։

Թէև ներկայիս ալ իրականութիւն մ՚է թէ «խաւարը կը ծածկէ երկիրը և թանձր խաւարը ժողովուրդը», սակայն աշխարհը միշտ այդ վիճակին մէջ չպիտի մնայ։ Մեզի այն ապահովութիւնը տրուած է թէ՝ «Առաւօտը կուգայ»։(Եսա. ԻԱ. 12)։ Ու ինչպէս

որ Աստուած Ներկայիս կը թոյլատրէ որպէսզի բնական արեւը արդարներուն ու անարդարներուն վրայ ծագի, այսպէս ալ՝ Հազարամեայ Օրուան մէջ՝ Արդարութեան Արեգակը ամբողջ աշխարհի մարդկութեան համար պիտի փայլի, ու «խաւարին գաղտնիքը ի լոյս պիտի հանէ»։ (Ա. Կորնթ. Դ. 5)։ Անիկա չարութեան ապականիչ մէգերը պիտի ցրուէ, և կեանք, առողջութիւն, խաղաղութիւն և ուրախութիւն ընծայէ։—Ես. ԻԵ. 6—9։

Երբ անցեալը կը դիտենք, կը տեսնենք որ լոյսը այն ատեն տկարօրէն միայն փայլեցաւ։ Աբրահամի և ուրիշներու տրուած խոստումները, որոնք այլաբանօրէն պատկերացուեցան Օրէնքով ու մարմնեղէն Իսրայէլի արարողութիւններովը՝ միայն շուքեր էին, ու Աստուծոյ հրաշալի և շնորհալի խորհուրդներուն նկատմամբ մռայլ գաղափար մը միայն տըւին։ Քրիստոսի օրերուն մէջ լոյսը աւելի պայծառացաւ. մինչև այն ատեն ընդհանուր և գլխաւոր ակնկալութիւնը այն էր թէ Աստուած Ազատարար մը պիտի յարուցանէ, Իսրայէլը իր թշնամիներէն փրկելու և աշխարհի ամենաառաջնակարգ ազգութեան վերածելու, և իրենց տրուած այս զօրութեամբն ու ազդեցութեամբը Աստուածային միջոցները պիտի ըլլան երկրիս բոլոր ընտանիքներու օրհնութեան գործին մէջ։

Աստուծոյ Թագաւորութեան ժառանգակցելու համար տրուած հրաւէրին պայմանները, և խոստացուած մեծութեան հասցնելու համար ընտրուած դասակարգին վիճակը, երևութապէս և մարդկայնապէս, Հրէաներուն ակնկալածէն ա՛յնքան տարբեր էին որ, բացի փոքրիկ թիւէ մը՝ միւս բոլորը ընծայուած հրաւէրին առջև կոյր գտնուեցան։ Եւ անոնց կուրութիւնն ու թշնամութիւնը բնականապէս

աւելի զօրացաւ՝ երբ Աստուծոյ Ծրագրին կարգադըրութեանը համաձայն ու յարմար ատենին, երկընքի տակ գտնուած ամէն արարածներուն տրուեցաւ խոստացեալ Թագաւորութեան մասնակցելու հրաւէրը, ու հաւատքի միջոցաւ հաւատարիմ Աբրահամի որդի մը ու անոր տրուած խոստումներուն ժառանգ մը ըլլալու յոյսը։

Երբ Յիսուսի քարոզած Աւետարանը Հոգեգալուստէն յետոյ սկսաւ հասկցուիլ, այն ատեն միայն Եկեղեցին տեսաւ՝ թէ աշխարհի խոստացեալ օրհնութիւնները դեռ հեռաւոր ապագային կը պատկանին, և թէ՝ այդ օրհնութիւնները գլուխ հանելու համար, Թագաւորութիւնը հոգեղէն «փոքրիկ հօտ» մը պիտի ըլլայ, բաղկացած Հրէաներէ և Հեթանոսներէ, ճշմարիտ Իսրայէլացիներէ, որոնք յարութեան ժամանակ հոգեղէն բնութեան և զօրութեան պիտի բարձրացուին. որով կը կարդանք թէ Յիսուս կեանքըն ու անմահութիւնը ի լոյս հանեց Աւետարանին միջոցաւ։ (Բ. Տիմ. Ա. 10)։ Եւ Յիսուսի օրէն սկսեալ լոյսը հետզհետէ կ՚աճի, ինչպէս որ նա կանխաւ ըսաւ. «Ձեզի տակաւին շատ բաներ ունիմ խօսելու, բայց հիմա չէք կրնար տանիլ. իսկ երբ նա՝ Ճշմարտութեան Հոգին գայ, ձեզ ամէն Ճշմարտութեան պիտի առաջնորդէ... ու գալիքները ձեզի պիտի պատմէ»։—Յովհ. ԺԶ. 12,13։

Սակայն Առաքեալներուն ննջելէն յետոյ, եկաւ ժամանակ մը, ուր Եկեղեցիին մեծամասնութիւնը սկսաւ լոյսը լքել, և առաջնորդուելու համար մարդկային ուսուցիչներու նայիլ. իսկ ուսուցիչները գոռոզութեամբ փքացած՝ տիտղոսներ ու պաշտօններ ընդունեցին ու սկսան Աստուծոյ ստացուածքին վըրայ տիրել։ Յետոյ, տակաւ առ տակաւ, գոյութիւն առաւ «կղերականութիւն» կոչուած ուրոյն դասա-

կարգ մը, որոնք սկսան ինքզինքնին նկատել և ուրիշներէն ալ նկատուիլ իբր Հաւատքի ու գործի չափման առաջնորդներ, փոխան Աստուծոյ Խօսքին։ Այսպէս՝ սխալական մարդոց վարդապետութեանց Հանդէպ ցուցադրուած անարժան յարգանքին, և Անսխալ Աստուծոյ Խօսքին մերժուելուն պատճառաւ, ժամանակի ընթացքին մէջ Պապականութեան Հսկայ կազմը յառաջ եկաւ։

Արդարև, ճշմարտութեան լքումէն յառաջացած չարիքները խիստ ծանր եղած են։ Ինչպէս որ բոլորին ալ ծանօթ է, թէ՝ Եկեղեցին և թէ՝ քաղաքակիրթ աշխարհը, գրեթէ, ամբողջութեամբ գերի դարձան այս սիստէմին, ու առաջնորդուեցան մարդակերտ աւանդութիւններու և դաւանանքներու պաշտամունք մատուցանել։ Այս ստրկութենէն՝ Բարեկարգութեան անունով ճակատաբաց ու պատուական ըմբոստութիւն մը յառաջ եկաւ, ի սէր ազատութեան և Ս. Գրքին։ Աստուած իր Խօսքին պաշտպանութեանը համար քաջարի մարտիկներ հանեց, որոնցմէ էին Լութեր, Ցուինկլի, Մելանխթոն, Ուայքլիֆ, Նաքս և ուրիշներ։ Ասոնք Հասարակութեան մատնանշեցին այն իրողութիւնը թէ՝ Պապականութիւնը Ս. Գիրքը մէկ կողմ նետած՝ անոր տեղ եկեղեցական դաւանանքներ ու հաւատալիքներ որդեգրած է. ու անոր վարդապետութիւններէն ու գործելակերպերէն կարգ մը սխալներ մատնանշեցին, փաստելով անոնց աւանդութեանց վրայ հիմնըուած ըլլալը, հակառակ ճշմարտութեան և ընդդէմ Աստուծոյ Խօսքին։

Այս բարեկարգիչները և իրենց համախոհները Բողոքական կոչուեցան, ինչու որ Պապականութեան դէմ բողոք բարձրացուցին, և յայտարարեցին թէ Աստուծոյ Խօսքն է այն միակ չափանիշը, որուն

Համեմատ պէտք է որ չափուած ու ձեւուած ըլլան ամէն հաւատալիք ու գործունէութիւններ։ Բարեկարգութեան օրերուն մէջ՝ շատ մը հաւատացեալ անկեղծ ու ջերմեռանդ հոգիներ, իրենց ժամանակակից լոյսին մէջ քալեցին։ Սակայն այդ օրերէն ի վեր Բողոքականները չնչին յառաջդիմութիւն մը միայն ըրած են, ինչու որ, փոխանակ լոյսին մէջ քալելու՝ իրենց սիրեցեալ առաջնորդներուն բոլորտիքը հանգիստ ըրեր նստեր են, դժկամակելով անոնց տեսածէն աւելին տեսնել։ Ճշմարտութեան ճամբէն յառաջդիմելու իրենց ընթացքին առջեւը պատնէշներ կանգնեցին, իրենց ունեցած փոքրիկ ճշմարտութեան հետ՝ «մայր» եկեղեցիէն բերած շատ մը մոլորութիւններ ալ պատնէշէն ներս թողելով։ Երկար տարիներ առաջ կազմուած դաւանանքներու նկատմամբ, Քրիստոնեաներու մեծամասնութիւնը նախապաշարեալ պատկառանք մը ունի, այն հաւատքով՝ թէ Աստուծոյ Ծրագիրներուն նկատմամբ Բարեկարգիչներու դիտացածէն աւելի կարելի չէ գիտնալ ներկայիս։

Միեւնոյն ցաւալի վիճակին մէջ կը գտնուի նաև Լուսաւորչական Եկեղեցին, որը Նիկիոյ տիեզերական ժողովին մէջ Պապականութեան հովանաւորութեան ներքև չափուած ու ձեւուած Հաւատոյ Հանգանակէն ու Գրիգոր Լուսաւորչի Յունական Եկեղեցիէն բերած ծէսերէն ու վարդապետական անհեթեթ ըմբռնումներէն գոհացած, և այսպէս անցեալ խաւար դարերու մէջ կոփուած նախապաշարումներու ու անտրամաբանական և իրական ճշմարտութիւնը հիմնապէս հակասող վարդապետութեանց երկաթեայ վանդակապատով մը շրջապատուած՝ չհամարձակիր քայլ մ'իսկ յառաջանալ ներկայիս փայլող Աւետարանական լուսոյն մէջ, հոգ չէ թէ՝ թէ' գի-

տակից կղերականը և թէ՝ աշխարհականը դէպի անհաւատութիւն կը դիմեն։ Ինչպէս որ Գ—ն Դարերու մէջ գործածուած կանթեղներուն լոյսը բաղդատմամբ ներկայ ելեքտրական լոյսին՝ խիստ աղօտ էր, նո՛յնքան աղօտ են նաև այն ժամանակուայ Հաւատոյ Հանգանակները, երբ զանոնք ներկայիս Արարչին Խօսքին վրայ ցոլացող պայծառ լոյսին հետ կը բաղդատենք։

Այս սխալը խիստ սուղի արժած է. ինչու որ բացի այն իրողութենէն՝ թէ ճշմարտութեան միայն մի քանի մեծ սկզբունքներ դուրս հանուեցան մոլորութեան կոյտէն, ճշմարտութեան մասնաւոր կէտեր կան, որոնք շարունակ երևան կուգան. և Քրիստոնեաները իրենք զիրենք կը զրկեն այդ ժամանակակից ճշմարտութիւններէն, երբոր դաւանանքներու ցանկապատէն ներս բանտարկուած կը պահեն ինքզինքնին. զոր օրինակ՝ ճշմարտութիւն մ'էր Նոյի օրերուն մէջ, և որուն այն ատենուայ բոլոր լոյսի մէջ քալել ցանկացողները պէտք էր որ հաւատային՝ թէ ջրհեղեղ մը կը մօտենար, բան մը՝ որուն մասին Ադամ և ուրիշներ ո՛չ մէկ տեղեկութիւն ունէին։ Եթէ մենք ալ հիմա ելլենք ու քարոզենք թէ ջրհեղեղ մը տեղի պիտի ունենայ, ճշմարտութիւնը խօսած պիտի չըլլանք. սակայն ուրիշ Տնօրինութեանց պատկանող ճշմարտութիւններ կան, որոնք շարունակաբար երևան կուգան, և որոնց մասին պիտի գիտնանք՝ եթէ ճրագին լոյսին մէջ կը քալենք. այս հաշուով՝ եթէ նո՛յնիսկ ասկէ քանի մը հարիւր տարի առաջուայ ամբողջ լոյսին միայն տիրացած ըլլանք, կըրկին, չափով մը խաւարի մէջ ենք։

Լոյսի ճամբուն մէջ քալող անօթի պանդուխտներուն համար Աստուծոյ Խօսքը պաշարի մեծ շտեմարան մ'է։ Հոն մանուկներու համար կաթ՝ և չափա-

*հաններու համար զօրաւոր սնունդ կը գտնուի (Ա. Պետ. Բ. 2: Եբր. Ե. 14). ու ո՛չ միայն այդ՝ հապա նաև զանազան եղանակներու և պարագաներու յատուկ ուտեստ կը պարունակէ։ Յիսուս ըսաւ թէ հաւատարիմ ծառան* իր տանեցից *ուտելիք—«Հին ու Նոր բաներ»—պիտի հանէ շտեմարանէն, հաւատքի ընտանիքին համար։ (Ղուկ. ԺԲ. 42: Մատթ. ԺԳ. 52)։ Անկարելի բան մ՚է ո՛և է յարանուանութեան դաւանանքէն կամ շտեմարանէն այս տեսակ բաներ մէջ տեղ հանել։ Թերևս անոնց ամէն մէկէն հին ու բարի բաներ դուրս հանուին, բայց ո՛չ նոր։ Այլևայլ յարանուանութեանց դաւանանքներուն մէջ գրուած ճշմարտութիւնը ա՛յնքան քօղարկուած՝ ու մոլորութեան հետ ա՛յնքան շաղախուած է որ, անոր բնական գեղեցկութիւնն ու իսկական արժէքը անճանաչելի է։ Յարանուանութիւնները իրարու հետ շարունակ ընդհարմանց մէջ են, և անոնցմէ ամէն մէկը կը յայտարարէ թէ Ս. Գիրքը իրեն հետն է. որով գաղափարներու խառնաշփոթութիւնը և ակներև աններդաշնակութիւնները Աստուծոյ Խօսքին կը վերագրուին։ Եւ ասիկա ծնունդ տուած է այն ընդհանրացած առակին, թէ «Ս. Գիրքը հին ջութակ մ՚է, որով կարելի է ո՛և է եղանակ նուագել»։*

*Ո՛րքան զօրաւոր կերպով կ՚արտայայտէ ասիկա ներկայի անհաւատութիւնը, որը յառաջ եկած է մարդակերտ դաւանանքներու Աստուծոյ Խօսքին ու նկարագրին խեղաթիւրումներուն և ուշիմութեան արդի ծաւալմանը պատճառաւ, որը այլևս չի հանդուրժեր մարդկային կարծիքներու առջև կուրօրէն ու նախապաշարեալ ակնածութեամբ խոնարհիլ, հապա փաստ կը պահանջէ մեր մէջ գտնուած յոյսին համար։ Աստուծոյ Խօսքին հաւատարիմ աշակերտ մը պէտք է միշտ կարող ըլլայ իր ունեցած յոյսին*

պատճառը *պարզելու. մի՛միայն Աստուածաշունչը կարող է իմաստուն ընել. և որը օգտակար է սորվեցնելու, խրատելու են., «որպէսզի Աստուծոյ մարդը կատարեալ ըլլայ՝ ամէն բարի գործերու* բոլորովին պատրաստ: (*Ա. Պետ. Գ.* 15: *Բ. Տիմ. Գ.* 15—17): *Միմիայն այս շտեմարանն է որ Հին ու Նոր բաներու—Հաւատքի ընտանիքին համար ժամանակայարմար սնունդի—անսպառ պաշար մը կը պարունակէ: Ամէն անոնք, որ կը հաւատան Ս. Գրոց այն խօսքին՝ թէ «Արդարներուն ճամբան երթալով կը լուսաւորուի, մինչև որ Կատարեալ Օր ըլլայ», բնականաբար, չպիտի ընդունին թէ Կատարեալ Օրը Լութերի և կամ Գրիգոր Լուսաւորչի ժամանակ եկաւ. որով լաւ կ՚ընեն եթէ ուշադրութիւն ընծայեն այն «որպէս թէ* մութ տեղը *լոյս տուող ճրագին, ՄԻՆՉԵՒ ՈՐ ՑՈՐԵԿԸ ԼՈՒՍՆԱՑ» :—Բ. Պետ. Ա.* 19:

*Եւ բաւական չէ ներկայիս ինքզինքնիս լոյսի ճամբուն մէջ գտնելը. պէտք է որ* «Լոյսին մէջ քալենք», *շարունակ յառաջդիմենք. եթէ ոչ՝ լոյսը որ կանգ չ՚առներ՝ պիտի անցնի ու մեզ խաւարին մէջ ձգէ: Շատերուն թերութիւնը հոն է որ՝ իրենք կը նստին, փոխանակ լոյսի ճամբուն մէջ ընթանալու: Համաբարբառ մը առէք ու քննեցէք* նստիլ *և* կենալ *բառերուն տակ շարուած համարները, և յետոյ զանոնք բաղդատեցէք* քալել *ու* վազել *բառերուն տակ գտնուած համարներուն հետ, ու պիտի տեսնէք անոնց մէջ գտնուած մեծ տարբերութիւնը. օրինակ՝* նստողները, նստած *և* չի կենար *բառերուն ներքև պիտի գտնէք՝ «խաւարի մէջ* նստողները», *«ծաղր ընողներուն* նստած *տեղը»*, «մեղաւորներուն *ճամբուն մէջ* չի կենար»*. իսկ* քալենք *ու* վազենք *բառերուն ներքև՝ «եկէք Տիրոջը լոյսովը* քալենք», *«Համբերութեամբ* վազենք *մեր առջևը դրուած աս-*

պարէզի ընթացքը»։— Եսա. ԽԲ. 7։ Սաղմ. Ա. 1։ Եբր. ԺԲ. 1։

Գիտութեան կատարելութիւնը անցեալին չի պատկանիր, հապա ապագային— և այն ալ խիստ մօտ ապագային, կը յուսանք։ Մինչև որ չընդունինք այս իրողութիւնը՝ ի վիճակի չենք կրնար ըլլալ մեր Հօր Ծրագրէն թարմ յայտնութիւններ ակնկալելու, ո՛չ ալ եղածները գնահատելու։ Թէև ներկային ու ապագային նկատմամբ ամբողջական գիտութիւն մը ստանալու համար կրկին դէպի ետ՝ Մարգարէից և Առաքելոց խօսքերուն կը դիմենք, սակայն ասիկա չի նշանակեր թէ անոնք Աստուծոյ Ծրագիրներն ու նպատակները միշտ մեզմէ աւելի լաւ հասկցած են. հապա թէ՝ Աստուած զանոնք իբրև Իր պատգամախօսները գործածած է, մեզի և ամբողջ Քրիստոնէական Դարու Եկեղեցիին հաղորդելու Իր Ծրագրին վերաբերեալ ճշմարտութիւնները, յարմար ու կանխորոշուած ժամանակներու մէջ։ Առաքեալները զօրաւոր կերպով կը հաստատեն այս իրողութիւնը։ Ս. Պօղոս մեզի կ՚ըսէ թէ Աստուծմէ նախասահմանուած՝ և մթին ասացուածքներով արձանագրուած՝ ու դարերէ ի վեր ծածուկ պահուած Իր կամքին Խորհուրդը (գաղտնիքը) Քրիստոնէական Եկեղեցիին յայտնուած է, որը չէր կրնար հասկցուիլ մինչև որոշեալ ժամանակը, երբ մեր ըմբռնումի աչքերը բացուեցան, գնահատելու համար «վերին կոչ»ը, որը բացարձակապէս Քրիստոնէական Դարու հաւատացեալներուն սահմանուած է։ (Եփես. Ա. 9, 10, 17, 18։ Գ. 4—6)։ Ասիկա յստակօրէն կը ցուցնէ թէ տրուած մարգարէութեանց իմաստը ո՛չ Մարգարէները և ո՛չ ալ հրեշտակները հասկցան։ Պետրոս կ՚ըսէ թէ երբ անոնք մեծապէս փափաքեցան անոնց նշանակութիւնը գիտ-

նալ, Աստուած ըսաւ թէ իրենց մարգարէութեանց մէջ պահուած ճշմարտութիւնները ո՛չ թէ իրենց՝ հապա Քրիստոնէական Դարու հաւատացեալներուն համար են։ Եւ նա կը յորդորէ Եկեղեցին՝ որպէսզի այս ուղղութեամբ դեռ աւելի ողորմութիւն (շընորհք, օրհնութիւն)—Աստուածային Ծրագիրներուն նկատմամբ աւելի գիտութիւն—յուսայ։—Ա. Պետ. Ա. 10—13։

Թէեւ Յիսուս խոստացաւ թէ Եկեղեցին ամէն ճշմարտութեան պիտի առաջնորդուի, սակայն պարզ է թէ տրուելիք յայտնութիւնները տակաւ առ տակաւ պիտի գային։ Թէեւ Առաքեալներու օրերուն մէջ գտնուած Եկեղեցին անարատ էր Պապականութեան մէջ ու անոր ազդեցութեան ներքեւ բուսած շատ մը մոլութիւններէն, սակայն մենք չենք կրնար ընդունիլ թէ վաղեմի Եկեղեցին Աստուծոյ Ծրագիրը ա՛յնքան խորապէս ու յստակօրէն տեսաւ, որքան որ կարելի է տեսնել ներկայիս։ Ակներեւ է թէ՝ Առաքեալներուն իւրաքանչիւրը իրարմէ տարբեր չափով ծանօթութիւն ունէր Աստուծոյ Ծրագրին նկատմամբ, թէեւ Մարգարէներու խօսքերուն նման իրենց ալ բոլոր գրութիւնները Աստուծմէ առաջնորդուած ու ներշնչուած էին։ Անոնց ունեցած գիտութեան քանակին տարբերութիւնները կրնանք մեր աչքին առջեւ մասամբ պատկերացնել, երբ նկատի առնենք Աւետարանի առաջին անգամ Հեթանոսաց քարոզուելու ատեն, բացի Պօղոսէն՝ Պետրոսի եւ ուրիշ Առաքեալներու ժամանակ մը ցուցադրած տատամսոտ ընթացքը։ (Գործ. Ժ. 28։ ԺԱ. 1—3։ Գաղ. Բ. 11—14)։ Մարգարէներու խօսքերէն, Աստուծոյ անցեալի վարուելակերպերէն եւ իրեն եղած ուղղակի յայտնութիւններէն ներշնչուած՝ Պօղոսի վստահու-

Թիւնը նկատելի հակապատկեր մը կը կազմէր հանդէպ Պետրոսի անստուգութեան

Արդարև, Պօղոս միւս Առաքեալներէն աւելի յայտնութիւններ ստացաւ, բայց թոյլատրուած չէր զանոնք Եկեղեցիին յայտնելու, և ո՛չ ալ միւս Առաքեալներուն իմացնելու իրենց ամբողջութեամբն ու պարզութեամբը. սակայն Պօղոսի տրուած այս տեսիլքներուն ու յայտնութիւններուն մէջ՝ ամբողջ Եկեղեցիին վերաբերեալ արժէք մը կը գտնենք. որովհետև թէև անիկա թոյլատրուած չէր իր տեսածները յայտնելու, և ո՛չ ալ «Գալիք Դարեր»ու համար սահմանուած Աստուծոյ խորհրդներուն նըկատմամբ իր գիտցածները մանրամասնօրէն պատմելու, բայց իր տեսածները ուժգնութիւն մը, կերպարանք մը և խորութիւն մը տուին իր խօսքերուն իմաստին, որոնք յետագայ իրողութեանց լոյսին, մարգարէութեանց և Հոգիին առաջնորդութեան ներքև սկզբնական Եկեղեցիէն աւելի լաւ կրնանք ըմբռնել և գնահատել։

Իբր փաստ վերոյիշեալ խօսքերուն ճշմարտութեան՝ ուշադրութեան կը յանձնենք Աստուածաշունչի ամենավերջին գիրքը—Յայտնութիւնը—գրուած Ք. Թ. 96ի ժամանակները։ Յառաջաբանական խօսքերը նախապէս չհասկցուած բաներու նըկատմամբ մասնաւոր յայտնութիւն մը ըլլալը կը յայտարարեն։ Անիկա վերջնականապէս կը հաստատէ թէ մինչև այն ատեն Աստուծոյ Ծրագիրը իր ամբողջութեամբը յայտնուած չէր։ Եւ այս գիրքը մինչև ցարդ դեռ չէ ընծայած այն ամէնը, զոր իր անունը կը նշանակէ—լուսաբանութիւն մը, ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ ՄԸ։ Գալով նախնական Եկեղեցիին, հաւանական է թէ բան մըն ալ չհասկցաւ գրքին ո՛և է մասէն։ Նոյն իսկ Յովհաննէս՝ որ այն տեսիլքներուն ակա-

նատեար եղաւ, թերեւս չմբռնեց անոնց նշանակութիւնը. նա թէ՛ Մարգարէ մը և թէ՛ Առաքեալ մ՚էր. ու թէեւ իբրեւ Առաքեալ հասկցաւ ու քարոզեց այն, ինչ որ այն ատեն ժամանակայարմար սնունդ էր, բայց որպէս Մարգարէ՝ արտասանեց ա՛յնպիսի բաներ, որոնք ապագայ ժամանակներու մէջ հաւատքի ընտանիքին «սնունդ» պիտի հայթայթէին:

Քրիստոնէական Դարու տեւողութեան, մաս մը սուրբեր ջանացին այս խորհրդաբանական գիրքը քննելով՝ Եկեղեցիին ապագային տեղեկանալ. և անտարակոյս, ամէն անոնք որոնք կարդացին ու գոնէ մասամբ ըմբռնեցին անոր ուսուցումները, օրհնուեցան խոստման համաձայն: (Յայտ. Ա. 3): Գիրքը սկսաւ աւելի ու աւելի պարզուիլ այսպիսիներուն առջև. և բարեկարգութեան օրերուն մէջ մեծապէս նպաստեց Լութերին, ճանչնալու թէ Պապականութիւնը՝ որուն ինք խղճամիտ պաշտօնեայ մ՚էր, ստուգիւ, Առաքեալէն յիշուած «Նեռ»ն էր, որուն պատմութիւնը ներկայիս կը տեսնենք որ մեծ տեղ մը կը գրաւէ այդ (Յայտնութեան) մարգարէութեանը մէջ:

Այսպէս՝ Աստուած աստիճանաբար երեւան կը բերէ Իր ճշմարտութիւնը և կը յայտնէ Իր ողորմութեանց գերազանց ճոխութիւնը. Հետեւաբար ներկայիս շատ աւելի լոյս կ՚ակնկալենք, քան Եկեղեցիին պատմութեան ո՛եւէ մէկ շրջանին մէջ:

«Ու նորանոր գեղեցկութիւններ պիտի տեսնենք դեռ,
Եւ յարաճուն լոյս»:

## ՔԱՋՈՒԹԻ՛ՒՆ, ԱՌԱՒՕՏԸ ԿԸ ԾԱԳԻ

*Թէեւ գիշերն ըլլայ տըխուր ու խաւար*
*Թէ որ ցերեկն ալ՝ տաղտկալի ու երկար,*
*Բայց արեւծագ պիտ’ բերէ քեզ լոյս, Հրճուանք,*
*Մօ՛տ է այգը, վե՛ր կաց, ո՛րդեակ, ա՛ռ նոր կեանք։*

*Թէեւ աչքերդ արտասուաթոր ու թաց են,*
*Ու հսկած ես գիշերն ի բուն միշտ անքուն,*
*Տէրը պիտ’ սրբէ արտասուանքներդ յաւիտեան,*
*Ու վերածէ լացի գիշերդ մեծ օրուան։*

*Թէեւ Հոգիդ փորձութեանց մէջ գալարի,*
*Տառապանքի նեղ ճամբուն մէջ անձկալի,*
*Բայց կը լուսնայ առաւօտը յոյսերուդ,*
*Ուր պիտ’ հանգչիս տառապանքէդ յաւիտեան։*

# ԳԼՈՒԽ Բ.

## ԳԻՏԱԿԻՑ ՈՒ ԳԵՐԱԳՈՅՆ ԱՐԱՐՉԻ ՄԸ ԳՈՅՈՒԹԻՒՆԸ ԱՊԱՑՈՒՑՈՒԱԾ

**Ա. Գրքէն Անջատ վկայութիւնները, Տրամաբանութեան Լոյսով քննուած — Անհիմն Տեսութիւն մը — Բանաւոր Տեսութիւն մը — Աստուծոյ Նկարագիրը ցուցադրուած — Տրամաբանական Եզրակացութիւններ։**

*ՆՈՅՆ ԻՍԿ սկեպտիկի մը տեսակէտով, և գիտցուած բաներու լոյսովը, եթէ աննախապաշար ու գիտակից տրամաբանող մը անծանօթին տեղեկանալու համար պատշաճ ու անաչառ խուզարկութիւն մը կատարէ՝ դէպի ճշմարտութիւն պիտի առաջնորդուի։ Սակայն որոշ է թէ առանց Աստուծոյ Ծրագիրներուն ու Նպատակներուն մասին ուղղակի յայտնութեան մը՝ մարդիկ աննշան չափով մը միայն կարող պիտի ըլլան ճշմարտութեան մօտենալ, և անորոշ եզրակացութեանց պիտի յանգին։ Սակայն վայրկեանի մը համար մէկ կողմ դնենք Ս. Գիրքը, և իրերը տրամաբանութեան տեսակէտով միայն դիտենք։*

*Այն անձը որ հեռադիտակով մը կամ պարզ աչքով մ'իսկ կը դիտէ երկնակամարը ու հոն կը տեսնէ ըստեղծագործութեան անսահմանութիւնը, անոր համաչափութիւնը, գեղեցկութիւնն ու կանոնաւորու-*

*թիւնը, կը նշմարէ անոր ներդաշնակութիւնն ու պէսպիսութիւնը, և դեռ կը տարակուսի անոր Արարչին իրմէ թէ՛ իմաստութեամբ և թէ՛ զօրութեամբ բարձր ըլլալուն մասին, և կամ կը խորհի վայրկեան մ'իսկ թէ այդպիսի կարգ ու սարք մը դիպուածով՝ առանց Արարչի մէջտեղ եկած է, այդպիսի մէկը կա՛մ խորհելու կարողութիւնը կորսնցուցած է և կա՛մ զայն մէկդի թողած է, և ըստ Ս. Գրոց արժանի է կոչուելու անզգամ մը՝ (չիմար մը՝ մէկը որ տրամաբանութիւնը կ'անտեսէ կամ թերամիտ է). «Անզգամը իր սրտին մէջ ըսաւ թէ Աստուած չկայ»։ Սակայն և այնպէս, ամէն լրջախոհ արարած այն եզրակացութեան պարտ է յանգի՝ թէ Աստուածաշունչին գոնէ մեծամասնութիւնը ճշմարիտ է. ինչու որ ինքնայայտ իրողութիւն մ'է թէ արդիւնքները միշտ պատճառներուն կը հետևին. նոյնիսկ ամէն մէկ բոյս ու ծաղիկ այս նիւթին շուրջ վկայութեանց մէյմէկ հսկայ հատորներ են։ Անոնց նուրբ յօրինուածքը, գերազանցօրէն գեղատեսիլ ձևն ու հիւսուածքը, մարդկայինէ աւելի բարձր էակի մը իմաստութիւնն ու հնարամտութիւնը կը պատմեն։ Որպիսի՛ կարճամտութեան արդիւնք է այն անհեթեթութիւնը, որ կը պարծենայ մարդկային հմտութեան ու կորովամտութեան մասին, իսկ բնութեան կանոնաւորութիւնը, միակերպութիւնն ու ներդաշնակութիւնը պարզ դիպուածի մը կը վերագրէ. որը թէև կը ճանչնայ բնութեան օրէնքները, սակայն* կ'ուրանայ *զանոնք տուող գիտակից Օրէնսդիրին գոյութիւնը։*

*Գիտակից Արարչի մը գոյութիւնը ուրացողներէն ոմանք կ'ընդունին թէ բնութիւնն է միակ Աստուածը, որմէ յառաջ եկան ամէն տեսակ կենդանական և բուսական դասերը, որոնք «յարմարագոյնին ապրե-*

*լու օրէնք»էն կառավարուեցան բարեշրջական ընթացքով մը։*

*Այս տեսութիւնը փաստէ զուրկ է․ ինչու որ ո՛ւր որ ալ դառնանք՝ կը տեսնենք այլազան արարածները իրենց հաստատ բնութեամբը, որոնք բարձրագոյն բնութեանց չեն ձեւաշրջուիր․ և թէև այս տեսութեան պաշտպանները կրկին ու կրկին անգամներ ջանացած են՝ բայց ո՛չ մէկատեն յաջողած են տեսակներ իրարու խառնել, և կամ նոր ու անփոփոխ այլազանութիւն մը արտադրել։ Ո՛չ ոք տեսած է մէկ տեսակին ուրիշ տեսակի մը փոխուիլը*։ Թէև ձուկեր կան, որոնք իրենց լուղաթևերը վայրկեանի մը համար թռչնոց թևերու պէս կրնան գործածել ու ջուրէն դուրս թռչիլ, և գորտեր՝ որոնք կրնան երգել, սակայն բնաւ տեսնուած չէ անոնց թռչուններու փոխուիլը․ ու թէև անասուններուն մէջ կան այնպիսիներ որոնք քիչ մը կը նմանին մարդուն, բայց ապացոյց մը չէ այդ՝ թէ մարդը այն տեսակ անասուններէն ձեւաշրջուեցաւ։ Ընդհակառակը, փորձերէն կը տեսնուի որ թէև մէկ տեսակէն կարելի է տարբեր տեսակներ առաջ բերել, սակայն անկարելի է տեսակները իրարու հետ խառնել, և կամ մէկ տեսակը ուրիշ տեսակի մը ձեւաշրջել։ Այսպէս, թէև էշն ու ձին իրարու կը նմանին՝ սակայն չկրնար ըսուիլ թէ իրարու ցեղակից են․ ինչու որ պարզ իրողութիւն մ'է թէ անոնց սերունդը անծին ու անկատար է։*

*Արդարև, եթէ անգիտակից բնութիւնը եղած ըլլար արարիչը կամ ձեւաշրջողը, տարակոյս չկայ որ նա պիտի շարունակէր այդ բարեշրջումի ընթացքը,*

* Մեր ընթերցողներէն ոմանց օգտին համար կ'աւելցնենք թէ՝ Դար- [illegible]

*և անփոփոխ տեսակներ գոյութիւն պիտի չունենային․ ինչու որ անգիտակից էութեան մը գործունէութեան ներքև ո՛չ մէկ բան հաստատ վիճակի մը մէջ կանգ պիտի առնէր։ Բարեշրջութիւնը այսօր ալ իր ընթացքին մէջ պիտի ըլլար ու պիտի տեսնէինք ձուկերուն՝ թռչուններու և կապիկներուն՝ մարդերու վերածուիլը։ Մենք կ՚ընդունինք թէ բարեշրջութեան այս տեսակէտը այնքան հակասական է մարդկային տրամաբանութեան որքան Ս․ Գրոց, երբ կ՚ըսուի թէ անգիտակից զօրութեամբ մը գիտակից էակներ ստեղծուեցան։*

*Ստեղծագործութիւնը (բացի մարդէն) բարեշրջութեան ընթացքով կատարուելուն մասին տեսութիւն մը գոյութիւն ունի, որուն դէմ լուրջ առարկութիւն մը չունինք․ անիկա կ՚ընդունի թէ ներկայի այլազան դասերը բնութեան կամ տեսակի նկատմամբ հաստատ ու անփոփոխ են․ թէ՝ թէև արդի բնութիւնները կարելի է բարձրագոյն աստիճանի մը՝ նոյն իսկ կատարելութեան բարձրացնել, սակայն ցեղերը կամ բնութիւնները միշտ նոյնը կը մնան։ Այս տեսութիւնը նոյնպէս կ՚ընդունի թէ ներկայ անփոփոխ տեսակներէն և ո՛չ մէկը իր այդ վիճակով ստեղծուեցաւ․ թէ՝ հեռաւոր անցելոյն մէջ երկրէն գոյութիւն առին, բարեշրջութեան ընթացքով մէկ ձևէ ուրիշ ձևի մը փոխուելով աստիճանաբար։ Աստուծոյ հաստատած օրինաց ներքև, որոնց մէջ կերի ու կլիմայի փոփոխութիւնները կարևոր տեղ մը բռնեցին՝ թերևս այս ձևափոխութիւնները շարունակուեցան, մինչև որ արդի հաստատ տեսակներուն հասան, և այս խնդրոյն մէջ Աստուծոյ վերջնական նպատակը ըստ երևոյթին իրագործուած ըլլալով՝ ուրիշ փոփոխութիւն ա՛լ անկարելի է որ*

տեղի ունենալ։ Թէև բոյսերու և կենդանիներու այլ-ևայլ ընտանիքներու իւրաքանչիւրը կրնայ բարե-փոխուիլ կամ վատափոխուիլ, սակայն անոնցմէ և ո՛չ մին ընդունակ է տարբեր ընտանիքներու կամ ցեղերու փոխուելու, կամ անոնցմէ արտադրուելու։ Ու թէև անոնցմէ ամէն մէկը իր հաստատ բնութեան կատարելութեանը կրնայ հասնիլ, բայց բնութեան նկատմամբ Արարչին նպատակները իրականացած ըլլալով՝ այս մասին ուրիշ փոփոխութիւն չի կրնար տեղի ունենալ։

Այնպէս կ՚ըսուի թէ՝ այն նախնական բոյսերն ու անասունները, որոնցմէ ներկայի հաստատ տեսակ-ները յառաջ եկան, մարդուն ստեղծուելէն առաջ ջնջուեցան։ Երկրիս մակերեսին խորերէն գտնուած այժմ անգոյ անասուններու և բոյսերու կմախքներն ու բրածոները այս տեսութիւնը կը պաշտպանեն։ Այս տեսութիւնը ո՛չ կանոնէ և ո՛չ ալ կը մերժէ Ս. Գրոց այն ուսուցումը՝ թէ մարդը իր արարչին ի-մացական ու բարոյական նմանութեամբ կատարեալ ստեղծուեցաւ ուղղակիօրէն· թէ՝ նա բարեշրջական գործունէութեան արտադրութիւն մը չէ, բան մը որ հաւանօրէն ճշմարտութիւն մ՚է մնացեալ ընդհա-նուր ստեղծագործութեան համար։ Այս տեսութիւ-նը ոևէ կերպով չպիտի մերժէ՝ այլ պիտի պաշտպա-նէ Ս. Գրոց ըսածը՝ թէ ներկայ բնութիւնը ինքն իր համար կը վկայէ գիտակից էակէ մը գոյութիւն ու-նենալը, և անկէ կարգադրուիլն ու կանոնաւորուիլը։ Թո՛ղ մարդկային տրամաբանութիւնը իր կրցածին չափ ծանօթ իրողութիւններու ետևէն իյնայ իրա-ւացի ու ձեռնհաս պատճառներ գտնելու, և ամէն խնդրոյ մէջ պատիւը ուղղակի բնութեան օրէնքնե-րուն մատուցանէ· բայց բնութեան մանուածապատ ամբողջ յօրինուածքին ետևը կը գտնուի իր մեծ Հե-

ղինակին՝ գիտակից և ամենակարող Աստուծոյն ձեռքը։

Արդ՝ կը յայտարարենք թէ Գիտակից Արարչի մը գոյութիւնը բացայայտ ճշմարտութիւն մ'է, որուն ապացոյցը կը տեսնենք մեր չորս դին, այո՛, և նո՛յնիսկ մեր ներսի դին. ինչու որ մենք Իր ձեռագործն ենք, ու մեր մտաւորական ու ֆիզիքական բովանդակ կարողութիւնները մեր ըմբռնումէն վեր, սխրալի հնարամտութեան մը մասին կը խօսին։ Եւ Անիկա նաև Ծրագրողն ու Արարիչն է անոր՝ որուն մենք բնութիւն անունը կուտանք։ Մենք կ'ընդունինք թէ Անիկա էր որ հաստատեց ու եղանակաւորեց բնութեան օրէնքները, որոնց գեղեցիկ ու ներդաշնակ գործունէութեանցն ի տես կը հիանանք։ Ու այս Մէկը, որ Իր իմաստութեամբ ծրագրած տիեզերքը Իր զօրութեամբն ալ կանգուն կը պահէ և կ'առաջնորդէ, և Որուն իմաստութիւնն ու զօրութիւնը մերինները անհամեմատօրէն կը գերազանցեն, ինքնաբերաբար կ'երկրպագենք Իրեն ու կը պաշտենք։

Եթէ զԱստուած Իր անգերազանցելի ու ամենակարող զօրութեամբը միայն ճանչցած ըլլայինք, և եթէ Իր զօրութեանը համահաւասար բարեսիրութեանն ու քաղցրութեանը անտեղեակ ըլլայինք՝ պիտի սոսկայինք Իրմէ։ Այս յայտնութիւնները՝ որոնք կը հաստատեն Աստուծոյ գոյութիւնը, զօրութիւնն ու իմաստութիւնը, նոյնքան զօրաւոր կերպով կը հաստատեն նաև Անոր Սէրը։ Մենք ո՛չ միայն ստիպուած ենք ընդունելու թէ Աստուած մը կայ, թէ Անոր զօրութիւնն ու իմաստութիւնը մերիններէն անըմբռնելիօրէն բարձր են, հապա նաև միևնոյն ատեն չենք կրնար անտեսել այն իրողութիւնը՝ թէ արարած մը որքան ալ բարձր ըլլայ չի կրնար իր Արարիչը գե-

բաղանցել։ Որով պէտք է այն վերջնական որոշման յանգինք՝ թէ ինչպէս որ մարդս իր իմաստութեամբն ու զօրութեամբը չի կրնար իր Արարչին հետ բաղդատութեան դրուիլ, որովհետև Անիկա խիստ բարձր է այդ յատկութեանց մէջ, այնպէս ալ են նաև մարդուս բարեսիրական և արդարութեան յատկութիւնները, հոգ չէ թէ որքան ալ մեծ ըլլան անոնք քանակով։ Եւ այսպէս, մեր մտաւորական աչքերովը կը տեսնենք մեր մեծ Արարչին նկարագիրն ու յատկութիւնները։ Անիկա իմաստուն ու արդար, սիրալիր ու հզօր է. և անտարակոյս, Անոր յատկութեանց. սահմանը շատ աւելի ընդարձակ է քան Իր ամենաբարձր մէկ արարածինը։

Բայց առաջ անցնինք. մեր Արարչին գոյութեան ու նկարագրին նկատմամբ այս բանաւոր եզրակացութեան հասած ըլլալով՝ ուրեմն հարցնենք, Ի՞նչ պէտք է ակնկալենք այսպիսի էակէ մը։ Տրամաբանութիւնը մեզ կը պատասխանէ թէ այսպիսի յատկութեանց իւրացումը անոնց գործածութեան երաշխաւորութիւնն է։ Աստուծոյ զօրութիւնը պէտք է որ գործածուի, և այն ալ առանց Իր բնութեան հակասելու—իմաստնօրէն, արդարօրէն, ողորմածօրէն։ Իր նպատակին հասնելու համար ինչ միջոցներ ալ որ որդեգրէ Նա, և Իր զօրութիւնները ինչ կերպով ալ որ գործածէ, պէտք է որ վերջնական արդիւնքը Իր բնութեան ու նկարագրին հետ համապատասխան ըլլայ, և առնուած ամէն մէկ քայլ Իր անսահման իմաստութեան հաւանութեանը արժանանայ։

Եւ Անոր զօրութիւնը բանաւոր ուրիշ ի՞նչ կերպով կարելի էր գործածուիլ՝ քան ստեղծել մեր գլխուն վերևը պլպլացող անհամար աշխարհները ու մեր երկրագունդին հիասքանչ այլազանութիւնները։ Եւ

ողջամտութիւնը ուրիշ ի՞նչպիսի գործերու կրնար առաջնորդել՝ քան մարդն ստեղծել. անոր շնորհելով բանականութիւն ու դատողութիւն, գնահատելու իր Արարչին գործերը, ըմբռնելու Անոր Հանճարը, Անոր Իմաստութիւնը, Արդարութիւնը, զօրութիւնն ու Սէրը: Ասոնք բոլորն ալ առողջ բանականութեան հետ համաձայն են, և մեզի ծանօթ իրողութեանց հետ բոլորովին համապատասխան:

Իսկ հիմա կուգանք մեր վերջին խնդրոյն: Միթէ բանաւոր չէ՞ ակնկալել՝ թէ այսպիսի անսահմանօրէն իմաստուն ու բարի Էակ մը, որ այնպիսի արարած մը մէջտեղ բերած է, որը կարող է գնահատել զի՛նքը ու Իր ծրագիրը, Իր Սէրէն ու Արդարութենէն մղուած՝ պիտի հոգար այդ արարածին բնութեան պէտքերը՝ անոր ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ ՄԸ տալով: Միթէ տրամաբանական չէ՞ խորհիլը՝ թէ Աստուած մտադրած էր մարդուն ստեղծագործութեան նպատակին և անոր ապագային համար պատրաստուած ծրագիրներուն մասին տեղեկութիւն տալ: Նամանաւանդ կը հարցնենք, մի՞թէ տրամաբանութեան հակառակ պիտի չըլլար ակնկալել՝ թէ այսպիսի Արարիչ մը որ մարդկային այսպիսի արարած մը կը կերտէր, և ապագան իսկ տեսնելու կարող իմացական զօրութեամբ մը կ'օժտէր, Իր Ծրագիրներուն մասին անոր բան մը պիտի չուզէր յայտնել, անոր տենչանաց գոհացում տալու համար: Այդպիսի ընթացք մը անբնական պիտի ըլլար, ինչու որ պիտի հակասէր այն նկարագրին զոր կը վերագրենք Աստուծոյ, և հակառակ պիտի ըլլար արդարութեամբ և սիրով ղեկավարուած Էակի մը օրինաւոր ընթացքին:

Մենք կրնանք խորհիլ՝ թէ մարդուն ստեղծուելուն ժամանակ եթէ Աստուածային Իմաստութիւնը ան-

յարմար նկատէր մարդուն ապագայ ճակատագրին և Արարչին ծրագիրներուն մէջ ունեցած բաժնին նըկատմամբ անոր տեղեկութիւն մը ընծայելը, տարակոյս չկայ թէ այն ատեն Աստուածային Արդարութիւնն ու Սէրը պիտի պահանջէին որ մարդկային էակը այնպէս մը սահմանափակուէր իր կարողութեանը մէջ՝ որ կասկածներով, վախերով ու տգիտութեամբ չչարչրկուէր ու մտատանջուէր շարունակ և հետևաբար Աստուածային Զօրութիւնը պիտի գործածուէր այդ սեղմումները կատարելու համար։ Ուրեմն, այն իրողութիւնը թէ մարդը Աստուածային Ծրագրէն յայտնութիւն մը գնահատելու ընդունակ է, և այն նկարագիրը զոր Աստուծոյ կը վերագրենք, զօրաւոր պատճառներ են ակնկալելու՝ թէ Նա մըտադրած էր այդպիսի յայտնութիւն մը ընծայել, Իր իմաստութեան յարմար նկատած ժամանակին ու կերպովը։

Այս նկատումներով՝ եթէ նոյնիսկ Ս. Գրքէն անտեղեակ ալ ըլլայինք, բանականութիւնը մեզ պիտի առաջնորդէր ակնկալելու և փնտռելու այնպիսի յայտնութիւն մը, որպիսին Ս. Գիրքը կը հաւաստէ ըլլալ։ Դարձեալ՝ երբ նկատի կ'առնենք ընդհանուր ստեղծագործութեան կարգն ու ներդաշնակութիւնը, թէ ի՛նչպէս երկնային գունտեր ու դրութիւններ իրենց հսկայ գնացքին մէջ ժամանակ ու դիրք կը պահեն, մենք ոչ այլ ինչ կրնանք ընել բայց եթէ ընդունիլ՝ թէ փոքրագոյն անկանոնութիւնները ինչպէս երկրաշարժներ, փոթորկահողմներ ևն., պարզ նըշաններ են թէ այս երկրիս այլազան տարրերուն համագործակցութիւնը ներկայիս դեռ կատարեալ չէ։ Անվայել չէ խորհող մարդոց համար հարցնել, և ոչ ալ անբնական է Իմաստուն, Հզօր և Բարի Արարչի մը համար պատասխանել՝ թէ միթէ պիտի

գա՞յ ժամանակ մը, ուր ինչպէս երկինքի մէջ՝ նոյնպէս ալ այս երկրիս վրայ ներդաշնակութիւն պիտի տիրէ, և թէ ինչո՞ւ ասիկա իրականութիւն մը չէ ներկայիս։ Ու մենք ակնկալելու ենք թէ այն յայտնութիւնը զոր կը փնտռենք՝ այս հարցերուն պատասխան պիտի տայ։

Այլևս հաստատած ըլլալով մեր ցեղին նկատմամբ Աստուծոյ ունեցած կամքէն ու Ծրագրէն յայտնութիւն մը ակնկալելու բանաւորութիւնը, ինքն իր համար այդպիսի յայտնութիւն մ՚ըլլալ վկայող Աստուածաշունչին ընդհանուր նկարագիրը պիտի քննենք յաջորդ գլխուն մէջ։ Եւ վերի մեր ըրած խորհրդածութեանց համաձայն, եթէ գտնենք որ անիկա բանականութեան հետ կատարելապէս համերաշխ Աստուծոյ նկարագիրը կը ներկայացնէ, մենք այն եզրակացութեան պէտք է գանք՝ թէ ասիկա փաստ մ՚է որ նա պէտք եղած ու ակնկալուած Աստուածային յայտնութիւնն է, ուստի հարկ է որ անոր վկայութիւնը ընդունինք այդ ուղղութեամբ։ Եթէ անիկա Աստուածային յայտնութիւն մ՚է, երբ իր ուսուցումներուն հետ լաւ մը ծանօթացած ենք, պիտի տեսնենք որ Հեղինակին նկարագրին հետ բոլորովին կը համաձայնի, որուն մասին բանականութիւնը կ՚ապահովցնէ մեզ թէ իմաստութեամբ, արդարութեամբ, սիրով և զօրութեամբ կատարեալ է։

# ԳԼՈՒԽ Գ.

## Ս. ԳԻՐՔԸ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ ՄԸ ԴԻՏՈՒԱԾ ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹԵԱՆ ԼՈՅՍՈՎ

Աստուածային Պահանջները և Անոր Արժանահաւատութեան Արտաքին Փաստերը.—Մատենագիրներուն Շարժառիթները.—Գրութեանց Ընդհանուր Նկարագիրը.—Մովսէսի Գիրքը.— Մովսէսի Օրէնքը.—Մովսէսի Ձեռքով Հաստատուած Կառավարութեան Մասնաւոր Հանգամանքները.—Կղերական Խորամանկութեամբ Հաստատուած Սիստէմ մը չէր Այդ Կառավարութիւնը.—Հրահանգներ Քաղաքային Իշխաններու.—Օրէնքին Առջև Աղքատն ու Հարուստը Միևնոյն Աստիճանին վրայ էին.—Օրէնքին, Մարգարէներուն եւ Նոր Կտակարանի Մատենագիրներուն Միջև Միութեան Ընդհանուր Կապ մը Գոյութիւն Ունի՞.—Հրաշքները Ողջամտութեան Հակառակ Բաներ չեն.—Բանաւոր Հետևութիւնը։

Ս. ԳԻՐՔԸ *քաղաքակրթութեան և ազատութեան ջահն է։ Մարդկային ընկերութեան մէջ անոր ունեցած բարի ազդեցութիւնը ընդունուած է ամենամեծ քաղաքագէտներէն, թէև անոնք անոր մեծ մասը Հանկատական դաւանանքներու այլազան ակնոցներովը դիտած են, որոնք թէև Ս. Գիրքը վեր կը բռնեն՝ բայց անոր վարդապետու-*

թիւնները ողբալիօրէն կը խեղաթիւրեն։ Այս մեծ ու հին Գիրքը, թէև անուշադրութեամբ՝ բայց խղճալիօրէն սխալ ներկայացուած է իր թարգմաններէն, որոնցմէ շատեր իրենց կեանքն իսկ պիտի զոհէին անոր պաշտպանութեանը համար. և սակայն՝ անոնք անոր թշնամիներէն աւելի մահացու հարուած մը կուտան, յայտարարելով՝ թէ անիկա կը պաշտպանէ իր ճշմարտութիւնը խեղաթիւրող իրենց երկար ժամանակէ ի վեր մեծարած թիւրիմացութիւնները, որոնք իրենց հայրենական աւանդութիւններէն ստացած են։ Երանի թէ այսպիսիները սթափէին, վերաքննէին իրենց պատգամը, և իրենց թշնամիները զինաթափ ընելով՝ ամչցնէին։

Քանի որ բնութեան Լոյսը կ՚առաջնորդէ մեզ իր հայթայթածէն աւելի առատ Աստուածային յայտնութիւն մը ակնկալելու, ուրեմն տրամաբանող ու խորհող միտք մը պատրաստ պէտք է ըլլայ քննելու ո՛և է բան՝ որը Աստուածային յայտնութիւն մ՚ըլլալու բնոյթը կ՚արտայայտէ, և որը այսպիսի հաւաստումներու իբր ապացոյց՝ մակերեսային (ակներև) փաստ մը կուտայ։ Ս. Գիրքը ինքն իր համար կը վըկայէ Աստուածային այսպիսի յայտնութիւն մը ըլլալը, և իր մակերեսային փաստերը բաւական զօրաւոր կերպով կը հաստատեն իր յայտարարութեանց ճշմարիտ ու հաւանական ըլլալը, և իրաւացի յոյս մը կը ներշնչեն՝ թէ աւելի նուրբ ու մանրակրկիտ խուզարկութիւն մը, աւելի կատարեալ ու հաստատուն յայտնութիւն մը երևան պիտի բերէ, թէ ան արդարև Աստուծոյ Խօսքն է։

Աստուածաշունչը գոյութիւն ունեցած գրքերուն ամենահինն է. անիկա երեսուն դարերու փոթորիկներէն յետոյ ալ դեռ կը վերապրի։ Մարդիկ ամէն կարելի միջոցներով ջանացած են ջնջել զայն երկրիս

երեսէն. անոնք թաքուցին, թաղեցին, զայն ունենալը եղեռն մը սեպեցին ու մահուան պատիժ սահմանեցին, և անոր հաւատացողները ամենադաժան ու ամենաանգութ հալածանաց ենթարկուեցան, բայց Աստուածաշունչը դեռ կ՚ապրի: Եւ այսօր, երբ անոր թշնամիներէն շատերը մահուան քունէրնին կը քնանան, և զայն վարկաբեկելու ու անոր ազդեցութիւնը քանդելու համար գրուած հարիւրաւոր հատորները երկար ատենէ ի վեր մոռացութեան ենթարկուած են, Ս. Գիրքը ամէն ազգերու ու լեզուներու մէջ իրեն համար ճամբայ գտած է. անիկա երկու հարիւրէ աւելի տարբեր լեզուներու թարգմանուած է: Այն իրողութիւնը՝ թէ այս Գիրքը ա՛յսքան դարերէ ի վեր դեռ կ՚ապրի, հակառակ իր ջնջմանը ու անհետացմանը աշխատող աննախնթաց ջանքերուն, գոնէ անուղղակի փաստ մ՚է, թէ այն մեծ էակը՝ զոր իր Հեղինակը կը կոչուի, նաև իր պաշտպանը եղած է:

Ճշմարտութիւն մ՚է նոյնպէս՝ թէ Ս. Գրոց բարոյական ազդեցութիւնը հաւասարապէս բարի է: Ամէն անոնք որոնք լրջօրէն ուսումնասիրած են անոր էջերը, առանց բացառութեան, աւելի սրբազոյն կեանքի մը առաջնորդուած են: Կրօնքի և այլևայլ գիտութեանց վրայ գրուած տարբեր գրութիւններ՝ չափով մը օգնած, ազնուացուցած ու օրհնած են մարդկութիւնը. բայց բոլոր գրքերն ալ ի մի առնելով, չեն կրցած տալ այն ուրախութիւնը, խաղաղութիւնը և օրհնութիւնը որ Ս. Գիրքը շնորհած է հառաչող մարդկութեան թէ՛ հարուստին և թէ՛ աղքատին, թէ՛ ուսումնականին և թէ՛ անուսին: Ս. Գիրքը պարզ, հարևանցիօրէն կարդալու գիրք մը չէ. պէտք է որ զայն ուսումնասիրենք ամենայն խնամքով ու մեր բովանդակ մտքովը, ինչու որ Աստուծոյ խոր-

հուրդներն ու ճամբաները մերիններէն աւելի բարձր են։ Եւ եթէ կը փափաքինք անհասանելի Աստուծոյ Ծրագիրներն ու խորհուրդները հասկնալ՝ պէտք է որ մեր ամբողջ կորովը այդ կարևոր նպատակին համար տրամադրենք։ Ճշմարտութեան ամենաճոխ գանձերը միշտ մակերեսը չեն գտնուիր։

Այս գիրքը ծայրէ ի ծայր, շարունակաբար, աչքառու նկարագիր մը՝ Նազովրեցի Յիսուսը կը մատնանշէ, և որը ըստ այս գրքին՝ Աստուծոյ Որդին էր։ Սկիզբէն մինչև վերջը Անոր անունը, պաշտօնը և գործը երևելի եղած են։ Պատմական իրողութիւն մ'է, ինչպէս նաև զանազան կերպերով կատարելապէս հաստատուած է՝ թէ Յիսուս Նազովրեցի անուն մարդ մը ապրեցաւ, և Ս. Գրոց մատենագիրներուն ակնարկած ժամանակին մէջ կերպով մը նշանաւոր եղաւ։ Թէ՝ այս Յիսուսը Հրէաներուն ու քահանաներուն կողմէ վնասակար նկատուելուն համար խաչուեցաւ՝ ուրիշ իրողութիւն մ'է, որը հաստատուած է ո՛չ միայն Նոր Կտակարանի տուած վկայութեամբը, հապա նաև տարբեր պատմագրութեամբ ալ։ Նոր Կտակարանի մատենագիրները, (բացի Պօղոսէն ու Ղուկասէն), Նազովրեցի Յիսուսին հետ անձնական ծանօթութիւն ունէին ու Անոր աշակերտներն էին, որոնց գրութիւնները Անոր վարդապետութիւնները կ'արտայայտեն։

Ոևէ գրքի գոյութիւնը նշան մ'է՝ թէ անոր մատենագիրը մասնաւոր շարժառիթէ մը դրդուած է։ Ուրեմն կը հարցնենք՝ ի՞նչպիսի շարժառիթներ կրնային մղել որ այս մարդիկը Նազովրեցի Յիսուսի դատին յարէին։ Անիկա իբրև չարագործ մահուան դատապարտուեցաւ և խաչուեցաւ Հրէաներէն, որոնց ամենակրօնասէր մարդիկը Անոր մահուանը հաւանութիւն տուին, Անոր մահը պահանջեցին, որպէս

ապրելու անարժան մէկը։ Անոր դատին յարելով և վարդապետութիւնները տարածելով՝ այս մարդիկը կուրծք տուին նախատանաց, զրկանաց և դառն հալածանաց, իրենց կեանքերը վտանգելով ու երբեմն ալ նոյնիսկ նահատակուելով իբրև մարտիրոսներ։

Ընդունելով թէ Յիսուս Իր կենդանութեանը ատեն թէ՛ կենցաղավարութեամբ և թէ՛ վարդապետութիւններով նշանաւոր անձ մ'էր, միթէ ներելի չէ՞ հարցնել՝ թէ ի՞նչ շարժառիթ կրնար դրդել ոևէ մարդ որ անոր մահուընէ վերջն ալ կրկին Անոր դատին փարած մնար—նամանաւանդ այնպիսի մէկու մը դատին՝ որը ամենանախատալից մահուամբ մեռաւ։ Եթէ հաւատանք թէ այս մատենագիրները հընարեցին իրենց պատմութիւնը, թէ Յիսուսը իրենց երևակայական կամ գաղափարական հերոսն էր, ո՛րքան անհեթեթ պիտի ըլլար կարծել՝ թէ այսպիսի ողջամիտ մարդիկներ, յայտարարելէ վերջ թէ Նա Աստուծոյ որդին էր, թէ Նա գերբնականօրէն յղացուած էր, գերմարդկային զօրութիւններ ունէր որոնցմով բորոտներ բժշկեց, կոյր ծնածներուն տեսողութիւն շնորհեց, խուլերուն ականջները բացաւ և նոյնիսկ մեռելները յարթնցուց—վերջէն ալ պիտի ելլէին ու այսպիսի նկարագրի տէր մէկուն պատմութիւնը վերջացնէին ըսելով՝ թէ Իր թշնամիներուն փոքրիկ խումբը զինքը սպաննեց իբրև եղեռնագործ մը, երբ անդին Իր բոլոր բարեկամներն ու աշակերտները՝ որոնցմէ էին նաև մատենագիրները, Անոր ճգնաժամային պահուն լքեցին զԱյն ու փախան....։

Այն իրողութիւնը՝ թէ կարգ մը կէտերու մէջ աշխարհային պատմութիւնը այս մատենագիրներուն հետ չի համաձայնիր, պատճառ մը չէ որ մենք անոնց

արձանագրութիւնները իբրև ճշմարիտ չընդունինք։ Ամէն անոնք որոնք աննպաստ հետևութիւններու կը յանգին՝ պէտք է որ նշանակեն ու ապացուցանեն այն շարժառիթները որոնք կրնային դրդած ըլլալ այս մատենագիրները կեղծ պատմութիւններ շինելու։ Արդեօք ի՞նչ շարժառիթ կրնար գործի առաջնորդել զիրենք։ Մի՞թէ լրջօրէն կրնային հարստութեան, կամ համբաւի, կամ իշխանութեան և կամ երկրային ոևէ շնորհի յոյսը ունենալ։ Յիսուսի բարեկամաց աղքատութիւնը և Անոր Հրէաստանի մեծ կրօնականներէն ստացած անժողովրդականութիւնը կը վանեն այսպիսի խորհուրդները. մինչդեռ այն իրողութիւնները թէ Նա իբրև չարագործ մը, իբրև խռովարար մը մեռաւ, և Իրեն համար ոևէ համբաւ չշինեց՝ նախանձելի հռչակի մը կամ աշխարհային օրհնութեան մը ոևէ յոյս չներշնչեցին ամէն անոնց որոնք պիտի ուզէին Անոր վարդապետութիւնները վերահաստատել ջանալ։ Ընդհակառակը, եթէ Յիսուսը քարոզողները այսպիսի փառասիրական նպատակներ ունենային, մի՞թէ շուտով մէկ կողմ պիտի չքաշուէին, երբ հասկըցան որ իրենց ընթացքը նախատանաց, հալածանաց, բանտարկութեանց, ծեծի և նո՛յնիսկ մահուան կ'առաջնորդէր զիրենք։ Տրամաբանութիւնը պարզ կերպով կը ցուցնէ թէ մարդիկ՝ որոնք զոհեցին տուն, համբաւ, պատիւ ու կեանք, որոնք առօրեայ ցանկութեանց համար չապրեցան, թէ իրենց գլխաւոր նպատակն էր ընկեր արարածները բարձրացնել՝ բարոյականի ամենավեհ տիպարները ցուցադրելով, ո՛չ միայն շարժառիթ մը ունեցած ըլլալու էին, հապա նաև թէ շարժառիթնին մաքուր և նպատակնին գերազանցօրէն բարձր ըլլալու էին։ Դարձեալ, տրամաբանութիւնը կ'ըսէ՝ թէ բարի ու

մաքուր շարժառիթներէ մղուած այսօրինակ մարդերու վկայութիւնը, հասարակ մատենագիրներու գործերուն ընծայուած կարեւորութեան և ուշադրութեան տասնապատիկին արժանի է։ Այս մարդիկը մոլեռանդներ ալ չէին. առողջ ու տրամաբանող մտքերու տէր էին, ու միշտ կրցան պատճառ մը ներկայացնել իրենց ունեցած հաւատքին և յոյսին համար, ու իրենց արդարացի համոզումներուն շարունակ հաւատարիմ էին։

Ինչ որ ըսինք Նոր Կտակարանի մատենագիրներուն մասին, նոյնը կրնանք ըսել նաև Հին Կտակարանի այլևայլ մատենագիրներուն համար ալ. անոնք գլխաւորաբար, Տիրոջը հանդէպ ցոյց տուած հաւատարմութեան տեսակէտէ նշանաւոր մարդիկներ էին. և այս Հին Կտակարանի պատմագրութիւնը ինչպէս որ անկողմնակալօրէն կը գովէ անոնց հաւատարմութիւններն ու առաքինութիւնները, նոյնպէս ալ կը մատնանշէ ու կը պախարակէ անոնց տըկարութիւններն ու թերութիւնները։ Ասիկա պէտք է որ զարմացնէ ամէն անոնք, որ կը խորհին թէ Ս. Գիրքը շինծու պատմութիւն մ'է, և որը ծրագրուած է մարդը վախի ազդեցութեամբ կրօնական կազմի մը հանդէպ պատկառանքի մղելու։ Այն անկեղծութիւնը որ կը տեսնուի Ս. Գրոց մէջ՝ անոր ճշմարտութեան դրոշմ մը կուտայ։ Յաճախ մարդիկ երբ կ'ուզեն մէկը մեծ ներկայացնել, և նամանաւանդ կը ցանկան անոր գրութիւններէն ոմանք իբրև Աստուծմէ ներշնչուած ցուցնել, անտարակոյս, կը ջանան այդպիսի մէկու մը նկարագիրը որքան որ կարելի է անմեղադրելի ու ազնիւ պատկերացնել։ Այն իրողութիւնը թէ Ս. Գրոց մէջ այդպիսի ուղղութեան մը չէ հետևուած՝ զօրաւոր փաստ մ'է թէ ա-

նիկա նենգութեամբ չչինուեցաւ ուրիշները խարբելու նպատակաւ։

Ուրեմն տեսած ըլլալով թէ պատճառ ունինք Աստուծոյ կամքին ու Ծրագրին նկատմամբ յայտնութիւն մը ակնկալելու, և գտած ըլլալով թէ Ս. Գիրքը որ ինքն իր համար այդ յայտնութիւնն ըլլալ կը յաւակնի յայտարարէ, այնպիսի մարդերէ գրուեցաւ, որոնց չարժառիթներուն դէմ ո՛և է առարկութիւն չենք կրնար ներկայացնել, այլ ընդհակառակը գանոնք գնահատելու պատճառներ ունինք, ուրեմն քննենք հոգեշունչ ընդունուած գրութեանց նկարագիրը, տեսնելու համար թէ արդեօք անոնց ուսուցումները կը համապատասխանե՞ն այն նկարագրին, զոր արդարացիօրէն վերագրած ենք Աստուծոյ. և թէ մի՞թէ իրենց ճշմարտախօսութեան ապացոյցը իրենց մէջ կրնանք գտնել։

Նոր Կտակարանի առաջին հինգ գրքերը, և Հին Կտակարանէն ալ մի քանիները՝ այնպիսի իրողութեանց պատմագրութիւններ են որոնք ծանօթ են պատմագիրներուն, և որոնց ճշմարտութեան իբր երաշխաւոր կը կանգնի անոնց նկարագիրը։ Բոլորին ալ յայտնի է՝ թէ այսքան մօտէն ու կատարելապէս գիտցուած իրողութիւններու նկատմամբ պարզ ճշմարտութիւնները պատմելու համար մասնաւոր յայտնութեան մը պէտք չկայ։ Սակայն քանի որ Աստուած փափաքեցաւ մարդուն յայտնութիւն մը տալ, և այն իրողութիւնը՝ թէ այս անցնող պատահարներու պատմութիւնը կապ ունէր այդ յայտնութեան հետ, մեզի բաւական իրաւունք կու տայ հետևցնելու՝ թէ Աստուած պիտի վերհսկէր ու այնպէսմը կարգադրէր, որ այդ գործին համար ընտըրուած անկեղծ պատմագիրը կարևոր անցքերու հետ չփման գար։ Ս. Գրոց պատմական բաժիննե-

րուն արժանահաւատութիւնը դրեթէ ամբողջութեամբ կախում ունի անոր պատմագիրներուն նկարագիրներէն ու շարժառիթներէն։ Բարի մարդիկ չեն ստեր։ Մաքուր ակէ մը լեղի ջուր չի բղխիր։ Եւ այս գրութեանց միացեալ վկայութիւնը կը վանէ ոեւէ կասկած՝ թէ մի՛ գուցէ այդ պատմագիրները սուտ խօսած կամ սխալ գործած ըլլան բարի հետեւանքի մը համար։

Երբ կ՚ըսենք թէ Աստուածաշունչի կարգը գըրքերը՝ ինչպէս Թագաւորաց, Մնացորդաց, Դատաւորաց, ևն., իրենց ժամանակակից աչքառու անցքերու և անձերու ճշմարտալից ու խնամով պահպանուած պատմութիւններն են պարզապէս, անոնց վաւերականութենէն բան մը չի պակսեցներ։ Նոյնպէս, երբ կը մտաբերենք թէ Օրէնքին ու Մարգարէութեանց պէս Եբրայական Ս. Գրութիւններն ալ պատմագրութիւն կը պարունակեն, և թէ իրենց պատմութիւններն ու ազգաբանութիւնները ևլն., աւելի մանրամասն ու յստակ արձանագրութիւններ էին, Աբրահամի մասնաւոր շառաւիղէն խոստացեալ Մեսիայի գալուստը ակնկալելնուն համար, մենք արդարև, այլևս պատճառ մը կը տեսնենք արձանագրելնուն համար պատմական այն կարգ մը իրողութիւնները, որոնք այս քսաներորդ դարու լոյսով անփափկանկատ կը համարուին։

Օրինակ՝ Մովաբացւոց և Ամորհացւոց ազգերուն ծագման՝ և անոնց՝ Աբրահամի ու Իսրայէլի հետ ունեցած կապակցութեան յստակ արձանագրութեան մը պատճառն էր հաւանօրէն, որ պատմագիրը անհրաժեշտ նկատեց անոնց ծագման կատարեալ պատմութիւնը ներկայացնել։ (Ծննդոց ԺԹ. 36—38)։ Նոյնպէս Յուդայի զաւակներուն խիստ մանրամասն մէկ արձանագրութիւնը գրուած է, որուն սերունդէն էր

Դաւիթ Թագաւորը, որուն միջոցաւ Մարիամի՝ Յիսուսի մօրը, նոյնպէս ալ իր ամուսնոյն՝ Յովսէփին ազգաբանութիւնը հաստատուած է դէպի ետ՝ մինչև Աբրահամ։ (Ղուկ. Գ. 23, 31, 33, 34։ Մատթ. Ա. 2—16)։ Անտարակոյս, մեծ կարևորութիւն մ'ունէր Յուդայի ճիւղահամարին անթերիօրէն արձանագրութիւնը, ինչու որ այդ ցեղէն պիտի գար Իսրայէլի խոստացեալ Թագաւորն ու Մեսիան. և ահիկա է պատճառը, որ ուրիշ անցքերու մանրամասնութիւնը չէ տրուած։—Ծննդ. ԽԹ. 10։ ԼԸ—։

Թերևս ասոր նման կամ ասկէ տարբեր շարժառիթներ ունէին Ս. Գրոց մէջ արձանագրուած ուրիշ պատմական իրողութիւններն ալ, որոնց օգտակարութիւնը թերևս ի վերջոյ տեսնենք, որոնք եթէ պատմագրութենէ զատ պարզապէս բարոյականութեան վերաբերեալ երկասիրութիւններ ըլլային, կրնային առանց կորուստ մը համարուելու և վնաս մը տալու զանց առնուիլ. Թէև ո՛չ ոք իրաւացիօրէն կրնայ ըսել թէ Ս. Գիրքը ո՛և է տեղ անբարոյականութիւն կը քաջալերէ։ Լաւ է նոյնպէս յիշել՝ թէ այս միևնոյն իրողութիւնները կարելի է ո՛և է լեզուով աւելի կամ նուազ փափկանկատութեամբ արտայայտել. և թէև Ս. Գրոց թարգմանիչները իրաւունք ունէին իրենց խղճմտութենէն դրդուած, արձանագրութենէն ո՛և է մաս չկտրել, բայց անոնք կ'ապրէին այնպիսի ժամանակաշրջանի մը մէջ, ուր մեզի չափ բծախնդիր չէին նուրբ արտայայտութեանց ընտրութեան մէջ։ Անշուշտ, ամենադժուարահաճներն իսկ այս մասին ո՛և է առարկութիւն մը չեն կրնար ներկայացնել Նոր Կտակարանի ո՛և է արտայայտութեանց նկատմամբ, ուր ցուցադրուած բարոյականի անբծութիւնն ու վսեմութիւնը, կը դերազանցէ աշխարհիկ ամենամեծ բարոյագէտին չափանիշը։

## ՄՈՎՍԷՍԻ ԳՐՔԵՐԸ ԵՒ ԱՆՈՆՑ ՄԷՋ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԱԾ ՕՐԷՆՔԸ

*Ս. Գրոց առաջին հինգ գրքերը, իբրև Մովսէսի Հինգ Գրքերը ճանչցուած են, թէև անոնց մէջ անոր անունը չյիշուիր իբրև հեղինակ։ Այն գաղափարը, թէ ասոնք Մովսէսին և կամ իր հսկողութեան ներքև գրուեցան, տրամաբանական եզրակացութիւն մ'է. անոր մահուան ու թաղման տեղեկութիւնը պատշաճօրէն աւելցուած ըլլալով իր քարտուղարին կողմէ։ Այդ գրքերուն Մովսէսի կողմանէ գրուած ըլլալուն մասին հաստատ խօսք մը տրուած չըլլալը ապացոյց մը չէ, ժխտելու վերոյիշեալ գաղափարը. ինչու որ, եթէ զանոնք ուրիշ մը գրած ըլլար խաբելու և նենգելու նպատակաւ, անիկա իր խաբէութիւնը հաւատալի ընելու համար, անտարակոյս, պիտի յայտարարէր թէ այդ գրքերը Իսրայէլի մեծ առաջնորդէն ու քաղաքագէտէն գրուեցան։— Տե՛ս Երկ. Օր. ԼԱ. 9—27։ Յովհ. Ա. 45։ Ե. 46,47։*

*Բան մը՝ որուն մասին վստահ ենք՝ այն է՝ թէ Մովսէս Եբրայեցւոց ազգը Եգիպտոսէն դուրս հանեց, ու իբրև ազգ կազմակերպեց զանոնք, գրքին մէջ տրուած օրէնքներուն ներքև. և Եբրայեցւոց ազգը երեք հազարէ աւելի տարիներէ ի վեր, միաբանօրէն, յայտարարած ու ընդունած է այս գրքերը իբրև նուէր Մովսէսէն, և ա՛յնքան խնամքով պահած է զանոնք որ, թոյլ չէ տուած որ յոդ մը կամ նշանախեց մը անգամ փոխուի—այսպէս, մեզի վստահութիւն ներշնչելով անոնց համարներուն անխարդախութեանը մասին։*

*Մովսէսի այս գրութիւնները ամենաարժանահաւատ պատմութիւնը կը ներկայացնեն այն երկար շրջանին, որը անոնց մէջ ուշադրութեան առնուած*

*է։ Չինական պատմութիւնը այնպէս կը ձեւացնէ թէ ստեղծագործութենէն կ'սկսի․ և կը պատմէ թէ Աստուած նաւակով մը ջուրին վրայ գնաց, ու հողակոյտ մը առնելով ջուրին մէջ նետեց, և այդ հողակոյտը այս երկրագունդին վերածուեցաւ ևն․։ Բայց ամբողջ պատմութիւնը առողջ տրամաբանութեան ա՛յնքան կը հակասէ, որ նո՛յնիսկ խելք գործածող ամենապարզ մանուկը պիտի չկրնայ խաբուիլ։ Իսկ Ծննդոցի տուած տեղեկութիւնը կ'սկսի այն արդարացի համոզումովը՝ թէ Աստուած մը, Արարիչ մը, գիտակից Նախապատճառ մը արդէն գոյութիւն ունէր, և չ'ըսեր թէ Աստուած սկիզբ մը ունէր, հապա կը նկարագրէ Անոր գործը իր սկիզբովն ու սխրագէմաթիք, կանոնաւոր յառաջացումովը— «Սկիզբէն Աստուած երկինքն ու երկիրը ստեղծեց»։*

*Ցետոյ, մէկդի թողելով երկրիս ծագումը, առանց անոր մանրամասնութեանց մէջ մտնելու կամ զայն մեկնաբանելու, երկրիս՝ մարդուն համար պատրաստուելու վեց օրերուն (Դարաշրջաններուն) պատմութեան կ'սկսի։ Այդ տեղեկատուութիւնը ճապէս հաստատուած է չորս հազար տարիներու գիտական աճող լոյսովը․ որով շատ աւելի բանաւոր է ընդունիլ այն յայտարարութիւնը՝ թէ անոր հեղինակը՝ Մովսէս, ներշնչուած էր, քան թէ հաւատալ՝ թէ մէկ մարդուն մտաւորական կարողութիւնը կը գերազանցէր երեք հազար տարուայ ընթացքին երևան եկած ամբողջ ցեղին ուշիմութիւնն ու խուզարկութիւնները, որոնք օգտուած են ներկայ գործիքներէն ու միլիոնաւոր հարստութենէն։*

*Նոյնպէս ուշադրութեան առէք օրինաց այն սխագէմը, որ հաստատուած է այս գրութեանց մէջ․ անոնք անտարակոյս, աննման էին թէ՛ իրենց օրուանը մէջ և թէ՛ անկէ ի վեր մինչև ներկայ քսաններորդ*

դարը. իսկ այս դարու օրէնքները, Մովսիսական Օրէնքի սկզբունքներուն վրայ հիմնուած են, և գլխաւորաբար այնպիսի անձնաւորութիւններէ յօրինուած են, որոնք ընդունած են Մովսիսական Օրէնքին Աստուածային ծագում ունենալը։

Տասնաբանեայ Պատուիրանքը ամբողջ Օրէնքին հաստատութիւնն է։ Այս Տասնաբանեայ պատուիրանքները, պաշտամունքի և բարոյականի մ'ճշգրիտ օրինագիրք մը կը պատկերացնեն, որ ամէն ուսումնասիրողի ուշադրութիւնը պէտք է դրաւեն, որպէս երևելի բաներ. ու եթէ անոնք անցեալին մէջ անծանօթ ըլլային, և այսօր գտնուէին, Յունական, Հռովմէական և կամ Բաբելոնական (ազգեր՝ որոնք կանգնած ու ինկած են դարձեալ այս օրէնքներուն տրուելէն երկար դարեր վերջը) աւերակներուն մէջ, եթէ ո՛չ դերբնական՝ գոնէ սքանչելի պիտի նկատուէին։ Անոնց՝ և անոնց յաջորդութիւններուն նկատմամբ գոյութիւն ունեցած ծանօթութիւնն ու ընտանիութիւնը, մասամբ անտարբերութեան ծընունդ տուած են, որով անոնց իրական մեծութիւնը քիչեր միայն կը նշմարեն։ Իրաւ է թէ այս պատուիրանքները Քրիստոսի մասին չեն քարոզեր, բայց անոնք ո՛չ թէ Քրիստոնեաներու տրուեցան, հապա Եբրայեցիներու. և նոյնպէս՝ անոնք չտրուեցան Փրկանքին նկատմամբ Հաւատք քարոզելու, այլ մարդոց ճանչցնելու իրենց անկեալ վիճակը և Փըրկանքի մը պէտքը։ Եւ այս պատուիրանքներուն հոգին մեծապէս խտացուց Քրիստոնէութեան Հոյակապ Հիմնադիրը հետևեալ տասցուածքով, «Քու Տէր Աստուածդ սիրես քու բոլոր սրտէդ, և քու բոլոր անձէդ, ու քու բոլոր մաքէդ և քու բոլոր զօրութենէդ», և «Քու ընկերդ սիրես քու անձիդ պէս»։— Մարկ. ԺԲ. 30, 31։

*Մովսէսի ձեռքով հաստատուած կառավարութիւնը մեծապէս կը տարբերէր թէ՛ անցեալին մէջ և թէ՛ ներկայիս կազմուած բոլոր կառավարութիւններէն, անոր համար որ անիկա Արարչին կառավարութիւնը կոչուեցաւ, և ժողովուրդը Անոր պատասխանատու էր. նոյնպէս յայտնուած է մեզ թէ՝ Եբրայեցւոց թէ՛ քաղաքական և թէ՛ կրօնական օրէնքներն ու հաստատութիւնները Աստուածային ծագում ունէին, և որոնք, ինչպէս որ ներկայիս քննելով պիտի տեսնենք՝ մարդկային առողջ տրամաբանութեան ընդունած Աստուածային նկարագրին հետ կատարելապէս հաշտ ու համաձայն էին։ Բանակին մէջտեղը հաստատուած Տաղաւարին «Սրբութիւն Սրբութեանց»ի բաժնին մէջ, Եհովային՝ անոնց թագաւորը ըլլալուն նշան մը կար, ուրկէ գերբնական միջոցներով հրահանգներ կ՚ստանային իրենց ազգային գործերուն պատշաճ վարչութեանը համար։ Քահանաներու դաս մը հաստատուեցաւ, որը տաղաւարի գործերուն ամբողջ պատասխանատուութիւնը ստանձնեց, և միայն անոր միջոցաւ կրնային Աստուծոյ մօտենալ ու Անոր հետ հաղորդակցիլ։ Այս պահուս թերևս ոմանց մտքին մէջ խորհուրդը ծագի յանկարծ. «Ա՛յ, անոնց կազմակերպուելուն նպատակը հիմակ է որ կը տեսնենք. ինչպէս ուրիշ ազգերու՝ նոյնպէս ալ Եբրայեցւոց քահանաները, ժողովուրդին վրայ իշխանութիւն կը բանեցնէին անոնց դիւրահաւանութենէն օգտուելով, ու կը հրահրէին անոնց վախը իրենց անձնական փառքին ու պատուին համար»։ Բայց առաջ չանցնի՛նք, բարեկա՛մ, անմիջապէս ենթադրութեանց մէջ չիյնանք։ Երբ այս տեսակ լաւ պատեհութիւն մը ունինք այս խնդիրը իր իրողութիւններովը քննելու, խելացի գործ մը ըրած պիտի չըլլանք եզրակացութենէ եզրակացու-*

թիւն ոստոստելու, առանց նկատելու եղելութիւնները։ Պապանձեցնող փաստերը կը ժխտեն այդպիսի կարծիքները։ Քահանաներու առանձնաշնորհումներն ու իրաւունքները սահմանափակ էին. քաղաքական ո՛և է կերպ իշխանութիւն չտրուեցաւ անոնց. և իրենց պաշտօնին մէջ բոլորովին զուրկ էին ժողովուրդին իրաւունքներն ու երկիւղածութիւնները խաբեպատիր միջոցներով իրենց անձնական շահերուն ծառայեցնելու պատեհութենէն։

Մովսէս՝ որ Իսրայէլացիները Եգիպտական գերութենէն ազատելու համար Աստուծմէ իբրև ներկայացուցիչ գործածուեցաւ, պարագաներու ստիպողականութիւնը կառավարութեան սանձը անոր ձեռքը տուաւ, և այդ հեզ անձնաւորութիւնը զօրաւոր ու հեղինակաւոր ինքնակալի մը վերածեց, թէև նա, իր հեզ բնաւորութեամբը ժողովուրդին յոգնաջան ծառան էր, և որուն բուն իսկ կեանքը կ՚սպառէր իր դիրքին պահանջած հոգերուն ծանր բեռին տակ։ Այս պարագային մէջ քաղաքական կառավարութիւն մը հաստատուեցաւ, որը իրապէս ռամկապետութիւն էր։ Թող սխալ չհասկցուինք. եթէ անհաւատներու ակնոցովը դիտենք՝ Իսրայէլի կառավարութիւնը ռամկապետութիւն մ՚էր. բայց եթէ անոր իսկական յայտարարութիւնները նկատի առնենք՝ անիկա աստուածապետութիւն մ՚էր, այսինքն՝ Աստուածային Կառավարութիւն մը. ինչու որ Մովսէսի միջոցաւ Աստուծոյ տուած օրէնքները թոյլ չտուին որ փոփոխութիւններ մտցուին. պէտք չէր որ անոնք օրինագրքին վրայ ո՛և է բան աւելցնէին կամ անկէ ո՛և է բան դուրս ձգէին։ Այս տեսակէտէ՝ Իսրայէլի կառավարութիւնը կը տարբերէր ուրիշ ո՛և է քաղաքական կառավարութենէ, որոնք գոյութիւն ունէին անկէ առաջ կամ վերջը։

«Եւ Տէրը ըսաւ Մովսէսին. «Ինծի Իսրայէլին երեցներէն եօթանասուն հոգի ժողվէ, որոնք որ դուն գիտես թէ ժողովուրդին երէցներն և գլուխներն են. և զանոնք ժողովքի խորանը բեր, ու հոն քեզի հետ կայնին, ու Ես հոն պիտի իջնեմ և խօսիմ քեզի հետ, ու քու վրադ եղած հոգիէն պիտի առնեմ ու անոնց վրայ պիտի դնեմ, որ ժողովուրդին բեռը վերցընեն քեզի հետ, ու դուն մինակ չվերցնես»: (Թուոց ԺԱ. 16—17: Տե՛ս նաև 24—30 համարները իբր պատկերներ ճշմարիտ ու անկեղծ քաղաքականութեան մը և հեզութեան մը): Մովսէս՝ կրկնելով վերոյիշեալ իրողութիւնը, կ'ըսէ. «Ուստի ձեր ցեղերուն երևելիները՝ իմաստուն ու (ազդեցութեամբ) անուանի մարդիկ առի, և զանոնք ձեր վրայ իշխաններ կարգեցի, այսինքն ձեր ցեղերուն մէջ հազարապետներ հարիւրապետներ, յիսնապետներ, տասնապետներ և ոստիկաններ»:—Երկ. Օր. Ա. 15: Ելից ԺԸ. 13—26:

Այսպէս՝ կը տեսնենք թէ այս նշանաւոր օրէնսդրին նկարագրին ու ցանկութեանց բոլորովին հակառակ բան մ'էր, ջանալ ժողովուրդին կառավարութիւնը իր մերձակայ ազգականներուն, քահանայական ցեղին յատկացնել, իր անձնական իշխանութիւնը յաւերժացնել կամ աճեցնել, և անոնց կրօնական հեղինակութեամբը ժողովուրդին իրաւունքներն ու ազատութիւնները կաշկանդել. ընդհակառակը, անիկա ժողովուրդին մէջ ա՛յնպիսի կառավարութիւն մը մտցուց՝ որը ազատութեան ոգին մշակելու բնոյթը ունէր: Ուրիշ ո՛չ մէկ ազգի կամ վեհապետի պատմութիւնը կրնայ ասոր հետ հաւասարիլ, ուր իշխողը միշտ ջանացած է իր անձնական մեծութեանը ու բարձրագոյն ազդեցութեանը: Նո՛յնիսկ այն պարագաներուն մէջ ուր անոնք հանրապետութեան հաստատմանը նպաստած են, վերջէն իրո-

*ղութիւնները ապացուցած են թէ անոնք քաղաքականութենէ մղուած էին, ժողովուրդին համակրանքը շահելու և այսպէս իրենց անձնական իշխանութիւնը երկարելու։ Քաղաքականութեամբ շարժող և ժողովուրդը միշտ խաբելու ջանացող ո՛և է փառասէր մարդ, եթէ Մովսէսի դիրքն ու դիւրութիւնները ունենար, պիտի աշխատէր իր ու իր ընտանեաց ձեռքին մէջ կեդրոնացնել մեծագոյն զօրութիւն մը. և նամանաւանդ աւելի դիւրին գործ մը պիտի ըլլար, քանի որ կրօնական իշխանութիւնը նոյն ցեղին կը պատկանէր, նոյնպէս և այն ըմբռնումը՝ թէ այս ազգը Աստուծմէ պիտի կառավարուէր Տաղաւարին միջոցաւ։ Մենք չենք կրնար երևակայել՝ թէ մարդ մը որ ընդունակ էր այսպիսի օրէնքներ կազմելու ու այսպիսի ժողովուրդ մը կառավարելու, ա՛յնքան բթամիտ մէկը պիտի ըլլար, որ պիտի չտեսնէր իր ընթացքին ինչ ուղղութիւն առնելը։ Կառավարութիւնը ա՛յնքան կատարեալ կերպով ժողովուրդին ձեռքը տրուած էր, որ թէև յորդոր տրուած էր թէ ծանրագոյն դատերը, այնպիսիններ՝ զոր կառավարիչները անկարող էին վճռել՝ Մովսէսին բերուին, սակայն ի՛նք (ժողովուրդը) պիտի վճռէր՝ թէ ի՛նչպիսի դատեր Մովսէսի առջև պիտի բերուէին— «Ձեզի դժուար երևցած դատը ինծի ներկայացուցէք որ զայն մտիկ ընեմ»։—Երկ. Օր. Ա. 17։*

*Այս հաշուով, Իսրայէլը հանրապետական էր, որուն պաշտօնեաները Աստուածային յանձնարարութեանց ներքև գործեցին։ Շփոթեցուցիչ պարագայ մ'է ամէն անոնց համար, որոնք տգիտօրէն կը յայտարարեն թէ Ս. Գիրքը կը պաշտպանէ հաստատուած կայսրութիւնները տիրելու ժողովուրդին վրայ, փոխան «ժողովուրդէն ու ժողովուրդով կառավարութեան մը», երբ կը տեսնուի որ քաղաքա-*

կան կառավարութեան այս հանրապետական ձեւը չորս հարիւր տարիներէ աւելի տեւեց։ Եւ ասկէ յետոյ «Երէցներուն» խնդրանքովն էր որ թագաւորութեան վերածուեցաւ, առանց Տիրոջը հաւանութեանը, որ այն ատենուայ իբրեւ անպաշտօն նախագահ գործող Սամուէլին ըսաւ. «Ժողովուրդին խօսքը ու անոնց քեզի ամէն ըսածը մտիկ ըրէ. քանզի անոնք քեզ չեն մերժեր, այլ զի՛ս կը մերժեն, որ անոնց վրայ չթագաւորեմ»։ Աստուծոյ թելադրութեամբը, Սամուէլ բացատրեց ժողովուրդին՝ թէ ի՛նչպէս այսպիսի փոփոխութեամբ մը իրենց իրաւունքներն ու ազատութիւնները պիտի անտեսուէին ու ծառաներու պիտի վերածուէին. սակայն անոնք իրենց շրջակայ տարբեր ազգաց ժողովրդային գաղափարովը յափշտակուած էին։ (Ա. Թագ. Ը. 6—22)։ Երբ նկատի կ՚առնենք թագաւոր մը ունենալու համար իրենց յայտնած փափաքը, մեզմէ ո՞ր մէկը այն զօրաւոր համոզման պիտի չգայ՝ թէ Մովսէս եթէ ուզէր՝ կրնար առանց դժուարութեան ինքզինքը մեծ կայսրութեան մը գլուխը ամրօրէն հաստատել։

Թէեւ Իսրայէլը, որպէս ամբողջութիւն՝ մէկ ազգ մ՚էր, բայց Յակոբի մահուընէ յետոյ, ցեղային բաժանումը միշտ ճանչցուած էր։ Իւրաքանչիւր ընտանիք կամ ցեղ, ընդհանուր հաւանութեամբ, կարգ մը անդամներ իբր ներկայացուցիչներ կամ ցեղապետներ ընտրեց ու ճանչցաւ։ Այս սովորութիւնը շարունակուեցաւ նո՛յնիսկ Եգիպտոս անցուցած գերութեան երկար շրջանին մէջ։ Ասոնք երէցներ կամ ցեղապետներ կոչուեցան, և ասոնց էր որ Մովսէս աւանդեց քաղաքային կառավարութեան պատիւն ու զօրութիւնը. մինչդեռ՝ եթէ նա փափաքէր զօրութիւնը իր ու իր ընտանիքին ձեռաց մէջ կեդրոնացնել, զօրութեամբ ու պաշտօնով պատուելուն

մէջ, այդ ցեղապետները ամենայետինները պիտի ըլլային։

Իբրև Աստուծմէ սահմանուած քաղաքական իշխաններ, իրենց տրուած հրահանգները պարզութեան ու մաքրութեան օրինակներ են։ Այս դատաւորներուն ներկայութեանը Մովսէս ժողովուրդին կը յայտարարէր, «Ան ատենը ձեր դատաւորներուն պատուիրեցի ըսելով, Ձեր եղբայրներուն դատերը մտիկ ըրէք, ու ամէն մարդուն դատը՝ թէ՛ իր եղբօրը հետ ըլլայ և թէ՛ օտարականին (դըրսեցիին), արդարութեամբ դատեցէք. դատաստանի մէջ աչառութիւն չընէք, պզտիկը մեծին պէս մտիկ ըրէք, բնաւ մարդու մը երեսէն չքաշուիք, քանզի դատաստանը Աստուծոյ է. ու ձեզի դժուար երևցած դատը ինծի ներկայացուցէք որ զայն մտիկ ընեմ։ (Երկ. Օր. Ա. 16,17)։ Մովսէսին մահուընէն յետոյ, այդպիսի դժուար դատերը Քահանայապետին միջոցաւ ուղղակի Աստուծոյ բերուեցան՝ Ուրիմ ու Թումիմով Այո՛ կամ Ո՛չ պատասխան տանալով։

Այս **իրողութիւնները** մեր աչքին առջև ունենալով, ի՞նչպէս պիտի նայինք այն գաղափարին վրայ, որ կը թելադրէ թէ այդ գրքերը նենգամիտ քահանաներէ գրուեցան, իրենց անձնական ազդեցութիւնն ու զօրութիւնը ժողովուրդին վրայ տարածելու համար։ Մի՞թէ այդպիսի մարդեր այս տեսակ նպատակի մը համար ա՛յնպիսի արձանագրութիւններ պիտի հնարէին, որոնք իրենց հետապնդած նըպատակը փճացնելու բնոյթը ունենային—արձանագրութիւններ՝ որոնք վճռականօրէն կը հաստատեն թէ Իսրայէլի մեծ Գլխաւորը և իրենց ցեղէն մէկը, Աստուծոյ հրամանաւ, քահանայական դասը քաղաքական իշխանութենէ բոլորովին անջատեց, զայն ժողովուրդին ձեռքը յանձնելով։ Մի՞թէ կայ

մէկը որ տրամաբանական պիտի գտնէ վերոյիշեալ եզրակացութիւնը, որը քահանաներուն նենգամիտ ցանկութիւններ կը վերագրէ։

Դարձեալ՝ կարժէ նկատի առնել, թէ այս քսաներորդ դարու ամենայառաջացած քաղաքակրթութեան օրէնքներն իսկ ա՛յնքան ալ բծախնդիր չեն, որպէսզի քաղաքական օրէնքին առջև, հարուստն ու աղքատը, պատասխանատուութեան համհաւասար աստիճանի վրայ կանգնին։ Այս կէտին մէջ Մովսէսի Օրէնքը ո՛և է աչառութիւն կամ խտրութիւն չէր ճանչնար։ Իսկ ժողովուրդէն ոմանց յետին թշուառութեան դիմելու՝ և ոմանց ալ ծայրայեղօրէն հարուստ ու զօրաւոր ըլլալու վտանգները արգիլելը ա՛յնպիսի պարագաներ ու խնդիրներ են, որ միւս ազգային օրէնքներէն և ո՛չ մէկը այսքան զգուշութեամբ կը պաշտպանէ այս կէտը։ Մովսէսի Օրէնքը Վերահաստատութիւն մը կը հայթայթէր ամէն յիսուներորդ տարին—որը Հրէից Յոբելեան տարին էր։ Այս օրէնքը չէր թողուր որ ստացուածքը բացարձակապէս ուրիշներուն ձեռքը անցնի. որով պատուար մը եղաւ հարստութեան փոքրամասնութեան քով դիզուելուն դէմ։ (Ղևտ. ԻԵ. 9,13—23,27—30)։ Արդարև, անոնք պատուիրուած էին զիրար իբրև եղբայրներ նկատել ու ըստ այնմ գործել. իրարու օգնել առանց փոխարինութեան, և մէկզմէկէ վաշխ չառնել։—Տե՛ս Ելից ԻԲ. 25։ Ղևտ. ԻԵ. 36, 37։ Թուոց ԻԶ. 52—56։

Բոլոր օրէնքները ժողովուրդին ծանուցուած էին. այսպէս արգիլելով նենգաւոր մարդոց ճարպիկօրէն ժողովուրդին իրաւունքները բռնաբարելը։ Օրէնքները այնպէս մը պարզուած էին որ, բոլոր ցանկացողները կրնային ընդօրինակել զանոնք. և որպէսզի ամենախեղճերն ու ամենաանուսները ա-

*նոնց մասին անտեղեակ չմնային, քահանաներուն պարտականութիւն տրուած էր որ զանոնք կարդան ժողովուրդին, ամէն եօթներորդ տարուայ տաղաւարահարաց տօնին ժամանակ :(Երկ. Օր. ԼԱ. 10—13)։ Մի՞թէ բանականութեան հետ համաձայն է՝ երբ կը խորհուի թէ այս օրէնքներն ու կարգադրութիւնները չարամիտ մարդերէ գծուեցան, և կամ այնպիսիներէ՝ որոնք ժողովուրդին ազատութեանց ու երջանկութեանց դէմ դաւեր կը նիւթէին։ Այսպիսի կարծիք մը բանաւոր պիտի չըլլար։*

*Օտարականներու և թշնամիներու իրաւունքներուն ու շահերուն նկատմամբ ընծայուած ուշադրութեամբը, Մովսիսական Օրէնքը իր ժամանակներէն երեսուն և երկու դարեր կանուխ էր—եթէ սակայն այսօրուայ ամենաքաղաքակիրթ ազգաց օրէնքները իրենց անբծութեամբն ու մարդասիրութեամբը Մովսէսականին հաւասարէին։ Մենք կը կարդանք·*

*«Թէ՛ օտարականին (դրսեցիին) և թէ՛ երկրացիին համար ձեր օրէնքը մէկ պիտի ըլլայ· ինչու որ Ես եմ ձեր Տէր Աստուածը»։—Ղեւտ. ԻԴ. 22։ Ելից ԺԲ. 49։*

*«Ու թէ որ օտարական մը ձեր երկրին մէջ ձեր քովը պանդխտելու ըլլայ, չնեղէ՛ք զանիկա· ձեր քովը պանդխտացող օտարականը ձեր երկրացիին պէս ըլլայ ձեզի, և քու անձիդ պէս սիրես զանիկա, ինչու որ դուք ալ Եգիպտոսի երկրին մէջ օտարական էիք»։ Ղեւտ. ԺԹ. 33,34։*

*«Թէ որ քու* թշնամւոյդ *մոլորած եզին կամ իշուն հանդիպելու ըլլաս, անշուշտ իրեն դարձնես զանիկա· Թէ որ* քեզ ատողին *էշը բեռի տակ ինկած տեսնես, պիտի հրաժարի՞ս գործդ թողելէն ու անոր օգնելէն· անշուշտ պիտի թողուս զայն, անոր միա-*

նալու» (օգնելու համար)։—Ելից ԻԳ. 4, 5. (Տե՛ս Անգլ. Ս. Գրքի լուսանցքի թարգմանութիւնը)։

Նոյնիսկ անբան անասունները մոռցուած չէին. ինչպէս մարդկային էակներու, նոյնպէս ալ անոնց դէմ անգթութիւնը խստիւ արգիլուած էր։ Կալի մէջ աշխատող եզին դունչը պէտք չէր որ կապուէր, այն բարի պատճառաւը թէ՝ բանուորը արժանի է իր կերակուրին։ Պէտք չէր որ եզ մը ու էշ մը միատեղ երկլծէր հերկէին. որովհետեւ իրենց ուժին ու քալուածքին մէջ անհաւասար ըլլալով՝ անգթութիւն մը պիտի ըլլար միասին լծել զանոնք։ Անոնց հանգստին համար անգամ խնամք տարուած էր։—Երկ. Օր. ԻԵ. 4։ ԻԲ. 10։ Ել. ԻԳ. 12։

Թերեւս ոմանց կողմանէ քահանայութիւնը շահախնդրական հաստատութիւն մը կոչուի, ինչու որ Ղեւտացւոց ցեղը միւս եղբայր ցեղերուն անհատական արտադրութեանց տարեկան տասանորդովը կ՚ապրէր։ Իրողութեան այս կերպ արտայայտութիւնը անպատշաճ է. բան մը որ սակայն մեծ ծաւալ գտած է սկեպտիկներուն մէջ, որոնք այս կերպով՝ թերեւս տգիտօրէն՝ սխալ կը ներկայացնեն այս սխրալի կազմակերպուելուն մէջ Աստուծոյ ունեցած դերին ամենաաչքառու ապացոյցներէն մէկը՝ թէ անիկա շահախնդիր ու նենգամիտ քահանայութեան մը գործը չէր։ Արդարեւ, անիկա շատ անգամներ սխալ կը ներկայացուի ներկայ քահանայական կազմէն, որը Հրէականը իբր նախնթաց մը համարելով՝ նմանօրինակ դրութիւն մը կը պահանջէ, առանց յիշելու իրաց այն պարագաները, և վճարումի այն մեթոտները, որոնց վրայ հիմնուած էր անիկա։

Անիկա իսկապէս, ամենապարզ արդարութեան վրայ հիմնուած էր։ Երբ Իսրայէլը Քանանու երկրին տիրացաւ, անտարակոյս, Ղեւտացիները միւս ցեղե-

րուն չափ իրաւունք ունէին երկրէն բաժին մը ստանալու. բայց Աստուծոյ բացորոշ հրամանովը անոնք ո՛չ մէկ բաժին ստացան երկրէն՝ բացի բնակութեան համար մի քանի քաղաքներէ կամ գիւղերէ. և ցրուած էին այլևայլ ցեղերուն մէջ, անոնց կրօնական պէտքերուն ծառայելու համար։ Երկրին բաժնուելէն առաջ այդ արգիլումը հինգ անգամներ կրկնուեցաւ։ Երկրին տեղ ուրիշ համարժէք բան մը պէտք էր տրուէր անոնց. որով տասանորդը օրինաւոր ու արդար կարգադրութիւն մ'էր։ Եւ թէև, ինչպէս որ տեսանք, տասանորդը արդար պարտք մ'էր, բայց ստիպողական չէր որպէս տուրք, հապա պիտի վճարուէր իբրև կամաւոր նուիրատուութիւն մը։ Այդ բաժնետուութիւնը կատարելու համար սպառնալիքի ներքև չէին. ամէն ինչ իրենց խղճին թողուած էր։ Այս խնդրոյն շուրջ ժողովուրդին տրուած միակ յորդորները հետևեալներն են.—

«Զգո՛յշ կեցիր, չըլլայ որ Ղևտացին անտես ընես, քանի որ ողջ ես քու երկրիդ վրայ»։ (Երկ. Օր. ԺԲ. 19)։ «Ու քու դռներդ եղող Ղևտացին ալ զանց չընես. քանզի անիկա քեզի հետ բաժին ու ժառանգութիւն չունի» (երկրին մէջ) ։Երկ. Օր. ԺԴ. 27։

Մենք կը հարցնենք, մի՞թէ ուղիղ պիտի ըլլար խորհիլ՝ թէ այս կարգ ու սարքերը այս կերպով պիտի կրնային կարգադրուիլ շահախնդիր ու փառասէր քահանաներէ—կարգադրութիւն մը՝ որ իրենք զիրենք ժառանգութենէ զրկելու, և ապրուստի կողմանէ իրենց եղբայրներէն կախում ունենալու հարկին տակ կը դնէր. միթէ ողջամտութիւնը ասոր հակառակը չի՞ սորվեցներ մեզ։

Ասոր հետ կը համաձայնի նաև այն իրողութիւնը՝ թէ քահանայութեան մեծարանքին համար մասնաւոր ո՛և է կարգադրութիւն մը եղած չէր. բան մը, զոր

ո՛չ մէկ կերպով կարելի է բացատրել, բայց եթէ ընդունիլ՝ թէ այս օրէնքներուն հեղինակը Աստուած էր։ Խաբեբայ մարդիկ ուրիշ ո՛չ մէկ բանի մէջ այնքան հոգածու պիտի գտնուէին, որքան իրենց անձին համար մեծարանք ու յարգանք, և անսաստողներուն համար ալ ամենախիստ պատիժներ ու պատուհասներ հայթայթելու։ Բայց այս տեսակ ոչինչ կը տեսնենք. ո՛չ մասնաւոր պատիւ կամ յարգանք պատուիրուած էր անոնց համար, և ո՛չ ալ բռնութենէ ազատ մնալու միջոց մը ապահովուած։ Իրենց միակ պաշտպանութիւնը ընդհանուրին պատկանող Օրէնքն էր, որը դատակարգերու մէջ խտրութիւն չէր ճանչնար, և ո՛չ ալ աչառութիւն՝ ո՛և է անձի համար։ Ասիկա աւելի չեշտակիօրէն մեր աչքին կը զարնէ, երբ նկատի կ՚առնենք որ ծառաներու, օտարականներու և տարիքոտներու հանդէպ վարուելակերպերը օրէնսդրութեան մէջ մասնաւոր տեղ մը կը գրաւէին։ Օրինակի համար՝ մենք կը կարդանք. «Օտարականը մի՛ չարչարեր ու զանիկա մի՛ նեղեր...։ Որբևայրին ու որբը բնաւ մի՛ չարչարէք. թէ որ զանոնք չարչարէք ինչևիցէ կերպով մը ու անոնք Ինծի (Ձեր Աստուծոյն) բողոքելու ըլլան, անշուշտ պիտի լսեմ անոնց աղաղակը, և Իմ բարկութիւնս պիտի բորբոքի և ձեր տղաքները որբ պիտի ըլլան»։ (Ելից ԻԲ. 21—24։ ԻԳ. 9։ Ղևտ. ԺԹ. 33, 34)։ «Աղքատ ու կարօտ վարձկանին զրկանք չընես, թէ՛ քու եղբայրներէդ և թէ՛ քու երկրիդ մէջ քու քաղաքներդ բնակող օտարականներէն ըլլայ։ Նոյն օրը արևը չմտած անոր վարձքը հատուցանես, քանզի անիկա աղքատ է ու անոր խելքն ու միտքը անոր վրայ է. չըլլայ որ քեզի համար Տիրոջը բողոքէ ու մեղքի տէր ըլլաս»։ (Երկ. Օր. ԻԴ. 14,15։ Ղևտ. ԺԹ. 13։ Ելից ԻԱ.

26,27)։ «Ալեհերին առջևը ո՛տքի ելիր և ծերը պատուէ՛»։ Ղեւտ. ԺԹ. 32։ Տե՛ս նաև Ղեւտ. ԺԹ. 14)։ Այս բոլորը գոյութիւն ունի, սակայն քահանաներու կամ Ղևտացիներու և կամ անոնց տասանորդներու մասին մասնաւոր բան մը չենք գտներ։

Օրէնքին առողջապահական կարգադրութիւնները, որոնք ա՛յնքան պիտանի էին խեղճ ու երկարօրէն բռնաճնշուած ժողովուրդի մը համար, նոյնպէս ալ մաքուր և անմաքուր կենդանիներու նկատմամբ տրուած կարգադրութիւնները ու սահմանաւորումները՝ թէ անոնցմէ ո՛րը ուտելի և ո՛րը չուտելի էր, խիստ նշանակելի են, և ուրիշ պարագաներով միասին հետաքրքրաշարժ պիտի ըլլային, եթէ գրութեանս ծաւալը թոյլատրէր անոնց ուսումնասիրութիւնը, ցուցնելու համար թէ Օրէնքը եթէ ո՛չ աւելի նախնթաց՝ բայց գոնէ միևնոյն գծին վրայ կը կանգնի այս խնդրոյն շուրջ երևան բերուած բժշկական գիտութեան ամենավերջին համոզումներուն հետ։ Մովսէսի Օրէնքը խորհրդաբանական յատկութիւն մ'ալ ունէր, որուն քննութիւնը ուրիշ առենի մը կը թողունք. բայց նո՛յնիսկ մեր հարևանցի ակնարկը մեզի առատ ապացոյց տուած է՝ թէ այս Օրէնքը, որը Ս. Գրոց մնացեալ մասին մէջ քարոզուած ու ի տես դրուած կրօնական ամբողջ սիստէմին կմախքը կը կազմէր, իսկապէս, հրաշալի Իմաստութեան և Արդարութեան ցուցադրութիւն մ'էր, նամանաւանդ, երբ անոր թուականը նկատի կ'առնենք։

Իմացականութեան լոյսին շնորհիւ պէտք է որ բոլորն ալ ընդունին թէ Օրէնքը ամբարիշտ ու նենգամիտ մարդոց գործը ըլլալու ապացոյց մը չի ներկայացներ, այլ հարազատօրէն կը համապատասխանէ այն նկարագրին՝ զոր բնութիւնը կը վերագրէ

*Աստուծոյ։ Նա Անոր Իմաստութիւնը, Արդարութիւնն ու սէրը կը ցուցադրէ․ դարձեալ, աստուածավախ և ազնուաբարոյ Մովսէսը բացէ ի բաց կը խոստովանի թէ Օրէնքները իրմէ ու իրենը չեն, հապա Աստուծմէ։—Ելից ԻԴ․ 12։ Երկ․ Օր․ Թ․ 9—11։ Ելից ԻԶ․ 30։ Ղևտ․ Ա․ 1։*

*Ի տես Մովսէսի ընդհանուր նկարագրին, և ժողովուրդին տուած հրամաններուն որ սուտ վկայութիւն չընեն և կեղծաւորութենէ ու ' ստախօսութենէ զգուշանան, մի՞թէ բանաւոր պիտի ըլլար խորհիլ՝ թէ այսպիսի մարդ մը սուտ վկայութիւն ըրաւ և նենգօրէն իր իսկ տեսութիւններն ու օրէնքները Աստուծոյ վերագրեց։ Պէտք է նաև յիշենք թէ Ս․ Գրոց ներկայ օրինակներն են որ խուզարկութեան կ'ենթարկենք, ուստի այն անարատութիւնը՝ որ ա'յնքան աչքի կը զարնուի անոնց մէջ, հաւասարապէս կը վերաբերի նաև Մովսէսի յաջորդներուն ալ․ ու իրաւ է թէ այդ յաջորդներուն մէջ դէշ մարդիկ ալ կային, որոնք ո՛չ թէ ժողովուրդին՝ այլ իրենց շահին ետևէն էին, սակայն ակներև է որ անոնք Սրբազան Գրութեանց չխառնուեցան, որոնք մինչև այս օրս մաքուր և անեղծ են։*

## Ս․ ԳՐՈՑ ՄԱՐԳԱՐԷՆԵՐԸ

*Այժմ ակնարկ մը նետէ Ս․ Գրոց Մարգարէներուն և անոնց վկայութեանց ընդհանուր նկարագրին վըրայ։ Մասնաւոր ուշադրութեան արժանի պարագայ մը որ կայ, այն է՝ թէ Մարգարէները, բացի փոքրամասնութենէ մը, քահանայական դասին չէին պատկաներ․ և թէ՝ իրենց օրերուն մէջ, իրենց մարգարէութիւնները, ընդհանրապէս․ խորշելի էին թէ՛ այլասերող ու մարդահաճոյ քահանայութեան և թէ՛ կռապաշտական հակումներ ունեցող ժողովուրդին համար։ Իրենց միջոցաւ ժողովուրդին ուղղուած*

*Աստուածային պատգամները շատ անգամներ ծանրաբեռնուած էին մեղաց յանդիմանութիւններով, ու խառն էին գալիք պատիժներու նախազգուշացումներով, և որոնց մէջ երբեմն հիւսուած կը գտնենք ապագայ օրհնութեանց խոստումներ, զոր պիտի ստանային, եթէ մեղքէ մաքրէին իրենք զիրենք և Աստուծոյ շնորհացը վերադառնային։ Իրենց կենցաղը, մեծաւ մասամբ, նախանձելի ըլլալէ հեռի էր. անոնցմէ շատեր բանտարկուեցան ու չարաչար մահուամբ մեռան։ (Տե՛ս Գ. Թագ. ԺԸ.4,10,17։18։ ԺԹ. 10։ Երեմ. ԼԸ 6։ Եբր. ԺԱ. 32—38)։ Կարգ մը պարագաներու մէջ, իրենց մահէն տարիներ վերջն էր որ Աստուծոյ մարգարէներ ըլլալնին ճանչցուեցաւ։ Բայց մեր խօսքը մատենագիր մարգարէներուն համար է, որոնց գրութիւններուն ուղղակի Աստուծմէ ներշնչուած ըլլալը յայտարարուած է։ Այսու ամենայնիւ, լաւ է որ յիշենք՝ թէ Իսրայէլի տրուած Օրէնքի ժամանակ, քահանաները ո՛և է մասնակցութիւն չունէին. անիկա Աստուծմէ՝ ժողովուրդին տրուեցաւ Մովսէսի ձեռքով։ (Ելից ԺԹ. 17—25։ Երկ. Օր. Ե. 1—5)։ Դարձեալ, ամէն մարդու պարտականութիւն տրուած էր, որ եթէ Օրէնքի բռնաբարում մը տեսնէ, յանդիմանէ մեղաւորը։ (Ղևտ. ԺԹ. 17)։ Այսպէս, բոլորն ալ, սորվեցնելու և յանդիմանելու իշխանութիւնը ունէին. բայց որովհետև, ինչպէս ներկայիս, նոյնպէս ալ այն ատեն, մեծամասնութիւնը առևտրական հոգերու մէջ ընկղմած էին ու անտարբեր և անկրօն դարձած՝ որով բաղդատաբար քիչերը միայն կատարեցին այս պահանջը—մեղքը դատապարտելու և աստուածպաշտութիւն քարոզելու. և այս քարոզողները մարգարէներ կոչուած են թէ՛ Հին և թէ՛ Նոր Կտակարաններուն մէջ։ Մարգարէ բառը, ըստ ընդհանուր գոր-*

ծածութեան՝ Ժողովրդային Մեկնիչ կը նշանակէ. և կռապաշտութեան հանրային գործիչներն ալ այսպէս կոչուած են. օրինակ՝ «Բահաղին Մարգարէները» ևն.: Տե՛ս Ա. Կորնթ. ԺԴ. 1—6: Բ. Պետ. Բ. 1: Մատթ. Է. 15: ԺԴ. 5: Նէեմ. Զ. 7: Գ. Թագ. ԺԸ 40: Տիտ. Ա. 12):

*Մարգարէանալը՝ իր ուսուցանելու հասարակ իմաստովը, վերջէն, Փարիսեցիութեան այլասերած դասակարգին մէջ ալ տարածուեցաւ, որոնք փոխանակ Աստուածային պատուիրանքներուն՝ իրենց Նախահայրերուն աւանդութիւնները սկսան քարոզել. այսպէս ճշմարտութեան հակառակեցան և կեղծ մարգարէներ կամ ուսուցիչներ դարձան:—Մատթ. ԺԵ. 2—9:*

*Մարգարէ կոչուած մեծ դասակարգէն Եհովան այլևայլ շրջաններու մէջ որոշ անհատներ ընտրեց, որոնց մասնաւորապէս պաշտօն տուաւ պատգամներ տալու, որոնց գործադրութիւնը երբեմն իրենց ժամանակուան կը վերաբերէր ու երբեմն ալ ապագային: Սուրբ Հոգիին ներշնչմամբը խօսող ու գրող այս դասին գրութեանցն է որ ուշադրութիւն կուտանք ներկայիս: Ասոնք պատշաճօրէն կրնան կոչուիլ՝*

## ԱՍՏՈՒԾՄԷ ՆՇԱՆԱԿՈՒԱԾ ՄԱՐԳԱՐԷՆԵՐ ԿԱՄ ԳՈՒՇԱԿՆԵՐ

*Երբ կը յիշենք թէ այս մարգարէները գլխաւորապէս աշխարհական մարդիկներ էին, որոնք քահանայական ցեղին տասանորդներէն նպաստ չէին ստանար, և նոյնպէս այն իրողութիւնը՝ թէ անոնք յաճախ ո՛չ միայն Թագաւորներու և դատաւորներու, հապա նաև քահանաներու յանդիմանողներն էին, (թէև անոնք ո՛չ թէ պաշտօնն էր որ կը պարսաւէին, այլ այդ պաշտօնը գրաւող անձերու անհատական*

մեղքերը) պարզ կերպով կը տեսնուի թէ չենք կրնար առանց մեր դատողութիւնը անտեսելու, ընդունիլ՝ թէ այս մարգարէները քահանաներէ կամ ուրիշներէ կազմուած ո՛ և է խմբակցութեան հետ դաշնակցած էին Աստուծոյ անունով կեղծիքներ նիւթելու և արտադրելու համար։ Իրողութեանց լոյսովը առաջնորդուած դատողութիւնը կը մերժէ այսօրինակ կասկած մը։

Եւ եթէ պատճառ մը չենք գտներ Ս․ Գրոց այլ և այլ մատենագիրներու չարժառիթները հարուածելու, թէ ընդհակառակը այդ գրութեանց զանազան մասերուն ոգին արդարութիւնն ու ճշմարտութիւնն է, ուրեմն աւելի առաջ անցնելով հարցնենք՝ թէ արդեօք Մովսէսի և ուրիշ մարգարէներու ու Նոր Կտակարանի մատենագիրներուն արձանագրութեանց միջև ո՛ և է շղթայ մը, միացման ո՛ և է կապ մը գոյութիւն ունի՞։ Մատենագիրներուն նկարագիրն ալ ուշադրութեան առնելով՝ եթէ գտնենք թէ Օրէնքի, Մարգարէութեանց և Նոր Կտակարանի ամբողջ գրութեանց մէջ, որոնք հազար հինգ հարիւր տարուայ շրջան մը կը բովանդակեն, գաղափարի միևնոյն թելն է որ հիւսուած է, զօրաւոր պատճառ մը պիտի ըլլայ ընդունելու անոնց վկայութիւնը— թէ իրենք Աստուծմէ ներշնչուած են—մասնաւորապէս այն պարագային՝ եթէ անոնց բոլորին ալ բնաբանը վեհ ու ընտիր է, որ լաւ կը համապատասխանէ Աստուծոյ այն նկարագրին ու ստորոգելեացը, զոր առողջ դատողութիւնը կը վերագրէ Անոր։

Ասիկա է արդարև մեր գտածը․ ամբողջ Գրքին մէջ միևնոյն Ծրագիրն և ոգին, միևնոյն միտքն ու նպատակն է որ պարզուած են։ Անոր սկզբի էջերը մարդուն ստեղծագործութիւնն ու անկումն է որ կ՚արձանագրեն, իսկ վերջին մասերը՝ այդ անկու-

մէն մարդուն վերականգնումը կը պատկերացնեն. իսկ մէջտեղի էջերը՝ կը ցուցադրեն Աստուծոյ Ծրագըրին այն յառաջդիմական քայլերը որոնք այդ նըպատակին իրականացմանը կ'առաջնորդեն։

Ս. Գրոց սկզբնաւորութեան և վերջաւորութեան մէջ գտնուած երեք գլուխներուն ներդաշնակութիւնը ուշագրաւ է, թէև առաջին երեքը վերջին երեքին հետ հակապատկեր մը կը կազմեն։ Մին՝ առաջին ստեղծագործութիւնը կը նկարագրէ, իսկ միւսը՝ վերականգնած կամ վերհաստատուած ստեղծագործութիւնը, մեղքը ու անոր որպէս պատիժ սահմանուած անէծքը վերցուած. մին՝ կը ցուցադրէ խաբելու և ջնջելու համար Սատանային և ապականութեան աշխարհի մէջ գործած մուտքը, իսկ միւսը՝ Սատանային գործերուն քանդումը, մահուամբ ջնջուածներուն վերադարձը, չարիքին խափանումը և Սատանային բնաջնջումը. առաջինը՝ կը ցուցնէ Ադամով կորսուած տիրապետութիւնը, իսկ երկրորդը՝ Քրիստոսի միջոցով անոր վերանորոգուիլն ու յաւիտենապէս հաստատուիլը, և երկնքի մէջ եղածին պէս երկրի վրայ ալ Աստուծոյ կամքին տեղի ունենալը. մին՝ կը ցուցնէ թէ անկումի, նախատինքի և մահուան պատճառը մեղքն է, իսկ միւսը՝ թէ արդարութեան պարգևը փառք, պատիւ և կեանք է։

Ս. Գիրքը թէև այլևայլ ժամանակներու մէջ ու այլևայլ պարագաներու ներքև գրուած է բազմաթիւ գրիչներէ, սակայն անիկա բարոյալից կանոններու, իմաստուն ասացուածքներու և սփոփարար խօսքերու հաւաքածոյ մը չէ պարզապէս։ Անիկա աւելի աւելի է։ Ան՝ տրամաբանական, իմաստասիրական և ներդաշնակ իրայայտութիւնն է աշխարհի մէջ այժմ գոյութիւն ունեցող մեղաց պատճառին, անոր միակ

դարմանին, վերջնական արդիւնքներուն և Աստուածային Իմաստութեան՝ որ նախագծած Ծրագրին վախճանը տեսաւ սկսելէն իսկ առաջ. նշանակելով նաև Աստուծոյ ժողովուրդին ընթացքը, ու խրախուսելով և զօրացնելով զանոնք իրականանալիք չափազանցօրէն մեծ ու թանկագին խոստումներովը:

Ծննդոցի ուսուցումը՝ թէ մարդկութիւնը նախապէս մէկ կատարեալ ներկայացուցիչով մը դատուեցաւ, թէ նա ձախողուեցաւ, որուն պատճառաւ ներկայ անկատարութիւնը, հիւանդութիւնը և մահը առաջ եկան, թէ Աստուած լքած չէ զայն, այլ ի վերջոյ պիտի վերականգնէ կնոջմէ մը ծնած փրկչի մը շնորհիւ (Ծննդ. Գ. 15), պաշտպանուած ու երկասփռուած է ամբողջ Աստուածաշունչին մէջ: Մեղաց համար իբր զոհագործութիւն, փրկչի մը մահուան և իր արդարութեան մեր մեղքերը ծածկելու անհրաժեշտութիւնը՝ ցուցադրուած է Ադամի ու Եւայի մորթէ հանդերձներով ծածկուելովը, Աբէլի նուէրներուն ընդունուելովը, Իսահակով՝ երբ սեղանին վրայ էր, այլևայլ զոհերու մահովը՝ որոնց միջոցաւ նահապետները կրնային Աստուծոյ մօտենալ, նաև Օրէնքի ներքև հաստատուած և ամբողջ Հրէական Դարու մէջ շարունակուած զոհագործութիւններովը:

Մարգարէները՝ որոնք իրենց գրութիւններէն չնչին բան մը միայն հասկնալ թոյլատրուած էին (Ա. Պետ. Ա. 12), մեղքին, փոխանակ անբան անասունի մը՝ անձնաւորութեան մը վրայ դրուիլը կը յիշատակեն, և մարգարէական աչքերով կը տեսնէին զԱյն՝ որ պիտի փրկէր ու ազատէր ցեղը, «մորթուելու տարուող ոչխարի պէս». թէ՝ «մեր խաղաղութեան պատիժը Անոր վրայ եղաւ», և «Անոր վէրքերովը մենք բժշկուեցանք»: Անոնք նկարագրեցին զայն, ըսելով՝ «Անիկա մարդոցմէ անար-

գունեցաւ ու երեսէ ձգունեցաւ. վշտաց տէր ու ցաւոց տեղեակ եղաւ». և թէ՝ «Տէրը մեր ամենուն անօրէնութիւնը Անոր վրայ դրաւ»։ (Եսա. ԾԳ. 3—6)։ Անոնք պատմեցին նոյնպէս՝ թէ ո՛ւր պիտի ծնանէր այս Ազատարարը (Միք. Ե. 2), թէ՝ ե՛րբ պիտի մեռնէր ժողովուրդին համար, և «ո՛չ թէ Իրեն համար»։ (Դան. Թ. 26)։ Անոնք Անոր նկատմամբ այլևայլ առանձնայատկութիւններ կը յիշեն—թէ Անիկա «արդար» պիտի ըլլար, զուրկ «անօրէնութենէ» և «նենգութենէ» կամ մահու արժանի ըսող ո՛և է արդարացի պատճառէ (Եսա. ԾԳ. 8, 9, 11). թէ՝ Անիկա երեսուն կտոր արծաթի համար պիտի մատնուէր (Զաք. ԺԱ. 12). թէ՝ Իր մահուան ժամանակ յանցաւորներու ընկեր պիտի սեպուէր (Եսա. ԾԳ. 12). թէ՝ Իր մէկ ոսկորը իսկ չպիտի կոտրէր (Սաղմ. ԼԴ. 20։ Յովհ. ԺԹ. 36). թէ՝ թէև Անիկա պիտի մեռնէր ու թաղուէր, բայց Իր մարմինը ապականութիւն չպիտի տեսնէր, և ո՛չ ալ գերեզմանին մէջ պիտի մնար։ —Սաղմ. ԺԶ. 10։ Գործ. Բ. 31։

Նոր Կտակարանի մատենագիրները յստակ ու աչքառու՝ բայց պարզ կերպով կը պատմեն այս բոլոր գուշակութիւններուն Նազովրեցի Յիսուսին վրայ կատարուիլը, և բանաւոր պատճառաբանութիւններով կը ցուցադրեն թէ Անոր վճարած Փրկագինը անհրաժեշտութիւն մ'էր ամբողջ աշխարհի մեղաց ջնջումը կարելի ընելու համար, ինչպէս որ ալ Օրէնքին ու Մարգարէութեանց մէջ նախաձայնուած էր։ (Եսա. Ա. 18)։ Անոնք ամենատրամաբանական և ամենազօրեղ կերպով կ'ուրուագծեն ամբողջ Ծրագիրը, դիմելով ո՛չ թէ իրենց ունկնդիրներուն նախապաշարմանցն ու զգացումներուն, հապա իրենց լուսաւորեալ դատողութեանը միայն, և մեզ կը հայթայթեն ա՛յնպիսի նուրբ ու զօրաւոր տրամաբանու-

թիւններ, որոնց նմանը ուրիշ ո՛և է նիւթի մէջ չէ կարելի գտնել։—Տե՛ս Հռովմ. Ե. 17—19էն մինչև ԺԲ. գլուխը։

Օրէնքին մէջ Մովսէս ո՛չ միայն զոհագործութիւն մը մատնանշեց, հապա նաև ցուցուց՝ թէ այդ Մեծ Ազատարարին իշխանութեան ներքև մեղքը պիտի ջնջուի և ժողովուրդը օրհնուի, որուն զօրութեանը ու հեղինակութեանը մասին թէև Մովսէս կ՚ըսէ թէ իրեններուն նման պիտի ըլլան, սակայն իրենները մեծապէս պիտի գերազանցեն։ (Երկ. Օր. ԺԸ. 15, 19)։ Խոստացեալ Ազատարարը ո՛չ միայն Իսրայէլը պիտի օրհնէ, հապա Իսրայէլի միջոցաւ՝ «երկրի բոլոր ազգերը»։ (Ծննդ. ԺԲ. 3։ ԺԸ. 18։ ԻԲ. 18։ ԻԶ. 4)։ Հակառակ Հրէայ ժողովուրդին նախապաշարումներուն, մարգարէները միևնոյն հաստատամտութեամբ կը յայտարարեն թէ Մեսիան «լոյս մը (պիտի ըլլայ նաև) հեթանոսները լուսաւորելու» (Ղուկ. Բ. 32։ Ես. ԽԹ. 6). թէ՝ «երկրին ծայրերէն» հեթանոսները Անոր պիտի գան (Երեմ. ԺԶ. 19). Իր անունը «հեթանոսներուն մէջ մեծ պիտի ըլլայ» (Մաղ. Ա. 11). և թէ՝ «Տիրոջը փառքը պիտի յայտնուի, ու ամէն մարմին մէկտեղ զանիկա պիտի տեսնէ»։—Ես. Խ. 5։ Տե՛ս նաև ԽԲ. 1—7։

Նոր Կտակարանի մատենագիրները կը յայտարարեն թէ իրենք Աստուծմէ օծուեցան, որուն շնորհիւ կարող էին Քրիստոսի զոհագործութեան նկատմամբ եղած մարգարէութեանց իրականացումը տեսնել։ Անոնք թէև ամէն Հրէայի պէս այն նախապաշարումը ունէին՝ թէ ամէն օրհնութիւն միայն իրենց կը պատկանի (Գործ. ԺԱ. 1—18), սակայն վերջէն ի վիճակի եղան տեսնելու թէ՝ թէև իրենց ազգութիւնը արդարև պիտի օրհնուի՝ բայց իրենց հետ և իրենց

մէջոցաւ պիտի օրհնուին նաև երկրիս բոլոր ազգե-
րը։ Անոնք նոյնպէս տեսան թէ՝ թէ՛ Իսրայէլի և թէ՛
աշխարհի օրհնուելէն առաջ, Հրէաներէն ու Հեթա-
նոսներէն «փոքրիկ հօտ» մը պիտի ընտրուի, որը
քննուած ըլլալով՝ արժանի պիտի ըլլայ Մեծ Ազա-
տարարին փառաց ու պատուին մասնակցելու, և Իս-
րայէլի ու բոլոր ազգաց օրհնութեան պատուաւոր
գործին մէջ Անոր բաժնեկից ըլլալու (Հռովմ. Ը.
17). և որոնք կը ցուցնեն թէ ասիկա Օրէնքին ու
մարգարէութեանց տեսութեանը հետ միաբան է։

Նոր Կտակարանի Այս մատենագիրներուն ներկա-
յացուցած Ծրագրին մեծութիւնն ու ընդարձակու-
թիւնը նաև կը համաձայնի այն ամենավեհ ըմբռնու-
մին հետ, որը կը կոչուի—«Մեծ ուրախութեան ա-
ւետիս... որ բոլոր ժողովուրդին պիտի ըլլայ»։

Մովսէսի գրքերուն մէջ քարոզուած այն խոր-
հուրդը, թէ Մեսիան ո՛չ միայն Իսրայէլի, հապա
նաև աշխարհի իշխանը պիտի ըլլայ՝ բոլոր մարգա-
րէներուն բներգը եղած է։ Թագաւորութեան գաղա-
փարը բարձրագոյն տեղը կը գրաւէր նաև Առաքեալ-
ներու քարոզներուն մէջ. և Յիսուս յորդորեց որ ա-
ղօթենք՝ «Քու Թագաւորութիւնդ գայ», և այդ Թա-
գաւորութեան մէջ բաժին մը խոստացաւ ամէն ա-
նոնց, որոնք նախ Ճշմարտութեան համար կը տա-
ռապին, ու այդ կերպով իրենք զիրենք արժանի կը
ցուցնեն։

Գալիք փառաւոր Թագաւորութեան յոյսը բոլոր
հաւատարիմներուն խրախոյս ներշնչեց նոյնիսկ մին-
չև ի մահ հալածանաց մէջ համբերող ըլլալու, նա-
խատանաց, զրկանաց ու կորուստներու ենթարկուե-
լու։ Եւ այն այլաբանական մեծ մարգարէութեան
մէջ, որով Նոր Կտակարանը կը վերջանայ, կատա-
րելապէս նկարագրուած են արժանաւոր «մորթուած

Գառնուկը» (Յայտ. Ե. 12) և «յաղթողները», որոնք Իր Թագաւորութեանը մէջ թագաւորներ ու քահանաներ պիտի ընէ. Նաև այն փորձութիւններն ու խոչընդոտները՝ որոնք պէտք է որ նուաճեն, այդ Թագաւորութեան մէջ բաժնի մը արժանի ըլլալու համար։ Յետոյ մեզ կը հրամցնեն խորհրդաբանական պատկերները այն օրհնութեանց, որոնք աշխարհի վրայ պիտի գան այդ Հազարամեայ տիրապետութեան ներքև, երբ Սատանան պիտի կապուի և Ադամական մահը ու ցաւերը պիտի ջնջուին, և երբ երկրիս բոլոր ազգերը, երկնային Թագաւորութեան՝ Նոր Երուսաղէմի լոյսին մէջ պիտի քալեն։

Ս. Գիրքը ծայրէ ի ծայր ա՛յնպիսի վարդապետութիւն մը կը պաշտպանէ զոր ուրիշ տեղ գտնել անկարելի է, և որը բոլոր Հեթանոս կրօններու տեսութեանց հակառակն է, թէ՝ մեռելոց համար ապագայ կեանքի մը տիրանալը ՄԵՌԵԼՈՑ ՅԱՐՈՒԹԵԱՄԲԸ միայն պիտի իրականանայ։ Բոլոր ներշընչեալ մատենագիրները Փրկչի մը նկատմամբ իրենց հաւատքը արտայայտեցին, և անոնցմէ մին կը յայտարարէ թէ՝ երբ Աստուած զիրենք դուրս կանչէ իրենց գերեզմաններէն, այն ատեն ամբարիշտները այլևս իշխանութիւն չպիտի ունենան երկրիս վրայ, հապա «Ուղիղները անոնց վրայ պիտի տիրեն առտուանց»։—Սաղմ. ԽԹ. 14։

Մեռելոց յարութիւնը քարոզուած է մարգարէներէն. նոյնպէս ալ Նոր Կտակարանի մատենագիրները ապագայ կենաց և օրհնութեան ամբողջ յոյսերնին անոր վրայ կը հաստատեն։ Պօղոս հետևեալ կերպով կ'արտայայտէ. «Թէ որ մեռելոց յարութիւն չկայ՝ ուրեմն Քրիստոս ալ յարութիւն առած չէ. և եթէ Քրիստոս յարութիւն առած չէ՝ ուրեմն մեր քարոզութիւնը պարապ է, ու ձեր հաւատքն ալ պա-

*րապ է… Նոյնպէս ալ Քրիստոսով ննջողները* կորսուած *են։ Բայց հիմա Քրիստոս մեռելներէն յարութիւն առած է՝ ննջեցելոց առաջին պտուղը… վասնզի ինչպէս որ Ադամով* ամէնը կը մեռնին, *այնպէս ալ Քրիստոսով* ամէնը կենդանի պիտի ըլլան»։ —*Ա. Կորնթ. ԺԵ.* 13—22։

*Ինչպէս որ ժամացոյցի մը բազմաթիւ անիւները առաջին ակնարկով աւելորդ կրնան թուիլ, թէև անոնց ամենադանդաղներն իսկ պիտանի են՝ այնպէս ալ շատ մը մասերէ բաղկացած ու շատ մը գրիչներէ պատրաստուած Ս. Գիրքը անթերի ու ներդաշնակ ամբողջութիւն մ'է։ Անոր և ո՛չ մէկ մասը աւելորդ է. և թէև այլևայլ մասերը միւսներէն աւելի գործնական են ու առաջնակարգ տեղ կը գրաւեն՝ սակայն բոլորն ալ պիտանի և անհրաժեշտ են։ Այս օրուայ «յառաջադէմ մտաւորականներ»ու և «մեծ աստուածաբաններ»ու համար հասարակ բան մը սկսած է դառնալ թեթև կերպով վերաբերուիլ կամ անտեսել՝ եթէ ոչ ուրանալ՝ Հին Կտակարանի շատ մը «հրաշքներ»ը, զանոնք «պառաւական առասպելներ» կոչելով։ Այդ հրաշքներէն են Յովնանու և մեծ ձուկին՝ Նոյի և տապանին, Եւայի և օձին՝ Յեսուի հրամանով արևուն կանգնելուն և Բաղաամի իշուն խօսելուն պատմութիւնները։ Երևութապէս, այս մարդիկը կ'անտեսեն այն իրողութիւնը՝ թէ Ս. Գրոց այլևայլ մասերը ա՛յնպէս մը իրարու մէջ հիւսուած ու միացած են որ, այս հրաշքներուն անոնցմէ փրցուիլ ու նետուիլը, կամ անոնց հաւատք չընծայուիլը, մնացեալ ամբողջութեան ջնջուիլը և կամ անարժանահաւատ ըլլալը կը նշանակէ։ Ինչու որ եթէ այս պատմութիւնները կեղծ էին, ուրեմն անոնք որ վերյիշեցին զանոնք՝ կա՛մ խաբեբաներ էին և կա՛մ դիւրախաբներ. ու այս պարագաներուն և ո՛չ մէկուն*

ներքև մեզ համար կարելի պիտի ըլլար. իրենց վկայութիւնները իբրև Աստուծմէ ներշնչուած ընդունիլ։ Վերոյիշեալ հրաշքներուն Ս. Գրքէն արտաքսուիլը, բացի մեր Տէր Յիսուսիններէն՝ մնացեալ բոլոր գլխաւոր մատենագիրներու վկայութիւններն ալ իրենց արժէքէն պիտի ձգէր։

Եւայի՝ օձէն խաբուելուն և անկումին պատմութիւնը հաստատուած է Պօղոսէն։ (Հռովմ. Ե. 17։ Բ. Կորնթ. ԺԱ. 3։ Ա. Տիմ. Բ. 14. տե՛ս նաև մեր Տիրոջ ակնարկութիւնը Յայտ. ԺԲ. 9։ Ի. 2)։ Տիրոջ զօրութեան իբր ապացոյց՝ Ամորհացւոց կործանման ժամանակ արևուն կանգնիլը, յայտնապէս, զաղափարականն էր այն զօրութեան, որ ապագային՝ «Տիրոջը օր»ուանը մէջ պիտի ցուցադրուէր այն անձին ձեռքովը, որուն իբր օրինակ ծառայեց Յեսու։ Ասիկա կը հաստատեն երեք մարգարէներ (Ես. ԻԸ. 21։ Ամբակ. Բ. 1—3, 13, 14 և Գ. 2—11։ Զաք. ԺԴ. 1, 6, 7)։ Խօսող իշուն պատմութիւնը հաստատուած է Յուդայի 11որդ համարովը և Պետրոսէն։ (Բ. Պետ. Բ. 16)։ Իսկ Մեծ Ուսուցիչը Յիսուս՝ կը հաստատէ Յովնանու և մեծ ձուկին, Նոյի և Ջրհեղեղին պատմութիւնները։ Նա կ՚ըսէ. «Քանզի ինչպէս որ Յովնան երեք օր ու երեք գիշեր կէտ ձուկին փորին մէջն էր, ա՛յնպէս ալ Որդին Մարդոյ պիտի ըլլայ երկրիս սրտին մէջը երեք օր ու երեք գիշեր»։ «Քանզի ինչպէս որ էին այն օրերը Ջրհեղեղէն առաջ, կ՚ուտէին՝ կը խմէին՝ կնիկ կ՚առնէին ու էրկան կուտային, մինչև այն օրը որ Նոյ տապանը մտաւ, ու չգիտցան՝ մինչև որ Ջրհեղեղը եկաւ ու ամէնը տարաւ. Որդւոյ Մարդոյ ներկայութիւնն ալ այնպէս պիտի ըլլայ»։ (Մատթ. ԺԲ. 40։ ԻԴ. 38, 39։ Ղուկ. ԺԷ. 26. տե՛ս նաև Ա. Պետ. Գ. 20)։ Իրապէս, վերոյիշեալ հրաշքները Յիսուսի և Առաքեալներուն կատա-

րածներէն՝ ջուրը գինիի փոխելէն, հիւանդութիւններ բուժելէն եւլն. մեծ չէին. բայց հրաշքներուն մէջ մեռելներու վերադարձնումը ամենազարմանալին է։

Մեր փորձառութեանց անսովոր եղող այս հրաշքները, իրենց համարժէքները կը գտնեն մեր բոլորտիքը ամէն օր՝ որոնք սակայն աւելի հասարակ բաներ ըլլալով՝ առանց նշմարուելու կ'անցնին։ Թէ՛ կենդանական և թէ՛ բուսական կենդանի յօրինուածքներու վերարտադրութիւնը, ինչպէս մեր ըմբռնումէն, նոյնպէս ալ կարողութենէն վեր է—արով հրաշագործութիւն մ'է։ Մենք կրնանք տեսնել կեանքի սկզբունքին գործելը, բայց ո՛չ կրնանք ըմբռնել և ո՛չ ալ արտադրել անոր նմանը։ Երկու սերմեր կը տնկենք քով քովի. օդի, ջուրի և հողի պայմանները համանման են. անոնք կ'աճին՝ բայց չենք կրնար պատմել թէ ի՛նչպէս, և ո՛չ ալ ամենահանճարեղ իմաստասէրը կրնայ բացատրել այդ հրաշքը։ Սերմերը հակառակ հակումներով տունկեր կ'արտադրեն. մին՝ կը սողայ, միւսը՝ կը կանգնի. ձեւը, ծաղիկը, գոյնը, ամէն ինչ կը տարբերին, թէև միեւնոյն պայմաններու ներքեւ առաջ եկան։

Այսպիսի դէպքեր հետզհետէ հասարակ բաներու կարգը կ'անցնին մեզ համար, և կը դադրինք խորհելէ անոնց հրաշալիութեանը վրայ՝ երբ մանկական սքանչացումի շրջանէն դուրս կ'ելլենք. և սակայն անոնց ցուցադրած զօրութիւնը մերինէն ա՛յնքան աւելի բարձր է, և ա՛յնքան գերիվեր մեր սահմանափակ մտաւորական կարողութենէն՝ որքան Ս. Գրոց մէջ մասնաւոր նպատակի համար արձանագրուած հրաշքները, որոնք պատկերներ էին մեծ Արարչին Ամենակարող զօրութեանը, որով կրնայ յաղթել ամէն խոչընդոտ ու Իր կամքը քալեցնել, և նոյնիսկ մեզ մեռելներէն յարուցանելու խոստումը, չարիքին

բնաջնջումը և յաւիտենական արդարութեան տիրապետութիւնը վերջնականապէս գործադրել ու գործնականացնել։

Հոս կը վերջացնենք խնդիրը։ Ամէն մէկ քայլ տըրամաբանութեան փորձաքարին ենթարկեցինք։ Տեսանք թէ Աստուած մը՝ բարձրագոյն ու գիտակից Արարիչ մը գոյութիւն ունի, որուն մէջ կատարեալ ներդաշնակութեամբ կեդրոնացած են Իմաստութիւնը, Արդարութիւնը, Սէրն ու Զօրութիւնը։ Մենք տեսանք Անոր Ծրագիրներովը հետաքրքրուելու և զանոնք գնահատելու կարող արարածներու կողմանէ յայտնութիւն մը ակնկալելու արդարացիութիւնը։ Մենք նոյնպէս տեսանք թէ Ս. Գիրքը, որը այդ յայտնութիւնը ըլլալ կը յայտարարուի՝ ուշադրութեան արժանի է. ու քննեցինք անոր մատենագիրները և իրենց կարելի նպատակները, իրենց քարոզութեան լոյսին ներքև. մենք զարմացանք. և մեր դատողութիւնը մեզի ըսաւ թէ այսպիսի մաքուր շարժառիթի հետ խառնուած Իմաստութիւն մը խորամանկ մարդոց աղուէսային հնարքը չէր, շահախնդրական նպատակներու համար։ Տրամաբանութիւնը հարկադրեց մեզ ընդունելու՝ թէ խիստ հաւանօրէն, այսպիսի արդար ու բարեսիրական զգացումները և օրէնքները Աստուծմէ բղխած ըլլալու են և ո՛չ թէ մարդոցմէ և կամ նենգամիտ քահանաներէ։ Մենք տեսանք Յիսուսի և Իր Փրկարար գոհագործութեան ու ասոր իբր հետևանք, Անոր ապագայ փառաւոր Թագաւորութեան մէջ ընդհանուրին յարութեան և օրհնութեան նկատմամբ տրուած վկայութեանց ներդաշնակութիւնը. ու ողջամտութիւնը ցուցուց մեզի՝ թէ ա՛յնքան մեծ ու ընդարձակածաւալ յատակագիծ մը, զոր մեր բոլոր ակնկալութեանց սահմանէն ալ անդին կանցնի՝ որը սակայն

ա՛յսքան տրամաբանական հետեւութիւններու վրայ հիմնուած է՝ Աստուծոյ Ծրագիրը ըլլալու է զոր կը փնտռենք։ Անիկա մարդոց պարզ հնարքը չի կրնար ըլլալ, ինչու որ երբ նոյնիսկ կը բացատրուի՛ մարդիկ դժուարաւ կը հաւատան անոր։

Երբ Գոլոմպոս գտաւ Օրինօքօ գետը, մէկը ըսաւ թէ նա կղզի մը գտաւ. բայց ան պատասխանեց. «Կղզիէ մը այդ տեսակ գետ չի՛ բղխիր. այդ ահագին հոսանքը կրնայ նոյնիսկ ցամաքամասի մը ջուրերը հատցնել»։ Այսպէս ալ՝ Ս. Գրոց վկայութեանց խորութիւնն ու զօրութիւնը, իմաստութիւնն ու ընդարձակութիւնը այն համոզումը կը ներշնչեն մեզի՝ թէ անոր մէջ ցուցադրուած ծրագիրներուն և յայտնութիւններուն Հեղինակը ո՛չ թէ մարդը, հապա Աստուած է։

Մենք միայն հարևանցի ակնարկ մը նետեցինք Ս. Գրոց այն յայտարարութեանց մակերեսին վրայ, որոնք Աստուածային հեղինակութիւն ըլլալ ընդունուած են, և որոնք տրամաբանական կը գտնենք։ Յաջորդ գլուխները Աստուծոյ Ծրագրին այլևայլ մասերը պիտի քօղազերծեն. և կը հաւատանք որ առատ փաստ պիտի հայթայթեն ամէն անաչառ մտքերու՝ թէ Ս. Գիրքը Աստուծմէ ներշնչուած յայտնութիւն մ՚է, որուն մէջէն պարզուող Ծրագրին երկայնութիւնն ու լայնութիւնը, բարձրութիւնն ու խորութիւնը սքանչելիօրէն կը ցուցադրեն Աստուածային նկարագիրը, որը մինչև հիմա աղօտ կերպով միայն տեսնուած էր, մինչդեռ ծագող Հազարամեայ Օրուան լոյսին ներքև աւելի յստակօրէն կը տեսնուի ներկայիս։

# ԳԼՈՒԽ Դ.

## ԱՅԼԵՒԱՅԼ ԴԱՐԱՇՐՋԱՆՆԵՐ ԵՒ ՏՆՕՐԻՆՈՒԹԻՒՆՆԵՐ ՈՐՈՆՔ ՆՇԱՆԱԿՈՒԱԾ ԵՆ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ՅԱՌԱՋԴԻՄԱԿԱՆ ԾՐԱԳՐԻՆ ՄԷՋ

**Աստուծոյ Ծրագիրը Որոշ և Կանոնաւոր.—Երեք Մեծ Դարաշրջաններ Աշխարհի Պատմութեանը մէջ.—Երեք Որոշիչ Հանգամանքներ.—«Երկիրը Միշտ կը Մնայ».—Գալիք Աշխարհը, Նոր Երկինք և Նոր Երկիր.—Այս Մեծ Դարաշրջաններուն Ստորաբաժանումները.—Աստուծոյ Ծրագրին Կարևոր Կէտերը այս Կերպով Ցուցադրուած.—Ընդունուած Կարգը կը Քողազերծէ Ներդաշնակութիւնը.—Ուղիղ Կերպով Բացատրել Ճշմարտութեան Խօսքը։**

*ԻՆՉՊԷՍ որ ոմանք երևելի ճարտարապետի եւ հիւսնի մը հանճարն ու իմաստութիւնը տգիտօրէն կը դատափետեն՝ անոր անկատար գործը միայն նկատի առնելով, նո՛յնպէս ալ շատեր իրենց տգիտութեանը մէջ, անիրաւօրէն, կը քննադատեն զԱստուած, Անոր թերակատար գործին վրայ միայն հիմնուած. բայց ապագային՝ երբ չարութեան կոշտ լաստակները վերցուած՝ ու աղտեղութիւնները մաքրուած են, որոնք թոյլատրուած և ուղղուած էին մարդոց դաս մը և ի վերջոյ բարիք մ'ըլլալու համար, ահա՛ ա՛յն ժամանակ Աստուծոյ* ամբողջացած գործը *բովանդակ տիեզերքի մէջ Իր անսահման Զօրութիւնն ու Իմաստութիւնը պիտի հռչակէ. և ա՛յն ատեն պիտի տեսնուի թէ Անոր ծրագիրները Իր փառաւոր նկարագրին հետ հաշտ և համաձայն են։*

Քանիոր Աստուած կը յայտնէ մեզ թէ որոշ և անխախտ նպատակ մը ունի, և Իր ամէն նպատակները պիտի իրականանան, ուրեմն որպէս Իր զաւակները պարտինք լրջօրէն հարցաքննել՝ թէ ի՛նչ են այդ Տրագիրները, որպէսզի կարենանք անոնց համաձայն գործել։ Տեսէ՛ք, թէ ի՛նչպիսի վճռականութեամբ մ'է որ Եհովան կ'ապահովցընէ Իր մտադրութեան անփոփոխելիութիւնը. «Զօրաց Եհովան երդում ըրաւ ու ըսաւ, Ինչպէս որ խորհեցայ՝ անշուշտ այնպէս պիտի ըլլայ, ու ինչ որ որոշեցի՝ այն պիտի կատարուի»։ «Զօրաց Տէրը նախասահմանեց, և ո՞վ կրնայ զանիկա խափանել»։ «Ես եմ Աստուած և ինծմէ զատ ուրիշը չկայ. Ես եմ Աստուած՝ և Ինծի պէս մէկը չկայ... Իմ խորհուրդս պիտի հաստատուի, և Իմ ամէն կամքս պիտի կատարեմ... Այո՛, Ես խօսեցայ ու Ես ի գործ պիտի դնեմ»։ (Եսայի ԺԴ. 24—27։ ԽԶ. 9—11)։ Ուրեմն՝ թէև Աստուծոյ մարդոց հանդէպ ունեցած գործառնութիւնները դիպուածական կամ աւելի առեղծուածային կրնան թուիլ ուրիշներուն, սակայն բոլոր հաւատացեալներուն համար, Իր խօսքին սկզբնական և անփոփոխ Տրագիրը ինչպէս անցեալին՝ նոյնպէս ալ ներկայիս՝ դէպի լրացում կը յառաջդիմէ կանոնաւորապէս։

Մինչդեռ տգիտութեան խաւարին մէջ խարխափող մարդկութեան հսկայ զանգուածը պէտք է սպասէ՝ մինչև որ Աստուծոյ Տրագիրը շօշափելի և բացայայտ կերպարանափոխման մէջ մտնէ՝ կարենալ ըմբռնելու համար ճարտարապետ Աստուծոյ հրաշալի նկարագիրը, առկէ յառաջ սակայն, Անոր զաւակաց առանձնաշնորհը տրուած է հաւատքի եւ իրենց լապտերին լոյսին միջոցաւ ապագայի նախագուշակուած փառաց տեղեկանալ, և ըստ այնմ գնահատել ներկային և անցելոյն խորհրդաւոր վարուելակերպերը։ Ուստի, որպէս Աստուծոյ Հետազօտող

*որդիներ և ժառանգներ՝ խոստացուած ժառանգութեան մը, մեր Հօրը Խօսքին կը դիմենք, Հոն տրուած Ծրագիրներէն ու Նշաններէն Անոր նպատակները կարենալ հասկնալու համար։ Հոն կը սորվինք, թէ մարդուն համար պատրաստուած Աստուածային Ծրագիրը երեք մեծ ժամանակաշրջաններ կը պարունակէ, որոնք կսկսին մարդուն ստեղծագործութենէն և կ'երկարին մինչև անհուն և անծայրածիր ապագան։ Պետրոս և Պօղոս Առաքեալները այս շրջանները «երեք աշխարհներ» կ'անուանեն, որոնք հետևեալ ձևով կը ներկայացնենք։*

## ՄԵԾ ԴԱՐԱՇՐՋԱՆՆԵՐ ՈՐՈՆՔ «ԱՇԽԱՐՀՆԵՐ» ԿՈՉՈՒԱԾ ԵՆ




*Այս երեք մեծ դարաշրջանները Աստուածային Նախախնամութեան երեք որոշ արտայայտութիւնները կը ներկայացնեն։ Առաջինը՝ որ ստեղծագործութենէն մինչև Ջրհեղեղ կը տևէ՝ հրեշտակներու իշխանութեան ներքև էր, և Պետրոսէն «ՀԻՆ ԱՇԽԱՐՀ» կոչուած է։—Բ. Պետ. Գ. 6։*

*Երկրորդ մեծ դարաշրջանը՝ որ կ'երկարի Ջրհեղեղէն մինչև Աստուծոյ Թագաւորութեան հաստատուիլը՝ «այս Աշխարհիս իշխան»ին, Սատանային առժամանակեայ իշխանութեան ներքև է, և որով կոչուած է «ՀԻՄԱԿՈՒԱՆ ՉԱՐ ԱՇԽԱՐՀ»։—Գաղ. Ա. 4։ Բ. Պետ. Գ. 7։*

Երրորդը՝ Աստուածային վարչութեան ներքև՝ «անվերջ Աշխարհ» մը՝ Աստուծոյ Թագաւորութիւնը պիտի ըլլայ, և կոչուած է «ԳԱԼԻՔ ԱՇԽԱՐՀԸ—որուն մէջ արդարութիւն կը բնակի»:—Եբր. Բ. 5: Բ. Պետ. Գ. 13:

Այս դարաշրջաններուն կամ «աշխարհ»ներուն առաջինը՝ Հրեշտակներու վարչութեան ներքև՝ ձախողուածք մ'էր. երկրորդն ալ՝ Սատանային կամ Յափշտակչին տիրապետութեան ներքև՝ ստուգիւ, «չար աշխարհ» մ'եղած է. իսկ երրորդը՝ արդարութեան տիրապետութեան և երկրի բոլոր ազգաց օրհնութեան ժամանակաշրջան մը պիտի ըլլայ:

Այս «Աշխարհ»ներէն վերջին երկուքը մասնաւորապէս մատնանշուած են, և անոնց վերաբերեալ յայտնութիւնները իրարու զօրաւոր հակապատկերներ են: Ներկայ կամ Երկրորդ Դարաշրջանը՝ «Հիմակուան չար Աշխարհը» կոչուած է. ո՛չ թէ անոր համար որ անոր մէջ բնաւ բարի բան մը գոյութիւն չունի, հապա՝ այն պատճառաւ որ չարութիւնը թոյլատրուած է որ գերիշխանութիւն ունենայ հոն: «Հիմա մենք հպարտներուն երանի կ'ըսենք. ամբարշտութիւն ընողներն անգամ բարեշէն կ'ըլլան, Աստուած ալ կը փորձեն ու կ'ազատին» (Մաղ. Գ. 15): Երրորդ Աշխարհը կամ Դարաշրջանը՝ կոչուած է «ԳԱԼԻՔ ԱՇԽԱՐՀԸ—որուն մէջ արդարութիւն կը բնակի». ո՛չ թէ որովհետև հոն չարութիւն պիտի չգտնուի, այլ անոր համար որ չարութիւնը պիտի չը գերիշխէ: Մեղքը աստիճանաբար պիտի անհետանայ, որուն իրագործմանը համար առաջին հազար տարին պէտք պիտի ըլլայ: Հոն չարութիւնը պիտի չտիրապետէ, և ո՛չ ալ պիտի բարգաւաճի. ու չարերը ա՛լ պիտի չծաղկին, հապա՝ միայն «արդարները պիտի ծաղկին» (Սաղմ. ՀԲ. 7). «Հնազանդները պի-

տի ուտեն երկրին բարիքը» (Եսայի Ա․ 19)․ և «չարագործները պիտի բնաջնջուին»։— Սաղմ․ Լէ․ 9։

Այսպէս ուրեմն, գալիք Տնօրինութիւնը հիմնապէս պիտի տարբերի ներկայինէն։ Մեր Տիրոջ խօսքերը կը բացատրեն՝ թէ ինչո՛ւ ներկայ և ապագայ Տնօրինութիւններուն միջև տարբերութիւն մը գոյութիւն պիտի ունենայ․ որովհետև այդ գալիք Աշխարհին իշխանը կամ կառավարիչը Ինք պիտի ըլլայ, և հոն արդարութիւնն ու ճշմարտութիւնը պիտի բարգաւաճին․ և որովհետև ներկայ չար աշխարհի իշխանը (կառավարիչը) Սատանան է, անոր համար չարութիւնը յառաջ կ'երթայ և ամբարիշտները կը ծաղկին։ Յիսուս ըսաւ․ այս աշխարհիս իշխանը «Իմ վրաս բան մը չունի»—և հետևաբար, Իր հետևորդներով ալ ուրիշ բանի մը համար հետաքրքրուած չէ՝ բայց եթէ հակառակելու, փորձելու, նեղելու և խոշտանգելու զանոնք․ (Յովհ․ ԺԴ․ 30։ Բ․ Կորնթ․ ԺԲ․ 7)—որով՝ ներկայ չար աշխարհին կամ դարաշրջանին մէջ ո՛վ որ աստուածահաճոյ կեանք մը ուզէ ապրիլ, պիտի հալածուի ու տառապի, մինչդեռ ամբարիշտները կ'ուռճանան կանանչ սարդենիի մը պէս։—Բ․ Տիմ․ Գ․ 12։ Սաղմ․ Լէ․ 35։

Յիսուս ըսաւ․ «Իմ Թագաւորութիւնս այս Աշխարհէն չէ»․ և մինչև որ այդ դարաշրջանը կամ «գալիք Աշխարհը» չգայ, Քրիստոսի Թագաւորութիւնը երկիրը պիտի չտիրապետէ։ Ու ատոր համար մեզ պատուիրած է յուսալ և աղօթել՝ «Քո՛ւ Թագաւորութիւնդ գայ, Քո՛ւ կամքդ ըլլայ երկրի վրայ»։ Սատանան՝ «այս Աշխարհի խաւարին իշխանն է»․ և «խաւարը կը ծածկէ երկիրը, և թանձր խաւարը՝ ժողովուրդը»․ անիկա ներկայիս ապստամբութեան որդւոցը ներսի դին կ'իշխէ ու կը գործէ։—Եփես․ Բ․ 2։ Զ․ 12։

Յայտնապէս, Մեծ Ճարտարապետին մարդկային փրկութեան Ծրագրէն կարևոր բաժին մը դեռ լրացած ըլլալու չէ—եթէ ոչ, Նոր Իշխանն ու Տնօրինութիւնը երկար ատենէ ի վեր հաստատուած պիտի ըլլային։ Թէ ինչո՛ւ ասիկա որոշեալ ժամանակուան մը համար յետաձգուած է, և թէ ի՛նչ կերպով Սատանային ներկայ իշխանութիւնը տեղի պիտի տայ Քրիստոսի արդար տիրապետութեանը՝ հետաքրքրական հարցեր են, որոնք աւելի գոհացուցիչ կերպով պիտի լուսաբանենք վերջէն։ Կը բաւէ միայն սա չափը ըսել ներկայիս, թէ այս աշխարհիս թագաւորութիւնները՝ որոնք Սատանային հպատակած են, որոշեալ ժամանակին մեր Տիրոջը և Իր Օծեալինը պիտի ըլլան։ (Յայտ. ԺԱ. 15)։ Կապակցութիւնը այնպէս կը ցուցնէ՝ թէ փոխանցումը համատարած նեղութեան ժամանակով մը տեղի պիտի ունենայ, որուն ակնարկելով Յիսուս ըսաւ. «Մէկը չի կրնար զօրաւոր մարդու մը տունը մտնելով անոր կարասիները յափշտակել, թէ որ առաջ այն զօրաւոր մարդը չկապէ, ու ետքը անոր տունը կողոպտէ»։ (Մարկ. Գ. 22—27)։ Այսպէս, կը տեսնուի թէ Սատանան պէտք է որ կապուի ու գահազրկուի, Քրիստոսի արդարութեան և խաղաղութեան տիրապետութեան հաստատուելէն առաջ։ Հետևաբար՝ Սատանային կապուիլը Նոր Տնօրինութեան առաջին գործը պիտի ըլլայ։—Յայտ. Ի. 2։

Պէտք չէ մոռնալ թէ մեր երկրագունդը այս բոլոր «Աշխարհ»ներուն և Տնօրինութիւններուն խարիսխն է. ու թէև տարբեր դարերու Տնօրինութիւններ կուգան և կ'անցնին՝ բայց երկիրը միշտ կանգուն կը մնայ—«Երկիրը միշտ կը մնայ»։ (Ժող. Ա. 4)։ Միևնոյն այլաբանական ոճը գործածելով՝ Պետրոս այս դարաշրջաններուն իւրաքանչիւրը տարբեր Երկինք մը ու Երկիր մը կ'անուանէ։ Հոս՝ Երկինք բառը,

այլաբանական իմաստով, կը ներկայացնէ իշխող վերին կամ հոգեղէն, կրօնական զօրութիւնները. իսկ **Երկիրը**՝ մարդկային կառավարութիւնները և ընկերային կարգ ու սարքերը: Առաջին Երկինքն ու Երկիրը, կամ այն ատենուան վերաբերող կարգերն ու կարգադրութիւնները, իրենց նպատակին ծառայած ըլլալով՝ Ջրհեղեղով վերջացան: Բայց բնական երկինքը (երկնակամարն ու մթնոլորտը) և երկիրը չը ջնջուեցան, մնացին ուր որ էին: Այսպէս ալ ներկայ Աշխարհը, (երկինքն ու երկիրը) մեծ շառաչիւնով մը պիտի անհետանայ; պիտի այրուի և լուծուի— խառնակութեան, տառապանաց և քայքայման շըրջանով մը: Ներկայի կառավարական և ընկերական դրութիւններն են որ պիտի ոչնչանան, և ո՛չ թէ բնական երկնակամարն ու երկրագունդը: Ներկայի **Երկինքը**՝ (իշխող հոգեղէն զօրութիւնները, կրօնական կազմը) պէտք է որ այլեւս տեղի տայ «Նոր Երկինքին»—Քրիստոսի ի մօտոյ հաստատելիք հոգեղէն իշխանութեան առջև: Այժմու Երկիրը՝ (Սատանայի իշխանութեան ներքև կազմակերպուած մարդկային ընկերութիւնը), անհրաժեշտ է որ (խորհրդաբանական իմաստով) հալի ու ցնդի «Տիրոջը Օրուան»ը սկիզբը, որը «փուռի մը պէս պիտի այրէ» (Մաղ. Դ. 1), և որուն պիտի յաջորդէ «Նոր Երկիր մը», այսինքն՝ երկրիս Նոր Իշխանին՝ Քրիստոսի կամքին համաձայն վերակազմուած մարդկային ընկերութիւն մը: Երբ ներկայ դրութեանց յաջորդէ նոր ու լաւագոյն Թագաւորութիւնը, որուն հիմը պիտի ըլլայ բացարձակ Արդարութիւնը, այն ատեն մարդոց մէջ արդարութիւն, խաղաղութիւն և սէր պիտի տիրէ:

Գօղտօ՝ գալիք Տնօրինութեան կամ ինչպէս որ ինք կ՚անուանէ՝ «Գալիք Աշխարհ»ին նկատմամբ

յայտնութիւններ առաջ։ Նա կ՚ըսէ թէ ինք «յափըշտակուեցաւ» (որուն մտաւորապէս կամ մարմնաւորապէս ըլլալը չէր կրնար ըսել, որովհետեւ տեսածները խիստ իրական կը թուէին), դէպի այն ժամանակները՝ ուր ամէն ինչ նոր վիճակի մը վերածուած պիտի ըլլայ, «Նոր Երկինք»ը, այսինքն «Երրորդ Երկինք»ը։ Անիկա տեսաւ ա՛յնպիսի բաներ, որոնք տեղի պիտի ունենան Քրիստոսի հողեղէն իշխանութեան ներքեւ. բաներ՝ որոնք երեւան հանելու հրաման չունէր։ (Բ. Կորնթ. ԺԲ. 2—4)։ Անտարակոյս՝ ասոնք այն միեւնոյն բաներն էին որոնք Յովհաննէս վերջէն տեսաւ, եւ որ թոյլատրուած էր Եկեղեցիին իմացնելու խորհրդապատկերներով, որոնք իրենց որոշ ժամանակին մէջ միայն պիտի հասկցուէին։ Յովհաննէս՝ Պատմոս Կղզիին վրայ մեր Տիրոջմէն տրուած յայտնութեամբը առաջնորդըուած՝ տեսաւ այս ամբողջ Քրիստոնէական Դարը իր եկեղեցական ու քաղաքական իրերայաջորդ երեւոյթներովը մինչեւ ներկայ չար աշխարհին կամ դարաշրջանին վախճանը. եւ հոն՝ նո՛յնպէս, մարգարէաբար տեսաւ Սատանային կապուիլը, Քրիստոսի Թագաւորելը, եւ Նոր Երկնքին ու Նոր Երկրին հաստատուիլը. ինչու որ առջի Երկինքն ու Երկիրը այլեւս անցած էին։—Յայտ. ԻԱ. 1։

## ԴԱՐԵՐ ԿԱՄ ՏՆՕՐԻՆՈՒԹԻՒՆՆԵՐ

Այժմ նկատի առնենք այս մեծ դարաշրջաններուն ստորաբաժանուած դարերը, որոնք հետեւեալ կերպով պատկերացուած են։



*Այս մեծ դարաշրջաններուն («Աշխարհներ»ուն) առաջինը՝ ստորաբաժանումներ չունէր։ Ադամի անկումէն մինչև Ջրհեղեղ՝ մարդոց հանդէպ Աստուծոյ ունեցած վարուելակերպը բնաւ չփոխուեցաւ։ Աստուած Իր Օրէնքը տուած էր մարդուն, քանդակելով զայն բուն իսկ անոր բնութեանը մէջ. բայց անոր մեղանչումէն յետոյ, մասամբ, զայն իր ընթացքին թողուց, որ իր սկսած «չարունակաբար չար» ու անկումէ անկում առաջնորդող ճամբայէն ընթանայ, որպէսզի այդ կերպով մարդը ըմբռնէ իր տխմարութիւնը. և Աստուծոյ իմաստութիւնը որ բացարձակ հնազանդութիւն կը պահանջէր՝ երևան գայ։ Այդ Տնօրինութիւնը Ջրհեղեղով փակուեցաւ, որը բացի հաւատացեալ Նոյէն ու իր ընտանիքէն՝ ջնջեց մնացեալ ամբողջ մարդկութիւնը։ Այսպէս՝ առաջին Տնօրինութիւնը ո՛չ միայն ի յայտ բերաւ մեղաց աղէտալի հետևանքները, հապա նաև ցոյց տուաւ՝ թէ մեղաց ձգտումը ստորնացուցիչ է, և դէպի մեծագոյն անկումներու և չարիքներու կ'առաջնորդէ, ու զգալի կ'ընէ Եհովայի միջամտութեան անհրաժեշտութիւնը, եթէ «այն կորսուած»ին—մարդուն նախնական վիճակին—վերադարձը պիտի իրականանայ։*

*Երկրորդ դարաշրջանը կամ «Հիմակուան Աշխարհ»ը՝ երեք Դարերէ կը բաղկանայ, որոնց իւրաքանչիւրը չարիքին կործանումը փութացնող մէկ մէկ քայլեր են Աստուծոյ Ծրագրին մէջ։ Իւրաքանչիւր քայլ կը գերազանցէ իր նախորդը, ու Ծրագիրը յառաջ կը տանի անոր լրացումը փութացնելով։*

*Երրորդ Մեծ Դարաշրջանը—«գալիք Աշխահ»ը—որ կ'սկսի Քրիստոսի երկրորդ անգամ գալէն յետոյ, կը պարունակէ Հազարամեայ Դարը կամ «Վերահաստատութեան Ժամանակները», որուն պիտի յաջոր-*

դէն ուրիշ «գալիք Դարեր», որոնց մասին մանրամասն տեղեկութիւն տրուած չէ մեզի։ Մեր ներկայիս ունեցած յայտնութիւնները միայն մարդուն մեղքէն ազատուիլը կը պատկերացնեն, և ո՛չ թէ այն յաւիտենական փառքերը որոնք պիտի յաջորդեն։

«Հիմակուան Աշխարհ»ի առաջին Դարը՝ ՆԱՀԱՊԵՏԱԿԱՆ ԴԱՐ կամ Տնօրինութիւն կը կոչենք, ինչու որ այդ շրջանին Աստուծոյ յարաբերութիւններն ու շնորհները մի քանի անհատներ միայն կը վայելէին. մնացեալ ամբողջ մարդկութիւնը գրեթէ անտեսուած էր։ Այդ առանձնաշնորհեալ անձերէն էին՝ Նոյ, Աբրահամ, Իսահակ և Յակոբ նահապետները։ Յակոբի մահուամբը այդ Դարը կամ Վարուելակերպն ալ վերջացաւ։ Ու անկէ յետոյ, առաջին անգամը ըլլալով, Յակոբի զաւակները «Իսրայէլի տան և երկու ցեղերը» կոչուեցան, ու ամէնը ի մի առնըուած իբրև Աստուծոյ «սեփհական ժողովուրդ»ը ճանչցուեցան, որոնք այլաբանական գոհագործութեանց շնորհիւ այլաբանօրէն «սուրբ ժողովուրդ մը» եղան, միւս ազգութիւններէն մասնաւոր նպատակի մը համար զատուեցան ու կարգ մը առանձնաշընորհումներ ստացան։ Աստուածային Ծրագրին այս բաժնին յատկացուած ժամանակամիջոցը, սկըսած Յակոբի մահէն մինչև Քրիստոսի մահը, Հրէական Դար կամ Օրէնքի Տնօրինութիւն կը կոչենք։ Այդ Դարու տևողութեանը Աստուած մասնաւորապէս Հրէայ ժողովուրդը օրհնեց։ Անո՛նց էր որ յանձնարարեց Իր Օրէնքը. անո՛նց հետն էր որ մասնաւոր Ուխտ մ'ըրաւ. անո՛նց էր որ տուաւ Տաղաւարը, որուն Սրբութիւն Սրբութեանցի հրաշափառ լոյսը՝ Աստուծոյ, իրենց Առաջնորդին ու Թագաւորին իրենց մէջ ներկայութեան նշանն էր։ Անո՛նց էր որ ղրկեց մարգարէները և վերջն ալ Իր Որդին. անո՛նց

*մէջ էր որ կատարեց Յիսուս Իր հրաշքներն ու քարոզութիւնները. ո՛չ Ինքը գնաց ուրիշներուն, և ո՛չ ալ թողուց աշակերտներուն որ շրջակայ ազգերուն երթան: Երբ զանոնք այս ու այն կողմ կը ճամբէր, ըսաւ. «Հեթանոսներու ճամբայ մի՛ երթաք, ու Սամարացիներու քաղաք մի՛ մտնէք. հապա՝ աւելի Իսրայէլի տանը կորսուած ոչխարներուն գացէք»: (Մատթ. Ժ. 5, 6): Եւ նոյնպէս՝ «Ես ուրիշի մը չղրկուեցայ՝ բայց միայն Իսրայէլի տանը կորսուած ոչխարներուն»: (Մատթ. ԺԵ. 24): Թէ՝ այս ազգային շնորհը վերջ գտաւ երբ Յիսուսը մերժեցին ու խաչեցին՝ յայտնի է Յիսուսի խօսքերէն, երբ Իր խաչելութենէն հինգ օր առաջ յայտարարեց. «Ձեր տունը ձեզի աւերակ պիտի մնայ»:—Մատթ. ԻԳ.* 38:

*Հոն՝ Յիսուսի մահուամբը՝ Նոր Դար մը սկսաւ—ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ԴԱՐԸ կամ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ՏՆՕՐԻՆՈՒԹԻՒՆԸ, որուն մէջ պիտի քարոզուէին արդարացման ուրախ լուրերը, ո՛չ միայն Հրէից՝ հապա բոլոր ազգաց համար. ինչու որ Յիսուս Քրիստոս՝ Աստուծոյ ողորմութեամբը՝ ամէն մարդու համար մահ ճաշակեց: Այս Աւետարանական Դարուն ալ դասակարգ մը մասնաւոր շնորհաց կանչըուած է, որոնց տրուած են մասնաւոր խոստումները, և որոնք հաւատքի միջոցաւ Յիսուս Քրիստոսը կ'ընդունին իբրև իրենց Փրկիչն ու Տէրը և Անոր քայլերուն կը հետևին: Մօտաւորապէս* 1900 *տարիներէ ի վեր երկրիս այս ու այն մասին վրայ Աւետարանը քարոզուած է. այնպէս որ ներայլիս կարելի է ըսել թէ՝ ան քիչ թէ շատ* ամէն ազգաց *մէջ վկայութիւն մ'եղած է: Ազգերը հաւատացեալներու չվերածուեցան այդպիսով. և ո՛չ ալ Աստուծոյ կամքն էր որ այդ բանը ներկայ Դարուս մէջ տեղի ունենայ. Ներ-*

կային այլեւայլ ցեղերէ ու ազգերէ որոշ նկարագրի տէր անձերու խումբ մը կը հաւաքուի, որոնք սակայն մեծ թիւ մը չեն կազմեր, հապա՝ ինչպէս որ նախաձայնեց Յիսուս՝ «փոքրիկ հօտ» մըն են միայն, որոնց յաջորդ Դարուն մէջ Թագաւորութիւն տալը Հօրը բարեհաճութիւնն է։—Ղուկ. ԺԲ. 32։

Ներկայ Դարուն հետ «հիմակուան չար աշխարհ»ն ալ կը վերջանայ. և լաւ նկատեցէք, թէ թէև Աստուած մինչև ցարդ, երևութապէս, Իր գործունէութեան ի վնաս՝ թոյլատրած է որ չարութիւնը գերիշխէ ու տիրապետէ, սակայն այդ բոլորին հակառակ, Իր հաստատուն և ամրապինդ Ծրագրին համաձայն, և կանխորոշուած ժամանակաշրջաններուն կարգովն ու կանոնովը, Իր լուրջ նպատակներն են որ անարգել կը յառաջդիմեն։ Այս Դարու վերջաւորութեանը. և յաջորդող Հազարամեայ Դարու սկսած ատեն, իբր նախապատրաստութիւն Քրիստոսի Թագաւորութեան հաստատմանը, և իբր սկզբնաւորութիւն այն «գալիք աշխարհին՝ որուն մէջ արդարութիւն կը բնակի՝» Սատանան պիտի կապուի ու իր իշխանական զօրութիւնը խորտակուի։

Հազարամեան՝ որ հազար տարի կը նշանակէ, առհասարակ, իբրև անուն գործածուած է այն ժամանակաշրջանին, որը յիշուած է Յայտ. Ի. 4-ին մէջ, և որը Քրիստոսի տիրապետութեան հազար տարին է, «գալիք Աշխարհ»ի Դարերուն առաջինը։ Ադամի անհնազանդութեամբ կորսուած բոլոր բաները Հազարամեայ Դարուն մէջ պիտի վերստացուին (Գործ. Գ. 19—21). և անոր վերջանալէն առաջ, ամէն աչքերէ արտասուքները սրբուած պիտի ըլլան. ու անոր սահմանէն անդին, գալու երանաւէտ Դարերուն մէջ, ա՛լ մահ պիտի չ'ըլլայ. ո՛չ սուգ, ո՛չ աղաղակ, և ո՛չ իսկ ցաւ մը գոյութիւն պիտի ու-

նենայ։ Առաջուան բաները անհետացած պիտի ըլլան։ (Յայտ. ԻԱ. 4)։ Աստուծոյ յայտնութիւնները աւելի տեղեկութիւն չեն տար մեզի, որով հոս կանգ կ՚առնենք։

Մենք հոս հարեւանցի ակնարկ մը միայն նետած ենք այս Դարերու Ծրագրին պարզ ուրուագծին վրայ։ Ո՛րքան որ ուսումնասիրենք զայն, նո՛յնքան ալ կատարեալ ներդաշնակութիւն, գեղեցկութիւն և կանոնաւորութիւն պիտի նշմարենք անոր մէջ։ Ամէն մէկ Դար իր յատուկ բաժինը ունի կատարելիք, որը անհրաժեշտ է Աստուծոյ ընդհանուր Ծրագրին անթերի ձեւակերպմանը համար։ Ծրագիրը յառաջդիմական է, և որը աւելի կը պարզուի դարէ ի դար, ու այս և այն կերպով՝ Ճարտարապետ Աստուծոյ սկզբնական նպատակին մեծ իրագործմանը կը դիմէ, «Որ ամէն բան Իր կամքին խորհրդովը ի գործ կը դնէ»։ (Եփես. Ա. 11)։ Այս մեծ ժամանակաշրջաններէն և ո՛չ մէկը իր որոշեալ նպատակին գործադրմանը համար ժամ մը աւելի կամ պակաս է։ Աստուած՝ թէ՛ ժամանակներու և թէ՛ միջոցներու կիրարկմանը մէջ իմաստուն տնտեսագէտ մ՚է, թէև Իր հարստութեան աղբիւրները անհաշուելի են. և չկայ ո՛և է զօրութիւն մը, նոյնիսկ չարակամ, որ կարենայ պահիկ մ՚իսկ յետաձգել կամ խափանել Իր նպատակները։ Ամէն ինչ, թէ՛ բարի և թէ՛ չար, Աստուածային դերակայութեան և վերհսկողութեան շնորհիւ, միասին կը գործակցին Անոր նպատակները իրականացնելու։

Անտեղեակ ու տգէտ մտքի մը համար, որը Աստուծոյ Ծրագրի բազմակնճիռ մեքենային միայն մէկ պզտիկ մասը կը տեսնէ, ամէն ինչ անիշխանային, խառնափնդորութիւն և ձախողուածք մը ըլլալ կը թուի, ճիշտ այնպէս՝ ինչպէս որ մանուկի մը համար

պիտի երևի բազմակնճիռ մեքենայ մը կամ անոր նոյնիսկ մէկ մասը: Անիկա բոլորովին անըմբռնելի պիտի ըլլայ իր տհաս և անուս մտքին համար, և մեքենային անիւներուն ու փոկերուն այլևայլ ուղղութեամբ ըրած շրջանները պարզ խառնակութիւն մը պիտի թուին իրեն: Բայց հասուն և խուզարկու միտք մը որոշ կերպով պիտի կրնայ տեսնել, թէ այդ երևութային խառնաշփոթութիւնը հիանալի ներդաշնակութիւն մը կը պարունակէ ու պատուական արդիւնքներ կ'ընծայէ: Այդ մեքենային յաջողակութիւնը ա՛յնքան իրական էր երբ մանուկը անկարող էր ըմբռնել անոր գործունէութեան եղանակը, որքան յետոյ, երբ այլևս կարող եղած էր: Եւ այսպէս՝ մինչդեռ Աստուծոյ Ծրագիրը ինչպէս անցեալ Դարերուն՝ նոյնպէս ալ ներկայիս յաջող կերպով կը գործէ, մարդը իրեն համար պէտք ըլլալիք դասերը կ'ստանայ, ո՛չ միայն կարենալ ըմբռնելու համար անոր մանուածապատ գործելակերպերը, հապա նաև փորձով ալ ճանչնալու անոր երանաւէտ հետևանքները:

Երբ Աստուածային Ծրագրի ուսումնասիրութիւնը առաջ կը տանինք, անհրաժեշտ է որ լաւ միտք պահած ըլլանք այս Դարերը և իրենց առանձնայատուկ պաշտօններն ու նպատակները· ինչու որ՝ եթէ զանոնք անջատօրէն նկատի առնենք՝ բոլորովին անտեսելով մէկը կամ միւսը, չենք կրնար ընդհանուր Ծրագրին մասին որոշ գիտութիւն մ'ստանալ· այդ նպատակին համար պէտք է որ անոնց ամբողջն ալ ուշադրութեան առնենք· մէկ օղակը չի կրնար շղթայ մը կազմել, պէտք է որ մէկէ աւելի օղակներ իրարու միանան այդ բանին համար: Ընդհանուր Ծրագրին նկատմամբ ա՛յն ատեն կրնանք ճշգրիտ գաղափար մը ստանալ, երբ անոր իւրաքանչիւր բաժնին յատուկ

գործառնութիւնները կը տեսնենք. այսպէսով միայն կրնանք Ճշմարտութեան Խօսքը ուղիղ կերպով բացատրել:

Աստուծոյ Խօսքին մէկ ասացուածքը որ միայն մէկ դարաշրջանի կը պատկանի, պէտք չէ ուրիշի մը յատկացնել, որովհետև մասնաւոր Դարու մը վերագրուած բաները չեն կրնար միշտ ուրիշի մը համար ճշմարիտ ըլլալ: Զոր օրինակ՝ ճշմարտութեան հակառակ բան մը եղած պիտի ըլլար, եթէ ըսուէր ներկայիս համար թէ՝ Տիրոջը գիտութիւնը կը ծածկէ ամբողջ աշխարհը. կամ թէ՝ պէտք չկայ ըսելու դրացիիդ թէ Տէրը ճանչցիր: (Եսայի ԺԱ. 9: Երեմ. ԼԱ. 34): Ասիկա ներկայ Դարաշրջանին համար ճշմարտութիւն մ՚ըլլալէ խիստ հեռի է, և կարելի չէ որ իրականանայ, քանի որ Տէրը չէ վերադարձած և Իր Թագաւորութիւնը հաստատած. ներկայ Դարու ամբողջ տևողութեանը շատ մը մոլորեցուցիչ խաբէութիւններ աճած են, և մեզի ըսուած է թէ նո՛յնիսկ այս Դարու վերջաւորութեանը—«Վերջին օրերը... չար ու խաբեբայ մարդիկ չարութեան մէջ պիտի յառաջանան՝ մոլորեցնելով և մոլորելով»: (Բ. Տիմ. Գ. 1, 13): Հազարամեայ Դարուն մէջ է որ Մեսիայի տիրապետութեան իբր արդիւնք՝ գիտութիւնն ու արդարութիւնը պիտի ծածկեն երկիրը, ինչպէս ջուրերը կը ծածկեն ծովը:

Նոյնանման և խիստ ընդհանրացած թիւրիմացութիւն մ՚է նաև հաւատալ՝ թէ ներկայիս արդէն իսկ հաստատուած է Աստուծոյ Թագաւորութիւնը որը կ՚իշխէ երկրիս վրայ. թէ՝ ներկայիս ազգերուն մէջ Իր կամքն է որ կը կատարուի: Ասիկա բացայայտօրէն կը հակասէ ճշմարտութիւնը. ինչու որ այս աշխարհի թագաւորութիւնները ճնշմամբ, անօրինութեամբ և խարդախութեամբ է որ կանգուն կը մնան

ու կը բարգաւաճին, այն համեմատութեամբ՝ ինչ համեմատութեամբ որ ժողովուրդին յառաճում ինքնագիտակցութիւնը կը թոյլատրէ։ Ներկայ «Աշխարհիս Իշխանը», Սատանան, պէտք է որ գահազրկուի, և իր հպատակ այժմու թագաւորութիւնները. մեր Տէրոջը և Իր Օծեալինը ըլլան, երբ Նա Իր զօրութիւնը պիտի ստանձնէ ու թագաւորէ։—Յայտ. Ի. 1—3։ ԺԱ. 15, 18։ Դան. Է. 13, 14, 27։ Եսայի ԼԲ. 1—5։ Սաղմ. ՀԲ. 1—19։

---

## Ո՛Վ ԱՍՏՈՒԱԾ

Կապոյտ երկընքէն մեր գըլխուն վերև
Կախուած ջահ-արև,
Գիշերուան լուսինն ու աստղերն ամէն
Փառքըդ կը պատմեն։

Կանաչ դաշտին մէջ հոս հոն ցանուած
Գունազեղ ծաղկանց
Երփներանգ փունջերն՝ յոյժ գեղեցկօրէն
Հանճարդ կը յայտնեն։

Օրօրոցէն իսկ մեռնող մանուկին
Մահը՝ պարզ, մեկին
Կոթող մ'է կանգուն, վկայ յաւիտեան
Քու արդարութեան։

Բայց խաչէն կախուած մարմինն Յիսուսի,
Որդւո՛յդ սիրելի,
Գին մեր փըրկութեան, է դըրաւական
ՍԻՐՈՅԴ անսահման։

# ԳԼՈՒԽ Ե.

## «ԱՅՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ ՈՐ ԾԱԾԿՈՒԱԾ ԷՐ ԱՌՋԻ ԴԱՐԵՐԷՆ ՈՒ ԱԶԳԵՐԷՆ, ՀԻՄԱ ԻՐ ՍՈՒՐԲԵՐՈՒՆ ՅԱՅՏՆՈՒԵՑԱՒ»։ ԿՈՂ. Ա. 26։

Առաջին Խոստման Աղօտ Լոյսը.—Աբրահամի Տրուած Խոստումը.—Յոյսը Յապաղած.—Հոգեգալստեան՝ Խորհուրդը Կ'սկսի Պարզուիլ.—Խորհուրդին Ինչ ըլլալը.—Ինչո՞ւ Համար Այսքան Երկար Ատեն Խորհուրդ մը Պահուած է.—Դեռ Աշխարհին Համար խորհուրդ մ'է.—Յարմար Ատենին Բոլորին պիտի Յայտնուի.—Ե՞րբ պիտի Լրանայ խորհուրդը։

*ՄԻՆՉԴԵՌ մարդկութիւնը չարիքի պատիժին ներքևն էր՝ առանց կարենալ ըմբռնելու անոր պէտքը, Աստուած կրկին ու կրկին յայտնեց, զանոնք գալիք Փրկչի մը միջոցաւ վերականգնելու և օրհնելու Իր դիտաւորութիւնը։ Բայց թէ ո՛վ պիտի ըլլար այդ Ազատարարը՝ խորհուրդ (գաղտնիք) մ'էր, ամբողջ չորս հազար տարի. և միայն Քրիստոսի յարութենէն վերջն էր, Քրիստոնէական կամ Աւետարանական Դարու սկզբնաւորութեանը՝ երբ ան սկսաւ որոշ կերպով յայտնուիլ։*

*Ետ նայելով դէպի այն ժամանակը՝ երբ կեանքն ու Եղեմական երջանկութիւնը մեր նախածնողաց միջոցաւ կորսուած էին, մենք զանոնք կը տեսնենք մահուան արդար պատիժին ներքև. վշտալից, ու նո՛յն իսկ զուրկ յուսոյ նշոյլէ մը, բացի անկէ՝ որ նշմարուած էր այն աղօտ ասացուածքէն՝ թէ կնոջը*

*սերունդը պիտի ջախջախէ օձին գլուխը։ Թէև իրերու յաջորդական պարզացման լոյսին ներքև ասիկա մեզ համար նշանակութեամբ լեցուն է, սակայն անոնց համար աղօտ ու տկար լոյս մ'էր։ Գրեթէ երկու հազար տարի սահեցաւ առանց իրականացման ո'և է ապացոյցի։*

*Մօտաւորապէս երկու հազար տարի վերջը՝ Աստուած կանչեց Աբրահամը, ու խոստացաւ որ անոր սերունդը պիտի օրհնէ աշխարհի բոլոր ազգերը։ Ասիկա այնպէս ցոյց կուտար թէ Աստուած դեռ Իր կանխաւ յայտնած նպատակը կը հետապնդէր, ու հիմա կարծես թէ պիտի իրականացնէր զայն։ Անցան ժամանակներ․ խոստացեալ Քանանու երկիրը դեռ իր ստացուածքը չէր եղած․ անոնք դեռ սերունդ չունէին․ ու Աբրահամ և Սարրա ծերացած էին։ Աբրահամ խորհեցաւ թէ պէտք է օգնէ Աստուծոյ Անոր խոստումը իրականացնելու համար․ որով Իսմայէլը ծնաւ։ Սակայն իր օգնութեանը պէտք չկար, որովհետև* որոշեալ ատենին, *Իսահակ՝ յուսոյ և խոստման որդին՝ ծնաւ։ Որով այնպէս թուեցաւ թէ ազգերը օրհնող խոստացեալ իշխանը եկած էր։ Բայց ո'չ։ Տարիներ անցան․ ու ըստ երևոյթին Աստուծոյ խոստումը ջուրը ինկած էր․ որովհետև Իսահակ մեռաւ․ նոյնպէս ալ իր ժառանգը՝ Յակոբ։ Սակայն ոմանց հաւատքը զօրաւոր կերպով խոստումին կառչած՝ ու Աստուծմէ վառ պահուած էր․ որովհետև Աստուած «այն ուխտը որ Աբրահամին հետ ըրաւ ու Իր երդումը Իսահակին՝ վերջէն ալ Յակոբին հաստատեց... ու Իսրայէլին՝ իբրև յաւիտենական ուխտ մը»։—Ա․ Մնաց․ ԺԶ․* 16, 17։

*Յակոբի մահուան ժամանակ, երբ անոր ազգատոհմը առաջին անգամը ըլլալով* **ԻՍՐԱՅԷԼԻ ՏԱՍՆԵՐԿՈՒ ՑԵՂԵՐԸ** *կոչուած էր, ու Աստուծմէ որպէս «ընտիր*

ազգ» մը ճանչցուած՝ (Ծննդ. ԽԹ. 28: Երկ. Օրինաց ԻԶ. 5) այն ակնկալութիւնը՝ թէ այս ազգը որպէս ամբողջութիւն ու որպէս Աբրահամի սերունդը, պիտի տիրէ Քանանը և օրհնէ աշխարհը՝ իր իրականացման վաղորդայնին մէջ կը թուէր ըլլալ. ինչու որ Եգիպտոսի շնորհաց ներքև անոնք զօրաւոր ազգ մը սկսեր էին ըլլալ: Բայց լոյսը գրե՛թէ ոչնչացած էր ու խոստումը գրե՛թէ մոռցուած՝ երբ Եգիպտացիները զանոնք իրենց տիրապետութեան ներքև բերելով՝ երկար տարիներ իբր գերիներ գործածեցին:

Արդարև, Աստուծոյ խոստումները խորհրդաւոր կերպով ծածկուած էին, ու Անոր ճամբաները անզննելի կը թուէին ըլլալ: Սակայն որոշեալ ժամանակին եկաւ Մովսէս՝ Մեծ Ազատարար մը, որուն ձեռքովը Աստուած զանոնք գերութենէ արձակեց, անոնց համար զօրաւոր հրաշքներ ընելով: Քանան մտնելէ առաջ այս մեծ Ազատարարը մեռաւ. բայց նա որպէս Տիրոջը ներկայացուցիչը ըսաւ. «Ձեր Տէր Աստուածը ձեր եղբայրներէն ինձ նման մարգարէ մը պիտի հանէ ձեզի»: (Երկ. Օրինաց ԺԸ. 15: Գործ. Գ. 22): Ասիկա Աստուծոյ ծրագրին նկատմամբ հեռագոյն տեսութիւն մը տուաւ. ցոյց տալով թէ ո՛չ միայն իրենց ազգը, որպէս ամբողջութիւն, կերպով մը պիտի ընկերանայ ապագայի իշխելու և օրհնելու գործին, հապա՝ թէ իրենցմէ մէկը պիտի ընտրուի, որը դէպի յաղթութիւն պիտի առաջնորդէ, ու իրականացնէ խոստումը: Այս Յեսու, որուն անունը ազատարար կամ փրկիչ կը նշանակէ՝ իրենց առաջնորդը եղաւ, և որուն միջոցաւ մեծ յաղթանակներ շահեցան, ու իրականապէս մտան այն երկիրը որ ուխտին մէջ խոստացուած էր: Անտարակոյս, այնպէս կը թուէր թէ իրական առաջնորդը

սերունդը պիտի ջախջախէ օձին գլուխը։ Թէև իրերու յաջորդական պարզացման լոյսին ներքև ասիկա մեզ համար նշանակութեամբ լեցուն է, սակայն անոնց համար աղօտ ու տկար լոյս մ'էր։ Գրեթէ երկու հազար տարի սահեցաւ առանց իրականացման ո'և է ապացոյցի։

Մօտաւորապէս երկու հազար տարի վերջը՝ Աստուած կանչեց Աբրահամը, ու խոստացաւ որ անոր սերունդը պիտի օրհնէ աշխարհի բոլոր ազգերը։ Ասիկա այնպէս ցոյց կուտար թէ Աստուած դեռ Իր կանխաւ յայտնած նպատակը կը հետապնդէր, ու հիմա կարծես թէ պիտի իրականացնէր զայն։ Անցան ժամանակներ. խոստացեալ Քանանու երկիրը դեռ իր ստացուածքը չէր եղած. անոնք դեռ սերունդ չունէին. ու Աբրահամ և Սառրա ծերացած էին։ Աբրահամ խորհեցաւ թէ պէտք է օգնէ Աստուծոյ Անոր խոստումը իրականացնելու համար. որով Իսմայէլը ծնաւ։ Սակայն իր օգնութեանը պէտք չկար, որովհետև որոշեալ ատենին, Իսահակ՝ յուսոյ և խոստման որդին՝ ծնաւ։ Որով այնպէս թուեցաւ թէ ազգերը օրհնող խոստացեալ իշխանը եկած էր։ Բայց ո'չ։ Տարիներ անցան. ու ըստ երևոյթին Աստուծոյ խոստումը ջուրը ինկած էր. որովհետև Իսահակ մեռաւ. նոյնպէս ալ իր ժառանգը՝ Յակոբ։ Սակայն ոմանց հաւատքը զօրաւոր կերպով խոստումին կառչած՝ ու Աստուծմէ վառ պահուած էր. որովհետև Աստուած «այն ուխտը որ Աբրահամին հետ ըրաւ ու Իր երդումը Իսահակին՝ վերջէն ալ Յակոբին հաստատեց... ու Իսրայէլին՝ իբրև յաւիտենական ուխտ մը»։—Ա. Մնաց. ԺԶ. 16, 17։

Յակոբի մահուան ժամանակ, երբ անոր ազգատոհմը առաջին անգամը ըլլալով ԻՍՐԱՅԷԼԻ ՏԱՍՆԵՐԿՈՒ ՑԵՂԵՐԸ կոչուած էր, ու Աստուծմէ որպէս «ընտիր

ազգ» մը ճանչցուած՝ (Ծննդ. ԽԹ. 28։ Երկ. Օրինաց ԻԶ. 5) այն ակնկալութիւնը՝ թէ այս ազգը որպէս ամբողջութիւն ու որպէս Աբրահամի սերունդը, պիտի տիրէ Քանանը և օրհնէ աշխարհը՝ իր իրականացման վաղորդայնին մէջ կը թուէր ըլլալ. ինչու որ Եգիպտոսի շնորհաց ներքև անոնք զօրաւոր ազգ մը սկսեր էին ըլլալ։ Բայց լոյսը գրե՛թէ ոչնչացած էր ու խոստումը գրե՛թէ մոռցուած՝ երբ Եգիպտացիները զանոնք իրենց տիրապետութեան ներքև բռնելով՝ երկար տարիներ իբր գերիներ գործածեցին։

Արդարև, Աստուծոյ խոստումները խորհրդաւոր կերպով ծածկուած էին, ու Անոր ճամբաները անզննելի կը թուէին ըլլալ։ Սակայն որոշեալ ժամանակին եկաւ Մովսէս՝ Մեծ Ազատարար մը, որուն ձեռքովը Աստուած զանոնք գերութենէ արձակեց, անոնց համար զօրաւոր հրաշքներ ընելով։ Քանան մտնելէ առաջ այս մեծ Ազատարարը մեռաւ. բայց նա որպէս Տիրոջը ներկայացուցիչը ըսաւ. «Ձեր Տէր Աստուածը ձեր եղբայրներէն ինծի նման մարգարէ մը պիտի հանէ ձեզի»։ (Երկ. Օրինաց ԺԸ. 15։ Գործ. Գ. 22)։ Ասիկա Աստուծոյ ծրագրին նկատմամբ հեռագոյն տեսութիւն մը տուաւ. ցոյց տալով թէ ո՛չ միայն իրենց ազգը, որպէս ամբողջութիւն, կերպով մը պիտի ընկերանայ ապագայի իշխելու և օրհնելու գործին, հապա՝ թէ իրենցմէ մէկը պիտի ընտրուի, որը դէպի յաղթութիւն պիտի առաջնորդէ, ու իրականացնէ խոստումը։ Ապա Յեսու, որուն անունը ազատարար կամ փրկիչ կը նշանակէ՝ իրենց առաջնորդը եղաւ, և որուն միջոցաւ մեծ յաղթանակներ շահեցան, ու իրականապէս մտան այն երկիրը որ ուխտին մէջ խոստացուած էր։ Անտարակոյս, այնպէս կը թուէր թէ իրական առաջնորդը

*եկած էր, որով խոստումը այլեւս լիուլի պիտի կատարուէր։*

*Բայց Յեսու մեռաւ. ու անոնք որպէս ազգ ո՛եւէ յառաջդիմութիւն չըրին մինչեւ Դաւիթ, եւ ապա Սողոմոն, որոնք որպէս թագաւորներ իրենց տրուեցան։ Հոն անոնք իրենց փառաց գագաթնակէտին հասան. բայց, փոխանակ խոստումին իրագործումը տեսնելու, անոնք շուտով զրկուեցան իրենց իշխանութենէն, ու օտար ազգաց հարկատու դարձան։ Ոմանք սակայն Աստուծոյ խոստման փարած մնացին, ու դեռ սպասեցին այն մեծ Ազատարարին՝ որուն միայն նախապատկերներն էին Մովսէս, Յեսու, Դաւիթ եւ Սողոմոն։*

*Յիսուսի ծնած ժամանակ գրեթէ ամէն մարդ ակընկալութեան մէջ էր Մեսիայի՝ Իսրայէլի գալիք Թագաւորին նկատմամբ, որը Իսրայէլի միջոցաւ աշխարհին պիտի տիրէր։ Սակայն Իսրայէլի իր գալիք Թագաւորին նկատմամբ տածած փառաց ու պատուի յոյսը, որ ներշնչուած էր նախատիպերէն ու մարգարէութիւններէն՝ եւ որոնք կ՚արտայայտէին Անոր մեծութիւնն ու զօրութիւնը, պատճառ եղաւ անոնց անտեսելու ուրիշ կարգ մը նախատիպեր ու մարգարէութիւններ, որոնք Անոր չարչարանքի ու մահուան գործը կը մատնանշէին որպէս մեղաւորներուն փրկագինը՝ որը պէտք էր օրհնութեանց գալէն առաջ տեղի ունենար։ Ասիկա նախապատկերացուած էր Եգիպտոսի գերութենէն ազատուելու ժամանակ մորթուած Զատկուայ գառնուկովը, Օրէնքի Ուխտը տրուած ատեն զոհաբերուած անասուններովը (Եբր. Թ. 11—20)։ Ժ. 8—18), եւ Քահանայութեան կողմէ տարուէ տարի շարունակաբար մատուցուած Քաւութեան օրուայ զոհերովը։ Անոնք անտեսեցին նոյնպէս մարգարէներուն ըսա-*

ծը՝ «որ առաջ կը վկայէր Քրիստոսի չարչարուիլը, ու անկէ ետև փառաւորուիլը»: (Ա. Պետ. Ա. 11): Որով, երբ Յիսուս եկաւ որպէս մի զոհ, չճանչցան զինքը. անոնք չգիտցան իրենց այցելութեան ժամանակը: (Ղուկ. ԺԹ. 44): Նոյնիսկ Անոր մօտէն հետեւողները խիստ շփոթուեցան, երբ Յիսուս մեռաւ. ու տխրութեամբ ըսին. «Մենք կը յուսայինք թէ Անիկա էր որ Իսրայէլը պիտի ազատէր»: (Ղուկ. ԻԴ. 21): Ըստ երեւոյթին՝ անոնց Անոր վրայ ունեցած վստահութիւնը խախտած էր: Անոնք թերացան տեսնելու թէ՝ իրենց առաջնորդին մահը Նոր Ուխտին երաշխաւորութիւնն էր, որուն ներքեւ պիտի գային օրհնութիւնները. իսկ ասիկա խոստացուած ուխտին մէկ մասնակի կատարումն էր: Սակայն երբ անոնք գիտցան թէ գերեզմանէն յարութիւն առած է, իրենց խամրած յոյսերը դարձեալ սկսան կենդանանալ (Ա. Պետ. Ա. 3). ու երբ Նա անոնցմէ բաժնուելու վրայ էր, երկար ատենէ ի վեր փայփայած ու յաճախ յետաձգուած իրենց յոյսին նկատմամբ հարցուցին, ըսելով. «Տէ՛ր՝ Իսրայէլի Թագաւորութիւնը ա՞յս ժամանակիս մէջ նորէն պիտի վերահաստատես»: Թէ անոնց յոյսերը գլխաւորապէս ուղիղ էին, թէպէտեւ կ'անգիտանային անոր կատարման ժամանակը՝ որոշ կերպով կը տեսնուի մեր Տիրոջ պատասխանէն. «Ձեզի չվերաբերիր ժամերն ու ժամանակները գիտնալը, որն որ Հայրը Իր իշխանութեանը մէջ դրաւ»:—Գործ. Ա. 6, 7:

Յիսուսի համբարձումէն յետոյ Իր աշակերտներուն հարցումը այն եղած ըլլալու էր՝ թէ ի՞նչ ուղղութիւն առած է ներկայիս Աստուծոյ Ծրագիրը. որովհետեւ պէտք է յիշենք որ մեր Տիրոջ՝ Թագաւորութեան նկատմամբ ուսուցումները գլխաւորաբար առակներով և մութ ասացուածքներով էին: Նա ը-

սած էր անոնց. «Ձեզի տակաւին շատ բաներ ունիմ ըսելու, բայց հիմա չէք կրնար տանիլ (ըմբռնել)։ Սակայն երբոր Նա՝ Ճշմարտութեան Հոգին գայ, ամէն ճշմարտութեան պիտի առաջնորդէ ձեզ»։ «Անիկա ձեզի բոլորը պիտի սորվեցնէ, ու ինչ որ ձեզի ըսի՝ միտքերնիդ պիտի բերէ»։ (Յովհաննու ԺԶ. 12, 13։ ԺԴ. 26)։ Որով անոնք չէին կրնար Հոգեգալուստի օրհնութեան գալէն առաջ ըմբռնել։

Նո՛յնիսկ այն ատեն, բաւական ժամանակ առաջ մինչև որ պայծառ ու լիուլի գիտակցութեան մը եկան կատարուած գործին, ու անոր սկզբնական ուխտին հետ ունեցած առնչութեան նկատմամբ։ (Գործ. ԺԱ. 9։ Գաղ. Բ. 12, 14)։ Սակայն այնպէս կը թուի թէ նո՛յն իսկ անոնց լիուլի և յստակօրէն հասկնալէն առաջ՝ իբրև Աստուծոյ թարգմանները, պատգամախօսները գործածուած էին, ու իրենց ներշնչուած խօսքերը՝ հաւանօրէն, իրենց հասկցածէն աւելի ճշմարտութեան պայծառ ու խոր արտայայտութիւններ էին։ Զոր օրինակ՝ կարդայ Յակոբոսի քարոզը, ուր նա կ՚ըսէ. «Շմաւոն պատմեց թէ Աստուած ի՛նչպէս առաջ այցելութիւն ըրաւ որ Հեթանոսներէն ժողովուրդ (հարս մը) առնէ Իր անուանը համար։ Եւ այս բանիս մարգարէից խօսքերն ալ կը միաբանին, ինչպէս որ գրուած է՝ Ասկէ վերջը (այս ժողովուրդին Հեթանոսներէն հաւաքուելէն վերջը) պիտի դառնամ ու Դաւիթին ինկած խորանը (աշխարհային իշխանութիւնը) նորէն պիտի շինեմ, և անոր կործանած տեղուանքը նորէն պիտի շինեմ ու կանգնեմ»։—Գործ. ԺԵ. 14—16։

Յակոբոս սկսաւ Աստուծոյ Նախախնամութեամբը կարդալ, երբ Պետրոսին միջոցաւ Աւետարանը առաջին Հեթանոս հաւատափոխին ղրկուած էր, իսկ Պօղոսին միջոցաւ ալ Հեթանոսաց, մասնաւորապէս,

թէ այս Դարու տեւողութեան, հաւատացեալ Հրէաներն ու Հեթանոսները հաւասարապէս շնորհ պիտի գտնեն։ Ապա նա պրպտեց մարգարէութիւնները ու այնպէս գրուած գտաւ. և թէ՝ այս Աւետարանական Դարու գործը լրանալէն վերջը պիտի կատարուին մարմնեղէն Իսրայէլի տրուած խոստումները։ Հետզհետէ՝ մեծ խորհուրդը, որ ա՛յնքան ժամանակներէ ի վեր ծածկուած էր, սկսաւ մի քանիներէն—Սուրբերէն, Աստուծոյ մասնաւոր «բարեկամներ»էն ըմբռնուիլ։

## «ՔՐԻՍՏՈՍ ՁԵՐ ՄԷՋԸ՝ ՓԱՌԱՑ ՅՈՅՍԸ»

Ասիկա է Աստուծոյ մեծ խորհուրդը որ ծածկուած էր անցեալ բոլոր դարերուն մէջ, և որը դեռ բոլորէն ծածկուած է բացի մասնաւոր դասակարգէ մը—սուրբերէն կամ ուխտուած հաւատացեալներէն։ Բայց ի՞նչ կը նշանակէ «Քրիստոս ձեր մէջը» ասացուածքը։ Մենք գիտենք թէ Ցիսուս Ս. Հոգիով օծուած էր (Գործ. Ժ. 38), որով զինքը Քրիստոս—Օծեալ—կը ճանչնանք. որովհետև Քրիստոս բառը օծեալ կը նշանակէ։ Ցովհաննէս Առաքեալ կ'ըսէ թէ այն օծումը զոր դուք (ուխտեալ հաւատացեալքդ) Իրմէն ընդունեցիք ձեր մէջը կը մնայ։ (Ա. Ցովհ. Բ. 27)։ Որով ներկայ Աւետարանական Դարու սուրբերը օծեալ խումբ մ'են—Աստուծոյ թագաւորներ ու քահանաներ ըլլալու համար օծուած (Բ. Կորնթ. Ա. 21։ Ա. Պետ. Բ. 9). և Ցիսուսի՝ իրենց Գլխուն ու Տիրոջը հետ, անոնք կը կազմեն Եհովայի Օծեալը—Քրիստոսը։

Ցովհաննէսի այս ուսուցումին համաձայն՝ թէ մենք ալ օծուած եմք, Պօղոս կ'ապահովցնէ մեզ թէ այն խորհուրդը որ անցեալ դարերուն ծածկուած

մնացած էր՝ է, թէ Քրիստոսը, (Օծեալը) «մէկ անդամ մը չէ, հապա շատ»․ ինչպէս որ մարդկային մարմինը մէկ է՝ բայց շատ մը անդամներ ունի, սակայն մարմնոյն բոլոր անդամները շատ ըլլալով հանդերձ մէկ մարմին են, այնպէս ալ է նաև Օծեալը—Քրիստոսը։ (Ա․ Կորնթ․ ԺԲ․ 12—28)։ Յիսուս օծուած է Գլուխ ու Տէր ըլլալու Եկեղեցիին վրայ, որը Իր մարմինն է (կամ Իր Հարսը, ինչպէս որ յայտնուած է ուրիշ պատկերով մը—Եփես․ Ե․ 25—30)․ և անոնք միասին՝ կը կազմեն խոստացեալ Սերունդը—Մեծ Ազատարարը․ «Եթէ Քրիստոսինն էք՝ ուրեմն Աբրահամի սերունդն էք, և խոստումին նայելով ժառանգներ»։—Գաղ․ Գ․ 29։

Առաքեալը զգուշութեամբ կը պաշտպանէ Եկեղեցին ո՛և է ենթադրական պահանջներու հանդէպ, ըսելով Յիսուսի մասին՝ թէ «Աստուած ամէն բան Անոր ոտքերուն տակը հնազանդեցուց, և զԱնիկա ամէն բաներու վրայ Եկեղեցիին գլուխ դրաւ, որը Անոր մարմինն է», «որպէսզի Նա ամէն բանի մէջ նախապատիւ ըլլայ։ (Եփես․ Ա․ 22։ Կող․ Ա․ 18)։ Սակայն մարդկային մարմնոյ պատկերովը, Նա գեղեցիկ ու ցայտուն կերպով կ՚արտայայտէ մեր մտերիմ բարեկամութիւնը։ Այս միևնոյն միութիւնը Յիսուս ալ յայտնեց, ըսելով, «Ես որթն եմ ու դուք ճիւղերն էք»։ Յովհաննու ԺԵ․ 5։

Մեր՝ Տէր Յիսուսի հետ ունեցած միութիւնը, որպէս անդամներ Քրիստոսի, օծեալ խումբին, գեղեցիկ կերպով պատկերացուած է բուրգի պատկերովը։

Գագաթնավէմը՝ ինքնին կատարեալ բուրգ մ՚է։ Անոր ներքև կարելի է ուրիշ քարեր ալ շարել, և եթէ գագաթնավէմի բոլոր յատկանշական գիծերուն համաձայն ըլլան; ամբողջ զանգուածը կատարեալ

*բուրգ մը պիտի ըլլայ։ Ասիկա ո՛րքան գեղեցիկ կերպով կը պատկերացնէ մեր դիրքը որպէս անդամներ «Սերունդ»ին—«Քրիստոս»ին։ Միացած ու կատարելապէս համաձայն մեր Գլուխին հետ, մենք՝ որպէս կենդանի քարեր՝ կատարեալ ենք. սակայն Իրմէ բաժնուած՝ ոչինչ ենք։*



*Յիսուս՝ Կատարեալը, խիստ բարձրացած է. ու ներկայիս մենք զմեզ Իրեն կը նուիրենք, որպէսզի Իր օրինակին նման կազմուինք ու ձևուինք, և որպէս Աստուծոյ շէնքը՝ դէպի վեր շինուինք։ Հասարակ շէնքի մը մէջ* գլխաւոր *անկիւնաքար չկայ. բայց մեր շէնքին մէջ գլխաւոր անկիւնաքար մը, «գագաթնավէմ» մը կայ, ինչպէս որ գրուած է. «Ահա՛, Սիոնի մէջ ընտիր՝ պատուական անկեան վէմ մը կը դնեմ»—«որուն մօտենալով այն կենդանի վէմին... դուք ալ կենդանի քարերու պէս կը շինուիք Հոգևոր տաճար մը, սուրբ քահանայութիւն մը, Յիսուս Քրիստոսի ձեռքովը Աստուծոյ հաճելի *պատարագներ մատուցանելու»։ (Ա. Պետ. Բ. 4—6)։ Ու խիստ մօտ ապագային, մենք կը յուսանք թէ Յի-*

---

*Սինաական բնագիրը զանց կ'ընէ «պատարագներ»ուն առջև դրուած *Հոգևոր* բառը։

տոսի՝ «Գլուխ»ին և «Եկեղեցիին, որ Անոր մարմինն է», միջև գտնուած միութիւնը պիտի ամբողջանայ։

Եւ մենք, յո՛յժ սիրեցեալք, շատ հարուածներու և շատ յղկումներու պարտինք համբերել—Մեծ Ճարտարապետին առաջնորդութեան ներքև՝ պէտք է որ մեծապէս կերպարանափոխուինք ու ձևակերպուինք Իր նմանութեանը. և որպէսզի կառուցանողին կարողութիւնը ու խոհականութիւնը մեր մէջ յայտնուի, պէտք է զգուշանանք յամառ կամք ունենալէ, որպէսզի չընդդիմանանք Անոր կամաց մեր մէջ կատարուելուն։Մենք մանուկի խիստ նման ու խոնարհ ըլլալու ենք—«խոնարհութիւն զգեցած. որովհետև Աստուած կը մերժէ հպարտը ու խոնարհին շնորհ կուտայ»։ Ուրեմն, մենք զմեզ խոնարհեցնենք Աստուծոյ հզօր ձեռքին ներքև, որպէսզի Նա մեզ յարմար ատենին բարձրացնէ (Ա. Պետ. Ե. 5, 6), ինչպէս որ Նա բարձրացուցեր է մեր Գլուխն ու Առաջնորդը։—Փիլիպ. Բ. 8, 9։

Ասիկա արդարև հիանալի աւետիս մ՚է. և երբ Աստուծոյ Խօսքին կը դիմենք մեր վերին կոչման նկատմամբ հարցաքննելու, բոլոր մարգարէները պերճախօս կը գտնենք այն շնորհին (պարգևին կամ օրհնութեան) քարոզութեանը նկատմամբ որը մեզի եկած է (Ա. Պետ. Ա. 10). մինչդեռ պատկերները առակները ու մինչև ցարդ մութ մնացած ասացուածքները ներկայիս կը պարզուին, իրենց լոյսը ցօղելով «նեղ ճամբուն» վրայ, ուր օծեալ (Քրիստոս) խումբը կանչուած է վազելու՝ ներկայիս տեսանելի մրցանակին համար։ Ասիկա արդարև խորհուրդ մ՚էր, որը անցելոյն մէջ բնաւ չէր երազուած—թէ Աստուած մտադրած է ո՛չ միայն Ազատարար մը հանել, հապա՝ ա՛յնպիսի Ազատարար մը, որը շատ

*մը անդամներէ բաղկացած պիտի ըլլայ։ Ասիկա է «վերին կոչումը», զոր շահելու առանձնաշնորհումը ունին Աւետարանական Դարու ուխտուած հաւատացեալները։ Յիսուս չջանաց բացատրել զայն Իր աշակերտներուն՝ երբ անոնք դեռ բնական մարդիկ էին. այլ սպասեց մինչև Հոգեգալուստ, ուր անոնք օծուեցան—նոր բնութեան յղացան։ Ս. Պօղոսի բացատրութենէն կը հասկնանք որ միմիայն «նոր արարածներ»ը ներկայիս կրնան գնահատել կամ ըմբռնել այս վերին կոչումը։ Նա կ'ըսէ. «Մենք Աստուծոյ ծածուկ իմաստութիւնը (ծրագիրը) կը խօսինք* խորհրդով, *որ աշխարհէն առաջ սահմանեց Աստուած մեր փառքին համար. որ զանիկա այս աշխարհիս իշխաններէն (գլխաւորներէն) մէկը չճանչցաւ... ինչպէս որ գրուած է՝ այն բաները որ աչք չէ տեսեր և ականջ չէ լսեր ու մարդու սրտին մէջ չէ ինկեր, Աստուած զինքը սիրողներուն պատրաստեց և մեզի յայտնեց Իր Հոգիովը»։—Ա. Կորնթ. Բ. 6—14։*

*Պօղոս իր Գաղատացւոց Թղթոյն մէջ կը պարզէ ամբողջ խորհուրդը, ու ցոյց կուտայ՝ թէ ի՛նչպէս Աբրահամական ուխտը պիտի իրականանայ։ Նա կը յայտնէ թէ Իսրայէլի տրուած Օրէնքը սկզբնական ուխտը չխափանեց (Գաղ. Գ. 15—18). և թէ՝ Աբրահամի սերունդը որ պիտի օրհնէ բոլոր ազգերը՝ Քրիստոսն է (Համար 16)։ Ապա ամբողջացնելով իր արդէն ակնարկած գաղափարը, թէ Քրիստոսը կը պարունակէ Հոգիէն յղացածները, կ'ըսէ. «Քանզի դուք ամէնքդ որ* Քրիստոսով *մկրտուեցաք, Քրիստոսը վրանիդ հագած էք... Հապա թէ որ Քրիստոսինն էք, ուրեմն ԴՈՒՔ (Յիսուսի հետ միասին)* Աբրահամի սերունդն էք, *ու խոստումին նայելով ժառանգներ» (Համարներ 27, 29)։ Տրամաբանութեան*

միևնոյն ուղղութեան հետևելով՝ նա կ՚ըսէ (Գաղ. Դ.) թէ Աբրահամ Եհովային պատկերն էր, Սառան՝ ուխտին կամ խոստումին, իսկ Իսահակ՝ Քրիստոսի (Գլուխին ու Մարմինին) պատկերը. ու կ՚աւելցնէ, «Ուստի մենք՝ եղբայրներ՝ Իսահակին նման խոստմունքին որդիներն ենք» (համար 28)։ Այսպէս ահա Աստուծոյ Ծրագիրը պատկերներով ծածկուած էր, մինչև որ Աւետարանական Դարով սկսաւ Քրիստոսի (օծեալ դասակարգին) զարգացումն ու պատրաստութիւնը։

Այս խորհուրդը թաքուն պահելու պէտք մը կար, եթէ ոչ այսպէս պիտի չպահուէր։ Անիկա կարևոր էր, որովհետև Ծրագիրը ամբողջապէս մարդկութեան յայտնելը զայն ի դերև հանել պիտի նշանակէր։ Եթէ մարդիկ գիտնային՝ պիտի չխաչէին փառաց Տէրը, և ո՛չ ալ Եկեղեցին՝ որը Անոր մարմինն է։ (Ա. Կորնթ. Բ. 8)։ Ո՛չ միայն Քրիստոսի մահը, որպէս մարդուն փրկագինը, պիտի խափանուէր՝ եթէ Ծրագիրը որպէս խորհուրդ պահուած չըլլար աշխարհէն, հապա նաև Եկեղեցիին հաւատքի փորձութիւնը՝ որպէս բաժնեկիցներ Քրիստոսի չարչարանաց, պիտի արգիլուէր. որովհետև աշխարհը մեզ չի՛ ճանչնար (որպէս Անոր ժառանգակիցները), ինչու որ (միևնոյն պատճառաւ) զԱնիկա ալ չճանչցաւ»։—Ա. Յովհ. Գ. 1։

Ո՛չ միայն Աստուծոյ Ծրագիրը, և Քրիստոսը որ այդ Ծրագրին մարմնացումն է, աշխարհին համար մեծ խորհուրդ մ՚է՝ հապա նաև այն տարօրինակ ընթացքը, որուն մէջէն քալել կանչուած է այս պզտիկ հօտը, իր անդամներուն տարօրինակ ժողովուրդի մը յատկանիշը կուտայ։ Աշխարհին համար խորհուրդ մ՚էր, թէ ա՛յնքան կարողութեամբ օծուած մէկը՝ ինչպէս Նազովրեցի Յիսուսը՝ Իր ժա-

մանակն ու տաղանդը պիտի վատնէր ա՛յնպէս ի՛նչպէս որ ըրաւ. մինչդեռ, եթէ Իր ուշադրութիւնը քաղաքականութեան, օրէնսդրութեան, վաճառականութեան և կամ ժողովրդական կրօնքի դարձնէր՝ կրնար մեծ ու պատկառելի մէկը ըլլալ։ Մարդկային տեսակէտէ, Անիկա յիմարօրէն վատնեց Իր կեանքը, ու անոնք ըսին. «Դև՛ կայ Անոր ներսի դին ու խելագարա՛ծ է»։ Անոր կեանքն և ուսուցումը անոնց համար խորհրդաւոր էին։ Չկրցան հասկնալ զԱյն։

Առաքեալներն ու անոնց ընկերակիցներն ալ նոյնպէս խորհուրդներ էին աշխարհին համար, որոնք կը լքէին իրենց անձնական գործն ու ակնկալութիւնները, եւն., անարգուած ու խաչուած Յիսուսի մահուամբը մեղաց թողութիւն քարոզելու համար։ Պօղոս՝ բարձր դիրք մը և ընկերական ազդեցութիւնը լքեց, ձեռքո՛վը աշխատելու օրապահիկի մը համար, և քարոզելու Քրիստոսը ու կենաց աններևոյթ պսակը բոլոր հաւատացեալներուն համար որոնք Անոր քայլերուն կը հետևէին։ Անիկա ա՛յնքան խորհրդաւոր էր որ ոմանք ըսին. «Կը խելագարիս՝ Պօ՛ղոս, շատ կարդալդ քեզ կը յիմարեցնէ»։ Ու ամէն անոնք որոնք այսպէս Տիրոջը քայլերուն կը հետևէին՝ Պօղոսին նման, յիմարներ կը սեպուէին Քրիստոսի պատճառաւ։

Սակայն Աստուծոյ Ծրագիրը շարունակ խորհուրդով պիտի չծածկուի. Հազարամեայ Օրուայ արշալոյսը Աստուծմէ աւելի մեծ լոյս կը բերէ մարդոց. «քանզի երկիրը Տիրոջը գիտութեամբը պիտի լեցուի»։ Ծագելիք Արդարութեան Արեգակը՝ որուն թևերուն վրայ բժշկութիւն պիտի ըլլայ, և որը պիտի ցրուէ տգիտութեան ու նախապաշարումի խաւարը, Քրիստոսն է՝ Իր Հազարամեայ փառքովը— որը ո՛չ միայն Գլուխէն բաղկացած է, հապա նաև

Իր մարմնոյն անդամներէն ալ. ինչու որ գրուած է. «Եթէ Անոր հետ չարչարուինք, Անոր հետ ալ պիտի փառաւորուինք»: «Երբ Քրիստոս՝ որ մեր կեանքն է, յայտնուի, այն ատեն դուք ալ Անոր հետ փառքով պիտի յայտնուիք»․ «Այն ատեն արդարները պիտի փայլին արեւի նման իրենց Հօրը Թագաւորութեանը մէջ»։—Հռովմ. Ը. 17։ Բ. Տիմ. Բ. 11, 12։ Կող. Գ. 4։ Մատթ. ԺԳ. 43։

Արդ՝ բացի անոնցմէ որոնք նոր մտքի մը յղացած են, «Քրիստոսի միտքը» ստանալով, մնացեալ բոլորին համար երեւակայական ու խիստ անհաւանական կը թուին այն խոստումները՝ որոնց մենք կը հաւատանք, ու այն յոյսերը՝ զոր կը փայփայենք: Ցառաջիկայ Դարուն՝ երբ Աստուած «Իր հոգին ամէն մարմնոյ վրայ պիտի թափէ», ինչպէս որ ներկայ Դարուս Իր «Ծառաներուն ու աղախիններուն» վրայ կը թափէ միայն, այն ժամանակ արդարեւ, բոլորն ալ պիտի ըմբռնեն ու գնահատեն այն խոստումները, որոնք ներկայիս «պզտիկ հօտ»էն ըմբռնուած են. ու անոնք պիտի հրճուին Եկեղեցիին հնազանդութեանը և բարձրացմանը համար, ըսելով. «խնդանք և ուրախանանք ու փառք տանք Աստուծոյ, որովհետեւ Գառնուկին հարսանիքը հասաւ, ու Անոր Կինը ինքզինքը պատրաստեց»: (Յայտ. ԺԹ. 7)։ Անոնք պիտի ուրախանան Եկեղեցիին փառաւորմանը համար, որուն միջոցաւ օրհնութիւնները այն ատեն իրենց համար պիտի հոսին. ու թէեւ անոնք պիտի ըմբռնեն թէ «ամենամեծ ու պատուական խոստումները», որոնք Օծեալէն (Գլուխէն ու Մարմինէն) ժառանգուած են՝ այլեւս իրենցը չեն, սակայն անոնք Եկեղեցիին ընծայած դասերովը պիտի օրհնուին. ու մինչդեռ անոնք այն ատեն իրենց խոստացուած օրհնութիւններուն համար պիտի վազեն, բայց Եկե-

*դեցիին օրինակէն մեծապէս պիտի օգտուին, ու անոր համար զԱստուած պիտի փառաւորեն։ Սակայն այս գիտութիւնը շահախնդրութիւն պիտի չպատճառէ. որովհետեւ նոր կարգ ու սարքին ներքեւ իրենց մարդկային կատարեալ կենաց, ու Եդեմական երջանկաւէտ դրախտի արժանանալու կոչը՝ լիուլի պիտի գոհացնէ զիրենք, որը աւելի բաղձալի պիտի թուի իրենց քան բնութեան փոփոխութիւն մը։*

*Այն ատեն «խորհուրդ»ը վերջացած պիտի ըլլայ. որովհետեւ աշխարհը պիտի տեսնէ՝ թէ անիկա զոր իրենք մինչեւ հիմա սխալ ըմբռնած էին՝ Աստուծոյ հոգին էր Քրիստոսի մէջ, եւ Քրիստոսի հոգին մեր մէջ—Աստուած մարմնով յայտնուած։ Յայնժամ անոնք պիտի տեսնեն թէ մենք խելագարած չէինք, եւ ո՛չ ալ յիմարներ. հապա՝ թէ մենք լաւագոյն մասը ընտրեցինք, երբ երկնային հարստութեան, փառաց ու պսակի համար մրցեցանք, իրենցմէ անտեսանելի՝ բայց յաւիտենական։*

*Որոշեալ ժամանակին Աստուծոյ խորհուրդը պիտի լրանայ. այսինքն՝ եօթներորդ (խորհրդաբանական) փողի հնչման ժամանակ։ (Յայտ. Ժ. 7)։ Ասիկա կը պատկանի խորհուրդին երկու տարբեր նշանակութիւններուն ալ՝ որոնց մէջ գործածուած է. խորհուրդը կամ Աստուծոյ* Ծրագրին *թաքուն մասերը այն ժամանակ պիտի գիտցուին ու որոշ կերպով տեսնուին. նոյնպէս ալ «Աստուծոյ խորհուրդ»ը՝ Եկեղեցին՝ այդ Ծրագրին մարմնացումը։ Այն ատեն երկուքն ալ լրացած պիտի ըլլան։ Թաքուն, ծածկըւած Ծրագիրը հաւաքած պիտի ըլլայ Քրիստոսի մարմնոյն կատարեալ, ամբողջ թիւը, որով ՔՐԻՍՏՈՍԻ ՄԱՐՄԻՆԸ պիտի ամբողջանայ։ Ծրագիրը այլեւս պիտի դադրի խորհուրդ մը ըլլալէ, որովհե-*

*եւ այլեւս ուրիշ պատճառ մը պիտի չկենայ անոր գաղտնիքը յաւերժացնելու։*

*Խորհուրդին մեծութիւնը, ա՛յսքան երկար գաղտնի պահուիլը, ու խոստումներու, պատկերներու և նախատիպերու մէջ թաքնուած ըլլալը, նոյնպէս և այս խորհուրդին մէջ ընկերակցութիւն ունենալու կանչուածներուն պարգեւուած շնորհը (Եփես. Գ. Թ), մեզի կը թելադրեն՝ թէ իր լրանալէն վերջը հետեւելիք գործը, որուն համար Եհովան ամբողջ վեց հազար տարի մարդկութիւնը ակնկալութեան ու յուսոյ մէջ պահած է՝ հսկայ գործ մը ըլլալու է, վսեմ գործ մը, արժանի ա՛յսքան նախապատրաստութեանց։ Ի՞նչ չենք կրնար ակնկալել աշխարհի վրայ թափուելիք օրհնութիւններէն, երբ խորհուրդին քօղը վերցուած է և օրհնութեանց տարափները սկսած են հոսիլ։ Ահա՛ այս է՝ որուն համար ամէն ստեղծուածները մինչև հիմա մէկտեղ կը հառաչեն ու ծնանելու ցաւ կը քաշեն, այս խորհուրդին լրանալուն սպասելով—Աստուծոյ Որդւոցը, խոստացեալ «Սերունդ»ին յայտնուելուն, որոնցմով անոնց բոլորն ալ պիտի օրհնուին։—Հռովմ. Ը.* 19, 21, 22։

# ԳԼՈՒԽ Զ.

## ՄԵՐ ՏԻՐՈՋ ՎԵՐԱԴԱՐՁԸ—ԱՆՈՐ ՆՊԱՏԱԿԸ. ԲՈԼՈՐ ԲԱՆԵՐՈՒ ՎԵՐԱՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆԸ

Մեր Տիրոջ՝ Հազարամեայէն Առաջ Անձնական Երկրորդ Գալուստը.—Անոր Առաջին Գալստեան հետ ունեցած Կապը.—Եկեղեցիին Ընտրութիւնը և Աշխարհի Դարձը.—Ընտրութիւն և Ջրի Շնորհ.—Յուսոյ Բանտարկեալները.—Մարգարէական Վըկայութիւնք Վերահաստատութեան Շուրջ.—Մեր Տիրոջ Վերադարձը Յայտնապէս Յոյսն է թէ՛ Եկեղեցիին և թէ՛ Աշխարհին։

*“Որ առաջուց ձեզի քարոզուած Յիսուս Քրիստոսը պիտի ղրկէ, որ զԱնիկա պէտք է որ երկինքը ընդունի մինչև այն ատենները՝ որ ամէն բաները կարգադրուին (Յունարէն՝ վերահաստատուին), որոնց համար Աստուած սկիզբէն ի վեր Իր սուրբ մարգարէներուն բերնովը խօսած է»։—Գործ.* Գ. 20, 21։

*Թէ՝ մեր Տէրը ուզեց որ Իր աշակերտները հասկընան թէ Նպատակի մը համար, կերպով մը, և օրին մէկը դարձեալ պիտի գայ, կը խորհինք թէ այս իրողութիւնները ընդունուած և հաստատուած են Ս. Գրոց մօտէն ծանօթ եղողներուն բոլորին կողմանէ։ Ստուգիւ, Յիսուս ըսաւ. «Ահա՛ ամէն օր Ես ձեզի հետ եմ մինչև աշխարհիս (Յունարէն՝ դարիս) վերջը» (Մատթ. ԻԸ. 20). ու Նա Իր Հոգւովն ու Խօսքովը շարունակ Եկեղեցիին հետ եղած է, առաջնորդելով, ուղղելով, մխիթարելով և զօրացնելով*

*Իր սուրբերը, նոյնպէս և քաջալերելով զանոնք իրենց բոլոր տառապանքներուն մէջ։ Բայց թէև Եկեղեցին երանաւէտ գիտակցութիւնը ունեցած է՝ թէ Տէրը տեղեակ է իր բոլոր ճամբաներուն, և թէ՝ ինքը Անոր չարատև խնամոց և սիրոյն ներքև է, սակայն և այնպէս Նա ակնկառոյց կ՚սպասէ Անոր խոստացեալ անձնական վերադարձին․ որովհետև երբ Նա ըսաւ, «Թէ որ երթամ, նորէն կուգամ» (Յովհ․ ԺԴ․ 3), անտարակոյս,* երկրորդ անձնական գալըստեան *մը ակնարկեց։*

*Ոմանք կը խորհին թէ Նա Պենտեկոստէի Ս․ Հոգիին գալստեանը ակնարկեց․ ուրիշներ՝ Երուսաղէմի կործանումին, ևն․։ Բայց ասոնք բացէ ի բաց կ՚անտեսեն այն իրողութիւնը՝ թէ Աստուածաշունչի վերջին գրքին մէջ, որը Պենտեկոստէէն 60՝ ու Երուսաղէմի կործանումէն ալ 26 տարիի չափ վերջը գրուեցաւ, այն որ մեռած էր բայց հիմա կենդանի՝ այս անցքին շուրջ կը խօսի, որը դեռ ապագային տեղի պիտի ունենայ, ըսելով՝ «Ահա՛ Ես շուտով կուգամ, և Իմ վարձքս Իմ հետս է»։ Իսկ ներշնչուած Յովհաննէսը կը պատասխանէ, «Ամէն, եկո՛ւր, Տէր Յիսուս»։—Յայտ․ ԻԲ․ 12, 20։*

*Իսկ ոմանք կը խորհին թէ երբ մեղաւորները դարձի կուգան, անիկա Քրիստոսի երկրորդ գալըստեան մէկ մասը կը կազմէ, և այսպէս, Նա պիտի շարունակէ գալ, մինչև որ ամբողջ աշխարհը դարձի եկած է։ Այն ատեն, կ՚ըսեն անոնք, Նա բոլորովին եկած պիտի ըլլայ։*

*Ասոնք բացէ ի բաց կը մոռնան Ս․ Գրոց այս նիւթին շուրջ տուած վկայութիւնը, որը իրենց ակնկալութեան բոլորովին հակառակը կը փաստէ․ թէ՝ մեր Տիրոջ երկրորդ գալստեան ժամանակ աշխարհը Աստուծոյ դարձի եկած ըլլալէ խիստ հեռու պիտի ըլ-*

*ցոյց․ թէ՝ «վերջի օրերը չար ժամանակներ պիտի գան, որովհետեւ մարդիկ աւելի հեշտասէր պիտի ըլլան քան թէ Աստուածասէր»* (*Բ․ Տիմ․ Գ․* 1—4)․ *թէ՝ «չար ու խաբեբայ մարդիկ չարութեան մէջ պիտի յառաջանան՝ մոլորեցնելով ու մոլորելով»* (*Համար* 13)։ *Անոնք կը մոռնան Տիրոջը՝ «փոքրիկ հօտ»ին տուած մասնաւոր խրատականը․ «իսկ դուք զգուշացէք ձեր անձերուն, չըլլայ որ այն օրը* ձեր *վրայ յանկարծակի հասնի․ որովհետեւ բոլոր երկրիս վրայ բնակողներուն ամէնուն վրայ (որոնք չեն ըզգուշանար)* որոգայթի մը *պէս պիտի հասնի»*։(*Ղուկ․ ԻԱ․* 34, 35)։ *Դարձեալ՝ կրնանք վստահ ըլլալ, թէ երբ ըսուած է որ «Անոր վրայ կոծ պիտի ընեն երկրի բոլոր ազգերը», երբոր տեսնեն Անոր գալուստը* (*Յայտ․ Ա․* 7), *մեղաւորաց դարձի գալը չի նշանակեր։ Մի՞թէ ամէն մարդ կոծ կ'ընէ մեղաւորաց դարձի գալուն համար։ Ընդհակառակը, եթէ այս համարը Քրիստոսի երկրի վրայ երկրորդ ներկայութիւնը կ'ակնարկէ, որուն գրեթէ բոլորն ալ կը համաձայնին, ուրեմն անիկա կ'ուսուցանէ թէ երկրի վրայ գտնուողներուն ամէնը պիտի չսիրեն Անոր յայտնուիլը․ մինչդեռ անոնք անտարակոյս պիտի սիրէին՝ եթէ բոլորն ալ դարձի եկած ըլլային։*

*Ոմանք թէեւ կ'ակնկալեն Տիրոջը իրական գալուստը ու ներկայութիւնը, սակայն այս անցքին* ժամանակը *խիստ հեռուն կը դնեն, ըսելով թէ Եկեղեցիին ներկայ վիճակի ջանքերովն է որ աշխարհը դարձի պիտի գայ, ու այսպէս ներածուի Հազարամեակի Դարը։ Անոնք կ'ըսեն որ երբ աշխարհը դարձի եկած է, Սատանան կապուած՝ ու Տիրոջը գիտութիւնը ամբողջ աշխարհը ծածկած է, և երբ ազգերը այլեւս պատերազմ չեն սորվիր, այն ատեն ահա՛ Եկեղեցիին ներկայ ժամանակի գործը պիտի վերջանայ․ և թէ՝*

երբ նա գլուխ հանած է այս մեծ ու դժուարին գործը, ահա՛ այն ժամանակ Տէրը պիտի գայ, վերջացընելու երկրի գործերը, վարձատրելու հաւատացեալները և դատապարտելու մեղաւորները։

Ս. Գրոց այլևայլ համարները անջատօրէն առնըուած պարագային, կարծես թէ կը պաշտպանեն այս տեսութիւնը. բայց երբ որ Աստուծոյ Խօսքն ու Ծըրագիրը ամբողջութեամբ դիտելու ըլլանք, պիտի տեսնենք որ այս համարները բոլորովին հակառակ տեսութիւն մը կը պաշտպանեն. այսինքն թէ՝ Քրիստոս աշխարհի դարձի գալէն առաջ պիտի գայ, ու թագաւորէ, զանոնք դարձի բերելու համար. թէ՝ Եկեղեցին ներկայիս կը փորձուի, ու յաղթողներուն խոստացուած վարձատրութիւնն այն է որ՝ փառաւորուելէ վերջ, իրենք ալ Տէր Յիսուսի հետ միասին բաժին պիտի ունենան այդ թագաւորութեանը մէջ, որը Աստուծոյ որոշած միջոցն է օրհնելու համար աշխարհը, ու Տիրոջը գիտութեամբը լուսաւորելու ամէն մարդկային արարած։ Ասոնք են Տիրոջը մասնաւոր խոստումները։ «Այն որ կը յաղթէ՝ Իմ հետս աթոռս նստիլ պիտի տամ»։ (Յայտ. Գ. 21)։ «Եւ անոնք ապրեցան՝ ու Քրիստոսի հետ հազար տարի թագաւորեցին»։—Յայտ. Ի. 4։

Երկու բնաբաններ կան՝ որոնց գլխաւորապէս կ'ապաւինին անոնք, որոնք կ'ըսեն թէ Տէրը Հազարամեակէն վերջը պիտի գայ, և որոնք հոս կ'ուզենք մեր ընթերցողաց ուշադրութեանը յանձնել։ Առաջինն է՝ «Ու Արքայութեան այս Աւետարանը բոլոր աշխարհի մէջ պիտի քարոզուի՝ բոլոր ազգաց վկայութիւն ըլլալու, ու անկէ յետոյ վերջը պիտի գայ»։ (Մատթ. ԻԴ. 14)։ Անոնք կը կարծեն որ ասիկա Աւետարանական Դարու վերջանալէն առաջ աշխարհի դարձի գալուն կ'ակնարկէ։ Սակայն աշխարհին

վկայութիւն ըլլալը *աշխարհին դարձի գալը չէր նշանակեր։ Բնաբանը, վկայութեան՝ աշխարհէն ինչպէս ընդունուելուն մասին ո՛և է բան չ՚ըսեր։ Այս վկայութիւնը արդէն տրուած է։ Ս. Գրոց Ընկերութեանց* 1861*ի տեղեկագիրները ցոյց տուին թէ՝ Աւետարանը երկրի բոլոր լեզուներովը հրատարակուած է, թէպէտև աշխարհի բոլոր միլիոնները չէին ստացած զայն։ Ո՛չ. Նոյնիսկ ապրող* 1,400,000,000*ին կէսը դեռ լսած չէ Յիսուսի անունը. սակայն և այնպէս բնաբանին հանգամանքը կատարուած է։ Աւետարանը բոլոր աշխարհին մէջ քարոզուած է* վկայութեան *համար—բոլո՛ր* ազգաց։ *Առաքեալը (Գործ. ԺԵ. 14)ին մէջ կ՚ըսէ թէ ներկայ Դարու Աւետարանին* բուն նպատակը *«Ժողովուրդ մը առնել է» Քրիստոսի անուանը համար—յաղթական Եկեղեցին, որը Տիրոջը Երկրորդ Գալստեանը Անոր հետ պիտի միանայ ու Անոր անունը ստանայ։ Ներկայ Դարուս աշխարհին վկայելու գործը երկրորդական խնդիր մ՚է։*

*Իսկ միւս բնաբանն է, «Նստէ՛ Իմ աջ կողմս, մինչև որ Քու թշնամիներդ ոտքերուդ պատուանդան ընեմ»։ (Սաղմ. ՃԺ. 1)։ Այս բնաբանին նկատմամբ գոյութիւն ունեցած տարտամ ու անորոշ գաղափարը այն է թէ՝ Քրիստոս երկնից մէջ նիւթական գահի մը վրայ կը նստի, մինչև որ Իր ոտքերուն տակ բռնի նուաճման գործը Եկեղեցիին միջոցաւ լրանայ, որմէ վերջ Նա պիտի գայ թագաւորելու։ Ասիկա սխալ ըմբռնում մ՚է։ Ակնարկուած Աստուծոյ գահը նիւթական չէ, հապա կ՚ակնարկէ Անոր գերագոյն իշխանութիւնն ու տիրապետութիւնը. ու Տէր Յիսուսն ալ բարձրացուած է այդ տիրապետութեան մէջ բաժին ունենալու։ Պօղոս կ՚ըսէ. «Աստուած զՆիկա (Յիսուս) խիստ բարձրացուց, ու Անոր անուն մը*

տուաւ որ ամէն անունէ վեր է»։ Նա Անոր՝ բոլորին վրայ իշխանութիւն տուած է, Հօրը երկրորդը եղած է։ Եթէ Քրիստոս նիւթական գահի մը վրայ պիտի նստի մինչև որ Իր թշնամիները ոտքերուն տակը պատուանդան ըլլան (բոլորն ալ նուաճած), ուրեմն Նա չի կրնար գալ, մինչև որ բոլոր բաները չնուաճուին։ Բայց եթէ այս բնաբանին մէջ յիշուած «աջ կողմը» ո՛չ թէ հաստատ վայրի մը կամ ատեանի մը կ՚ակնարկէ, այլ ինչպէս որ կը հաւատանք, զօրութեան՝ իշխանութեան՝ տիրապետութեան՝ ուրեմն կը հետևի թէ մեր նկատողութեան ներքև գտնուած այս բնաբանը և ո՛չ մէկ կերպով կը հակասէ Ս. Գըրոց միւս համարները, որոնք կը քարոզեն թէ Նա կուգայ «ամէն բան Իր տակ հնազանդեցնելու» (Փիլիպ. Գ. 21), այն զօրութեան շնորհիւ՝ որը Իրեն տրուած է։ Զոր օրինակ՝ կ՚ըսենք, Գերմանիոյ գահին վրայ կը գտնուի Ուիլհէլմ Կայսրը. սակայն մենք արքայական գահը չէ որ կ՚ակնարկենք. ու իրապէս, նա քիչ անգամներ կը նստի գահին վրայ։ Երբ կ՚ըսենք թէ նա գահին վրայ է, ըսել կ՚ուզենք թէ նա կը կառավարէ Գերմանիան։ Աջ կողմը կը նշանակէ բարձրագոյն տեղը, վսեմութեան և կամ շնորհաց դիրք կամ վիճակ, վեհապետին երկրորդականը։ Այսպէս, իշխան Պիզմարքը Գերման Կայսեր իշխանութեան աջ կողմը բարձրացած կամ բազմած էր. նոյնպէս ալ Յովսէփ՝ Փարաւոնին աջ կողմն էր Եգիպտոսի թագաւորութեանը մէջ,—ո՛չ թէ բառական իմաստով, այլ սովորական խօսելակերպի տեսակէտէ։ Յիսուսի Կայիափայի ըսած խօսքերը այս բացատրութեան հետ կը համաձայնին. «Ասկէ յետոյ պիտի տեսնէք Որդին մարդոյ զօրութեան աջ կողմը նստած, ու երկնից ամպերուն վրայ եկած»։ (Մատթ. ԻԶ. 64)։ Նա աջ կողմը պիտի ըլլայ եկած

տանենը, և ալ կողմը պիտի մնայ Հազարամեայ Դարուն ու ի յաւիտեան։

Աստուծոյ յայտնուած ծրագիրներուն յաջորդական մէկ քննութիւնը աւելի լայն տեսութիւն մը պիտի տայ թէ՛ առաջին և թէ՛ երկրորդ գալստեան նպատակին շուրջ. ու պէտք է յիշենք որ երկու անցքերն ալ իրարու հետ մօտէն կապ ունին՝ որպէս մասեր մէկ Ծրագրի։ Առաջին գալստեան մասնայատուկ գործն էր՝ փրկել մարդկութիւնը. իսկ երկրորդինն է՝ վերականգնել և օրհնել ու ազատել փրկուածները։ Մեր Տէրը Իր կեանքը բոլորին համար փրկագին մը տուած ըլլալով՝ երկինք համբարձաւ այս զոհաբերութիւնը Հօրը ներկայացնելու, այսպէս մարդոց անօրէնութեանը համար քաւութիւն ընելով։ Նա կ՚ըսպասէ ու կը թոյլատրէ «այս աշխարհիս աստուծոյն» շարունակել չար տիրապետութիւնը, մինչև որ «Հարսը, Գառնուկին Կինը», հաւաքուի աշխարհէն, որը այն փառաց արժանի ըլլալու համար, պարտ է յաղթել ներկայ չար աշխարհի նենգալի ազդեցութիւնները։ Այն ատեն Իր զոհաբերութեամբ աշխարհի մարդկութեան համար ապահովուած մեծ օրհնութեանց գործը պիտի սկսի, և Նա պիտի գայ, օրհնելու համար աշխարհի բոլոր ընտանիքները։

Արդարև, վերականգնումի ու օրհնութեան գործը անմիջապէս կրնար սկսիլ, երբ Փրկչին կողմանէ վճարուեցաւ Փրկագինը. ու Մեսիային առաջին գալուստը բաւական պիտի ըլլար իշխանութեան և օրհնութեան սկսելու անմիջապէս, ինչպէս որ Առաքեալները ամենէն առաջ ակնկալեցին (Գործ. Ա. 6)։ Բայց Աստուած մեզ՝ Քրիստոնէական Եկեղեցիին համար՝ «լաւագոյն բան մը նախապատրաստեց» (Եբր. ԺԱ. 40). որով մեր շահուն համար է որ Քրիստոսի Թագաւորութիւնը Իր չարչարանքներէն

տաան և ուԹը դարերով բաժնուած է, որպէսզի Իր աշակերտները—անձնուրաց Քրիստոնեաները— պատեհութիւնը ունենան Իր չարչարանաց կցորդ ըլլալու, որպէսզի ի վերջոյ արժանի համարուին նաև Իր փառացը հաղորդ ըլլալու։—Հռովմ. Ը. 17։ Բ. Տիմ. Բ. 11, 12։

Առաջին և երկրորդ գալուստներուն, և կամ բոլորին համար Փրկագին մը վճարուելուն, և բոլորին օրհնութեան միջև գտնուած այս ժամանակաշրջանը, Եկեղեցիին՝ Քրիստոսի Մարմնոյն փորձութեանը ու ընտրութեանը համար է. ապա Թէ ոչ միմիայն մէկ գալուստ տեղի պիտի ունենար. և այն գործը որ Հազարամեային՝ Իր երկրորդ ներկայութեան ժամանակաշրջանին տեղի պիտի ունենար՝ Յիսուսի յարութեան պիտի յաջորդէր։ Եւ կամ, փոխանակ ըսելու Թէ երկրորդ գալստեան գործը առաջինին գործին պիտի հետևէր անմիջապէս, ըսենք Թէ՝ եԹէ Եհովան ծրագրած չըլլար «փոքրիկ Հօտը», «Քրիստոսի մարմինը», առաջին գալուստը անցեալին մէջ պիտի չպատահէր, հապա երկրորդ գալստեան ժամանակ տեղի պիտի ունենար, և միայն մէկ գալուստ մը պիտի ըլլար, որովհետև Աստուած ակներև կերպով վեց հազար տարուայ համար սահմանած է չարիքին թոյլտուութիւնը, ինչպէս որ բոլորին մաքրագործումը ու վերահաստատութիւնը եօԹերորդ հազարի տևողուԹեանը պիտի կատարուի։

Այս տեսակէտէ, ուրեմն Յիսուս որպէս զոհ և մեղաւորաց Փրկանք՝ օրհնութեան և վերահաստատութեան ժամանակէն այնքան առաջ եկաւ, որքան ժամանակ որ պէտք էր Իր «ժառանգակիցներ»ուն, «Փոքրիկ Հօտ»ին ընտրութեանը համար։ Ասիկա է որ ոմանց ըստ երեւոյթին Աստուծմէ յապաղում մը

*ըլլալ կը թուի այն խոստացուած օրհնութեանց, որոնք Փրկագինով հայթայթուած էին։ Օրհնութիւնները, նախասահմանութեան համեմատ, որոշեալ ատենին պիտի գան. Թէպէտև փառաւոր նպատակի մը համար, փրկագինը մարդոց ակնկալածէն շատ աւելի առաջ վճարուեցաւ։*

*Առաքեալը կը տեղեկացնէ մեզ՝ թէ Յիսուս Իր Համբարձումէն մինչև Վերահաստատութեան կամ Հազարամեայ Դարը, երկրէն բացակայ՝ երկինքը պիտի ըլլայ. «զԱնիկա պէտք է որ երկինքը ընդունի* մինչև *որ ամէն բաները վերահաստատուին» ևն. (Գործ. Գ.* 21—*Տե՛ս Անգ. Թարգմանութիւնը)։ Քանի որ Աստուածաշունչը կ'ուսուցանէ մեզ թէ մեր Տիրոջ երկրորդ գալստեան նպատակն է ամէն բաներու Վերահաստատութիւնը, և թէ Իր յայտնութեան ժամանակ ազգերը դարձի եկած ըլլալէ ա՛յնքան հեռու պիտի ըլլան որ նոյնիսկ պիտի բարկանան (Յայտ. ԺԱ.* 18)*ու դէմ կենան, ուրեմն պէտք է խոստովանիլ որ կա՛մ Եկեղեցին պիտի թերանայ կատարելու իր առաքելութիւնը, որով Աստուծոյ Ծրագիրը այս կերպով ի դերև պիտի ելլէ, և կա՛մ, ինչպէս որ մենք կ'ընդունինք և ցոյց տուած ենք՝ թէ Եկեղեցիէն չէր ակնկալուէր ներկայ Դարու տևողութեան աշխարհը դարձի բերել, հապա թէ իր առաքելութիւնը եղած է բովանդակ աշխարհին մէջ Աւետարանը քարոզել* վկայութեան համար, *ու Աստուածային հովանաւորութեան և առաջնորդութեան ներքև ինքզինքը պատրաստել իր ապագայ մեծ գործին։ Աստուած ո՛չ մէկ տեսակէտէ սպառած է Իր զօրութիւնը աշխարհը դարձի բերելու համար։ Ո՛չ. ընդհակառակը, Նա դեռ* նո՛յնիսկ չէ փորձած *աշխարհը դարձի բերել։*

*Անիկա թերևս ոմանց տարօրինակ ասացուածք*

մը թուի. բայց թող այսպիսիները չմոռնան թէ՝ եթէ Աստուած փորձած է այսպիսի գործ մը՝ Նա չարաչար կերպով ձախողած է. որովհետեւ, ինչպէս որ տեսանք, երկրի միլիոններէն պզտիկ բաժին մը միայն գիտակցօրէն լսած է այն միակ անունը որով կրնան փրկուիլ: Մենք գլխաւոր յարանուանութիւններէն ոմանց—Մկրտչականներու, Երիցականներու և ուրիշներու—աչքառու տեսութիւններն և ուսուցումները միայն յիշեցինք. այսինքն թէ՝ Աստուած աշխարհէն «փոքրիկ հօտ» մը՝ Եկեղեցի մը կ'ընտրէ: Անոնք կը հաւատան թէ Աստուած այս Եկեղեցիին ընտրութենէն զատ ուրիշ ընելիք չունի. մինչդեռ մենք կը տեսնենք որ Ս. Գրութիւնք Աստուածային Ծրագրին մէջ ուրիշ քայլ մը ևս կ'ուսուցանեն—ՎԵՐԱՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ մը աշխարհին համար, որը Եկեղեցիին միջոցաւ պիտի իրագործուի, երբ նա ամբողջացած ու փառաւորուած է: Ներկայ Աւետարանական Դարու «փոքրիկ հօտ»ը, յաղթողները, «Սերունդ»ն են, սերմինն են միայն, որոնցմով պիտի օրհնուին աշխարհի բոլոր ազգերը:

Անոնք որ կ'ըսեն թէ Եհովան վեց հազար տարիներէ ի վեր ջանացած է աշխարհը դարձի բերել, ու չարունակ անյաջող եղած է՝ այս տեսութիւնները Աստուածաշունչի երաշխաւորումներուն հետ հաշտեցնելու պարագային դժուարութեան բաղխելու ենթակայ են. ինչու որ Աստուծոյ բոլոր նպատակները պիտի իրականանան, և թէ Իր բերնէն ելած խօսքը պարապ չպիտի վերադառնայ Իրեն. հապա Իր կամքը պիտի կատարէ ու յաջողութեամբ ի գործ պիտի դնէ այն բանը՝ որուն համար զանիկա ղրկեց: (Եսայի ԾԵ. 11): Այն իրականութիւնը թէ աշխարհը դեռ դարձի չէ եկած, և ո՛չ ալ Տիրոջը գիտութիւնը ծածկած է երկիրը, ինքնին ապացոյց մ'է, թէ Եկե-

ղեցիին պաշտօնը չէ աշխարհը ներկայիս դարձի բերել։

Անիկա մեզ կ'առաջնորդէ երկու տեսակ խորհելակերպերու, որոնք դարերէ ի վեր բաժնած են Քրիստոնեաները. այսինքն՝ Ընտրութիւն և Ձրի Շնորհ։ Թէ՝ այս երկու վարդապետութիւնները իրենց երևութական հակասականութեամբն հանդերձ Ս. Գրքէն փաստեր ունին, և ո՛չ մէկ Ս. Գրոց ուսանող պիտի ուրանայ։ Այս իրողութիւնը մեզ անմիջապէս պէտք է առաջնորդէ խորհելու թէ՝ կերպով մը, երկուքն ալ պարտին ճշմարիտ ըլլալ։ Սակայն այս հակառակ վարդապետութիւնները կրնան հաշտեցուիլ միմեանց հետ, երբոր երկնից գլխաւոր օրէնքը՝ կարգ կանոնը՝ նկատի կ'առնուի, և «Ճշմարտութեան Խօսքը ուղիղ կերպով կը բացատրուի» այս նիւթին շուրջ։ Այս կարգ կանոնը, որը Դարերու Աստուածային Ծրագրով ներկայացուած է, եթէ գործադրուի, պայծառ կերպով ցոյց պիտի տայ մեզ թէ՝ մինչդեռ անցեալ ու ներկայ Դարերուն Ընտրութիւն մը իր յառաջդիմութեանը մէջ եղած է, սակայն այն մասը որ Ձրի Շնորհ անունով զանազանուած է, Հազարամեայ Դարու միջոցին ընդհանուր մարդկութեան համար յայտնուելիք Աստուածային ողորմած կանխահոգածութիւնն է։ Եթէ առջի գլուխին մէջ ներկայացուած Դարաշրջաններու և Տնօրինութեանց որոշիչ կէտերը միտքերնիս պահենք, և Ընտրութեան ու Ձրի Շնորհի վերաբերեալ համարները քննենք և պատշաճօրէն զետեղենք, պիտի տեսնուի որ ամէն անոնք որոնք Ընտրութեան կը վերաբերին՝ անցեալ ու ներկայ Դարերուն կը պատկանին. մինչդեռ, անոնք որ Ձրի Շնորհ կ'ուսուցանեն՝ բոլորովին յառաջիկայ Դարուն կը վերաբերին։

Այսու ամենայնիւ, Աստուածաշունչին մէջ ուսուցուած Ընտրութիւնը չէ այն կամայական բռնադատումը կամ ճակատագրի հաւատքը, որը սովորաբար հաւատացուած և քարոզուած է անոր խնկարկուներէն. ընդհակառակը, Աստուած ի միտ ունի յարմարագոյն և պատշաճ ընտրութիւն մը, զոր առաջ կը տանի այդ նպատակին համար որոշուած ժամանակին մէջ:

Արմինիոսականներէ քարոզուած Ձրի Շնորհաց վարդապետութիւնը շատ աւելի վսեմ արտայայտութիւն մ'է Աստուծոյ առատ շնորհաց՝ քան անոր ամէնաանկեղծ քարոզիչները երբեք խորհեցան: Աստուծոյ՝ Քրիստոսով ցոյց տուած շնորհը կամ ողորմութիւնը միշտ ձրի է, այն իմաստով՝ որ պարտաւոր չէր տալու. սակայն մարդուն մեղքի մէջ իյնալէն մինչև այսօր, Աստուծոյ այլևայլ շնորհները մասնաւոր անհատներու, ազգերու և դասակարգերու մէջ սահմանափակուած են. մինչդեռ յառաջիկայ Դարուն ամբողջ աշխարհը պիտի հրաւիրուի այն ժամանակ ընծայուած շնորհներէն բաժին ստանալու՝ այն ատենուայ պայմաններուն համաձայն, որոնք բոլորին ծանօթ պիտի ըլլան, և այն որ ուզէ պիտի կրնայ գալ ու կենաց ջուրէն ձրի առնել:—Յայտ. ԻԲ. 17:

Երբ դէպի ետ ակնարկ մը կը նետենք, կը նշմարենք Աբրահամի և իր սերունդէն ոմանց ընտրութիւնը, որպէս միջոցներ, որոնցմով պիտի գար խոստացեալ Սերունդը, աշխարհի բոլոր ընտանիքներու օրհնիչը: (Գաղ. Գ. 29): Մենք կը նկատենք նաև Իսրայէլի ընտրութիւնը միւս բոլոր ազգերէն, որուն միջոցաւ Աստուած խորհրդաբանականօրէն պատկերացուց թէ ի՛նչպէս պիտի կատարուի աշխարհի վերաբերեալ այն մեծ գործը—անոնց Եգիպտոսէն ազատուիլը, անոնց Քանանը, ուխտերը, օրէնքները,

մեղքին ու յանցանքին ջնջման, և ժողովուրդը սրբելու համար կատարուած զոհագործութիւնները, նոյնպէս և այս բոլորը գործադրելու համար անոնց քահանայական դասը՝ մանրանկար մը և խորհրդաբանական նկարագրութիւն մ'էին այն իրական քահանայութեան և զոհերուն՝ որոնցմով աշխարհի մարդկութիւնը պիտի մաքրագործուէր։ Աստուած Իսրայէլի խօսելով ըսաւ. «Երկրի բոլոր ազգատոհմերէն միայն ձեզ ճանչցայ»։ (Ամովս Գ. 2)։ Մինչև Քրիստոսի գալուստը, և նո՛յնիսկ անկէ վերջն ալ՝ միայն այս ժողովուրդը ճանչցուած էր, որովհետև Իր առաքելութիւնը անոնց սահմանուած էր, և Նա Իր աշակերտներուն թոյլ չէր տար որ ուրիշներու երթան—ըսելով՝ երբ զանոնք առջին անգին կը ղրկէր, «Հեթանոսներու ճամբայ մի՛ երթաք, ու Սամարացիներու քաղաք մի՛ մտնէք»։ Ինչո՞ւ այսպէս Տէ՛ր. որովհետև, Նա բացատրեց, «Ես չղրկուեցայ՝ բայց միայն Իսրայէլի տանը կորսուած ոչխարներուն»։ (Մատթ. Ժ. 5, 6։ ԺԵ. 24)։ Մինչև Իր մահը Իր բոլոր ժամանակը անոնց յատկացուած էր. և հոն՝ Գողգոթայի խաչին վրայ, լրացուց աշխարհին համար իր առաջին գործը, Իր ձրի և ամենաառատ շնորհաց առաջին արտայայտութիւնը, որը «որոշեալ ատենին» բոլորին օրհնութիւն մը պիտի ըլլայ։

Ասիկա, Աստուծոյ ամենավսեմ պարգևը, ո՛և է ազգի կամ դասակարգի մէջ չէր սահմանափակուած. անիկա միայն Իսրայէլին համար չէր, հապա բոլոր աշխարհին համար. որովհետև Յիսուս Քրիստոս Աստուծոյ շնորհքովը ամէնուն համար մահ ճաշակեց։—Եբր. Բ. 9։

Եւ հիմա ալ, այս Աւետարանական Դարուն, մասնաւոր կարգի ընտրութիւն մը յառաջ կը տարուի։ Աշխարհին այլևայլ մասերը աւելի օգտուած են Աւե-

տարանէն՝ (որը բոլոր լոռղներուն ձրի է) քան ուրիշներ։ Աչքէ անցուցէք աշխարհի քարտէս մը, ու տեսէք թէ ո՛րքան պզտիկ է այն մասը, որ ո՛և է գնահատելի աստիճանով լուսաւորուած կամ օրհնուած է Քրիստոսի Աւետարանովը։ Բաղդատէ ինքզինքդ քու պատեհութիւններովդ ու գիտութեամբդ այսօրուան հեթանոսական խաւարի մէջ խարխափող միլիոններուն հետ, որոնք երբե՛ք չեն լսած հրաւէրը, և որոնք հետևաբար չեն կանչուած։ Երբոր կոչեալներու դասակարգը, (Աստուածորդիներ, Աստուծոյ ժառանգներ ու մեր Տէր Յիսուս Քրիստոսի ժառանգակիցներ ըլլալու կոչուածները իրենց կոչումն ու ընտրութիւնը ապահոված ըլլալով) ամբողջացած է, այն ատեն միայն Աշխարհի փրկութեան համար Աստուծոյ Ծրագիրը պիտի սկսի։

Ընտրուելէն, զարգանալէն և զօրութեան բարձրանալէն վերջն է որ Սերունդը պիտի ջախջախէ օձին գլուխը։ «Խաղաղութեան Աստուածը շուտով ձեր ոտքերուն տակ պիտի խորտակէ սատանան»։ Հռովմ․ ԺԶ․ 20։ Ծննդ․ Գ․ 15)։ Աւետարանական Դարը կը պատրաստէ անարատ կոյսը, հաւատարիմ Եկեղեցին, գալիք Փեսային համար։ Ու դարավերջին, երբ նա «պատրաստուած է» (Յայտ․ ԺԹ․ 7), Փեսան կուգայ, և անոնք որ պատրաստ են, Անոր հետ ներս կ'երթան հարսանիքը—երկրորդ Ադամն ու երկրորդ Եւան կը միանան, որմէ վերջը կ'սկսի Վերահաստատութեան փառաւոր գործը։ Յառաջիկայ Տնօրինութեան, Նոր երկնքի ու Նոր երկրի ժամանակ, Եկեղեցին այլևս անարատ կոյսը պիտի չըլլայ, հապա Հարսը․ ու այն ժամանակ «Հոգին ու Հարսը կ'ըսեն՝ եկո՛ւր, և այն որ կը լսէ թող ըսէ՝ եկո՛ւր, ու այն որ ծարաւ է թող գա՛յ, և այն որ կ'ուզէ՝ կենաց ջուրը ձրի առնէ»։—Յայտ․ ԻԲ․ 17

Աւետարանական Դարը ո՛չ թէ կը վերջացնէ Եկեղեցիին առաքելութիւնը, այլ զայն կը պատրաստէ յառաջիկայի մեծ ու պիտանի գործին։ Այս խոստացուած ու գալիք օրհնութեան համար «Բոլոր ստեղծուածները մինչև հիմա մէկտեղ կը հառաչեն ու ծնանելու ցաւ կը քաշեն, ու Աստուծոյ որդւոցը յայտնութեան կ՚սպասեն»։ (Հռովմ. Ը. 22, 19)։ Ու երանաւէտ իրողութիւն մ՚է թէ Զրի Շնորհը իր կատարեալ չափովը ո՛չ միայն կենդանիներուն համար սահմանուած է մեր երկնաւոր Հօր Ծրագրին մէջ՝ որպէս օրհնեալ պատեհութիւն մը յառաջիկայ Դարուն՝ հապա նաև միւսներուն համար ալ։

Ոմանք՝ որ կրնան որոշ չափով մը տեսնել երկրորդ գալստեան ջամբուելիք օրհնութիւնները, և որոնք մասամբ կը գնահատեն այն իրականութիւնը՝ թէ Տէրը կուգայ Իր մահուամբը գնած մեծ օրհնութիւնը աշխարհին պարգևելու, կը թերանան տեսնելու այս վերջին պարագան՝ թէ իրենց գերեզմաններուն մէջ գտնուողները նո՛յնչափ շահ ունին՝ Մեսիային այն փառաւոր տիրապետութենէն՝ որքան անոնք, որ այն ժամանակ դեռ կենդանի կը մնան։ Սակայն քանի որ վստահ ենք թէ Յիսուս բոլորին համար մեռաւ, ուրեմն բոլորն ալ պարտին ստանալ այն օրհնութիւններն ու պատեհութիւնները, զորոնք Նա Իր թանկագին արեամբը գնեց։ Ուրեմն մենք պարտինք Հազարամեայ Դարու տևողութեան օրհնութիւններ ակնկալել ամէն անոնց վրայ, որոնք իրենց գերեզմաններուն մէջ են. ինչպէս նաև ամէն անոնց վրայ, որոնք դեռ հոն չեն իջած. և այս ուղղութեամբ բազմաթիւ փաստեր պիտի գտնենք, երբ պրպտենք Տիրոջը վկայութիւնը այս նիւթին շուրջ։ Աստուծոյ՝ անոնց ազատագրութեան նկատմամբ ունեցած Ծրագրին համար է որ գերեզմանին մէջ

գանուողները «յուսոյ գերիներ» կոչուած են։

Հաշուըուած է որ Ադամի ստեղծագործութենէն ի վեր անցած վեց հազար տարուայ տեւողութեան ընթացքին 143 երկիլիոն մարդկային էակներ ապրած են երկրիս վրայ։ Ամենալայն հաշիւը որ տրամաբանօրէն կրնայ ըլլալ, պիտի ընդունի թէ ասոնցմէ հազիւ հազ մէկ երկիլիոնը Աստուծոյ սուրբերն էին։ Այս լայն հաշիւը դուրս պիտի ձգէ 142 երկիլիոնի վիթխարի գումար մը, որոնք մեռան առանց հաւատքի և յոյսի հանդէպ այն միակ անուան, որը երկնքի տակ մարդոց մէջ տրուած է, և որով կրնանք փրկուիլ։ Արդարեւ, ասոնց հսկայ մեծամասնութիւնը բնաւ չճանչցաւ կամ լսեց Յիսուսի մասին, որով չէին կրնար հաւատալ Անոր՝ որուն մասին չէին լըսած։

Կը հարցնենք, ի՞նչ եղաւ այս մեծ բազմութիւնը, որուն նկատմամբ Թուանշանները բոլորովին անբաւարար գաղափար մը կուտան։ Ի՞նչ է, և ի՞նչ պիտի ըլլայ անոնց վիճակը։ Միթէ Աստուած ո՛և է նախապատրաստութիւն չըրա՞ւ անոնց նկատմամբ, որոնց վիճակին ու պարագաներուն կանխաւ տեղեակ ըլլալու էր։ Ու կամ՝ միթէ Նա աշխարհի սկիզբէն ի վեր անոնց համար անյոյս ու յաւիտենական տանջանքի խղճալի և անգութ կարգադրութի՞ւն մ՚ըրաւ, ինչպէս որ Իր զաւակներէն շատերը կը հաւատան։ Եւ կամ՝ միթէ Նա Իր Ծրագրի բարձրութեանց և խորութեանց, լայնութեանց և երկայնութեանց մէջ դեռ անոնց բոլորին համար այն միակ անուան գիտակցութեան գալու չքնաղ պատեհութի՞ւն մը վերապահած է, որոնք Իր նախագծած պայմաններուն հնազանդելով՝ պիտի կրնան յաւիտենական կեանք ստանալ։

Այս հարցումները, որոնք ամէն խորհող Քրիս-

*տոնեաչ կը Հարցնէ ինքզինքին, ու կը բաղձայ Եհովային Նկարագրին Համաձայն ճշմարտութեամբ պատասխանուած տեսնել, այլեւայլ կարգի պատասխաններ կը տրուին.—*

Անհաւատութեան պատասխանն է, *Անոնք յաւիտենապէս մեռած են. ապագան ոչինչ ունի անոնց Համար. անոնք երբե՛ք պիտի չվերապրին։*

Լուսաւորչականութիւնը կը պատասխանէ.—*Անոնք, բոլորն ալ՝ արդար կամ մեղաւոր, «Հոգիներու կայաններն, կայարաններն» կը գտնուին, ուր որ պէտք է սպասեն մինչև Վերջին Դատաստան, և ուր դատուելէ վերջ՝ արդարները երկինք պիտի երթան, իսկ մեղաւորներն ալ դժոխք, յաւիտենական տանջանք։*

Կալվինականութիւնը կը պատասխանէ.—*Անոնք փրկուելու Համար ընտրուած չէին. Աստուած նախասահմանեց զանոնք կորսուելու—դժոխք երթալու—ու անոնք Հոն են Ներկայիս, ու կը գալարուին Հոգեւարքի ցաւատանջ պրկումներով. ուր անոնք յաւիտեան պիտի մնան անյոյս և անմխիթար։*

Արմինիոսականութիւնը կը պատասխանէ.—*Մենք կը Հաւատանք որ Աստուած կը Ներէ անոնցմէ շատերուն՝ իրենց տգիտութեանը Համար։ Ամէն անոնք որ իրենց գիտցածին լաւագոյնը ըրին՝ վստահօրէն, «Անդրանիկներու Եկեղեցիին» մէկ մասը պիտի կազմեն. թէև՝ եթէ Նոյնիսկ բնաւ չլսեցին Յիսուսի անունը։*

*Այս վերջին տեսութեան Հետ կը Համաձայնին բոլոր յարանուանութեանց պատկանող Քրիստոնեաներուն մեծամասնութիւնը, (չնայելով որ ոմանց Հաւատոյ Հանգանակները բոլորովին կը Հակառակին անոր) այն ըմբռնումով թէ ասկէ տարբեր ո՛և է տեսութիւն Աստուծոյ արդարութեան Հետ անՀաշտելի*

*պիտի ըլլայ: Բայց միթէ Աստուածաշունչը կ՚ապացուցանէ՞ այս տեսութիւնը: Միթէ նա կ՚ուսուցանէ՞ թէ ազնուութիւնը փրկութեան միջոց մ՚է: Ո՛չ: Ս. Գրոց մէջ յիշուած փրկութեան միակ պայմանը* **հաւատքն** *է Քրիստոսի նկատմամբ, որպէս մեր Փրկիչն ու Տէրը: «Վասնզի շնորհքով փրկուած էք դուք,* **հաւատքի** *միջոցաւ»: (Եփես. Բ. 8): Հաւատքով արդարացումը Քրիստոնէութեան հիմնական սկզբունքն է: Երբոր հարցուեցաւ թէ ի՞նչ պէտք է ընեմ փրկուելու համար, Առաքեալները պատասխանեցին՝ Հաւատա՛յ Յիսուս Քրիստոսի. «Անկէ ի զատ* **ուրիշ անուն մը չկայ** *երկինքին տակը մարդոց մէջ տրուած, որ անով կարող ըլլանք փրկուելու»: (Գործ. Դ. 12). Եւ «ո՛վ որ Տիրոջը անունը կանչէ, պիտի փրկուի»:—Հռովմ. Ժ. 13:*

*Սակայն Պօղոս կը տրամաբանէ թէ մէկը հաւատալէ առաջ պէտք է լսէ Աւետարանը, ըսելով՝ «Ի՞նչպէս պիտի կանչեն անոր՝ որուն որ չհաւատացին. կամ ի՞նչպէս պիտի հաւատան անոր՝ որուն վրայով չլսեցին»:—Հռովմ. Ժ. 14:*

*Ոմանք կը հաւատան թէ Պօղոս այնպէս կը քարոզէ, իբր թէ* **ազնուութիւնը** *մարդը կը փրկէ, երբ նա կ՚ըսէ թէ «Հեթանոսները որ օրէնք չունին՝ իրենց անձերուն բուն օրէնքը իրենք են»: (Հռովմ. Բ. 14): Անոնք ասկէ այնպէս կը հետեւցնեն թէ՝ անոնց խղճի օրէնքը բաւ է զիրենք արդարացնելու: Սակայն այս կարգի մարդիկ սխալ կ՚ըմբռնեն Պօղոսը: Նա կը փաստէ թէ ամբողջ աշխարհը Աստուծոյ առջեւ յանցաւոր է (Հռովմ. Գ. 19). թէ՝ Հեթանոսները, որոնք չունէին գրաւոր օրէնքը, խղճին լոյսովը* **դատապարտուած** *էին եւ ո՛չ թէ արդարացած. որը ա-*

մէն պարագայի տակ կ'ապացուցանէր թէ անոնք կատարելութենէ թերի են, ու կենաց անարժան. ինչպէս որ Հրէաները գրաւոր օրէնքը ունենալով հանդերձ անով դատապարտուած էին. «որովհետեւ Օրէնքով է մեղքի ճանչնալը»: (Հռովմ. Գ. 20): Հրէից տրուած Օրէնքը քօղազերծեց անոնց տկարութիւնը. ու արդէն մտադրուած էր ցոյց տալ անոնց թէ անկարող էին Աստուծոյ առջեւ ինքզինքնին արդարացնել. քանզի «Օրէնքին գործքերովը մէկ մարմին պիտի չարդարանայ Անոր (Աստուծոյ) առջեւը»: Գրուած Օրէնքը դատապարտեց Հրէաները. իսկ Հեթանոսներն ալ բաւականաչափ խղճմտանքի լոյս ունէին զիրենք դատապարտելու համար. ու այսպէս ամէն բերան պապանձած է կենաց իրաւունք պահանջելէ, ու բոլոր աշխարհը Աստուծոյ առջեւ յանցաւոր կը կայնի:

Յիշելով Յակոբոսի (Բ. 10)ը, թէ ով որ ամբողջ օրէնքը կարենայ պահել բացի մէկ կէտէ մը՝ յանցաւոր է, ու Օրէնքի ուխտով խոստացուած օրհնութիւններէն ոչինչ կրնայ պահանջել, մենք կ'ըմբռնենք թէ ստուգիւ, «Արդար մը չկայ՝ ո'չ մէկ հատ: (Հռովմ. Գ. 10): Ու այսպէս՝ Աստուածաշունչը յուսոյ բոլոր դռները կը գոցէ բացի մէկէ մը. ցոյց տալով թէ դատապարտուածներէն և ո'չ մէկը կրնայ վարձատրութեան արժանի գործերով յաւիտենական կենաց տիրանալ. և թէ՝ նոյնչափ անօգուտ է տգիտութիւնը փրկութեան պայման ներկայացնել: Տգիտութիւնը ո'եւէ՛ մէկը չարժանացներ հաւատքի ու հնազանդութեան վարձատրութեան:

Բազմաթիւ Քրիստոնեաներ՝ չուզելով հաւատալ թէ ա'յսքան միլիոններով տգէտ մանուկներ ու Հե-

պիտի ըլլայ։ Բայց միթէ Աստուածաշունչը կ'ապացուցանէ՞ այս տեսութիւնը։ Միթէ նա կ'ուսուցանէ՞ թէ ազատութիւնը փրկութեան միջոց մ'է։ Ո՛չ։ Ս. Գրոց մէջ յիշուած փրկութեան միակ պայմանը **հաւատքն** է Քրիստոսի նկատմամբ, որպէս մեր Փրկիչն ու Տէրը։ «Վաճնզի շնորհքով փրկուած էք դուք, **հաւատքի** միջոցաւ»։ (Եփես. Բ. 8)։ Հաւատքով արդարացումը Քրիստոնէութեան հիմնական սկզբունքն է։ Երբոր հարցուեցաւ թէ ի՞նչ պէտք է ընեմ փրկուելու համար, Առաքեալները պատասխանեցին՝ Հաւատա՛յ Յիսուս Քրիստոսի. «Անկէ ի զատ **ուրիշ անուն մը չկայ** երկնքին տակը մարդոց մէջ տրուած, որ անով կարող ըլլանք փրկուելու»։ (Գործ. Դ. 12). և «ո՛վ որ Տիրոջը անունը կանչէ, պիտի փրկուի»։—Հռովմ. Ժ. 13։

Սակայն Պօղոս կը տրամաբանէ թէ մէկը հաւատալէ առաջ պէտք է լսէ Աւետարանը, ըսելով՝ «Ի՞նչպէս պիտի կանչեն անոր՝ որուն որ չհաւատացին. կամ ի՞նչպէս պիտի հաւատան անոր՝ որուն վրայով չլսեցին»։—Հռովմ. Ժ. 14։

Ոմանք կը հաւատան թէ Պօղոս այնպէս կը քարոզէ, իբր թէ **ազիտութիւնը** մարդը կը փրկէ, երբ նա կ'ըսէ թէ «Հեթանոսները որ օրէնք չունին՝ իրենց անձերուն բուն օրէնքը իրենք են»։ (Հռովմ. Բ. 14)։ Անոնք ասկէ այնպէս կը հետևցնեն թէ՝ անոնց խղճի օրէնքը բաւ է զիրենք արդարացնելու։ Սակայն այս կարգի մարդիկ սխալ կ'ըմբռնեն Պօղոսը։ Նա կը փաստէ թէ ամբողջ աշխարհը Աստուծոյ առջև յանցաւոր է (Հռովմ. Գ. 19). թէ՝ Հեթանոսները, որոնք չունէին գրաւոր օրէնքը, խղճին լոյսովը **դատապարտուած** էին և ո՛չ թէ արդարացած. որը ա-

մէն պարագայի տակ կ'ապացուցանէր թէ անոնք կատարելութենէ թերի են, ու կենաց անարժան. ինչպէս որ Հրէաները դրաւոր օրէնքը ունենալով հանդերձ անով դատապարտուած էին. «որովհետեւ Օրէնքով է մեղքի ճանչնալը»։ (Հռովմ. Գ. 20)։ Հրէից տրուած Օրէնքը քօղազերծեց անոնց տկարութիւնը. ու արդէն մտադրուած էր ցոյց տալ անոնց թէ անկարող էին Աստուծոյ առջեւ ինքզինքնին արդարացնել. քանզի «Օրէնքին գործքերովը մէկ մարմին պիտի չարդարանայ Անոր (Աստուծոյ) առջեւը»։ Գրուած Օրէնքը դատապարտեց Հրէաները. իսկ Հեթանոսներն ալ բաւականաչափ խղճմտանքի լոյս ունէին զիրենք դատապարտելու համար. ու այսպէս ամէն բերան պապանձած է կենաց իրաւունք պահանջելէ, ու բոլոր աշխարհը Աստուծոյ առջեւ յանցաւոր կը կայնի։

Յիշելով Յակոբոսի (Բ. 10)ը, թէ ով որ ամբողջ օրէնքը կարենայ պահել բայց մէկ կէտէ մը՝ յանցաւոր է, ու Օրէնքի ուխտով խոստացուած օրհնութիւններէն ոչինչ կրնայ պահանջել, մենք կ'ըմբռնենք թէ ստուգիւ, «Արդար մը չկայ՝ ո՛չ մէկ հատ։ (Հռովմ. Գ. 10)։ Ու այսպէս՝ Աստուածաշունչը յուսոյ բոլոր դռները կը գոցէ բայց մէկէ մը. ցոյց տալով թէ դատապարտուածներէն և ո՛չ մէկը կրնայ վարձատրութեան արժանի գործերով յաւիտենական կենաց տիրանալ. և թէ՝ նոյնչափ անօգուտ է տգիտութիւնը փրկութեան պայման ներկայացնել։ Տգիտութիւնը ո՛եւէ՛ մէկը չարժանացներ հաւատքի ու հնազանդութեան վարձատրութեան։

Բազմաթիւ Քրիստոնեաներ՝ չուզելով հաւատալ թէ ա՛յսքան միլիոններով տգէտ մանուկներ ու Հե-

թանոսներ յաւիտենապէս պիտի կորսուին (որը անոնց քարոզուած է թէ յաւիտենական ու անլոյս չարչարանաց տեղ մը ղրկել կը նշանակէ), կը պնդեն՝ առանց միտ դնելու Ս. Գրոց այս համարներուն, թէ Աստուած պիտի չդատապարտէ տգէտները։ Մենք կը հիմնանք իրենց բարեսրտութեան և Աստուծոյ բարութեան գնահատութեանը վրայ, բայց կը թախանձենք իրենցմէ որպէսզի ա՛յսքան խիստ յախուռն չըլլան մերժելու կամ անտեսելու Աստուածաշունչի ասացուածքները։ Աստուած բոլորն ալ պիտի օրհնէ տգիտութենէ աւելի ընտիր միջոցով մը։

Բայց մի՞թէ ասոնք իրենց յիշած հաւատքին համաձայն կը շարժին։ Ո՛չ. Թէև անոնք կը խոստովանին թէ տգէտը իր տգիտութեան շնորհիւ փրկուելուն կը հաւատան, սակայն անոնք դեռ կը շարունակեն հեթանոսաց միսիոնարներ ղրկել, որը իրենց հազարաւոր թանկագին կեանքեր և միլիոններով դրամ կ'արժէ։ Եթէ անոնց բոլորը, կամ նոյնիսկ գոնէ կէսը տգիտութեամբ պիտի փրկուին, ուրեմն անոնց Քրիստոսը քարոզելու համար միսիոնար ղրկելը անոնց բացէ ի բաց վնասել կը նշանակէ. որովհետև միսիոնարներուն հոն երթալէն յետոյ հազիւ թէ անոնց հազարէն մէկը կը հաւատայ։ Եթէ այս ընդունուած գաղափարը ճիշդ է, շատ աւելի լաւ պիտի ըլլար զանոնք իրենց տգիտութեան մէջ թողուլ, ինչու որ այն ժամանակ աւելի մեծ համեմատութեամբ պիտի կրնային փրկուիլ։ Պատճառաբանութեան այս ուղղութեան հետևելով, մի՞թէ չե՞նք կրնար եզրակացնել թէ՝ եթէ Աստուած ամէն մարդ տգիտութեան մէջ պահած ըլլար, բոլորն ալ պիտի փրկուէին։ Ուրեմն Յիսուսի գալուստն ու մահը ան-

պէտ՝ իսկ Առաքեալներուն ու բոլոր սուրբերուն քարոզութիւններն ու չարչարանքները պարապ էին, և Աւետարան կոչուածը փոխանակ ուրախ լուրերու՝ վատ լուրեր է։ Աւելի անհեթեթ և անտրամաբանական է՝ ընտրութեան տեսութեան շուրջ Կալվինականութեան կամ ճակատագրի (բաղդակրօնութեան) հաւատացողներուն կողմանէ Հեթանոսաց միսիոնար ղրկելը, քանի որ կը հաւատան թէ իւրաքանչիւր անհատի ճակատագիրը անփոփոխելի կերպով արդէն իսկ վճռուած էր անոր գոյութիւն ունենալէն առաջ։

Սակայն Աստուածաշունչը՝ որ թէև միսիոնարական ոգւով լեցուն է, չ'ուսուցաներ թէ փրկութեան զանազան ճամբաներ կան—ճամբայ մը՝ հաւատքով,

Եւ ո՛չ ալ կը քարոզէ բաղդակրօնութեան զԱստուած նախատող վարդապետութիւնը։ Մինչդեռ նա յուսոյ ուրիշ ամէն դուռ կը գոցէ մարդկութեան առջև, սակայն լայնօրէն կը բանայ այն մէկը՝ միակ դուռը, ու կը յայտարարէ թէ բոլոր փափաքողները կրնան կեանքի դիմել. և ցոյց կուտայ թէ ամէն անոնք որ ներկայիս չեն տեսներ կամ գնահատեր անկէ ներս մտնելու օրհնեալ պատեհութիւնը, որոշեալ ժամանակին կատարեալ գիտակցութեան և գնահատութեան պիտի բերուին։ Միակ ճամբան՝ որով դատապարտուած մարդկութեան ո՛և է մէկը կամ բոլորը կրնան Աստուծոյ գալ, վարձատրութեան արժանի գործերու միջոցաւ չէ, և ո՛չ ալ տգիտութեան՝ այլ Քրիստոսի թանկագին արեան վրայ ունեցած հաւատքով. այն արիւնը, որ աշխարհին մեղքը կը վերցնէ։ (Ա. Պետ. Ա. 19։ Յովհ. Ա. 29)։ Ասիկա

*է Աւետարանը՝ մեծ ուրախութեան աւետիսը՝ «որը* **ԲՈԼՈՐ ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ** պիտի ըլլայ»։

*Արդ՝ պահ մը այս բոլոր բաները դիտենք այնպէս, ինչպէս որ Աստուած անոնց մասին մեզի կը պատմէ․ և թողունք որ Նա Ինքնին պարզէ Իր նկարագիրը։ Ուրեմն հարցնենք, Ի՞նչ եղաւ 142 հազար միլիոն մարդկութիւնը։*

*Ինչ որ ալ պատահած ըլլայ անոնց, կրնանք վստահ ըլլալ որ անոնք չարչարանաց վիճակի մէջ չեն ներկայիս․ որովհետև Աստուածաշունչը ո՛չ միայն կ՚ապացուցանէ թէ լիուլի ու կատարեալ վարձատրութիւնը պիտի չտրուի Եկեղեցիին մինչև Քրիստոսի Գալուստը, երբ որ Նա պիտի վարձատրէ ամէն մարդ (Մատթ․ ԺԶ․ 27), հապա թէ՝ անարդարներն ալ ա՛յն ժամանակ պիտի ստանան իրենց պատիժը։ Ինչ որ ալ եղած ըլլայ անոնց ներկայ վիճակը, չի կրնար անոնց լիուլի վարձատրութիւնը ըլլալ․ ինչու որ Պետրոս կ՚ըսէ․ «Տէրը գիտէ անիրաւները պատիժի համար դատաստանի օրուան պահել» (Բ․ Պետ․ Բ․ 9)․ ու Նա պիտի պահէ արդէն։*

*Սակայն այն մտածումը թէ մեր ընկեր արարածներուն հսկայ մեծամասնութիւնը ոևէ ժամանակ պիտի կորսուէին, փրկուելու համար պահանջուած գիտութիւնը չկարենալ ունենալնուն համար՝ արդարև, տխրառիթ պարագայ մը պիտի ըլլար ամէն անոնց, որոնք սիրոյ և գթութեան կայծ մը ունին։ Դարձեալ՝ Ս․ Գրոց բազմաթիւ համարներ կան, որոնք այս տեսութիւններուն հետ հաշտեցնել անկարելի կը թուի։ Զոր օրինակ՝ երբ մէկդի կը ձգենք գալիք Դարու Վերահաստատութեան ընծայած բոլոր յոյսերը, ումիմիայն անցեալի ու ներկայի լոյսը կ՚ըն-*

դունինք միակ փրկութեան պատեհութիւնները, ուրեմն ի՛նչպէս պիտի ըմբռնենք այն ասացուածքը՝ թէ «Աստուած Սէր է», և «Աստուած ա՛յնպէս սիրեց աշխարհը, որ նո՛յնիսկ Իր միածին Որդին տուաւ, որպէսզի ով որ Անոր հաւատայ չկորսուի»։ (Ա. Յովհ. Դ. 8։ Յովհ. Գ. 16)։ Տրամաբանական չէ՞ թուիր արդեօք, թէ եթէ Աստուած աշխարհը ա՛յնպէս սիրեց՝ նախապատրաստութիւն մը պիտի ընէր, որ ո՛չ միայն հաւատացեալները կարենան փրկուիլ, հապա նաև բոլորն ալ կարենան լսել՝ հաւատալու համար։

Դարձեալ՝ երբ կը կարդանք՝ «Այն էր ճշմարիտ լոյսը, որ աշխարհ եկող բոլոր մարդիկը կը լուսաւորէ» (Յովհ. Ա. 9), մեր քննութիւնը կ՚ըսէ՝ Ո՛չ այդպէս. ամէն մարդ չէ լուսաւորուած. կը տեսնենք որ Տէրը աշխարհի երկիլիոններէն փոքրիկ մաս մը միայն լուսաւորած է։ Նոյնիսկ այս համեմատաբար աւելի լուսաւորուած օրուան մէջ՝ միլիոնաւոր հեթանոսներ այս կարգի լուսաւորութեան ո՛և է նշան ցոյց չեն տար. և ո՛չ ալ Սոդոմացիները, կամ անցեալ դարերու ստուար բազմութիւնները ցոյց տուին ակնարկուած լուսաւորութիւնը։

Մենք կը կարդանք թէ Յիսուս Քրիստոս Աստուծոյ շնորհքովը «ամէն մարդու համար» մահ ճաշակեց։ (Եբր. Բ. 9)։ Բայց երբ Նա 143 երկիլիոնի համար մահ ճաշակեց՝ ու ո՛և է պատճառով այդ գոհաբերութենէն միայն մէ՛կ երկիլիոնը կ՚օգտուի, միթէ փրկութիւնը այդ համեմատութեամբ ձախողութիւն մ՚եղած չէ՞ ըլլար։ Իսկ այդպարագային՝ միթէ Առաքեալին խօսքը խիստ ընդարձակ եղած պիտի չըլլա՞ր։ Երբ դարձեալ կը կարդանք, «Ահա՛, մեծ ուրա-

խութեան աւետիս կուտամ, որ ԲՈԼՈՐ ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ պիտի ըլլայ» (Ղուկ. Բ. 10), մինչդեռ երբ շուրջերնիս կը նայինք՝ կը տեսնենք որ անիկա միայն «փոքրիկ հօտ»ի մը համար աւետիս մը եղած է, և ո՛չ թէ բոլոր ժողովուրդին. մենք պիտի ստիպուէինք զարմանալ, թէ արդեօք հրեշտակները չչափազանցեցի՞ն իրենց աւետիսին բարիքը և անոր քանակը, նոյնպէս և այն գործին կարևորութիւնը, որը իրենց աւետած Մեսիային միջոցաւ պիտի կատարուէր:

Վկայութեանց մէկ ուրիշն է՝ թէ «Մէկ Աստուած մը կայ, ու մէկ ալ Միջնորդ մը Աստուծոյ և մարդոց միջև՝ Քրիստոս Յիսուս մարդը, որ Իր անձը ամէնուն տեղը փրկանք տուաւ»: (Ա. Տիմ. Բ. 5, 6): Բոլորի՞ն համար փրկանք մը. ուրեմն ինչո՞ւ բոլոր փրկուածները մի քիչ օրհնութիւն չստանան Քրիստոսի մահէն. ինչո՞ւ բոլորն ալ չգան ճշմարտութեան գիտակցութեան մը, որպէսզի կարենան հաւատալ:

Առանց բանալիի ո՛րքան մութ, ո՛րքան անտրամաբանական կ՚երևին այս ասացուածքները. բայց երբ կը գտնենք Աստուծոյ Ծրագրին բանալին, կը տեսնենք որ այս բոլոր բնաբանները միաձայն կ՚աղաղակեն՝ «Աստուած Սէր է»: Այս բանալին՝ յիշուած վերջին բնաբանին վերջին մասին մէջ կը գտնուի—«Որ Իր անձը բոլորին տեղը փրկանք տուաւ՝ ԻՐ ԱՏԵՆԻՆ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ ԸԼԼԱԼՈՒ ՀԱՄԱՐ»: Աստուած ամէն բանի յարմար ատեն մը ունի. Նա կրնար զայն անոնց վկայել իրենց կեանքի տևողութեան. բայց քանի որ չըրաւ՝ ատիկա կ՚ապացուցանէ թէ անոնց յարմար ատենը ապաղային պէտք է որ ըլ-

*լայ: Ամէն անոնք որ պիտի կազմեն Եկեղեցին՝ Քրիստոսի Հարսը՝ ու բաժին ունենան Թագաւորական փառաց մէջ, ներկան է անոնց լսելու «յարմար ատենը»․ և ով որ ներկայիս լսելու ականջ ունի, թող լսէ և ուշադիր ըլլայ՝ ու նա ըստ այնմ պիտի օրհնուի: Թէև Յիսուս մեր ծնանելէն առաջ վճարեց մեր փրկագինը, բայց երկար տարիներ վերջը հասաւ մեր լսելու յարմար ատենը․ և զայն գնահատելնուս համար էր որ պատասխանատուութեան ենթարկուեցանք․ ու այդ պատասխանատուութիւնը միմիայն մեր կարողութեան և գնահատութեան համեմատ է: Միևնոյն սկզբունքը բոլորին համար ալ է, և Աստուծոյ յարմար ատենին բոլորին ալ պիտի վկայուի․ որով այն ատեն բոլորն ալ պատեհութիւն պիտի ունենան հաւատալու և անով օրհնուելու:*

*Տիրող կարծիքն է՝ թէ մահը վերջ կը դնէ ամէն քննութեան (պատեհութեան)․ բայց այսպէս ուսուցանող համարներ չկան Ս․ Գրոց մէջ․ ու բոլոր վերոյիշեալ՝ և ուրիշ շատ մը համարներ նշանակութենէ պիտի դադրէին, և կամ աւելի վատ նշանակութիւն մը պիտի ունենային՝ եթէ մահը ամէն յոյսերու վերջ դնէր աշխարհի հսկայ զանգուածներուն համար: Համար մը՝ որով կը ջանան փաստել գլխաւորաբար ընդունուած այս տեսութիւնը, այն է թէ՝ «Ուր որ ծառը կ'իյնայ, ինկած տեղը կը մնայ»: (Ժող․ ԺԱ․ 3): Եթէ ասիկա մարդուն ապագային հետ ո'և է առնչութիւն ունի, ցոյց կուտայ թէ մէկը գերեզման մտած ժամանակ ինչ վիճակի մէջ որ ըլլայ, ո'և է փոփոխութիւն չի կրեր մինչև որ անկէ դուրս ելլէ: Եւ այս է այս նիւթին ակնարկող բոլոր համարներուն միօրինակ ու-*

սուցումը, որը արդէն յաջորդ գլուխներուն մէջ ցոյց պիտի տրուի։ Քանի որ Աստուած չի մտադրեր տգիտութեան պատճառաւ մարդիկ փրկել, հապա, «կ'ուզէ որ ամէն մարդ ճշմարտութեան գիտութիւնը ճանչնալու գայ» (Ա. Տիմ. Բ. 4). և քանի որ մարդկային զանգուածները տգիտութեան մէջ մեռած են. ու քանի որ «գերեզմանին մէջ գործք, խորհուրդ, գիտութիւն ու իմաստութիւն չկայ» (Ժող. Թ. 10). ուրեմն Աստուած մեռելոց վերակենդանացում մը պատրաստած է, որպէսզի անոնք գիտութիւն, հաւատք և փրկութիւն ստանան։ Ուրեմն Իր Ծրագիրն է՝ թէ «ինչպէս որ Ադամով ամէնը կը մեռնին, նոյնպէս ալ Քրիստոսով ամէնը կենդանի պիտի ըլլան. բայց ամէն մէկը իր կարգովը»—նախ Աւետարանական Եկեղեցին՝ Հարսը՝ Քրիստոսի Մարմինը. անկէ վերջը՝ Հազարամեայ Դարուն՝ ամէն անոնք, որոնք Անորը պիտի ըլլան Իր Ներկայութեան (ո՛չ թէ գալու ատենը՝ որ սխալ թարգմանութիւն մ'է) հազար տարիներու շրջանին, Տիրոջը յարմար ատենին՝ ուր բոլորն ալ պատեհութիւնը պիտի ունենան զինքը ճանչնալու, պզտիկէն մինչև մեծը։—Ա. Կոր. ԺԵ. 22։

Ինչպէս որ մահը առաջին Ադամով եկաւ, նոյնպէս ալ կեանքը Քրիստոսով՝ երկրորդ Ադամով պիտի գայ։ Ամէն ինչ որ մարդկութիւնը առաջին Ադամով կորսնցուց որպէս անոր սերունդը՝ պիտի վերադարձուի ամէն անոնց, որոնք կը հաւատան երկրորդ Ադամին։ Երբ իրենց մահուան քունէն արթննան՝ անցեալի մէջ ունեցած չարին փորձառութեան առաւելութեամբը, բան մը՝ որմէ Ադամ զուրկ էր, եթէ անոնք շնորհակալութեամբ ընդունին փրկութիւնը

որպէս Աստուծոյ Նուէրը՝ պիտի կարենան յաւիտենապէս ապրիլ, սկզբնական հնազանդութեան պայմանաւ։ Հոն կատարեալ հնազանդութիւն պիտի պահանջուի, ու կատարելապէս հնազանդ ըլլալու կարողութիւն պիտի տրուի Թագաւորութեան Իշխանին արդար տիրապետութեան ներքև։ Այս է ահա աշխարհին նուիրուած փրկութիւնը։

Հիմա ուրիշ բնաբան մը առնենք որը ընդհանրապէս անտեսուած է, բացի Համաշխարհականներէն (Universalists). վասնզի թէ և մենք Համաշխարհական չենք՝ բայց իրաւունք ունինք գործածելու և հաւատալու Աստուծոյ Խօսքին ամէն վկայութեանց, ու անոնցմով հրճուելու։ Անիկա հետևեալ կերպով կը կարդացուի, «Վասնզի կենդանի Աստուծոյ յուսացեր ենք, որ **ամէն մարդոց** փրկիչն է, մանաւանդ **հաւատացեալներուն**»։ (Ա. Տիմ. Դ. 10)։ Աստուած ամէն մարդ պիտի փրկէ, բայց մասնաւորապէս («բոլորովին») պիտի չփրկէ ո՛և է մէկը, բացի անոնցմէ՝ որոնք Իրեն կուգան Քրիստոսի միջոցաւ։ Աստուծոյ՝ բոլոր մարդոց ընծայելիք բացարձակ փրկութիւնը պիտի չհակառակի անոնց կամքի կամ ընտրութեան ազատութեանը, անոնց կամաց հակառակ կեանք տալով. Նա կ՚ըսէ. «Այսօր ձեր առջևը դրի կեանքն ու մահը, ուրեմն **ընտրէ** կեանքը որ ապրիս»։

Սիմէօն ծերունին այս երկու փրկութիւնները մատնանշեց ըսելով, «Իմ աչքերս տեսան Քու փրկութիւնդ... **Լոյս մը հեթանոսները լուսաւորելու,** և **փառքը** Քու (ճշմարտապէս) Իսրայէլ (—ացի) **ժողովուրդիդ**»։ Անիկա կըհամաձայնի Առաքեալին ըսածին հետ՝ թէ այն իրողութիւնը որ Յիսուս Քրիստոս՝ Միջնորդը՝ Ինքզինքը բոլորին համար փըր-

կանք տուաւ, **ԻՐ ՅԱՐՄԱՐ ԱՏԵՆԻՆ** բոլորին վկայութիւն պիտի ըլլայ։ Ասիկա է այն բանը, որ ամէն մարդու պիտի տրուի, առանց նկատի առնելու անոնց հաւատքը կամ կամքը։ Փրկչին այս մեծ ուրախութեան աւետիսը ժողովուրդին պիտի ըլլայ (Ղուկ. Բ. 10, 11). բայց մեղքէ ու մահուընէ մասնաւոր փրկութիւնը միայն ժողովուրդին պիտի գայ (Մատթ. Ա. 21)—անոնց՝ որ կը հաւատան Անոր—ինչու որ կը կարդանք թէ Աստուծոյ բարկութիւնը (մահուան դատապարտութիւնը) անհաւատներուն վրայ կը մնայ։—Յովհ. Գ. 36։

Մենք կը տեսնենք ուրեմն, թէ ընդհանուր փրկութիւնը որ ամէն անհատի պիտի գայ, կը բաղկանայ լոյսէ՝ ճշմարիտ լոյսէն, և կեանքի ընտրութեան պատեհութենէ մը. ու քանի որ մարդկութեան հըսկայ մեծամասնութիւնը գերեզմանն է, պէտք պիտի զգացուի զանոնք գերեզմանէն դուրս հանել, Փրկչի մը ուրախութեան աւետիսները անոնց վկայելու համար. նոյնպէս ալ՝ այն մասնաւոր փրկութիւնը զոր ներկայիս հաւատացեալները յոյսով կը վայելեն (Հռովմ. Ը. 24), և որը Հազարամեայ Դարուն մէջ իրականապէս պիտի յայտնուի «այն օրուան մէջ հաւատացողներուն», մեղաց գերութենէն ու մահուան ապականութենէն կատարելապէս ազատիլ ու Աստուածորդոց փառաւոր ազատութեանը տիրանալ կը նշանակէ։ Սակայն այս բոլոր օրհնութեանց տիրացումը կախում պիտի ունենայ Քրիստոսի Թագաւորութեան օրէնքներուն հանդէպ ունենալիք սրտագին հնազանդութենէն—կատարելութեան տիրանալու արագութիւնը պիտի յայտնէ Թագաւորին ու Անոր սիրոյ օրէնքին հանդէպ ունեցած սիրոյ աստի-

ճանը։ Ու երբ ճշմարտութեամբ լուսաւորուած, Աստուծոյ սիրոյն գիտակցութեան բերուած, ու մարդկային (իրական կամ հաշուըրուած) կատարելութեան մէջ վերահաստատուած մէկը սկսի «վախնալ» ու «ետ քաշուի», անիկա անհաւատներուն հետ պիտի կորսուի ժողովուրդին մէջէն. ասիկա է երկրորդ մահը։—Եբր. Ժ. 38, 39։ Յայտ. ԻԱ. 8։ Գործ. Գ. 23։

Այսպէս՝ կը տեսնենք որ մինչև ցարդ անլուծելի մնացած այս բոլոր բնաբանները բացատրուած են հետևեալ ասացուածքովը—«յարմար ատենին վկայութիւն ըլլալու»։ Յարմար ատենին այդ ճշմարիտ լոյսը պիտի լուսաւորէ ամէն մարդ որ աշխարհ եկած է։ Յարմար ատենին անիկա «մեծ ուրախութեան աւետիս պիտի ըլլայ բոլոր ժողովուրդին»։ Ուրիշ և ո՛չ մէկ կերպով կարելի է գործածել Ս. Գրոց այս համարները, առանց խեղաթիւրելու զանոնք։ Պօղոս զօրաւոր կերպով կը պաշտպանէ պատճառաբանական այս ուղղութիւնը Հռովմ. Ե. 18, 19ին մէջ։ Նա կը տրամաբանէ թէ՝ ինչպէս որ ամէն մարդ Ադամի մեղանչումովը մահուան դատապարտուեցաւ, նոյնպէս ալ՝ Քրիստոսի արդարութիւնը և մինչև ի մահ հնազանդութիւնը արդարացումի հիմը կ՚ընծայէ. և թէ՝ ինչպէս որ բոլորը առաջին Ադամով կեանքերնին կորսնցուցին, նոյնպէս ալ բոլորը՝ իրենց անձնական արժանիքէն անկախ, պիտի կարենան երկրորդ Ադամը ընդունելով՝ կեանք ստանալ։

Պետրոս կ՚ըսէ մեզ թէ այս վերահաստատութիւնը բոլոր սուրբ մարգարէներուն բերնովը խօսուած է (Գործ. Գ. 19—21)։ Անոնք բոլորն ալ կը քարոզեն զայն։ Եզեկիէլ՝ չորցած ոսկորներու հովիտին

*մասին կ՚ըսէ· «Այս ոսկորները բոլոր Իսրայէլի տունն են»։ Ու Աստուած կ՚ըսէ Իսրայէլի, «Ահա՛ Ես ձեր գերեզմանները պիտի բանամ, ու ձեր գերեզմաններէն ձեզ պիտի հանեմ, ո՛վ Իմ ժողովուրդս, և ձեզ Իսրայէլի երկիրը պիտի բերեմ։ Ու երբ... հոգիս ձեր մէջը դնեմ, ու ձեր երկրին մէջ ձեզ հանգստացնեմ, այն ատեն պիտի գիտնաք թէ Ես եմ Տէրը· Ես խօսեցայ ու պիտի կատարեմ։—Եզեկ· Լէ·* 11—14։

*Ասոր հետ կը համաձայնին Պօղոսին խօսքերը·* (*Հռովմ· ԺԱ·* 25, 26)—*«մասամբ կուրութիւն եղաւ Իսրայէլին, մինչև որ հեթանոսաց* (*ընտրելոց դասին, Քրիստոսի Հարսին*) *լրութիւնը մտնէ· և այսպէս բոլոր Իսրայէլ պիտի փրկուի», և կամ իրենց մերժուած վիճակէն ետ պիտի բերուին· որովհետև «Աստուած չմերժեց Իր ժողովուրդը՝ որն որ առաջուց ճանչցաւ»* (*համար* 2)։ *Անոնք թէև Քրիստոսի Հարսին աշխարհէն ընտրման շրջանին Իր շնորհէն մերժուեցան, բայց պիտի վերահաստատուին՝ երբ այս գործը լրացած է* (*համարք* 28—33)։ *Մարգարէութիւնները լեցուն են վկայութիւններով՝ թէ ինչպէս Աստուած զանոնք կրկին պիտի հաստատէ իրենց մայր երկրին մէջ, թէ անոնք այլևս պիտի չխլուին։ «Այսպէս կ՚ըսէ Իսրայէլի Տէր Աստուածը ... Իմ աչքերս անոնց վրայ պիտի հաստատեմ բարութեան համար, ու զանոնք այս երկիրը պիտի դարձնեմ, և զանոնք պիտի շինեմ ու պիտի չփլցնեմ· և զանոնք պիտի տնկեմ ու պիտի չխլեմ։ Եւ անոնց անանկ սիրտ մը պիտի տամ՝ որ զԻս ճանչնան, թէ Ես եմ Տէրը· ու անոնք Իմ ժողովուրդս պիտի ըլլան, ու Ես անոնց Աստուածը պիտի ըլլամ· վասնզի իրենց*

*բոլոր սրտովը Ինծի պիտի դառնան»։ (Երեմ․ ԻԴ․ 5—7։ ԼԱ․ 28։ ԼԲ․ 40—42։ ԼԳ․ 6—16)։ Ասիկա միմիայն Բաբելոնի, Սուրիայի ևն․, գերութիւններէն վերահաստատուիլը չի նշանակեր, որովհետև անոնք անկէ ի վեր խլուած են իրենց երկրէն։*

*Դարձեալ՝ Տէրը կ'ըսէ․ «Այն օրերը մէջ մըն ալ պիտի չըսեն, Հայրերը ագոխ կերան ու որդւոցը ակռաները առին․ հապա ամէն մարդ (որ կը մեռնի) իր անօրէնութեանը համար պիտի մեռնի»։ (Երեմ․ ԼԱ․ 29, 30)։ Ասիկա ներկայիս տեղի չունենար։ Ամէն ոք իր մեղքին համար չի մեռնիր, հապա Ադամի մեղքին պատճառաւ—«Ամէնը Ադամով կը մեռնին»։ Նա՛ կերաւ մեղքի թթու ագոխը․ ու մեր հայրերը չարունակեցին ուտել զայն՝ իրենց զաւակներուն կտակելով աւելի հիւանդութիւններ ու թշուառութիւններ, այսպէսով, փութացնելով պատիժը՝ մահ։ Ա՛յն օրը, ուր «ամէն մարդ (որ կը մեռնի) իր անօրէնութեանը համար պիտի մեռնի», միմիայն, Հազարամեայ և կամ Վերահաստատութեան օրն է։*

*Թէև մարգարէութիւններէն ու խոստումներէն շատերը Իսրայէլի միայն կը թուին վերաբերիլ, սակայն պէտք է յիշել թէ անոնք այլաբանական ժողովուրդ մ'էին, որով անոնց տրուած խոստումները թէև երբեմն մասնաւորապէս անոնց կը պատկանին, սակայն ընդհանրապէս, աւելի լայն իմաստով մ'ալ աշխարհի մարդկութեան կը վերաբերին, որուն այդ ազգը խորհրդապատկեր մ'էր։ Մինչդեռ Իսրայէլը, որպէս ազգ, նախապատկերն էր ամբողջ աշխարհին՝ անոր քահանայական դասը նախապատկերն էր ընտրեալ «փոքրիկ հօտ»ին, Քրիստոսի Գլուխին ու Մարմնին՝ «Արքայական Քահանայութեան»․ իսկ*

զոհերը, մաքրումներն ու քաւութիւնները, որոնք Իսրայէլի համար կ'ըլլային՝ խորհրդապատկերներն էին «լաւագոյն զոհեր»ուն, լիուլի մաքրումներուն և իրական քաւութեանը «բոլոր աշխարհի մեղքերուն համար», որուն մէկ մասն էին իրենք։

Եւ ո՛չ միայն այսպէս, հապա Աստուած ուրիշ ազգեր ալ կը յիշէ, նո՛յնիսկ իրենց անուններովը, ու անոնց վերահաստատութիւնը կը խոստանայ։ Որպէս զօրաւոր օրինակ՝ մենք Սոդոմացիները կը յիշենք։ Արդարև, եթէ որոշ կերպով տեսնենք Սոդոմացւոց Վերահաստատութեան ուսուցումը, մենք կրնանք գոհանալ ամբողջ մարդկութեան համար վերապահուած այս հիանալի Վերահաստատութեան ճշմարտութեանէն, որը բոլոր սուրբ մարգարէներուն բերնովը խօսուած է։ Եւ ինչո՞ւ Սոդոմացիները Իսրայէլի և կամ մեզմէ ո՛և է մէկուս նման պատեհութիւն չունենան կատարելութեան և յաւիտենական կեանքի տիրանալու։ Իրաւ է թէ անոնք արդար չէին, բայց ո՛չ ալ Իսրայէլ, և ո՛չ իսկ մենք արդար ենք, որ ներկայիս կը լսենք Աւետարանը։ «Արդար մը չկայ, ոչ մէկ հատ», բացի այն արդարութենէն՝ զոր կը վերագրէ Քրիստոս, որ բոլորին համար մեռաւ։ Մեր Տիրոջ խօսքերը կ'ըսեն մեզ թէ՝ թէև Աստուած երկինքէն կրակ տեղացուց ու անոնց բոլորն ալ ոչընչացուց իրենց չարութեանը համար, սակայն Սոդոմացիները իր առջևը այնքան մեծ մեղաւորներ չէին, որքան որ Հրէաները, որոնք աւելի լոյս ունէին։ (Մատթ. ԺԹ. 24։ Ղուկ. Ժէ. 29)։ Նա կախաղանայումի Հրեաներուն ըսաւ. «Եթէ Սոդոմի մէջ եղած ըլլային այն հրաշքները որ քու մէջդ եղան, իրաւ որ մինչև այսօր դեռ պիտի մնար»։—Մատթ. ԺԱ. 23։

Այսպէսով՝ մեր Տէրը կը սորվեցնէ թէ Սոդոմացիները կատարեալ պատեհութիւն մը չունեցան. ու Նա անոնց կ'երաշխաւորէ այսպիսի պատեհութիւն մը, երբ կ'ըսէ (համար 24), «Բայց ձեզի կ'ըսեմ որ Սոդոմացւոց երկրին աւելի դիւրին պիտի ըլլայ դատաստանին օրը՝ քան թէ քեզի»: Դատաստանի Օրուայ նկարագիրը ու անոր գործը յառաջիկայ էջերուն մէջ պիտի ցուցադրուին: Հոս միայն ձեր ուշադրութիւնը կը հրաւիրենք այն իրողութեան՝ թէ Կափառնայումի համար դիւրին ժամանակ մը պիտի ըլլայ, և սակայն աւելի դիւրին՝ Սոդոմի համար. որովհետև, թէև անոնցմէ ո՛չ մէկը կատարեալ դիտութիւն ունէր, ոչ ալ «Սերունդ»ին միջոցաւ գալիք բոլոր օրհնութիւններուն տիրացած՝ սակայն Կափառնայումը աւելի մեծ լոյսի դէմ մեղանչած էր:

Եւ եթէ Կափառնայումը ու բոլոր Իսրայէլը պիտի յիշուին ու օրհնուին Յիսուսի արեամբը կնքուելիք «Նոր Ուխտ»ին ներքև, ինչո՞ւ Սոդոմացիներն ալ պիտի չօրհնուին «աշխարհի բոլոր ազգաց» հետ. անոնք անտարակոյս պիտի օրհնուին: Եւ յիշելու ենք թէ՝ թէև Աստուած «երկնքէն կրակ տեղաց ու անոնց բոլորնալ ոչնչացուց», Յիսուսի կողմանէ իրենց վերահաստատութեան մասին խօսուելէն շատ մը դարեր առաջ, սակայն Անոր խօսքերը ապացուց ն'են թէ անոնք պիտի արթննան ու իրենց գերեզմաններէն դուրս պիտի գան:

Արդ՝ քննենք Եզեկիէլ ԺԶ. 48—63ի մարգարէութիւնը: Ուշադրութեամբ կարդալ զայն. Աստուած Հոս Իսրայէլի մասին կը խօսի, ու զայն անոր դրացիին՝ Սամարիային ու Սոդոմին հետ կը բաղդատէ, որուն համար կ'ըսէ. «Եւ զանոնք մէջտեղէն վեր-

ցուցի, երբոր բարի տեսայ» (տես Անգլ. Թրգմ.)։ Ո՛չ Յիսուս և ո՛չ ալ մարգարէները ո՛և է բացատրութիւն կուտան, Աստուծոյ՝ Սողոմը կործանելուն երևութական աչառութեանը մասին, երբ Նա Սողոմէն աւելի յանցաւորները անպատիժ կը թողուր։ Ասիկա բոլորովին պիտի պարզուի, երբ «յարմար ատեն»ին Իր վսեմ ծրագիրները յայտնուած են։ Մարգարէն միմիայն կ՚ըսէ թէԱստուած «բարի տեսաւ» այդպէս ընել, իսկ Յիսուս կ՚աւելցնէ՝ թէ անոնց աւելի դիւրին պիտի ըլլայ դատաստանի օրը՝ քան միւս աւելի յանցաւոր եղողներուն։ Բայց ենթադրելով թէ մահը վերջ կը դնէ ամէն պատեհութեանց, և թէ անկէ վերջ ո՛չ ոք կրնայ պատեհութիւն ունենալ ճշմարտութեան տիրանալու ու անոր հնազանդելու, մենք կը հարցնենք, ուրեմն ինչո՞ւ Աստուած բարի տեսաւ ոչնչացնել այս ժողովուրդը, առանց անոնց փրկութեան պատեհութիւն մը տալու այն միակ անուան գիտութեան միջոցաւ՝ որով միայն կրնան փրկուիլ։ Պատասխանն այն է թէ՝ որովհետև անոնց «յարմար ատենը» չէր։ «Յարմար ատեն»ին անոնք մահուան քունէն պիտի արթննան ու ճշմարտութեան գիտակցութեան բերուին, ու այսպէս խոստացեալ «Սերունդ»ին միջոցաւ աշխարհի բոլոր ազգաց հետ պիտի օրհնուին։ Անոնք այն ատեն միայն յաւիտենական կենաց տիրանալու փորձին մէջ պիտի ըլլան։

Այս մտածելակերպով միայն, և ո՛չ ուրիշով՝ կըրնանք ըմբռնել սիրոյ Աստուծոյն վարուելակերպերը Ամաղէկացւոց և ուրիշ ազգաց հետ, որ ո՛չ միայն թոյլատրեց՝ այլ հրամայեց Իսրայէլացիներուն որ ոչնչացնեն զանոնք, ըսելով, «Գնա՛, զա՛րկ Ամա-

ղէկը, և անոր բոլոր ունեցածը նզովքի պէս բնաջինջ ըրէ, ու անոր չխնայես, և էրիկ մարդէն մինչև կնիկ մարդը, ու տղոցմէն մինչև կաթնկերը, արջառէն մինչև ոչխարը, և ուղտէն մինչև էշը մեռցնես»։ (Ա. Թագ. ԺԵ. 3)։ Այս երևութապէս կեանքի անփոյթ կոտորածը անըմբռնելի կը թուի, երբ զայն Աստուծոյ վերագրուած սիրոյ նկարագրին և Յիսուսի ուսուցման հետ կը բաղդատենք՝ «Սիրեցէ՛ք ձեր թըշնամիները» ևն., մինչև որ կը ծանօթանանք Աստուծոյ Ծրագրին սխտրէմական կարգին, թէ անոր ամէն մէկ մասերուն գործադրմանը համար «յարմար ատեն» մը սահմանուած է, նոյնպէս նաև այն իրականութիւնը՝ թէ մարդկային ցեղի ամէն մէկ անդամ անոր մէջ մաս ու բաժին ունի։

Ներկայիս կը տեսնենք որ այս Ամաղէկացիները, Սոդոմացիները և ուրիշներ՝ Աստուծոյ արդար զայրոյթին և չարագործներուն հանդէպ Անոր ունեցած վերջնական բնաջնջման հաստատամտութեանը պարզ օրինակներն էին—օրինակներ՝ որոնք ո՛չ միայն ուրիշներու օգտին պիտի ծառայեն, հապա նաև իրենց ալ՝ երբոր իրենց Դատաստանի կամ փորձի ժամանակը գայ։ Անոնց համար նոյնքան լաւ էր այդ կերպով մեռնիլ, որքան հիւանդութեամբ և համաճարակով։ Անոնք պարզապէս չարին գիտութեանը մէջ կը զարգանային. և իրենց մահը իրենց ապագայ օգտին համար էր. ինչու որ երբ որոշեալ ժամանակին վերակենդանալով դատաստանի ենթարկուին, ի վիճակի պիտի ըլլան արդարութիւն սորվելու, և բարին զանազանելով ու ընտրելով՝ կեանքի տիրանալու։

Բայց մարգարէութեան քննութեանը մէջ քիչ մը

աւելի հեռուն երթանք։ Իսրայէլը Սոդոմի և Սամարիայի հետ բաղդատելէ՝ ու զայն ամենէն շատ մեղադրելի գտնելէն վերջ (Եզեկ. ԺԶ. 48—54)՝ Տէրը կ'ըսէ, «Եւ Ես պիտի դարձնեմ անոնց գերութիւնը, Սոդոմին ու անոր աղջիկներուն գերութիւնը, և Սամարիային ու անոր աղջիկներուն գերութիւնը, անոնց մէջ քու գերութիւնդ ալ ետ պիտի դարձնեմ»։ Հոս յիշուած գերութիւնը ուրիշ բան չի կրնար ըլլալ՝ եթէ ոչ անոնց մահուայ գերութիւնը, որովհետև այս յիշուածները այն ժամանակ մեռած էին։ Մահուայ վիճակին մէջ բոլորն ալ գերիներ են. Քրիստոս եկաւ բանալու գերեզմանին դռները, ու ազատելու գերիները։ (Ես. ԿԱ. 1։ Զաք. Թ. 11)։ 55րդ. համարին մէջ, ասիկա «իրենց առջի վիճակին պիտի դառնան» կոչուած է, որը Վերահաստատութիւն մը կը նշանակէ։

Ոմանք՝ որ աւելի մեծ լոյսի ու գիտութեան ներքև կ'ընդունին Աստուծոյ՝ Քրիստոսի միջոցաւ իրենց մեղքերուն և տկարութիւններուն ներման ողորմութիւնը, չեն կրնար երևակայել թէ միևնոյն շնորհքը ուրիշներու ալ կրնայ վերագրելի ըլլալ Նոր Ուխտի ներքև. թէև անոնք ըստ երևոյթին կ'ընդունին Առաքեալին խօսքերը՝ թէ Յիսուս Քրիստոս Աստուծոյ շնորհքովը ամէն մարդու համար մահ ճաշակեց։ Ասոնցմէ ոմանք կը թելադրենթէ՝ այս մարգարէութեանը մէջ Տէրը հեգնօրէն խօսած ըլլալու է Հրէաներուն, ըսելով թէ Ինքը այնքան պատրաստակամ է ետ բերելու Սոդոմացիները՝ որքան Հրէաները, մինչդեռ դիտաւորութիւն չունէր վերահաստատելու և ո՛չ մէկը։ Բայց տեսնենք թէ յաջորդ համարները ի՛նչպէս կը համաձայնին այս գաղափարին հետ։ Տէրը կ'ըսէ, «Բայց Ես քու մանկու-

թեանդ օրերը քեզի հետ ըրած Ուխտս պիտի յիշեմ, ու քեզի հետ յաւիտենական Ուխտ մը պիտի հաստատեմ։ Այն ատեն դուն պիտի յիշես քու ճամբաներդ, ու պիտի ամչնաս երբոր ընդունիս քոյրերդ...։ Եւ Ես քեզի հետ Իմ Ուխտս պիտի հաստատեմ, ու պիտի գիտնաս թէ Ես եմ Տէրը, որպէսզի յիշես ու ամչնաս, և ամչնալուդ պատճառաւ մէյ մըն ալ բերանդ չբանաս, երբոր քու ըրած բոլոր գործքերուդ համար քեզի քաւութիւն ընեմ՝ Կ'ԸՍԷ ՏԷՐ ԵՀՈՎԱՆ»։ Երբոր խոստումը այսպէս ստորագրուած է Մեծ Եհովայէն, ամէն անոնք որոնք որոշ կերպով ըմբռնած են թէ Աստուած ճշմարիտ է, կրնան վստահութեամբ հրճուիլ անոր ստուգութեանը վրայ. մանաւանդ անոնք՝ որ կ'ըմբռնեն թէ Նոր Ուխտի այս օրհնութիւնները Աստուծմէ ապահովուած են՝ Քրիստոսով։

Ասոր վրայ կ'աւելցնէ Պօղոս իր վկայութիւնը՝ ըսելով, «Եւ այսպէս բոլոր Իսրայէլ (կենդանի թէ մեռեալ) պիտի փրկուի (ազատուի կուրութենէ), ինչպէս որ գրուած է՝ Սիօնէն պիտի գայ Փրկիչը, ու Յակոբէն ամբարշտութիւնները մէկդի պիտի դարձնէ. և այս է Իմ անոնց Ուխտս, երբոր անոնց մեղքերը վերցնեմ... Անոնք սիրելի են իրենց հայրերուն սիրոյն համար. ինչու որ Աստուծոյ պարգևները ու կոչումը առանց զղջանալու են։—Հռովմ. ԺԱ. 26—29։

Մենք զարմանալու պէտք չունինք, թէ Հրէաները, Սոդոմացիները, Սամարացիները և բոլոր մարդկութիւնը, պիտի ամչնան ու չփոթուին՝ երբ «յարմար ատեն»ին Աստուած ցոյց տայ Իր շնորհաց առատութիւնը։ Այո՛, շատեր, որոնք ներկայիս Աստուծոյ որդիքն են՝ պիտի չփոթուին ու ապշին, երբ

տեսնեն՝ թէ ինչպէս Աստուած ա՛յնքան սիրեց ԱՇԽԱՐՀԸ, և թէ՝ Անոր խորհուրդներն ու Ծրագիրները ո՛րքան բարձր էին իրենցիններէն:—Ես. ԾԵ. 8—13:

Քրիստոնեաները, ընդհանրապէս կը հաւատան թէ Աստուծոյ օրհնութիւնները բոլորովին ու միայն ընտրեալ Եկեղեցիին կը պատկանին. բայց ներկայիս կ՚սկսինք տեսնել որ Աստուծոյ Ծրագիրը մեր ենթադրածէն աւելի ընդարձակ է, և թէև Նա Եկեղեցիին «Խիստ մեծ ու թանկագին խոստումներ» տուած է, սակայն Նա աշխարհին համար ալ ճոխ նախապատրաստութիւն ըրած է, որուն հանդէպ ունեցած սէրը մղեց զԻնքը փրկելու զայն: Հրէաներն ալ այս կերպ սխալ մը գործեցին, խորհելով թէ Աստուծոյ բոլոր խոստումները իրենց համար էին միայն. բայց երբոր «յարմար ատեն»ը եկաւ, ու Հեթանոսներն ալ շնորհ գտան, Իսրայէլի մնացորդը, որոնց սրտերը պէտք եղածին չափ լայն էին՝ հրճուեցան Աստուծոյ շնորհաց այս աւելի լայն յայտնութեան մէջ, բաժանորդ ըլլալով այդ աւելցած շնորհին. մինչդեռ մնացեալը կուրացաւ նախապաշարմամբ և մարդկային աւանդութեամբ: Եկեղեցիէն ամէն անոնք, որ կը տեսնեն Հազարամեայ Դարու արշալոյսի ցոլքերը, և անոնց բարերար առաւելութիւնները բոլոր աշխարհի համար, թող ուշադիր ըլլան, որպէսզի չըլլայ թէ յառաջացող լոյսին հակառակ գտնուին, ու այսպէս՝ ժամանակուայ մը համար կուրանան հանդէպ անոր փառաց ու օրհնութեանց: Կալվինականութեան և Արմինիոսականութեան ընծայած երկու անհամաձայն տեսութիւնները ո՛րքան կը խեղաթիւրեն ճշմարտութիւնները, և ո՛րքան հեռի են Աստուծոյ

հրաշալի Ծրագրէն, որ ներկայիս «փոքրիկ հօտ» մը կ'ընտրէ, ապագային շատերը օրհնելու համար: Վերոյիշեալ երկու յարանուանութեանց առաջինը՝ կ'ուրանայ Ս. Գրոց Ձրի Շնորհաց վարդապետութիւնը, և խղճալի կերպով կը ծամածռէ Ընտրութեան հիանալի վարդապետութիւնը. վերջինը՝ կ'ուրանայ Ընտրութեան վարդապետութիւնը, ու կը թերանայ ըմբռնելու Աստուծոյ Ձրի Շնորհաց օրհնեալ լիութիւնը:

Կալվինականութիւնը կ'ըսէ.—Աստուած ամենաիմաստուն է. Նա վախճանը սկիզբէն գիտէր. և քանի որ Իր բոլոր նպատակները պիտի կատարուին՝ Նա երբե՛ք մտադրած չէր կրնար ըլլալ մի քանիներէ՝ Եկեղեցիէն՝ աւելին փրկել: Նա ասոնք ընտրեց և Նախասահմանեց յաւիտենապէս փրկուելու. իսկ մնացեալ բոլորը՝ հաւասարապէս նախասահմանուած ու ընտրուած էին յաւիտենական տանջարան երթալու. «ինչու որ յայտնի է Աստուծոյ Իր բոլոր գործքերը աշխարհիս սկիզբէն հետէ»:

Այս տեսութիւնը իր լաւ կողմերը ունի: Ան կ'ընդունի Աստուծոյ ամենագէտ ըլլալը. անիկա պիտի ըլլար մեծ Աստուծոյ մը մեր գաղափարականը, եթէ տակաւին չպակսէին մեծութեան երկու կարևոր յատկանիշերը. այսինքն՝ Սէր և Արդարութիւն, որոնցմէ և ո՛չ մէկը ցուցադրուած է 142 երկիլիոն արարածներու ստեղծագործութեանը մէջ, որոնք իրենց ծնանելէն առաջ յաւիտենական չարչարանքի դատապարտուած էին, և Իր սիրոյն յայտարարութիւններովը հեգնանքի ենթարկուած: Բայց քանի որ Աստուած Սէր է, և Արդարութիւնն ալ Իր գահին հիմն է, Նա չի կրնար այսքան անգութ և անարդար ըլլալ:

*Արմինիոսականութիւնը կ՚ըսէ.—Այո՛, Աստուած Սէր է. ու Նա մարդկութիւնը ստեղծելով՝ անոր ո՛և է չարիք չկամեցաւ, այլ միայն բարիք: Բայց Սատանան յաջողեցաւ նախածնողքը փորձութեան մէջ ձըգել, ու այսպէս՝ մեղքը աշխարհ մտաւ, ու անով ալ մահը: Անկէ ի վեր Աստուած Իր կրցածին լաւագոյնը ըրած է մարդկութիւնը իր թշնամիէն ազատելու, նոյնիսկ Իր Որդին տալով: Եւ թէև ներկայիս, վեց հազար տարիէ վերջ, Աւետարանը մարդկութեան մէկ փոքրիկ մասին հասած է, բայց կը յուսանք ու կը հաւատանք թէ յառաջիկայ վեց հազար տարիներու ընթացքին, շնորհիւ եկեղեցիին ժրաջանութեանը և առատաձեռնութեանը՝ Աստուած պիտի կարենայ դարմանել չարիքը, որը Սատանային միջոցաւ ներմուծուեցաւ. որով գոնէ այն ատեն ապրողները կարող պիտի ըլլան ճանչնալու Իր սէրը, ու պատեհութիւն ունենան հաւատալու և փրկուելու:*

*Թէև այս տեսութիւնը զԱստուած սիրով ու մարդասիրական ծրագիրներով օժտուած էակ մը կը ներկայացնէ, բայց կը նշանակէ թէ Նա կարողութենէ և կանխագիտութենէ զուրկ է, որոնք սակայն կարևոր են, իրականացնելու Իր մարդասէր ծրագիրները. թէ՝ Նա կը թերանայ իմաստութեան ու զօրութեան մէջ: Այս տեսակէտէ այնպէս պիտի երևի թէ՝ մինչդեռ Աստուած ձեռնարկած էր Իր նոր ստեղծած զաւակներուն բարելաւութեանը համար կարգադրութիւններ ու ծրագիրներ պատրաստելու, Սատանան ներս սպրդեցաւ, ու վարպետորդի մէկ հարուածով՝ տակն ու վրայ ըրաւ Աստուծոյ ծրագիրները, այն աստիճան, որ Իր բոլոր զօրութեան վատնումովն իսկ, Աստուած տասն և երկու հազար տարիներ*

պէտք է որ ըլլայ, վերահաստատելու համար արդարութիւնը, այն ալ այն սատիճանով՝ որ մնացեալ մարդկութիւնը որ դեռ կենդանի է, պատեհութիւն ունենայ բարին ընտրելու այնքան յօժարակամօրէն՝ որքան չարը: Բայց անցեալ և ապագայ տասներկու հազար տարիներու համագումար 284 երկիլիոնը, ըստ այս տեսութեան, հակառակ Աստուծոյ անոնց հանդէպ տածած սիրոյն, յաւիտենապէս պիտի կորսուին, որովհետև Սատանան Անոր ծրագիրներուն միջամուխ եղաւ: Այսպէս ահա՛ Սատանան հազարաւորներ պիտի քաշէ դէպի յաւիտենական տանջանքը, փոխան այն մէկուն՝ զոր Աստուած կը փրկէ փառաց համար:

Այս տեսութիւնը, պարտ է մարդոց՝ Սատանայի նկատմամբ ունեցած իմաստութեան ու զօրութեան գաղափարը բարձրացնել, ու այս յատկանիշերուն մէջ նսեմացնել Աստուծոյ նկատմամբ իրենց համարումը, որուն համար Սաղմոսերգուն ընդհակառակը կ՚ըսէ. «Նա խօսեցաւ ու կատարուեցաւ. հրամայեց ու հաստատուեցաւ»: Բայց Աստուած ո՛չ անակնկալի մը դէմ յանդիման գտաւ Ինքզինք, ո՛չ Սատանային յանկարծակիի եկաւ, և ո՛չ ալ Սատանան ո՛և է չափով խանգարեց Անոր Ծրագիրները: Աստուած ինչպէս ներկային՝ նոյնպէս ալ շարունակ կացութեան կատարեալ տէրը եղած է. ու ի վերջոյ պիտի տեսնուի թէ այս բոլորը միասին գործակից եղած են Իր նպատակներուն կատարմանը:

Ու թէև Ընտրութեան և Ձրի Շնորհաց վարդապետութեանց շուրջ Կալվինականութեան և Արմինիոսականութեան ընծայած ուսուցումները չէ կարելի հաշտեցնել ո՛չ իրարու, ո՛չ տրամաբանութեան և ո՛չ ալ Ս. Գրոց հետ, սակայն Աստուածաշունչի

այս երկու հիանալի վարդապետութիւնները կատարելապէս ներդաշնակ են ու գեղեցիկ, երբ անոնք Դարբերու Ծրագրի տեսակէտէ կը դիտուին։

Ուրեմն, տեսնելով թէ Աստուծոյ՝ մարդկութեան մեղքէ ու մահուընէ փրկութեան ծրագրի այսքան մեծ ու փառաւոր բաժինները ապագային կը վերաբերին, և թէ մեր Տիրոջ երկրորդ գալուստը որոշուած առաջին քայլն է այս վաղուց ի վեր խոստացուած ու երկար ատենէ ի վեր ակնկալուած օրհնութեանց իրականացման՝ պէտք չէ՞ որ նոյնիսկ աւելի ակնկառոյց կերպով սպասենք Իր երկրորդ գալըստեանը՝ քան աւելի նուազ տեղեկութիւն ունեցող հրէաները, որոնք Իր առաջին գալստեանը սպասեցին անձկանօք։ Տեսնելով թէ չարիքին, անարդարութեան ու մեղաց ժամանակը վերջ պիտի գտնէ Իր այն ատեն գործադրելիք հզօր տիրապետութեամբը, և թէ արդարութիւնը, ճշմարտութիւնը և խաղաղութիւնը համաշխարհային պիտի ըլլան, ո՞վ պիտի չփափաքէր տեսնելու այդ օրը։ Եւ ո՞վ է անիկա՝ որ հիմա Քրիստոսի հետ կը չարչարուի, ներշնչուած թանկագին խոստումներէն՝ թէ «Եթէ Անոր հետ չարչարուինք անոր հետ ալ պիտի թագաւորենք», պիտի չբարձրացնէ իր գլուխը ու հրճուի ո՛և է նշանի համար, որը կ'ապացուցանէ Տիրոջը մօտենալը. գիտնալով որ իր ալ ազատութիւնը և Անոր հետ փառաւորուիլը կը մօտենայ։ Արդարև, ամէն անոնք որ համակիր են Անոր օրհնելու առաքելութեանը և Անոր սիրոյ ոգւոյն, պիտի ողջունեն Անոր գալստեան ամէն մէկ ապացոյցները, որպէս մերձեցումը այն «Մեծ ուրախութեան» որ բոլոր ժողովուրդին պիտի ըլլայ»։

# ԳԼՈՒԽ Է.

## ՉԱՐԻՔԻՆ ԹՈՅԼԱՏՐՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԱՆՈՐ ԱՌՆՉՈՒԹԻՒՆԸ ԱՍՏՈՒԾՈՅ ԾՐԱԳՐԻՆ ՀԵՏ

**Ինչո՞ւ Չարիքը Թոյլատրուեցաւ.—Ուղիղը և Սխալը որպէս Սկզբունքներ.—Բարոյական Գիտակցութիւնը.—Աստուած Թոյլատրեց Չարիքը ու Զայն Բարի վախճանի մը Պիտի Առաջնորդէ.—Աստուած Մեղքին Հեղինակը չէ.—Ադամին Փորձութիւնը Անձնական Բան մը Չէր.—Անոր Փորձութիւնը խիստէր.—Նա Կամովին Մեղանչեց.—Մեղքին Պատիժը Ո՛չ Անարդար էր և Ո՛չ ալ Շատ Խիստ.—Ադամով Բոլորը Դատապարտելը Իր մէջը Կ'արտայայտէ Իմաստութիւն, Սէր և Արդարութիւն.—Աստուծոյ Օրէնքը Տիեզերական է:**

*ՉԱՐԻՔԸ այն է՝ որ դժբաղդութիւն յառաջ կը բերէ. ո՛և է բան՝ որ ուղղակի կամ անուղղակի կերպով ո՛և է տեսակ տառապանք կպատճառէ*—Ուէպսթըրի Անգլ. Բառարան: *Այս Նիւթը ուրեմն, ո՛չ միայն մարդկային հիւանդութիւնները, վիշտերը, ցաւերը, տկարութիւնները և մահը կը հետազօտէ, հապա աւելի հեռաւոր անցեալին կը դիմէ, պրպտելու անոնց սկզբնական պատճառը—մեղքը—ու անոր դարմանը: Քանի որ մեղքն է չարիքի պատճառը, ուրեմն անոր բնաջնջումը միակ միջոցն է տեւականօրէն բժշկելու այդ հիւանդութիւնը:*

*Ո՛չ մէկ դժուարութիւն թերևս այնքան յաճախ*

կը ներկայացնէ ինքզինքը հարցաքննող մտքին՝ քան այն հարցը, թէ ինչո՞ւ Աստուած թոյլատրեց ներկայ չարիքին տիրապետութիւնը։ Նա մեր նախածնողքը կատարեալ և արդար ստեղծելէ վերջ, ինչո՞ւ թոյլատրեց Սատանան՝ որ զանոնք փորձութեան առաջնորդէ։ Եւ կամ ինչո՞ւ թոյլատրեց արգիլուած ծառը բարիներուն հետ աճելու։ Հակառակ խուսափումի բոլոր ջանքերուն, հարցումը ինքնին պիտի ցցուի մեր մտքին առջև—Չէ՞ր կրնար Աստուած արգիլել մարդուն անկման բոլոր կարելիութիւնները։

Անտարակոյս, դժուարութիւնը Աստուծոյ Ծրագիրը չկարենալ ըմբռնելէն յառաջ կուգայ։ Աստուած կրնար արգիլել մեղքին մուտքը, բայց քանի որ չըրաւ, ատիկա բաւական ապացոյց մ'ըլլալու է մեզ՝ թէ անոր ներկայիս թոյլատրումը ապագայ մեծագոյն բարիքին համար ծրագրուած էր։ Աստուծոյ Ծրագիրները իրենց կատարելութեան մէջ տեսնողը, պիտի գնահատէ հետևած ուղղութեան իմաստութիւնը։ Ոմանք կը հարցնեն, Չէ՞ր կրնար Աստուած՝ որուն համար ամէն բան կարելի է, յարմար ժամանակին միջամուխ ըլլալ, արգիլելու համար Սատանային ծրագրին լիակատար գործադրումը։ Անտարակոյս, կրնար. բայց այսպիսի միջամտութիւն մը պիտի արգիլէր Իր անձնական նպատակներուն իրականացումը, վսեմութիւնը և արդար հեղինակութիւնը, ու ապացուցանել թէ՛ մարդոց և թէ՛ հրեշտակաց անոր բռնաբարման չար արդասիքները։ Աւելէ ի զատ, կան բաներ, որոնք իրապէս անկարելի են նո՛յնիսկ Աստուծոյ, ինչպէս որ Աստուածաշունչը կը յայտնէ, «անկարելի է Աստուծոյ ստել» (Եբր. Զ. 18). «Ինքզինքը չի կրնար ուրանալ» (Բ. Տիմ.

Բ. 13)։ Նա չի կրնար սխալ գործել. որով իր արարածները դէպի կեանք առաջնորդող ամենաիմաստութիւն ու լաւագոյն ծրագրէն ի զատ ուրիշ ո՛և է բան չի կրնար ընտրել՝ թէպէտև մեր կարճատեսութիւնը ժամանակ մը չկարենայ նշմարել անսահման իմաստութեան թաքուն ակերը։

Ս. Գիրքը ցոյց կուտայ թէ ամէն բան Տիրոջը հաճոյքին համար ստեղծուած էին—անտարակոյս, Իր օրհնութեանց բաշխման հաճոյքին՝ Իր փառաւոր էութեան ստորոգելեաց արտայայտմանը համար։ Ու թէև Իր մարդասիրական Ծրագիրներուն գործադրըմանը մէջ կը թոյլատրէ որ չարն ու չարագործները ժամանակուայ մը համար գործնական բաժին մ'ունենան, սակայն չարին սիրոյն համար չէ, ո՛չ ալ՝ որովհետև Նա մեղքին հետ միաբան է. ինչու որ կը յայտնէ թէ Ինքը «անօրէնութիւն ուզող Աստուած չէ»։ (Սաղմ. Ե. 4)։ Թէև չարին հակառակ է, սակայն կը թոյլատրէ (այսինքն չ'արգիլեր) զայն ժամանակուայ մը համար, որովհետև Իր իմաստութիւնը կերպ մը կը տեսնէ, որով անիկա Իր արարածոց համար տևական և թանկագին դաս մը պիտի ըլլայ։

Ինքնայայտ ճշմարտութիւն մ'է թէ ամէն ուղիղ սկզբունքի դէմ, համեմատաբար, սխալ սկզբունք մը կայ. զոր օրինակ՝ ճշմարտութիւն և ստութիւն, սէր և ատելութիւն, արդարութիւն և անարդարութիւն։ Մենք այս հակառակ սկզբունքները գործնականին մէջ իրենց ունեցած ազդեցութեանցը համեմատ իրարմէ կը զանազանենք, որպէս ուղիղ և սխալ։ Այն սկզբունքը, որուն գործնականին մէջ տուած արդիւնքը օգտակար և արդիւնաբեր է վերջնական կարգադրութեան, ներդաշնակութեան և եր-

ջանկութեան, ուղիղ սկզբունք կը կոչենք. իսկ անոր հակառակը, այն որ՝ անհամաձայնութիւն, ապերջանկութիւն եւ կործանում առաջ կը բերէ, սխալ սկզբունք կը կոչենք։ Այս սկզբունքներուն գործնականին մէջ տուած արդիւնքները բարի եւ չար կ՚անուանենք։ Իսկ գիտակից էակը, որը կարող է ուղիղ սկզբունքը սխալէն զանազանել, ու կամաւորապէս կը կառավարուի մէկէն կամ միւսէն, առաքինի կամ մեղաւոր կը կոչենք։

Ուղիղ եւ սխալ սկզբունքները իրարմէ զանազանող կարողութիւնը բարոյական գիտակցութիւն կամ խիղճ կոչուած է։ Աստուծոյ՝ մարդուն տուած այս բարոյական գիտակցութեան միջոցաւ է որ կրնանք Աստուծոյ մասին դատողութիւն գործածել ու ճանչնալ թէ Նա Բարի է։ Այս բարոյական գիտակցութեան է որ Աստուած շարունակ կը դիմէ, ապացուցանելու համար Իր արդարութիւնը կամ իրաւունքը. եւ այս միեւնոյն բարոյական գիտակցութեան միջոցաւ էր որ Ադամ կրնար զանազանել մեղքը կամ անարդարութիւնը, ու անոնց չար ըլլալը, նոյնիսկ անոնց հետեւանքները գիտնալէ յառաջ։ Աստուծոյ ստեղծագործութեան ստորին դասակարգերը օժտուած չեն այս բարոյական գիտակցութեամբ։ Շունը մի քիչ իմացականութիւն ունի, բայց ո՛չ այս աստիճան. թէպէտեւ նա կրնայ սորվիլ Բ+ այլեւայլ շարժումներ իր տիրոջմէն կը գնահատուին ու կը վարձատրուին, իսկ ուրիշներ՝ չեն գնահատուիր։ Նա թերեւս գողնայ կամ կեանք ու ստացուածք պաշտպանէ, սակայն առաքինի պիտի չկոչուի—ինչու որ նա գիտակցութիւն չունի, իր գործերուն բարոյական հանգամանքը չգիտէր։

Աստուած կարող էր մարդկութիւնը այնպէս մը ստեղծել, որ ուղիղն ու սխալը զանազանելու անկարող ըլլար, և կամ, կարող ըլլար միմիայն ուղիղը զանազանելու. սակայն ասիկա պարզապէս կենդանի մեքենայ մը ստեղծել պիտի նշանակէր և ո՛չ թէ իր Արարչին մտաւորական պատկերը: Կամ թէ՝ կրնար մարդը կատարեալ ու ազատ կամքով ստեղծել, ինչպէս որ ըրաւ, ու պաշտպանել զայն Սատանային փորձութենէն: Այդ պարագային, մարդուն փորձութիւնները բարիի սահմանաւորուած ըլլալով՝ շարունակ դուրսէն չար թելադրութեանց ենթակայ պիտի ըլլար, և կամ ներքին փառասիրութեանց՝ որոնք անորոշութեան մէջ պիտի պահէին անոր յաւիտենական ապագան, և անհնազանդութեան ու անկարգութեան պոռթկում մը շարունակ կարելի պիտի ըլլար. ասկէ ի զատ, բարին երբե՛ք պիտի չկրնար այնքան բարձրօրէն գնահատուիլ, եթէ չարը իր տգեղ հակառակութեամբը երևան չգար:

Աստուած նախ՝ Իր արարածները բարութեան հետ ծանօթացուց, անով շրջապատելով զանոնք Եդեմին մէջ. իսկ վերջէն ալ՝ որպէս պատիժ անհնազանդութեան, անոնց չարիքի նկատմամբ խիստ գիտութիւն մը տուաւ: Դրախտէն աքսորուած՝ և իր հետ ունեցած որդիական յարաբերութենէն զրկուած՝ Աստուած թող տուաւ զանոնք որ հիւանդութեան ցաւի և մահուան հետ փորձառութիւն ունենան, որպէսզի անոնք այսպէս ի յաւիտեան գիտնան չարը ու անոր անպիտանութիւնը և մեղքին չափազանց անիծապարտութիւնը:

Արդիւնքներուն բաղդատմամբ, անոնք երկուքին նկատմամբ ալ ծանօթութեան ու արժէքի պատշաճ

դնահատութեան մ՚եկաւ։ «Ու Տէրը ըսաւ. ահա՛ Ադամ մեզմէ մէկուն պէս եղաւ՝ բարին ու չարը գիտնալու»։ (Ծննդ. Գ. 22)։ Ասոր մէջ իրենց սերունդն ալ բաժին ունեցաւ, միայն թէ անոնք նախ չարի գիտութիւնը ստացան, ու չեն կրնար լիուլի ըմբռնել բարիին ինչ ըլլալը՝ մինչև որ Հազարամեակին անոր նկատմամբ փորձառութիւն ունենան, որպէս արդիւնք Յիսուսով ստացած Փրկութեան՝ Որը այն ատեն իրենց Դատաւորը ու Թագաւորը պիտի ըլլայ։

Բարոյականի գիտակցութիւնը, և կամ ուղիղին ու սխալին դատումը, ու զայն գործածելու ազատութիւնը զոր Ադամ ունէր, իր՝ Աստուծոյ նմանութեանը կարևոր կէտերն էին։ Ուղիղի և սխալի օրէնքը իր բնական կազմին մէջ քանդակուած էր։ Անիկա իր բնութեան մէկ մասն էր, ինչպէս որ նաև Աստուածային բնութեան մէկ մասը կը կազմէ։ Բայց պէտք չէ մոռնանք թէ մարդուն այս Աստուածային նմանութեան պատկերը, սկիզբէն դրոշմուած օրէնքի այս մարդկային բնութիւնը, մեղքին ստորնացուցիչ ազդեցութեան պատճառաւ, իր յատուկ ուրուագծէն շատ բան կորսնցուցած է. որով ներկայիս չէ այն, ինչ որ էր առաջին մարդուն մէջ։ Սիրելու կարողութիւնը կը նշանակէ նաև ատելու կարողութիւն. որով կրնանք տրամաբանել թէ Արարիչը չէր կրնար մարդը Իր նմանութեամբը ստեղծել, առանց սակայն օժտած ըլլալու զայն ատելու և սխալը գործելու համապատասխան կարողութեամբ։ Ընտրելու այս ազատութիւնը, որ բարոյական ազատութիւն և կամ ազատ կամք կոչուած է՝ մարդուն սկզբնական պարգևին մէկ մասն էր. ու անիկա իր

մտաւորական և բարոյական լիաչափ կարողութիւնները միասին՝ զինքը իր Արարչին մէկ պատկերը կերտեցին։

Այսօր՝ վեց հազար տարուայ անկումէ վերջ՝ սկզբնական նմանութիւնը մեղքի պատճառաւ ա՛յնքան աւրուած է, որ այլևս ազատ չենք, հապա կաշկանդուած ենք մեղքով ու իր արգասիքներովը՝ մեծ կամ պզտիկ. որով ներկայիս մեղք գործելը աւելի դիւրին է, և համեմատաբար աւելի հաճելի ինկած մարդկութեան՝ քան արդարութիւնը։

Կը համաձայնինք թէ Աստուած կրնար մեղքին չատ մը չար արդիւնքները ա՛յնպիսի կենդանի գոյներով տպաւորել Ադամին մտքին վրայ, որ նա ետ կենար անկէ. բայց մենք կը հաւատանք որ Աստուած կանխատեսեց՝ թէ չարիքին հետ իրական փորձառութիւն մը ամենաապահով ու ամենատևական դաս մը պիտի ըլլար ի յաւիտեան։ Ասոր համար Աստուած չարգիլեց՝ այլ թոյլատրեց մարդուն իր ընտրութիւնը ընել, ու իր մորթին վրայ զգալ չարիքին հետևանքները։ Եթէ մեղանչելու պատեհութիւնը երբեք թոյլատրուած չըլլար՝ մարդը պիտի չկարենար մերժել զայն, և հետևաբար, իր՝ ուղիղը գործելուն մէջ ո՛չ առաքինութիւն և ո՛չ ալ արժանիք պիտի կենար։ Աստուած կ՚ուզէ որ, անոնք որ զինքը կ՚երկրպագեն՝ հոգւով և ճշմարտութեամբ երկրպագեն։ Նա աւելի գիտակից և կամաւոր հնազանդութեան կը փափաքի, քան տգէտ ու մեքենական ծառայութեան։ Նա արդէն կը գործածէր մեքենական անկենդան գործակատարութիւններ, որոնք կը կատարէին Իր կամքը. սակայն Իր ծրագիրն էր աւելի հոյակապ բան մ՚ստեղծել, գիտակից էակ մը Իր

*նմանութեամբը, երկրէ իշխան մը, որուն հնազանդութիւնը և արդարութիւնը ուղիղի և սխալի, բարիի ու չարի ըմբռնողութեան վրայ հիմնուած ըլլար։*

*Ուղիղի և սխալի սկզբունքները, որպէս* սկըզբունքներ *չարունակ գոյութիւն ունեցած են, ու պարտին չարունակ գոյութիւն ունենալ. և Աստուծոյ նմանութեամբը եղող կատարեալ, գիտակից արարածները պարտին ազատ ըլլալ ասոնցմէ ո՛և է մէկը ընտրելու, Թէպէտև* միայն *ուղիղ սկզբունքը միշտ պիտի չարունակէ գործունէութեան մէջ ըլլալ։*

*Աստուածաշունչը կը տեղեկացնէ մեզ Թէ երբոր չար սկզբունքին գործունէութեան Թոյլտուութիւնը Աստուծոյ նպատակը կատարած է, այլևս ի յաւիտեան պիտի դադրի գործունէութենէ. և Թէ՝ ամէն անոնք, որոնք կը չարունակեն հնազանդիլ անոր իշխանութեան՝ իսպառ պիտի դադրին գոյութիւն ունենալէ։ (Ա. Կորնթ. ԺԵ. 25, 26։ Եբր. Բ. 14)։ Ուղիղը գործելը և ուղիղը գործողները միայն միշտ գոյութիւն պիտի ունենան։*

*Սակայն հարցումը տարբեր կերպով մը կը ներկայանայ մեզի։ Արդեօք մարդը անձնական փորձառութենէ զատ ուրիշ կերպով մը չէ՞ր կրնար ծանօթանալ չարին հետ։ Բան գիտնալու չորս կերպեր կան. այսինքն՝ ներհայեցութեամբ, դիտելով, փորձառութեամբ և տեղեկութեամբ այն տեսակ աղբիւրներէ, որոնք բացարձակապէս ուղիղ ճանչցուած են։ Ներհայեցութեան գիտութիւնը ուղղակի ըմբռնում մ'է, որը պէտք չունի երկար բարակ տրամաբանելու և կամ փաստերու։ Այս տեսակ գիտութիւնը Միայն Եհովային կը վերաբերի, ամէն գիտութեան և ճըշ-*

մարտութեան Յաւիտենական Աղբիւրը, Որը անհրաժեշտաբար ու բնականաբար գերիվեր է Իր բոլոր արարածներէն։ Ուրեմն մարդուն բարիին ու չարին գիտութիւնը չի կրնար ներհայեցութեամբ ըլլալ։ Մարդուն գիտութիւնը թերեւս դիտելով կրնար ըստացուիլ· բայց այդ պարագային չարիքի ցուցադրութեան պէտքը պիտի տեսնուէր, որպէսզի մարդը կարենար դիտել անոր արդիւնքները։ Ասիկա պիտի նշանակէր չարին Թոյլատուութիւնը, տեղ մը, ոեւէ էակներու մէջ· ուրեմն ինչո՞ւ ատիկա չըլլար մարդոց մէջ, ու երկրիս վրայ, փոխանակ ուրիշներու մէջ և ուրիշ տեղ մը։

Ինչո՞ւ մարդը չըլլար այդ օրինակը, ու իր գիտութիւնը գործնական փորձառութեանց միջոցաւ ստանար։ Ու այդպէս ալ կ՚ըլլայ· մարդը գործնական փորձառութիւն կը շահի ներկայիս, նոյնպէս և ուրիշներու օրինակ կը հանդիսանայ, «հրեշտակաց տեսարան» ըլլալով։

Ադամ՝ տեղեկութեամբ արդէն չարին նկատմամբ գիտութիւն ունէր, բայց ատիկա բաւական չէր սանձելու զինքը փորձելէ։ Ադամ և Եւայ զԱստուած իբր իրենց Արարիչը կը ճանչնային, և ուրեմն կ՚ընդունէին զԱյն իբրև մէկը, որ իրաւունք ունէր հսկելու և առաջնորդելու զիրենք· ու Աստուած արդէն արգիլուած ծառին մասին ըսած էր, «Այն օրը որ անկէ ուտէք, «մեռնելով պիտի մեռնիք»։ Անոնք ուրեմն չարին նկատմամբ տեսական գիտութիւն մ՚ունէին, թէև երբեք չէին դիտած կամ փորձած անոր արդիւնքները։ Հետևաբար, անոնք չգնահատեցին իրենց Արարչին սիրալիր իշխանութիւնը և օգտակար օրէնքը, և ո՛չ ալ այն վտանգները՝ որոնցմէ Նա առ-

նով մտադրած էր պաշտպանել զիրենք։ Որով անոնք տեղի տուին փորձութեան առջև, որը Աստուած իմաստնօրէն թոյլատրեց, և որուն վերջնական օգտակարութիւնը նախատեսած էր Իր իմաստութիւնը։

Քիչեր միայն կը գնահատեն այն փորձութեան սաստկութիւնը, որուն ներքև ընկճուեցաւ մեր նախածնողքը. նոյնպէս և գործուած յանցանքին համար Աստուծոյ սահմանած խիստ պատիժը՝ որը շատերուն ա՛յնքան պզտիկ բան մը կը թուի ըլլալ։ Սակայն պզտիկ բացատրութիւն մը ամէն բան պիտի պարզաբանէ։ Աստուածաշունչը կը պատմէ պարզ պատմութիւնը, թէ ի՛նչպէս կինը, որը աւելի տկար էր՝ խաբուեցաւ, ու այսպէս օրինազանց մը եղաւ։ Անոր՝ Աստուծոյ հետ ունեցած ծանօթութիւնը և փորձառութիւնը աւելի սահմանափակ էր քան Ադամինը, որովհետև նա առաջ ստեղծուած էր, ու Աստուած Եւային ստեղծագործութենէն առաջ ուղղակի անոր հաղորդած էր մեղաց պատիժին գիտութիւնը. մինչդեռ, թերևս Եւայ իր ծանօթութիւնը Ադամէն առացաւ։ Երբ նա իր վստահութիւնը Սատանային նենգիչ խաբէութեանը վրայ դրած՝ ծառին պտուղէն առաւ, անշուշտ չըմբռնեց մեղանչումին մեծութիւնը, թէպէտև նա կասկածներ և վախեր ունեցաւ թէ ըրածը բոլորովին ճիշտ չէր։ Ու թէև խաբուեցաւ, սակայն Պօղոս կ՚ըսէ թէ նա օրինազանց մ՚էր,—թէպէտև ո՛չ այնքան մեղապարտ, որչափ որ պիտի ըլլար՝ եթէ աւելի մեծ լոյսի դէմ մեղանչէր։

Մեզի ըսուած է թէ Ադամ Եւային նման չխաբուեցաւ (Ա. Տիմ. Բ. 14). ուրեմն նա աւելի լաւ ըմբռնած էր իր գործած մեղքին ծանրակշիռ ըլլալը. նա գիտէր նախասահմանուած պատիժը, ու վստահ էր թէ իրեն կը մնայ այլևս մեռնիլ։ Մենք որոշ կեր-

տով կը տեսնենք՝ թէ ի՛նչ ըլլալու էր այն փորձութիւնը, որը ստիպեց զինքը ա՛յնքան անզգոյշ կերպով իր վրայ հրաւիրել սահմանուած պատիժը։ Յիշելով թէ անոնք իրենց Արարչին մտաւորական և բարոյական նմանութեամբը օժտուած կատարեալ էակներ էին, սիրոյ Աստուածանման տարրը կատարեալ մարդէն գերազանցօրէն արտայայտուած էր հանդէպ իր սիրեցեալ կողակցին, կատարեալ կնոջ։ Ըմբռնելով մեղքը, ու վախնալով Եւայի մահէն, իր ամենաթանկագին գանձին կորուստը (և այդ առանց վերստանալու ո՛և է յոյսի, որովհետև այդ տեսակ ո՛չ մէկ յոյս տրուած էր)՝ Ադամ յուսահատութեան մէջ, անփութօրէն, որոշեց չ'ապրիլ առանց անոր։ Իր կեանքը առանց անոր ընկերակցութեան դժբախտ և անպէտ համարելով՝ նա կամաւորապէս բաժնեկից եղաւ անոր գծած անհնազանդութեան, որպէսզի բաժնեկից ըլլայ նաև այն մահուան դատապարտութեան, որը հաւանօրէն ենթադրեց թէ Եւայի վրայ կը հանգչի։ Երկուքն ալ «յանցաւոր» էին, ինչպէս որ Առաքեալը ցոյց կուտայ (Հռովմ. Ե. 14։ Ա. Տիմ. Բ. 14)։ Սակայն Ադամ ու Եւայ մէկ էին և ո՛չ թէ «երկու». ուստի Եւայ բաժնեկից եղաւ այն դատապարտութեան, որը իր անխոհեմ ընթացքովը բերաւ Ադամին վրայ։—Հռովմ. Ե. 12, 17—19։

Աստուած ո՛չ միայն կանխատեսեց առիկա, թէ մարդուն ընտրութեան ազատութիւն տալով, նա մեղքի ու անոր արդիւնքներուն նկատմամբ լիովին գիտութիւն չունենալով՝ զայն պիտի ընտրէ, հապա նաև տեսաւ թէ նա անոր հետ ծանօթանալով հանդերձ անոր պիտի յարի. որովհետև այդ ծանօթութիւնը այն աստիճան պիտի եղծանէ անոր բարոյական բնութիւնը, որով չարը հետզհետէ աւելի յարմար և աւելի հաճելի պիտի ըլլայ անոր քան թէ բա-

րին։ Այսու հանդերձ, Աստուած ծրագրեց թոյլտուքին չարիքը. որովհետեւ մարդը անոր հետեւանքներէն ազատելու դարմանը ունենալով, տեսաւ թէ անոր արդիւնքը մարդկութիւնը փորձութեանց միջոցաւ «մեղքին տոկալի անիծապարտ» ըլլալուն կատարեալ գիտակցութեանը պիտի առաջնորդէ, նոյնպէս և անոր դէմ պայքարող զօրութեան անզուգական փառաւորութեանը—այնպէս նա սորված պիտի ըլլայ աւելի քան երբեք սիրել ու պատուել իր Արարիչը, Որը ամէն բարութեանց արմատն ու աղբիւրն է, ու յաւիտեան խորշիլ ու խոյս տալ այն բանէն, որը ա՛յնքան վիշտերու և թշուառութեանց պատճառ եղաւ։ Որով վերջնական արդիւնքը աւելի մեծ սէր պիտի ըլլայ Աստուծոյ նկատմամբ, ու աւելի մեծ ատելութիւն հանդէպ ամէն բանի, որ Անոր կամաց հակառակ է, ու հետեւաբար յաւիտենական արդարութեան մէջ անխախտ հաստատութիւն մը ամէն անոնց համար, որոնք ներկայիս պիտի օգտուին այն դասերէն, որոնք Աստուած մեղքի ու յարնչական չարիքներու թոյլտուութեան միջոցաւ կ'ուսուցանէ։ Այսու հանդերձ, պէտք է իրարմէ բոլորովին զանազանենք Աստուծոյ՝ մեղքի թոյլատրութեան անժըխտելի իրողութիւնը, և ոմանց այն ծանրակշիռ սխալը՝ թէ Աստուած է մեղքին հեղինակը և գրգռիչը։ Վերջին տեսակէտը թէ՛ հայհոյիչ և թէ՛ հակասական է Աստուածաշունչի ներկայացուցած իրողութեանց։ Անոնք որ այս սխալին մէջ կիյնան, ընդհանրապէս անոր համար է, որ Փրկութեան ուրիշ Ծրագիր մը կը փորձեն գտնել, փոխանակ անոր՝ զոր Աստուած Քրիստոսի զոհաբերութեան միջոցաւ հայթայթած է, որպէս մեր փրկագինը։ Եթէ անոնք յաջողին հա-

*մոլել իրենք զիրենք և ուրիշները՝ թէ Աստուած պատասխանատու է բոլոր մեղաց, անօրինութեանց և *ոճիրներուն, և թէ՝ մարդը Անոր ձեռքին մէջ որպէս անմեղ գործիք՝ դէպի մեղք մղուած էր, այն ատեն անոնք հարթած պիտի ըլլան այն ուսուցումին ճանապարհը՝ թէ մեր մեղաց համար ո՛և է զոհ պէտք չէր, ո՛չ ալ ո՛և է կարգի ողորմութիւն, հապա պարզապէս ու միայն ԱՐԴԱՐՈՒԹԻՒՆ։ Այսպէս, անոնք*

* Ս. Գրոց երկու համարներ (Եսայի ԽԵ. 7. և Ամովս. Գ. 6) գործածուած են պաշտպանելու համար այս տեսակէտը, որոնց երկուքին մէջ ալ յիշուած *չարիք* բառը սխալ կը մեկնեն։ Մեղքը շարունակ չարիք մ՚է, բայց չարիքը շարունակ մեղք չէ։ Երկրաշարժ մը, ահռելի մեծ հրդեհ մը, ջրհեղեղ մը կամ համաճարակ մը՝ աղէտներ, *չարիքներ* են. բայց անոնցմէ և ո՛չ մէկը մեղք պիտի կոչուի։ Վերոյիշեալ բնաբաններուն մէջ յիշուած *չարիք* բառերը *աղէտք* կը նշանակեն։ Միևնոյն Եբրայերէն բառը *նեղութիւն*։ թարգմանուած է, Սաղմ. ԼԴ. 19։ ՃԷ, 39ի մէջ։ *Պատուհաս* թարգմանուած է, Երեմ. ԽԸ. 16։ ԾԱ. 2ին մէջ։ *Նեղութիւն* թարգմանուած է, Սաղմ. ԽԱ. 1։ ՃԷ, 26։ Ժ.6։ ՃԽԱ, 5ին մէջ։ *Թշուառութիւն* թարգմանուած է, Ողբ Երեմ. Ա. 21։ Նէեմ. Բ. 17ին մէջ։ Իսկ *Գէշ* թարգմանուած է, Ժողով. Է. 14ին մէջ։ Միևնոյն բառը ուրիշ շատ մը տեղեր թարգմանուած է *վնաս*, *կորուստ*, *ցաւ*, *դժբաղդութիւն*, *կսկիծ* և *տրտմութիւն*։

Եսայի ԽԵ. 7 և Ամովս Գ. 6ին մէջ Տէրը կը յիշեցնէ Իսրայէլին իր անոնց հետ որպէս ազգ ըրած ուխտը—թէ՝ եթէ անոնք իր օրէնքներուն հնազանդին, պիտի օրհնէ զիրենք ու պաշտպանէ աղէտներէն, որոնք սովորական են աշխարհին ընդհանրա-

*Հիմնադիրը կը հանդիսանան իրենց սխալ տեսութեան մէկ ուրիշ մասին, այսինքն, համաշխարհականութեան* (Universalism), *ըսելով թէ քանի որ բոլորին մէջ գտնուած մեղքին, անօրինութեան և ոճիրին պատճառը Աստուած է, ուրեմն Նա պատճառ պիտի ըլլայ նաև բոլոր մարդկութեան մեղքէն ու մահուընէ ազատելուն։ Եւ խորհելով թէ Աստուած կամեցաւ ու պատճառ եղաւ մեղքին, ու ո՛չ ոք կրնայ ընդդիմանալ Անոր, անոնք կը հաւատան թէ՝ ուրեմն երբ Նա արդարութիւն կամենայ, ամէն ոք, նմանապէս, անզօր պիտի ըլլայ Անոր ընդդիմանալու։ Սակայն այս կարգի բոլոր տրամաբանութեանց մէջ, մարդուն ամենաազնիւ յատկութիւնը, կամքի և կամ* ընտրութեան *ազատութիւնը, անոր իր Արարչին նմանութեան ամենատուշապրաւ կէտը բոլորովին անտեսուած է, ու մարդը տեսականօրէն հաւասարցուած է պարզ մեքենայի մը, որը կը գործէ այնպէս* պէս. բայց թէ՝ երբ անոնք զինքը թողուն, Նա ալ որպէս պատիժ աղէտներ (չարիք) պիտի բերէ անոնց վրայ։ Տես Բ. Օրինաց ԻԸ. 1—14, 15—32։ Ղեւտացիս ԻԶ. 14—16։ Եսայի ԻԴ. 6—11, 12—16։

Երբ անոնց վրայ աղէտներ եկան, անոնք հակամէտ էին զանոնք որպէս արկածներ նկատել և ո՛չ թէ պատիժներ։ Որով Աստուած մարգարէներուն միջոցաւ պատգամ ղրկեց անոնց, յիշեցնելով անոնց իրենց ուխտը, ու ըսելով թէ այդ աղէտները Իրմէ էին ու իր կամքովը, իրենց խրատական ըլլալու համար։ Անհեթեթութիւն է այս քնարաններով ջանալ ապացուցանել թէ Աստուած մեղքին հեղինակն է, քանի որ անոնք մեղքի չեն ակնարկեր։

միայն, ինչ կերպով որ ուրիշէ մը կը գործածուի։ Եթէ այս ըլլար իրականութիւնը, մարդը փոխանակ երկրին իշխանը ըլլալու, նոյնիսկ միջատներէն ալ ստորին պիտի ըլլար, որովհետև անկասկածօրէն, անոնք կամք կամ ընտրութեան զօրութիւն մ՚ունին։ Նոյնիսկ փոքրիկ մրջիւնին կամքի զօրութիւն տրուած է, որուն թէև մարդը իր աւելի մեծ զօրութեամբը կրնայ հակառակիլ ու ընկճել, բայց չի կրնար ոչընչացնել։

Արդարև, Աստուած զօրութիւն ունի մարդը դէպի մեղք կամ արդարութիւն մղելու, սակայն Իր Խօսքը կը յայտնէ թէ Նա այս տեսակ նպատակ չունի։ Հետևաբար Նա չի կրնար մարդը դէպի մեղք մղել, միևնոյն պատճառաւ, որ «Նա Իր անձը չի կրնար ուրանալ»։ Այս տեսակ ընթացք մը անտրամաբանական պիտի ըլլար Իր արդար նկարագրին հետ, ու հետևաբար, անկարելիութիւն մը։ Եւ Նա միայն անոնց երկրպագութիւնը կ՚ուզէ, որոնք հոգւով ու ճշմարտութիւնով կ՚երկրպագեն։ Այս նպատակաւ, Նա մարդուն Իրեն նման կամքի ազատութիւն մը տուած է, ու կը բաղձայ, որպէսզի Նա արդարութիւնը ընտրէ։ Մարդուն ինքն իր համար ընտրելու թոյլատուութիւնը առաջնորդեց զինքը, իյնալու Աստուածային բարեկամութենէն, շնորհքէն և օրհնութիւններէն, դէպի մահ։ Մեղքով ու մահուամբ ստացած փորձառութեամբը, մարդը գործնականապէս կը սորվի այն, ինչ որ Աստուած ուզեց տեսականօրէն սորվեցնել անոր, առանց մեղքի ու անոր արդիւնքներուն նկատմամբ իր ունեցած դառն փորձառութիւններուն։ Մարդուն առնելիք ապագայ քայլին նկատմամբ Աստուծոյ ունեցած կանխագիտութիւնը չկըր-

նար իբր փաստ գործածուիլ՝ Թէ Նա մարդը մեքենայ—էակի մը ստորին մակարդակին վրայ ստեղծեց․ ընդհակառակը, այդ կանխագիտութիւնը մարդուն լաւութեանը համար գործածուած է․ որովհետեւ, եթէ Աստուած կանխատեսեց մարդուն հետեւելիք ընթացքը, եթէ ազատ ձգեց ինքն իրեն համար ընտրելու, եւ չ՚արգիլեց զինքը փորձառաբար ճաշակելու մեղքը ու անոր դառն արդիւնքները, բայց Նա անմիջապէս սկսաւ զայն իր առաջին յանցանքէն ազատելու միջոց մը հայթայթել Ազատարար մը պատրաստելով, մեծ Փրկիչ մը, Որը կարող է բոլորովին փրկելու ամէն անոնք, որոնք Իր միջոցաւը Աստուծոյ պիտի վերադառնան։ Ու այսպէս, որպէսզի մարդը ազատ կամք մ՚ունենայ, եւ սակայն կարենայ իր այս ազատութեան առաջին չարաչար գործածութենէն օգտակար դասեր սորվիլ, Աստուած ո՛չ միայն բոլորին համար Փրկագին մը պատրաստեց՝ հապա նաեւ նախասահմանեց որ այդ Փրկագինով ապահովուած Իր հետ հաշտուելու պատեհութեան գիտութիւնը յարմար ատենին բոլորին ալ վկայուի։—Ա․ Տիմ․ Բ․ 3—6։

Պատիժին խստութիւնը Աստուծոյ կողմէ ատելութեան եւ չարասրտութեան արտայայտութիւն մը չէր, այլ չարին վերջնական անհրաժեշտ եւ անխուսափելի արդիւնքը, զոր Աստուած այսպէս Թոյլատրեց մարդուն տեսնելու ու զգալու։ Աստուած կրնայ այնքան երկարել կեանքը, որքան որ յարմար կը դատէ, նոյնիսկ հակառակ իրական չարին կործանիչ զօրութեանը․ բայց Աստուծոյ ա՛յնքան անկարելի պիտի ըլլար այս տեսակ կեանք մը յաւիտենապէս վառ պահելը, որքան որ անկարելի է Անոր ստելը։ Մէկ խօս-

քով՝ այդ տեսակ բան մը բարոյապէս անկարելիութիւն մ՚է։ Այս տեսակ կեանք մը միմիայն յարաճուն դժբաղդութեան միջոց մը պիտի ըլլայ թէ՛ ենթակային և թէ՛ ուրիշներուն․ որով Աստուած Իր անսահման բարութեամբը չի կրնար թէ՛ ենթակային և թէ՛ ուրիշներուն համար այսքան անպէտ ու վնասակար կեանք մը միշտ վար պահել․ և երբ Իր կենսատու զօրութիւնը կը դադրի, չարին բնական արդիւնքը, կործանումը, բնաջնջումը կը հետևի։ Կեանքը շնորհ մ՚է, Աստուծոյ մէկ պարգևը, որը յաւիտենապէս պիտի չարունակուի միմիայն հնազանդներուն։

Ադամի սերունդին իւրաքանչիւրին անհատական փորձ մը չտալը անոնց հանդէպ անարդարութիւն չի նշանակեր։ Եհովան ո՛չ մէկ կերպով ստիպուած էր մեզ գոյութեան բերել․ ու մեզ ստեղծելով, իրաւունքի կամ արդարութեան ո՛չ մի օրէնք կը պարտաւորեցնէ զինքը մեր գոյութիւնը յաւիտենապէս վար պահել, ո՛չ ալ նոյնիսկ փորձ մը շնորհել յաւիտենական կեանքի խոստումով՝ եթէ հնազանդ գըտնուինք։ Լաւ ըմբռնեցէք այս կէտը։ Ներկայ կեանքը որը թէև օրօրանէն մինչև գերեզման մեռնելու շըրջան մ՚է, սակայն իր բոլոր չարիքներովն ու յուսախաբութիւններովը հանդերձ, պարգև մ՚է, շնորհ մ՚է, եթէ նոյնիսկ ապագայ կեանք գոյութիւն չունենար։ Հսկայ մեծամասնութիւնը այսպէս կը հաշուէ զայն, բացառութիւնները (անձնասպանները) բաղդատաբար նուազ ըլլալով․ և ասոնք՝ մեր արդարութեան դատարանները յաճախ մտային անհաւասարակշռութեան վերագրած են, եթէ ոչ անոնք այսպէս ինքզինքնին պիտի չզրկէին ներկայ օրհնութիւններէն։ Անկէ զատ, կատարեալ մարդուն, Ադամին

վարքը ցոյց կուտայ մեզ այն՝ ինչ որ նաև իր որդիները պիտի ընէին նոյնանման պարագաներու ներքև:

Շատեր այն մոլորական գաղափարով տոգորուած են՝ թէ Աստուած մեր սերունդը կենաց և յաւիտենական տանջանքի փորձութեան ներքև դրաւ, մինչդեռ այս տեսակ և ո՛չ մէկ բառ նոյնիսկ ակնարկուած է պատիժին մէջ: (Երեմ. ԺԹ. 5): Աստուծոյ՝ Իր հնազանդ զաւակներուն համար ունեցած շնորհքը կեանք է—շարունակական կեանք—զերծ ցաւէ, հիւանդութենէ և ուրիշ ամէն տեսակ քայքայումէ և մահէ:

Այս օրհնութիւնը լեցուն չափով տրուած էր Ադամին, սակայն ազդարարուած էր թէ պիտի զրկուի այս «պարգև»էն՝ եթէ թերանայ Աստուծոյ հնազանդելէ—«Անկէ կերած օրդ անշուշտ պիտի մեռնիս»: Նա մեղաց որպէս պատիժ, տանջանքի մէջ անցնելիք կեանքի մասին ոչինչ գիտէր: Բացի հնազանդներէն, ուրիշ և ո՛չ մէկու յաւիտենական կեանք խոստացուած է: Կեանքը՝ Աստուծոյ պարգևն է, իսկ մահը՝ կեանքին հակառակը՝ Իր սահմանած պատիժն է:

Հին Կտակարանի ո՛չ մէկ մասին մէջ յաւիտենական տանջանք քարոզուած է. իսկ Նոր Կտակարանին մէջ միայն մի քանի ասացուածքներ կան որոնց սխալ մեկնաբանելովը միայն կարելի է ըստ երևոյթին պաշտպանել այդ ճիւաղային ուսուցումը. և անոնք կա՛մ Յայտնութեան խորհրդապատկերներուն մէջ կը գտնուին, և կամ մեր Տիրոջ առակներուն և մութ ասացուածքներուն մէջ, որոնք լսող ժողովուրդը չէր կրնար հասկնալ: (Ղուկ. Ը. 10): Եւ որոնք միայն քիչ մը աւելի լաւ կերպով ըմբռ-

նուած կը թուին ըլլալ ներկայիս*։ «Մեղաց վարձքը մահ է» (Հռովմ. Զ. 23)։ «Այն հոգին որ մեղանչէ, պիտի մեռնի»։—Եզեկ. ԺԸ. 4։

Շատերը կ'ենթադրեն թէ Աստուած անարդար էր, երբ թողուց որ Ադամին դատապարտութեան մէջ անոր սերունդն ալ բաժին ունենայ, փոխանակ անոնց ամէն մէկուն Ադամի վայելածին նման յաւիտենական կենաց փորձ և պատեհութիւն մը տալու։ Բայց ի՞նչ պիտի ըսեն անոնք, եթէ հիմա ցոյց տրուի իրենց թէ աշխարհի կենաց փորձը և պատեհութիւնը շատ աւելի նպաստաւոր պիտի ըլլայ քան Ադամինը, նոյնպէս ալ Աստուծոյ այս ծրագրին որդեգրումը՝ որ թոյլատրեց Ադամին սերունդը բնական կերպով բաժանորդ ըլլալու անոր պատիժին։ Մենք կը հաւատանք թէ այս է իրողութիւնը, և որը պիտի ջանանք պարզել։

Աստուած կը վստահեցնէ մեզ թէ ինչպէս որ դատապարտութիւնը Ադամով բոլորին վրա տարածուեցաւ, նոյնպէս ալ Ինքը մարդկային ցեղին համար նոր գլուխ մը, նոր Հայր մը կամ Կեանք տուող մը սահմանած է, որուն կրնան բոլորն ալ փոխանցուիլ հաւատքի և հնազանդութեան շնորհիւ։ Եւ ինչպէս որ բոլորը Ադամով մասնակից եղան մահուան անէծքին, նոյնպէս ալ Քրիստոսով բոլորը պիտի վայելեն կենաց օրհնութիւնը, Անոր արեան հաւատալովը արդարանալով։ (Հռովմ. Ե. 12, 18, 19)։ Այս տե-

*Անոնք որ այս նիւթին սուրբ աւելի լուսաբանուիլ կ'ուզեն, կրնան քարտով մը իմացնել մեզ, որոնց սիրայօժար յանձն պիտի առնենք այս նիւթին սուրբ գրուած ՁՐԻ թերթեր ղրկել։

սակէտէ, Յիսուսին, անարատին, անմեղին մահը, Ադամի մեղաց համար Աստուծոյ հանդէպ կատարեալ ու համապատասխան գին մ'էր։ Ինչպէս որ մարդ մը մեղանչած էր, ու բոլորը անով անոր անէծքին, պատժոյն մասնակցած էին, նոյնպէս ալ Յիսուս, այդ մէկ մեղաւորին պատիժը վճարելով, ո՛չ միայն Ադամը գնեց, հապա նաև անոր սերունդը—ամէն մարդ՝ որ ժառանգաբար մասնակցեցաւ անոր տկարութիւններուն և մեղքերուն ու անոնց պատժոյն—մահուան։ Մեր Տէրը՝ անարատ և Աստուծմէ ընդունուած «Յիսուս Քրիստոս մարդը», որ Ինքն Իր մէջ կը պարունակէր անծին, մեղքէ անարատ, կատարեալ սերունդ մը կամ ցեղ մը, Իր մարդկային ամբողջ կեանքն ու իրաւունքը Ադամին և անոր դատապարտուած ժամանակ անոր երանքին մէջ գտնուած սերունդին կամ ցեղին համար իբրև Փրկագին տուաւ։ Այսպէս բոլորովին գնած ըլլալով Ադամին ու անոր սերունդին կեանքերը, Քրիստոս կ'առաջարկէ որպէս Իր սերունդը կամ որդիները ընդունիլ Ադամի սերունդէն բոլոր անոնք, որոնք պիտի ընդունին Նոր Ուխտին պայմանները, ու այսպէս, հաւատքով գան իր ընտանիքին—Աստուծոյ ընտանիքին—մէջ, ու յաւիտենական կեանք ստանան։ Այսպէս, ահա՛ Փրկիչը «պիտի տեսնէ Իր սերունդը (Ադամի սերունդէն ամէն անոնք, որ պիտի ընդունին որդեգրութիւնը Իր պայմաններովը), ու Իր օրերը պիտի երկարէ (մարդկայինէն աւելի բարձր մակարդակի մը վրայ յարութիւն առած, որը Հօրմէն նուիրուեցաւ Իրեն, որպէս վարձատրութիւն Իր հնազանդութեան)»։ և այս ամէնը՝ մարդուն ակնկալածէն բոլորովին տարբեր կերպով մը—կեանքի և սերունդի զոհաբերմամբ։ Ու այսպէս գրուած է. «Ինչպէս որ Ադամով

բոլորը կը մեռնին, նոյնպէս ալ Քրիստոսով բոլորը կենդանի պիտի ըլլան»։—Ա. Կորնթ. ԺԵ. 22։

Այս վնասը որ ստացանք Ադամի անկումովը (և որով մենք չանիրաւուեցանք), Աստուծոյ ողորմութեամբը աւելի մեծ համեմատութեամբ պիտի փոխարինուի Քրիստոսի միջոցաւ ցոյց տրուելիք շնորհքովը, և բոլորը, ուշ կամ կանուխ («Աստուծոյ յարմար ատենին»), լիուլի պատեհութիւն մը պիտի ունենան վերահաստատուելու միևնոյն վիճակին, որ Ադամ կը վայելէր մեղանչելէ առաջ։ Անոնք որ լիուլի գիտութիւն մը չեն ընդունիր, և հաւատքով ներկայիս չեն վայելեր Աստուծոյ շնորհը (ու այս դասուն կը պատկանին հսկայ մեծամասնութիւնը, մանուկներն ու հեթանոսներն ալ հաշուելով), ապահովաբար յառաջիկայ դարուն պիտի ունենան այս պատեհութիւնը, կամ «գալիք աշխարհին», այն Տընօրինութեան կամ դարուն մէջ, որ ներկայէն պիտի յաջորդէ։ Ասոր համար, «բոլորը որ իրենց գերեզմաններուն մէջ են... դուրս պիտի գան»։ Եւ երբ իւրաքանչիւր անհատ (ըլլայ այն ներկայիս կամ յառաջիկայ Դարուն) մեր Տէր Յիսուսի կողմանէ տըրւած Փրկադնին ու յաջորդական պատեհութեանց նկատմամբ լիակատար գիտակցութեան մը կուգայ, նա փորձի (դատաստանի) մէջ եղող մը կը նկատուի, ինչպէս որ Ադամ էր. և այս վիճակին մէջ հնազանդութիւնը տևական կեանք կը բերէ, իսկ անհնազանդութիւնը տևական մահ—«երկրորդ մահ»։ Սակայն կատարեալ հնազանդութիւն չպահանջուիր ոևէ անհատէ, որ զայն մատուցանելու համար կատարեալ կարողութիւն չունի։ Շնորհաց ուխտին ներքև, Աւետարանական Դարու Եկեղեցւոյ անդամներուն մարմնեղէն տկարութեանց պատճառաւ գործուած անխուսափելի թերութիւնները ծածկելու համար,

Քրիստոսի արդարութիւնը անոնց հաշուըուած է հաւատքի միջոցաւ։ Աստուածային Շնորհքը նոյնպէս Հազարամեայ Դարուն ալ պիտի գործէ անոնց համար, որոնք կը ջանան քալել «սուրբ պողոտային»։ Մինչև որ Փիզիքական կատարելութեան չտիրացուի (որը բոլորին պատեհութիւնը պիտի ըլլայ Հազարամեայ Դարը լրանալէ առաջ), բացարձակ բարոյական կատարելութիւն պիտի չ'ակնկալուի։ Այդ Նոր փորձը (դատաստանը), Փրկանքին և Նոր Ուխտին արդիւնքը, Եդեմական դատաստանէն անով պիտի տարբերի՝ որ իւրաքանչիւրին գործը միայն իր ապագան պիտի վճռէ։

Բայց արդեօք ասիկա մարդկութեան ոմանց համար յաւիտենական կեանքի Երկրորդ պատեհութիւն մը պիտի չնշանակէ՞։ Մենք կը պատասխանենք— շնորհիւ հայր Ադամի անհնազանդութեանը՝ յաւիտենական կենաց առաջին պատեհութիւնը թէ՛ իրեն և թէ՛ «Իր երանքին մէջ գտնուող» սերունդին համար կորսուած էր։ Այդ սկզբնական փորձին կամ դատաստանին ներքև «բոլոր մարդոց դատապարտութեան վճիռ եղաւ»․ բայց Աստուծոյ ծրագիրն էր որ Քրիստոսի փրկարար զոհաբերութեան շնորհիւ թէ՛ Ադամ և թէ՛ ամեն անոնք, որոնք իրենց նախահօր անկումովը կեանքերնին կորսնցուցին, մեղքին խիստ անիծապարտ ըլլալը ճաշակելէ, ու անոր պատիժին ճնշիչ ծանրութիւնը զգալէ վերջ, պատեհութիւնը պիտի ունենան Փրկչին վրայ ունեցած հաւատքովնին Աստուծոյ դառնալու։ Ուէ մէկը որ կ'ուզէ ասիկա «երկրորդ պատեհութիւն» մը կոչել, կրնայ այդպէս ընել․ ասիկա անտարակոյս, Ադամին համար Երկրորդ պատեհութիւն մը պիտի ըլլայ, ու տեսակէտով մ'ալ, միևնոյնը կրնանք ըսել նաև բոլոր փրկուած սերունդին համար․ սակայն անիկա իր

ազգատոհմին համար առաջին անհատական պատեհութիւնը պիտի ըլլայ, որոնք ծնած ժամանակ արդէն մահուան դատապարտութեան ներքև էին։ Ինչ ալ որ հաճինք կոչել զայն, իրողութիւնները միեւնոյն են, այսինքն՝ Ադամի անհնազանդութեան պատճառաւ բոլորը մահուան դատապարտուած էին, որով բոլորն ալ (Հազարամեայ Դարուն) լիակատար պատեհութիւն մը պիտի վայելեն Նոր Ուխտի նպաստաւոր պայմաններուն ներքև յաւիտենական կեանք շահելու։ Ասիկա՝ ինչպէս որ հրեշտակները յայտնեցին, «Մեծ ուրախութեան աւետիս է, որ բոլոր ժողովուրդին պիտի ըլլայ»։ Եւ ինչպէս որ Առաքեալը ըսաւ, Աստուծոյ այս շնորհը—թէ մեր Տէր Յիսուսը «Իր անձը ամենուն տեղը փրկանք տուաւ»,—ամենուն «վկայութիւն պիտի ըլլայ յարմար ատեն»ին։ (Հռովմ. Ե. 17—19։ Ա. Տիմ. Բ. 4—6)։ Մարդիկ՝ և ո՛չ թէ Աստուած կեանքի տիրանալու այս պատեհութիւնը կամ առիթը միմիայն ներկայ Աւետարանական Դարուն սահմանած են։ Ընդհակառակը, Աստուած կ'ըսէ մեզ թէ Աւետարանական Դարը միայն Եկեղեցիին, Արքայական Քահանայութեան ընտրութեանը համար է, որուն միջոցաւ յառաջիկայ Դարուն, մնացեալ բոլորը ճշմարտութեան ճշգրիտ գիտութեան մը պիտի բերուին, ու կատարեալ պատեհութիւն մը պիտի պարգևուի Նոր Ուխտին ներքև յաւիտենական կենաց տիրանալու։

Բայց արդեօք հետապնդուած մեթոտին մէջ ի՞նչ առաւելութիւն կայ։ Ինչո՞ւ ներկայիս անմիջապէս բոլոր մարդոց կենաց համար անհատական պատեհութիւն մը չտրուիր, առանց Ադամի փորձին և դատապարտութեան երկար ընթացքին, անոր սերունդին իր դատապարտութեանը մէջ ունեցած բաժինին, Քրիստոսի զոհաբերութեամբ բոլորին խոս-

տացուած յաւիտենական կենաց նոր պարգեւին ստանալու։ Եթէ մարդուն կամքի ազատութեան համար պարտ էր չարիքը թոյլատրուիլ, ինչո՞ւ սակայն անոր բնաջնջումը այս տեսակ տարօրինակ և ոլորապտոյտ մեթոտով մը կը կատարուի։

Ինչո՞ւ թողուլ որ այսքան թշուառութիւն մէջտեղ ելլէ ու դառնացնէ չատերու կեանքը, որոնք ի վերջոյ, որպէս Աստուծոյ հնազանդ որդիքը՝ պիտի ստանան կենաց պարգեւը։

Ա՜հ, ատիկա է այս նիւթին ամենահետաքրքրական կէտը։ Դիցուք թէ Աստուած տարբեր կերպով տնօրինած ըլլար մեր ցեղին սերումը, որով զաւակները ծնողական մեղքերու—մտաւորական, բարոյական և ֆիզիքական տկարութեանց մասնակից չըլլային. դիցուք թէ Արարիչը այնպէս մը կարգադրած ըլլար որ բոլորն ալ իրենց փորձառութեան համար նպաստաւոր Եդեմական վիճակ մ'ունենային, և թէ միայն մեղանչողները դատապարտուէին և «կորսուէին». բայց քանի՜ հոգի արդեօք կրնանք երևակայել թէ այս բոլոր նպաստաւոր պարագաներուն ներքև արժանի պիտի համարուէին, և քանինե՜ր անարժան։

Եթէ Ադամի պարագան նկատի ունենանք որպէս դատանիշ (և արդարև նա ամէն կերպով կատարեալ մարդկութեան նմոյշ մ'էր), ան եզրակացութեան պիտի յանգինք՝ թէ ո՛չ ոք կատարելապէս հնազանդ և արժանի պիտի գտնուէր. որովհետև ո՛չ ոք պիտի ունենար Աստուծոյ հանդէպ այն յստակ գիտակցութիւնը ու Անոր հետ այն փորձառութիւնը, որոնք իրենց անձնական դատողութենէն ալ աւելի Անոր օրէնքներուն նկատմամբ կատարեալ վստահութիւն պիտի զարգացնէին։ Մենք այն վստահութիւնը ու-

նինք թէ Քրիստոսի՝ Հօրը նկատմամբ ունեցած գիտութիւնն էր որ կարող ըրաւ զինքը ի բոլոր սրտի Անոր ապաւինելու և հնազանդելու։ (Եսայի ԾԳ. 11)։ Բայց պահ մը համարենք թէ մէկ-չորրորդը կեանքի տիրանային, կամ նո՛յնիսկ աւելի, ենթադրենք թէ կէսը արժանի համարուէին, իսկ միւս կէսը՝ կրէին մեղքին վարձքը,—մահը։ Բայց վե՞րջը։ Ենթադրենք թէ միւս կէսը, հնազանդները, մեղքին հետ ո՛չ փորձառութիւն ունեցան և ո՛չ ալ անոր ականատես եղան. բայց միթէ չարունակ հետաքրքրութիւն մը պիտի չունենայի՞ն արգիլուած բաներուն նկատմամբ, որոնցմէ զիրենք ետ պահողը միմիայն Աստուծոյ պատիժին երկիւղը պիտի ըլլար։ Անոնց ծառայութիւնը չէր կրնար այնքան սրտաբուխ ըլլալ, որքան որ պիտի ըլլար, եթէ գիտնային բարին ու չարը, եթէ լիուլի գնահատանք մ'ունենային Աստուծոյ մարդասիրական ծրագիրներուն ու Անոր օրէնքներուն հանդէպ, որոնք կը կառավարեն թէ՛ Իրեն և թէ՛ Իր արարածներուն ընթացքը։

Դարձեալ՝ նկատեցէք միւս կէսը, որոնք իրենց կամաւոր մեղաց համար պիտի մեռնին։ Անոնք միշտ կորուած պիտի մնան կեանքէ, ու անոնց միակ յոյսը այն պիտի ըլլայ թէ՝ թերևս օր մը Աստուած սիրով յիշէ զիրենք որպէս Իր արարածները, Իր ձեռակերտները, ու իրենց համար ուրիշ փորձ մը պատրաստէ։ Ու այս քայլը առնելուն միակ շարժառիթը այն յոյսը պիտի ըլլայ թէ՝ եթէ անոնք վերակենդանանան և կրկին փորձուին, անոնցմէ ոմանք, իրենց աւելի մեծ փորձառութեամբը, թերևս այն ատեն հնազանդութիւնը և սէրը ընտրեն։

*Բայց եթէ այս ծրագիրը իր արդիւնքներուն մէջ այնքան լաւ ըլլար, որքան միւսը զոր Աստուած որդեգրած է, դարձեալ, ասոր նկատմամբ լուրջ առարկութիւններ պիտի ըլլային։*

*Ո՛րքան աւելի կը նմանի Աստուածային իմաստութեանը երբ մեղքը որոշ սահմաններու մէջ կ՚ամփոփուի, ինչպէս որ Իր Ծրագիրը կ՚ընէ։ Ո՛րքան աւելի լաւ նոյնիսկ մեր սահմանափակ մտքերը կրնան նկատել անոր գերազանցութիւնը, միմիայն մէկ կատարեալ և անկողմնակալ օրէնք մ՚ունենալ, որը կամակոր մեղաց վարձքը մահ—կործանում—կեանքէ զրկուում կը սահմանէ։ Այսպէս, Աստուած կը սահմանափակէ Իր թոյլատրած չարիքը, որոշելով թէ Քրիստոսի Հազարամեայ իշխանութիւնը պիտի ամբողջացնէ չարին և կամակոր չարութիւն ընողներուն կատարեալ ոչնչացումը, ու ներածէ յաւիտենական արդարութիւն մը, որը հիմնուած պիտի ըլլայ կատարեալ էակներու լիուլի գիտակցութեան և կատարեալ ազատ կամաց հնազանդութեան վրայ։*

*Սակայն, սկիզբէն իւրաքանչիւր անհատ առանձինն փորձելու վերոյիշեալ ծրագրին նկատմամբ ուրիշ երկու առարկութիւններ կան։ Աստուծոյ որդեգրած Ծրագրին մէջ մէկ Փրկիչը բաւական էր, որովհետև միայն անհատ մը մեղանչած էր, ու միայն անհատ մը դատապարտուած էր։ (Ուրիշներ բաժնեկից եղան* անոր *դատապարտութեանը)։ Բայց եթէ մարդկութեան կէսը մեղանչած ու անհատապէս դատապարտուած ըլլար, այն ատեն ամէն մէկ դատապարտուած անհատի փրկութեան համար մէյ մէկ Փրկչի զոհաբերութիւն պիտի պահանջուէր։ Զկոր-*

տուած կեանք մը, միայն մէկ կորսուած կեանք կըրնայ փրկել։ Այն մէկ կատարեալ մարդը, «Յիսուս Քրիստոս մարդը», որ փրկեց ինկած Ադամը (և անոր միջոցաւ կորսուածները), չէր կրնար «ԲՈԼՈՐԻՆ փրկանք մը (համապատասխան գին մը)» ըլլալ, եթէ Աստուծոյ ընտրած Ծրագրի պարագաներուն համեմատ տեղի չունենար։

Եթէ Ադամէն մինչև ցարդ մարդկային արարածները թիւը հարիւր երկիլիոն ենթադրենք, ու անոնց միայն կէսը մեղանչած ըլլային, այս յիսուն երկիլիոն մեղաւորները փրկելու համար միւս յիսուն երկիլիոն հնազանդ, կատարեալ մարդոց մահը հարկ պիտի ըլլար որպէս փրկանք (համապատասխան գին մը)․ որով այս ծրագրով ալ մահը բոլորին վրայ պիտի տարածուէր։ Այս տեսակ Ծրագիր մը ներկայ փորձառութիւններէն աւելի նուազ տառապանք պիտի չպարունակէր։

Այս կարգի ծրագրի մը դէմ միւս առարկութիւնը այն է որ, անիկա լրջօրէն պիտի խանգարէր Աստուծոյ «փոքրիկ հօտ»ի մը ընտրութեան և Աստուածային բնութեան բարձրացման Ծրագիրը։ Աստուած չի կրնար արդարօրէն հրամայել յիսուն երկիլիոն հնազանդ որդւոցը, զոհելու իրենց իրաւունքները, պատեհութիւնները և կեանքերը որպէս փրկանքներ մեղաւորներուն համար, որովհետև Իր օրէնքին ներքև անոնց հնազանդութիւնը տևական կենաց իրաւունք շահած պիտի ըլլայ։ Որով եթէ այս կատարեալ մարդերէն խնդրուէր ինկածներուն փրկիչները ըլլալու, Աստուծոյ ծրագիրը պիտի ըլլար, ինչպէս Տէր Յիսուսի նկատմամբ՝ անոնց առջև մասնաւոր վարձատրութիւն մը դնել, որպէսզի անոնք իրենց

տռչև դրուած ուրախութեանը համար, կարենային տանիլ իրենց եղբայրներուն պատիժը։ Եւ եթէ անոնց ալ տրուէր այն վարձատրութիւնը որ մեր Տէր Յիսուսին տրուեցաւ, այսինքն բաժնեկից ըլլալ Նոր, Աստուածային բնութեան, ու խիստ վեր բարձրացուիլ հրեշտակներէն, իշխանութիւններէն և զօրութիւններէն, ամէն անունէ որ տրուած է—Եհովային յաջորդը ըլլալ (Եփես. Ա. 20, 21), այն ատեն Աստուածային մակարդակին վրայ հսկայ թիւ մը պիտի ըլլար, բան մը, որ անտարակոյս Աստուծոյ իմաստութիւնը չհաճեցաւ։ Դարձեալ, այս յիսուն երկիլիոնը, այս տեսակ պարագաներու ներքև, բոլորն ալ հաւասար պիտի ըլլային իրարու, որով անոնց մէջ ո՛չ ոք մեծ կամ գլխաւոր պիտի ըլլար։ Մինչդեռ Աստուածային Ծրագրին որդեգրած կոչերը միայն մէկ Փրկիչ մը կ'ընդունին որ Աստուածային բնութեամբ խիստ բարձրացուի, ու ապա, Անոր փրկածներէն «փոքրիկ հօտ» մը հաւաքել՝ որոնք նախ պարտին Անոր տառապանքի և անձնուիրութեան քայլերուն հետևիլ, Անոր անուանը, պատուոյն, փառքին ու բնութեանը կարենալ մասնակցելու համար այնպէս, ինչպէս որ կին մը իր ամուսնոյն հետ բաժնեկից է։

Անոնք որ կրնան գնահատել Աստուծոյ Ծրագրին այս մասը, որ բոլորը Մէկով մը դատապարտելով, կարելի ըրաւ Մէկ փրկիչով մ'ալ բոլորին փրկութիւնը և վերահաստատութիւնը, անոր մէջ պիտի գտնեն շատ մը շփոթութեանց լուծումը։ Անոնք պիտի տեսնեն թէ բոլորին մէկով մը դատապարտելը անոնց վնասելէ բոլորովին հեռու էր. ըստ Աստուծոյ Ծրագրին մեծ շնորհք մ'էր բոլորին ալ՝ որ ուրիշ մէկու

մը զոհաբերութեամբը բոլորին արդարացման շնորհք կը հայթայթուէր։ Զարը յաւիտենապէս պիտի բնաջնջուի, երբ զայն Թոյլատրելու Աստուծոյ նպատակը իրագործուած է, ու երբ փրկանքին բարիքները մեղքի պատիժին չափ աշխարհածաւալ դարձած են։ Սակայն անկարելի է Աստուծոյ Ծրագրին այս մասը ճշգրիտ կերպով գնահատել, առանց մեղքի անիծապարտութեան լիուլի գիտակցութեանը, առանց անոր պատիժի—մահուան—բնոյթին՝ առանց Փըրկագնին կարևորութեանը և արժէքին՝ զոր մեր Տէրը Յիսուս տուաւ, ու առանց անհատական իրական և անթերի վերահաստատութեանը Նպաստաւոր պայմաններուն՝ պայմաններ, որոնց ներքև նա լիուլի ու ընդարձակ փորձ մը պիտի ունենայ, վճռելէ առաջ թէ (տևակա՞ն կենաց) վարձատրութեան պիտի արժանանայ, թէ ո՛չ (տևական մահուայ) պատիժոյն։

Ի տես Փրկութեան այս մեծ Ծրագրին, ու Քրիստոսի միջոցաւ յաջորդական «բոլոր բաներու վերահաստատութեան», մենք կրնանք տեսնել թէ չարիքին Թոյլատրութեան արդիւնք եղող օրհնութիւնները, թերևս ուրիշ միջոցով այսքան լեցուն կերպով պիտի չիրագործուէին։

Մարդիկ յաւիտենապէս պիտի օրհնուին իրենց շահած փորձառութիւններէն․ և մարդոց այս փորձառութիւնները գիտելով՝ հրեշտակներն ալ դասեր քաղած պիտի ըլլան․ ու ո՛չ միայն այս, հապա նաև բոլորն ալ՝ թէ՛ մարդ և թէ՛ հրեշտակ մեծագոյն առաւելութիւն մը պիտի ունենան, աւելի կատարեալ ծանօթութիւն մը ստացած ըլլալով Աստուծոյ Նկարագրին նկատմամբ, զոր Իր Ծրագիրը ի յայտ պիտի բերէ։ Երբ Իր Ծրագիրը կատարելապէս ամբողջացած է, բոլորն ալ կարող պիտի ըլլան որոշ կերպով

*տեսնել Անոր Իմաստութիւնը, Արդարութիւնը, Սէրը և Զօրութիւնը։ Անոնք պիտի տեսնեն այն Արդարութիւնը որ չէր կրնար ոտնակոխ ընել Աստուածային Հրամանը, ո՛չ ալ փրկել իրաւացի կերպով դատապարտուած մարդկութիւնը՝ առանց կամաւոր Փրկչի մը կողմանէ անոնց պատժոյն լիուլի ջնջմանը։ Անոնք պիտի տեսնեն այն Սէրը, որ հայթայթեց այս ընտիր զոհը, և որը խիստ բարձրացուց Փրկիչը, Աստուծոյ աջ կողմը, տալով Անոր զօրութիւն և իշխանութիւն վերակենդանացնելու համար ամէն անոնք, որոնք Իր Թանկագին արեամբը գնած էր։ Անոնք նաև պիտի տեսնեն այն Զօրութիւնը և Իմաստութիւնը, որոնք կարող եղան Իր արարածներուն փառաւոր վախճան մը պատրաստել ու այնպէս մը հովանաւորել բոլոր հակառակ ազդեցութիւնները, որպէսզի անոնք կա՛մ կամաւոր և կա՛մ ակամայ գործակատարներ ըլլան Իր վսեմ Ծրագիրներուն վերջնական ամբողջացմանը։ Եթէ չարիքը չթոյլատրուէր, և Աստուածային Նախախնամութեամբ այսպէս չհովանաւորուէր, չենք կրնար ըմբռնել թէ ի՛նչպէս կարելի պիտի ըլլար այս արդիւնքներուն տիրանալ։ Այսպէսով, չարիքին՝ մարդոց մէջ ժամանակուայ մը համար թոյլատրումը հեռատես իմաստութիւն մը կ՚արտայայտէ, որը ըմբռնեց բոլոր հետևող պարագաները, ծրագրեց դարմանը ու իր զօրութեամբը և շնորհքովը նշանակեց վերջնական արդիւնքը։*

*Աւետարանական Տնօրինութեան տևողութեանը, մեղքը և իր հետևորդ չարիքները յաւելուածաբար գործածուած են Եկեղեցիին կրթութեանը և պատրաստութեանը համար։ Եթէ մեղքը չթոյլատրուէր,*

*մեր Տիրոջ Յիսուսի և Իր Եկեղեցիին զոհաբերութիւնը, որուն վարձատրութիւնը Աստուածային բնութիւն է՝ անկարելի պիտի ըլլար։*

*Որոշապէս կերևի թէ իրապէս, Աստուծոյ միևնոյն օրէնքը որ ներկայիս կը տիրէ մարդկութեան վրայ—կեանք՝ երբ վարձատրութիւն հնազանդութեան, և մահ՝ երբ պատիժ անհնազանդութեան—պարտ է ի վերջոյ կառավարել Աստուծոյ բոլոր դիտակից արարածները, ու այդ օրէնքը, ինչպէս որ մեր Տէրը պարզեց զայն, համառօտակի կ'ըմբռնուի այս մէկ բառովը,* Սէր։ *«Սիրէ՛ քու Տէր Աստուածդ քու բոլոր սրտովդ ու քու բոլոր անձովդ և քու բոլոր մտքովդ և քու ընկերդ ալ քու անձիդ պէս»։ (Ղուկ. Ժ. 27)։ Ի վերջոյ, երբ Աստուծոյ նպատակը ամբողջացած է, Աստուածային նկարագրին փառքը բոլոր գիտակից արարածներուն պիտի յայտնուի, և չարին ժամանակաւորապէս թոյլատրութեան Աստուածային իմաստուն քաղաքականութիւն մ'ըլլալը բոլորէն պիտի տեսնուի։ Ներկայիս սակայն միմիայն հաւատքի աչքով կը տեսնուի, որը Աստուծոյ խօսքին միջոցաւ կը դիտէ ապագայի այն բաները, որոնք բոլոր սուրբ մարգարէներուն բերնովը խօսուած են աշխարհի սկսելէն ի վեր—բոլոր բաներուն վերահաստատութիւնը։*



## ՀԱԶԱՐԱՄԵԱՆ

*Ըսթափեցէ՛ք պանդուխտք յուսահատ,*
*Ցրուեցէ՛ք ձեր վախերն անպէտ,*
*Մօտ է այն օրն երբ կ՚սկսի*
*Տիրել Յիսուս հազար տարի։*

*Հազար տարի, ժամանակ բարի,*
*Սփոփանաց խեղճ աշխարհի,*
*Զըքնաղ այգուն Սիօնի փառաց,*
*Գուշակներէն կանխատեսուած։*

*Աւետեցէ՛ք աշխարհն համայն,*
*Ամէն ազգի ճնշեալներուն,*
*Ըսէ՛ք մօտ է օրն հանգստի,*
*Յոբելեանն է հազար տարի։*

*Պահ մը միայն կարող են ամպերն*
*Ծածկել եթերն ծաթող այգուն,*
*Բայց խոստացեալ գուարթ արփին*
*Պիտի փայլի հազար տարի։*

*Ո՛հ փութացէ՛ք դարեր պանծալի*
*Երջանկաւէտ օր Յիսուսի,*
*Ո՛հ թէ ես ալ արժանանայի*
*Տիրել Իր հետ հազար տարի։*

# ԳԼՈՒԽ Ը.

## ԴԱՏԱՍՏԱՆԻ ՕՐԸ

Դատաստանի Օրուայ Մասին Ընդհանուր Կարծիքը.—Ասիկա Ս. Գրոց Համաձա՞յն է.—Դատաստան և Օր Բառերը Պարզաբանուած.—Ս. Գրոց մէջ Ակնարկուած Զանազան Դատաստանի Օրերը.—Առաջին Դատաստանի Օրը և անոր Արդիւնքները.—Ուրիշ մը Սահմանուած.—Դատաւորը.—Գալիք Դատաստանին Բնոյթը.—Առաջին և Երկրորդ Դատաստանի Օրերու Նմանութիւնները և Տարբերութիւնները.—Աշխարհին Ներկայ Պատասխանատուութիւնը.—Միջանկեալ Երկու Դատաստաններ և Անոնց Նպատակները.—Գալիք Դատաստանին Նկատմամբ Մեծապէս Անհամաձայն Ըմբռնումներ.—Անոր Նկատմամբ Առաքելոց և Մարգարէից Ունեցած Ըմբռնումը։

"Ա*ՍՏՈՒԱԾ Օր մը սահմանած է, որուն մէջ աշխարհը արդարութեամբ պիտի դատէ այն մարդուն ձեռքովը՝ զոր որոշեց»—«Յիսուս Քրիստոս արդարը»: «Որովհետև Հայրը մէկը չի դատեր, հապա ամէն դատաստանը Որդւոյն տուած է»*։—*Գործ.* ԺԷ. 31: *Ա. Յովհ. Բ.* 1: *Յովհ. Ե.* 22։

*Դատաստանի օրուայ նկատմամբ խիստ տարտամ և անորոշ գաղափար մը կը տիրէ։ Ընդհանուր ըմբռնումը այն է թէ՝ Քրիստոս բնութեան անհունի ցըն-*

ցումներու ու մեծ չփոթութեանց մէջ՝ խոշոր սպիտակ դաշտի մը վրայ նստած՝ աշխարհ պիտի գայ, ու բոլոր սուրբերն ու մեղաւորները կարգաւ Իր առջեւը հաւաքէ դատելու համար. ու մինչդեռ գերեզմանները կը բացուին՝ ապառաժները կը ճեղքուին ու լեռները թաւագլոր կ՚իյնան՝ ահ ու սոսկումէ սարսափող մեղաւորները վեր պիտի բերուին իրենց յաւիտենական տառապանքի խորքերէն, լսելու համար իրենց մեղաց վերյիշումը, որմէ վերջ դարձեալ ետ՝ դէպի յաւիտենական ու անողորմ դատապարտութեան պիտի վերադարձուին: Նոյնպէս ալ սուրբերը երկինքէն վար պիտի բերուին, վկայելու համար դատապարտուածներուն թշուառութիւնը և յուսահատութիւնը, ու անգամ մ՚ևս լսելու իրենց դատերուն որոշումը, որմէ յետոյ կրկին իրենց նախկին տեղերը պիտի վերադառնան: Ըստ տիրող ըմբռնումին, բոլորն ալ մահուան ժամանակ կ՚ստանան իրենց վարձատրութիւնը կամ պատիժը*: Եւ ասիկա կարենալ զանազանելու համար, առհասարակ գլխաւոր դատաստան կոչուած է երկրորդը, որը մի-

---

* Լուսաւորչական Եկեղեցին բացառութիւն կը կազմէ այս տեսակէտին մէջ: Ան՝ թէև կը մերժէ այս անհեթեթ կարծիքը, սակայն միւս կողմէն կը պաշտպանէ ուրիշ մը՝ որը նո՛յնքան անհեթեթ է: Ան՝ կը հաւատայ «*հոգիներու կայաններ*»ու, կայարաններ՝ ուր որ մեռնողներուն հոգիները պարտին սպասել հազարաւոր տարիներ մինչև այդ սև ու ահռելի օրը, ուր մարմին զգեցած՝ աշխարհ պիտի գան, ու մէկ օրուայ մէջ դատուելէ վերջ՝ արդարները յաւիտենական երջանկութեան՝ իսկ մեղաւորներն ալ յաւիտենական տառապանաց պիտի դիմեն:

*այն առաջինին կրկնումն է, և որը ո՛չ մէկ երևակա-յելի նպատակի համար է, քանի որ անոնք կ'ըսեն թէ մահուան ժամանակ տրուած որոշումը թէ՛ վերջ-նական և թէ՛ անխախտելի է։*

*Երկիլլիոններու դատաստանի այս հսկայ գործին համար սահմանուած ժամանակը, քսանևչորս ժամ-ուայ օր մ'ընդունուած է։ Ասիկա խիստ խակ ըմբռ-նում մ'է, ու բոլորովին անհամաձայն Աստուծոյ Խօսքին հետ, որը արդիւնքն է մեր Տիրոջ Ոչխար-ներու և Այծերու առակին խիստ բառական վերլուծ-ման։ (Մատթ. ԻԵ. 31—46)։ Ասիկա կը պատկերա-ցընէ այն անհեթեթութիւնը, որը յառաջ եկած է խորհրդաբանական լեզուին բառական իմաստի վեր-լուծումովը։ Առակ մը ո՛չ մէկ ատեն իրական ասաց-ուածք մ'է, հապա պարզապէս ճշմարտութեան ներ-կայացում մ'է այն տեսակ բանով մը, որը շատ մը տեսակէտէ անոր կը նմանի։ Եթէ այս առակը դատաստանի գործադրութեան եղա-նակին բառական նկարագրութիւնն է, այն ժա-մանակ իրական ոչխարներու և այծերու պէտք պատկանի, ինչպէս որ կը կարդացուի, և ո՛չ թէ մարդկութեան։ Ուրեմն Աստուծոյ սահմանած այս Դատաստանի Օրուայ գործին և անոր արդիւնքին նկատմամբ Ս. Գրոց աւելի ներդաշնակ և տրամաբա-նական բացատրութիւն մը կը փնտռենք, որուն տր-ամաբանական և Ս. Գրոց վրայ հիմնուած եզրա-կացութիւններուն հետ համաձայնին բոլոր առակ-ները և պատկերացումները։*

**Դատաստան** *ասացուածքը դատավճիռ մը արձա-կելէն աւելի կը նշանակէ։ Ան կը պարունակէ քննու-թեան մը գաղափարը, նոյնպէս և այդ քննութեան*

վրայ հիմնուած որոշում մը։ Անիկա ո՛չ միայն Յունարէն բառին նշանակութիւնն է որմէ թարգմանուած է Աւետարանը, հապա նաև Հայերէն լեզուին մէջ ալ դատաստան բառը միևնոյն նշանակութիւնը ունի. Սիմոն Գաբամաճեանի բառարանին մէջ դատաստան բառի ստուգաբանութիւնը հետևեալն է— «Իրաւանց վրայ քննութիւն կամ որոշում»։

Օր ասացուածքը թէ՛ Ս. Գրոց և թէ՛ Հասարակ գործածութեան մէջ թէև յաճախ տասնևերկու կամ քսանևչորս ժամուայ տևողութիւն մը կը ներկայացնէ, սակայն իրապէս, ոևէ որոշ և կամ մասնաւոր ժամանակուայ շրջան մը կը նշանակէ։ Զոր օրինակ՝ մենք կ'ըսենք, Նոյի օրը, Վարդանի օրը, Խրիմեանի օրը. այսպէս ալ Ս. Գրոց մէջ ստեղծագործութեան բովանդակ ժամանակաշրջանը օր մը կոչուած է, ուր կը կարդանք՝ «Այն օրը որ Տէր Աստուած երկիրն ու երկինքը ըրաւ»։ (Ծննդ. Բ. 4)—երկար և որոշ ժամանակաշրջան մը։ Դարձեալ կը կարդանք՝ «Անապատին մէջ փորձութեան օրը»—որը քառասուն տարուայ շրջան մ'էր։ (Եբր. Գ. 8, 9)։ «Փրկութեան օրը» (Բ. Կորնթ. Զ. 2). նոյնպէս ալ «Վրէժխնդրութեան օրը», «Բարկութեան օրը» և «Նեղութեան օրը»—ասացուածքները կը վերաբերին Հրէական դարու վերջին քառասուն տարիներուն, և նոյնանման նեղութեան ժամանակուայ մը Աւետարանական Դարու վերջաւորութեան։ Դարձեալ կը կարդանք՝ «Քրիստոսի Օրը», «Դատաստանի Օրը» և «Անոր Օրը»—ասացուածքներ՝ որոնք Հազարամեայ Դարուն կը վերաբերին, որուն տևողութեան Մեսիան պիտի թագաւորէ, կառավարէ ու արդարութեամբ դատէ աշխարհը կեանքի ափրանայէն

փորձ մը նուիրելով, նոյնպէս ալ վճիռ արձակելով։ Այդ ժամանակուայ համար գրուած է—Նա աշխարհը արդարութեամբ պիտի դատէ, որ Իր ատենին պիտի ցուցնէ Երանելին, ու մի միայն Հզօրը, Թագաւորներուն Թագաւորը ու տէրերուն Տէրը։ (Գործ. Ժէ. 31։ Ա. Տիմ. Զ. 15)։ Անըմբռնելի կը թուի թէ ինչո՛ւ արդեօք ոեւէ մէկը պիտի ենթադրէ թէ այս դատաստանին օրը տասներկու կամ քսանեւչորս ժամուայ օր մ'է, երբ ուրիշ նոյնանման պարագաներու մէջ Օր բառին աւելի լայն նշանակութիւնը իրենք ալ կ'ընդունին. մենք կը խորհինք թէ այս կարգի մարդիկ նախապաշարումներու կուրացուցիչ ազդեցութեան տակ կը գտնուին, որոնք պէտք եղածին պէս չեն ուսումնասիրած Տիրոջը Խօսքը։

Անոնք որ Ս. Գրոց ամբողջ համաբարբառի մը Դատաստանի Օրուայ շուրջ բոլոր ակնարկութիւնները ուշադրութեամբ կը հետազօտեն, ու այդ ժամանակուայ տեւողութեան կատարուելիք գործին որակն ու քանակը կը նշմարեն, անմիջապէս պիտի տեսնեն հասարակ ըմբռնումին անհեթեթութիւնը, ու Օր բառին վերաբերեալ լայն նշանակութիւն ընծայելուն կարեւորութիւնը։

Թէեւ Աստուածաշունչը ապագայ մեծ Դատաստանի օրուայ մը մասին կը խօսի, ու ցոյց կուտայ թէ մարդկութեան հսկայ զանգուածները այդ օրուայ մէջ պիտի ստանան իրենց լման փորձը և վերջնական վճիռը ,սակայն անիկա կ'ուսուցանէ նաև թէ դատաստանի ուրիշ օրեր ալ եղած են, որոնց տեւողութեանը մասնաւոր ընտրեալ դասակարգներ քննութեան մէջ եղած են։

Առաջին մեծ դատաստանը (քննութիւն և դատա-

պարտութիւն) սկիզբէն էր, Եդեմի մէջ՝ երբ մարդկային ամբողջ ցեղը, իր գլուխով, Ադամով ներկայացուած՝ քննութեան ներքեւ էր Աստուծոյ առջեւ։ Այդ փորձին կամ քննութեան արդիւնքը եղող դատավճիռն էր՝ թէ նա յանցաւոր, անհնազանդ, կենաց անարժան էր. իսկ գործադրուած պատիժը մահն էր—«Մեռնելով պիտի մեռնիս»։ (Ծննդ. Բ. 17. տե՛ս Անգլիերէն Աստուածաշունչի լուսանցքի թարգմանութիւնը)։ Ու այսպէս, «Ադամով ամէնը կը մեռնին»։ Եդեմի այս քննութեան ժամանակը աշխարհի առաջին դատաստանի օրն էր, ու դատաւորին (Եհովային) վճիռը մինչեւ ցարդ գործադրուած է։

«Աստուծոյ բարկութիւնը երկինքէն յայտնուած է մարդոց բոլոր անիրաւութեանը վրայ»։ Որը կարելի է տեսնել յուղարկաւորութեան ամէն թափօրի մէջ։ Ամեն գերեզման վկայ մ'է անոր։ Անիկա կ'զգացուի մեր ամէն ցաւերուն եւ վիշտերուն մէջ—որոնց բոլորն ալ առաջին քննութեան եւ դատավճռին արդիւնքն են—Աստուծոյ արդար դատավճռին՝ թէ մենք անարժան ենք այն կենաց ու օրհնութեանց, որոնք սկիզբէն մարդուն համար պատրաստուած էին, երբ նա հնազանդ էր ու Աստուծոյ պատկերովը։ Սակայն մարդկութիւնը այդ առաջին դատապարտութենէն փրկուած է, այն մէկ զոհաբերութեամբը, որը մեծ Փրկիչը տուաւ բոլորին համար։ Բոլորն ալ պիտի արձակուին գերեզմանէն ու մահուայ դատապարտութենէն—ոչնչացումէն—որը այս փրկութեան շնորհիւ այլեւս բառին բովանդակ նշանակութեամբ յաւիտենական մահ չնկատուիր, այլ ընդհակառակը, ժամանակաւոր քուն մը. որովհետեւ Հազարամեայի առաւօտուն, Կեանք—տուողին կողմանէ, որը բոլորն ալ փրկեց, ամէնը պիտի զարթ-

նուն իրենց մահուան քունէն։ Միայն Քրիստոսի Հաւատացող Եկեղեցին է որ ազատուած կամ «փախած» է այս սկզբնական դատավճիռէն և պատիժէն. ու անոնց փախուստը դեռ իրական չէ, հապա միայն Հաւատքով այսպէս համարուած է։ «Մենք յուսով փըրկուած ենք» միայն։ Մեր այս մահուան դատապարտութենէն (որուն՝ Ադամով ենթարկուեցանք և Քրիստոսի մէջ գալով փախանք) իրական ազատագրումը լիուլի պիտի չվայելենք, մինչև յարութեան առաւօտը, երբոր գոհ պիտի ըլլանք մեր Փրկչին նմանութեամբը արթննալով։ Բայց այն իրականութիւնը թէ մենք Քրիստոսով Աստուծոյ մարդասէր Ծըրագրին Գիտակցութեան մը եկած ըլլալով՝ «աշխարհի մէջ ցանկութենէ յառաջ եկած ապականութենէն փախած ենք», փոխանակ ապացուցանելու թէ միւսները ապագայ փախուստի յոյս պիտի չունենան, ընդհակառակը ասոր բոլորովին հակառակը կ'ապացուցանէ, որովհետև մենք Աստուծոյ ստեղծուածներէն Իրեն Երախայրի (Նախապտուղ) մ'ենք։ Մեր՝ Ադամական մահէն Քրիստոսով դէպի կեանք փախուստը նախաճաշակ մ'է բոլոր կամաւորներու ազատագրմանը, որոնք ապականութեան (մահուան ծառայութենէն ազատուելով՝ դէպի կենաց ազատութիւնը պիտի դիմեն, որը վերապահուած է բոլոր անոնց, որոնք Աստուած իբր որդիներ պիտի ճանչնայ։ Ամէն ո՛վ որ ուզէ, կրնայ մահուընէ կենաց բարձրացուիլ, առանց նկատի առնելու բնութեան տարբերութիւնները որ Աստուած պատրաստած է Իր տարբեր մակարդակներու վրայ եղող որդիներուն համար։ Աւետարանական Դարը կենաց ու մահուայ փորձի օր մ'է ամէն անոնց, որոնք Աստուածային բնութեան կանչուած են։

*Սակայն Աստուած օր մը որոշած է, ուր պիտի դատէ աշխարհը։ Ի՞նչպէս կրնայ ըլլալ ասիկա։ Մի՞թէ Աստուած փոխա՞ծ է Իր դիտաւորութիւնը։ Մի՞թէ այն եղրակացութեա՞ն յանգած է՝ թէ Իր առաջին մարդուն փորձին մէջ որոշած պատիժը անարդար էր, խիստ ծանր էր, որով հիմա կ'որոշէ աշխարհը անհատապէս դատել։ Ո՛չ. եթէ այս ըլլար իրողութիւնը, մենք ապագայ փորձին (քննութեան) մէջ անցնելիներէն աւելի արդար որոշումի մը երաշխիք չպիտի ունենայինք։ Ո՛չ թէ Աստուած Իր առաջին դատաստանի վճիռը անարդար կը նկատէ, հապա, առաջին դատաստանի պատիժէն* փրկութիւն *մը հայթայթած է, որպէսզի կարենայ ընդհանուր մարդկութեան ուրիշ դատաստան մը (փորձ մը) շնորհել աւելի նպաստաւոր պայմաններու ներքև, որոնք այն ժամանակ մեղաց և անոր արդիւնքներուն հետ փորձառութիւն ունեցած պիտի ըլլան։ Աստուած Իր սկզբնական նպատակէն ո՛չ մէկ նշանակէտ փոխած է, որը աշխարհը սկսելէ առաջ ծրագրեց։ Նա բացայայտ կերպով կը յայտնէ մեզ թէ Ինքը չի փոխուիր, թէ Նա ո՛չ մէկ կերպով պիտի սրբէ մեղաւորը. ընդհակառակը, կատարեալ հատուցում պիտի պահանջէ իր արդարութեամբ սահմանած պատիժին համար։ Սակայն այդ կատարեալ հատուցումը վճարուած է Փրկչին և կամ մեղաւորաց փոխանորդաբար չարչարուողին —Յիսուս Քրիստոսի կողմանէ, որը «Աստուծոյ շնորհքովը (ողորմութեամբը) ամենուն համար մահ ճաշակեց»։ Մե̄ր Տէրը Իր կեանքովը գնած ըլլալով Ադամը ու անոր սերունդը, ներկայիս ըստ օրինի և իրաւամբ կրնայ անոնց բոլորին ալ կենաց նոր խոստում մը տալ։ Ու այս բոլորին տալիք*

խոստումը Նոր Ուխտն է, որը երաշխաւորուած է Իր մահուամբը։—Հռովմ. ԺԴ. 9։ Յովհ. Ե. 22։ Եբր. Ժ. 16, 29։ ԺԳ. 20, 21։

Մենք նոյնպէս տեղեկացուած ենք՝ թէ Աստուծոյ աշխարհի տալիք այս անհատական փորձը Քրիստոսի դատաւորութեան ներքև պիտի ըլլայ, զոր Եհովան այսպէս պիտի պատուէ՝ իբր վարձատրութիւն մեր փրկութեանը համար ցոյց տուած Իր մինչև ի մահ հաւատարմութեանը։ Աստուած զԱնիկա խիստ բարձրացուցած է, նոյնիսկ Աստուածային բնութեան, որպէսզի Նա Առաջնորդ մը և Փրկիչ մը ըլլայ (Գործ Ե. 31), ու կարող ըլլայ մահուընէ ազատել և դատաստան մը շնորհել ամէն անոնց, որոնք Իր թանկագին արեամբը գնեց։ Աստուած ամէն դատաստանը Որդւոյն յանձնած է, ու Անոր տուած է նաև Երկնքի և Երկրի բոլոր զօրութիւնը։—Յովհ. Ե. 22։ Մատթ. ԻԸ. 18։

Ուրեմն խիստ բարձրացուած, փառաւորուած Քրիստոսն է որ ա՛յնքան սիրեց աշխարհը, որ նո՛յնիսկ Իր կեանքը տուաւ որպէս փրկագին, և որը աշխարհի ապագայ խոստացեալ փորձին (դատաստանին) մէջ Դատաւոր պիտի ըլլայ։ Նոյն ինքն Եհովան է որ զԱնիկա այդ պաշտօնին վրայ դրած է, այդ նպատակին համար։ Քանի որ ասոնք են Ս. Գրոց պարզ յայտնութիւնները, ուրեմն սոսկալու պատճառ չկայ, այլ ընդհակառակը, բոլորին համար ալ հրճուելու մեծ պատճառ մը կայ, սպասելով Դատաստանի օրհնաբեր Օրուանը։ Դատաւորին նկարագիրը բաւականաչափ երաշխաւորութիւն մ'է՝ թէ դատաստանը արդար ու ողորմած պիտի ըլլայ, նոյնպէս և բոլորին տկարութիւնները որոշ կերպով նկատողութեան պիտի առնուին, մինչև որ կամաւորներն ու հնազանդները վերահաստատուին այն սկզբնական կատարե-

*լութեանը մէջ՝ որը Եդեմի մէջ կորսուեցաւ։*

*Հին ատենները՝ դատաւորը այն էր, որ արդարութիւն ի գործ կը դնէր ու ճնշուածները կ'ազատէր։ Զոր օրինակ՝ երբ Իսրայէլ Տիրոջը դէմ մեղանչման իբր արդիւնք իրենց թշնամիներէն կը ճնշուէին, շատ անգամներ դատաւորներու մէջտեղ հանուելովը ազատուեցան և օրհնուեցան։ Ու այսպէս կը կարդանք, «Իսրայէլի որդիքը Տիրոջը աղաղակեցին, ու Տէրը Իսրայէլի որդւոցը* փրկիչ *մը հանեց... Գոթոնիէլը։ Եւ Տիրոջը հոգին անոր վրայ գալով՝ Իսրայէլի մէջ* դատաւորութիւն *կ'ընէր, և պատերազմի ելաւ, ու անոր ձեռքը զօրացաւ։ Ու երկիրը քառասուն տարի հանգստացաւ»։ (Դատ. Գ. 9—11)։ Նոյնպէս ալ՝ թէև աշխարհը երկար ատենէ ի վեր բանսարկուին, Սատանային զօրութեան և ճնշման ներքև եղած է, սակայն ի մօտոյ, Նա որ Իր թանկագին արեամբը վճարեց բոլորին մեղաց գինը, Իր մեծ զօրութիւնը պիտի առնէ ու թագաւորէ։ Ու պիտի ազատէ զանոնք՝ որ փրկելու աստիճան սիրեց։*

*Ասոր հետ կը համաձայնին մարգարէական* բոլոր *յայտարարութիւնները։ Գրուած է, «Անիկա պիտի դատէ աշխարհը արդարութեամբ ու ժողովուրդները ուղղութեամբ։—Սաղմ. ՂԸ. 9։*

*Այս գալիք դատաստանը, առաջինին նման, միևնոյն սկզբունքին վրայ հիմնուած պիտի ըլլայ։ Հնազանդութեան միևնոյն օրէնքն է որ պիտի ներկայացուի, կեանքի միևնոյն վարձատրութեամբ և միևնոյն մահուայ պատիժով։ Եւ ինչպէս որ առաջին փորձը սկիզբ մը, յառաջացում մը և դատավճիռով վերջացում մ'ունէր, նոյնպէս ալ պիտի ըլլայ Երկրորդը։ Դատավճիռը արդարներուն համար կեանք՝ իսկ մեղաւորներուն համար մահ պիտի ըլլայ։ Երկրորդ*

փորձը (դատաստանը) աւելի նպաստաւոր պիտի ըլլայ քան առաջինը, շնորհիւ առաջին փորձին ներքև չահուած փորձառութեանը։ Երկրորդ փորձին (դատաստանին) մէջ ամէն մարդ միմիայն ինքն իր համար պիտի քննուի, և ո՛չ թէ առաջինին նման ուրիշներու համար ալ։ Այն ատեն ո՛չ ոք Ադամական մեղաց և կամ ժառանգական անկատարութեանց պատճառաւ պիտի մեռնի։ Այլևս պիտի չ'ըսեն, «Հայրերը ազոխ կերան ու որդւոցը ակռաները առին, հապա ամէն մարդ իր անօրէնութեանը համար պիտի մեռնի, այն որ ազոխ կ'ուտէ, անոր ակռաները պիտի առնեն»։ «Այն հոգին որ կը մեղանչէ պիտի մեռնի»։ (Եզեկ. ԺԸ. 4։ Երեմ. ԼԱ. 29, 30)։ Եւ այն ատեն աշխարհին համար ալ ճշմարիտ պիտի ըլլայ, ինչպէս որ ներկայիս Եկեղեցիին համար է՝ թէ մարդ մը իր չունեցածին համեմատ պիտի չդատուի, հապա ունեցածին համեմատ։ (Բ. Կորնթ. Ը. 12)։ Քրիստոսի տիրապետութեան ներքև, մարդկութիւնը հետզհետէ պիտի դաստիարակուի, կրթուի և բարեկարգուի, մինչև որ կատարելութեան հասնի։ Ու երբ կատարելութեան հասած են, Աստուծոյ հետ կատարեալ համաձայնութիւն պիտի պահանջուի. ու այն որ այն ժամանակ կը թերանայ կատարեալ հնազանդութեան մէջ՝ պիտի ոչնչանայ, կենաց անարժան համարուելով։ Այն մեղքը որ Ադամի միջոցաւ մարդկութեան վրայ մահ բերաւ, պարզապէս անհնազանդութեան արարք մ'էր. սակայն այդ մէ'կ արարքովը նա իր կատարելութենէն ինկաւ։ Աստուած իրաւունք ունէր անկէ կատարեալ հնազանդութիւն պահանջելու, քանի որ կատարեալ ստեղծուած էր. ու նա միևնոյն բանը ամէն մարդէ պիտի պահանջէ, երբ անոնց Վերահաստատութեան մեծ գործը լրանայ։ Այն ժամանակ ո՛չ ոք պիտի թոյլատրուի

յաւիտենական կեանք ունենալու, որ ամենապզտիկ չափով կը թերանայ կատարելութենէ։ Այն ժամանակ, կատարելութեան համեմատ չընթանալը, կատարեալ լուսոյ և կատարեալ կարողութեան դէմ մեղանչել պիտի նշանակէ։

Ո՛ւէ մէկը որ կատարեալ լուսոյ և կարողութեան դէմ կամաւորապէս կը մեղանչէ, երկրորդ մահուամբ պիտի ոչնչանայ։ Նոյնպէս ալ՝ եթէ այդ փորձի դարաշրջանի տեւողութեանը, և անոր կատարեալ փայլուն լոյսին ներքև, արհամարհէ նուիրուած շնորհները, ու հարիւր տարուայ տեւողութեան դէպի կատարելութիւն ո՛ւէ յառաջդիմութիւն ցոյց չտայ, կենաց անարժան պիտի համարուի ու պիտի «կորսուի», թէև հարիւր տարեկան հասակին մէջ բաղդատմամբ յաւիտենական կենաց, պատանի պիտի նկատուի։ Այսպէս գրուած է այդ օրուայ համար. «Որպէս պատանի մէկը հարիւր տարեկան պիտի մեռնի, ու որպէս մեղաւոր պիտի անիծուի այն՝ որ հարիւր տարեկան կը մեռնի»։ (Ես. ԿԵ. 20—Տե՛ս Leeserի թարգմանութիւնը)։ Այսպէս՝ ուրեմն մէկը առնուազն հարիւր տարուայ փորձի ժամանակ մը պիտի ունենայ. և եթէ յառաջդիմութիւնը մերժելու չափ յամառ ըլլայ, անոր փորձը պիտի շարունակուի Քրիստոսի օրուայ ամբողջ տեւողութեանը, որուն վերջաւորութեանը միայն վերջնական վճիռը պիտի արձակուի։

Աշխարհի գալիք դատաստանի վերջաւորութիւնը որոշ կերպով ցոյց տրուած է ոչխարներու և այծերու առակին մէջ (Մատթ. ԻԵ. 31—46), նաև Յայտ. Ի. 15։ ԻԱ. 8ին և Ա. Կորնթ. ԺԵ. 25ին մէջ։ Ասոնք և ուրիշ համարներ ցոյց կուտան թէ անոր վերջաւորութեան, երկու դասակարգերը կատարելապէս բաժնուած պիտի ըլլան—հնազանդները և անհնա-

զանդները․ անոնք որ Աստուծոյ օրէնաց խօսքին ու ոգւոյն հետ համաձայն են, ու անոնք որ համաձայն չեն։ Առաջինները՝ յաւիտենական կեանքի կը դիմեն, իսկ միւսները՝ կը վերադարձուին դէպի յաւիտենական մահ, ոչնչացում, («Երկրորդ մահ»), առաջին դատաստանի միեւնոյն դատավճիռին, որմէ սակայն Քրիստոսի միջոցաւ ազատուած էին, Որը Իր արեամբը անոնց Փրկագինը վճարելով՝ իրաւունք ստացաւ զանոնք ազատելու։ Ասիկա անոնց երկրորդ մահը պիտի ըլլայ։ Այլեւս անոնց համար փրկանք պիտի չտրուի, որովհետեւ իրենց մեղքը կամաւոր էր ու անհատական, որը կատարեալ լուսոյ եւ պատեհութեան դէմ գործուած էր, ամենանպաստաւոր անհատական փորձի մը ներքեւ։

Ձենք ուզեր որ ուրիշներ մեզ այնպէս ըմբռնեն, իբր թէ մենք կ՚անտեսենք աշխարհի ներկայ պատասխանատուութիւնը, զոր ամէն մարդ ունի, իր վայելած լոյսին համեմատութեամբ, հոգ չէ թէ այդ լոյսը մեծ կամ փոքր է, հոգ չէ թէ անիկա բնութեան եւ կամ յայտնութեան լոյսն է։ «Տիրոջը աչքերը ամէն տեղ չարերը ու բարիները կը դիտեն»։ «Աստուած ամէն գործքը՝ ամէն ծածուկ բաներու հետ՝ թէ՛ բարին եւ թէ՛ չարը դատաստանի պիտի բերէ»։ (Առակ․ ԺԵ․ 3։ Ժողով․ ԺԲ․ 14)։ Ներկայի բարի ու չար գործքերը վարձատրութեան արդար հատուցում մը պիտի ստանան, կա՛մ ներկայիս եւ կա՛մ ապագային։ «Կան մարդիկ՝ որոնց մեղքերը յայտնի են, ու առաջուց դատաստանի հասած, եւ կան որ իրենց ետեւէն կ՚երթան»։ (Ա․ Տիմ․ Ե․ 24)։ Տիրոջը առջեւ չնորհ գտած «Փոքրիկ Հօտէն» ի զատ, ուրիշ ո՛չ ոք բաւականաչափ լոյս ունի վերջնական պատիժին, երկրորդ մահուան ենթարկուելու։ Մենք հոս միայն աշխարհի պատասխանատուութիւն ունենալուն կէտը հաստա-

րակութեան ուշադրութեանը ուզեցինք յանձնել, ա-
նոր մանրամասնութիւնները յառաջիկային ձգելով։

Գրեթէ վեց հազար տարուայ ժամանակաշրջան
մը կայ աշխարհի առաջին և երկրորդ դատաստանի
օրերուն միջև. ու այս երկար ժամանակաշրջանին
Աստուած երկու մասնաւոր դասակարգեր կ'ընտրէ
մարդոց մէջէն, որոնք մասնաւորապէս կը փրկէ, կը
դաստիարակէ ու կը կրթէ, որպէսզի աշխարհի Դա-
տաստանի Օրուայ կամ ժամանակաշրջանի տևողու-
թեանը Իր պաշտօնական գործիքները (միջոցները)
ըլլան։

Այս երկու դասակարգերը որոշ կերպով զանա-
զանուած են Պօղոսի կողմանէ (Եբր. Գ. 5, 6)ին մէջ
որպէս Որդիներու Տունը և Ծառաներու Տունը. ա-
ռաջինը՝ բաղկացած է այն յաղթողներէն, որոնք
ներկայ Քրիստոնէական Տնօրինութեան մէջ փորձ-
ուած ու հաւատարիմ գտնուած են, իսկ վերջինը՝
կազմուած է այն հաւատարիմ յաղթողներէն, որոնք
կանխեցին Քրիստոնէական Տնօրինութիւնը։ Այն եր-
կու շրջանները, որոնց տևողութեանը այս երկու
տարբեր խումբերը կանչուած, փորձուած և ընտրը-
ուած են, երկու տարբեր դատաստանի օրեր են, ո՛չ
թէ աշխարհին՝ այլ միայն այս երկու մասնաւոր դա-
սերուն համար։ Այս երկու դասերէն ամէն անոնք
որ յաջողութեամբ կ'անցնեն իրենց փորձը՝ աշխար-
հին հետ դատաստանի պիտի չգան, հապա իրենց
վարձատրութեանը պիտի տիրանան, երբ որ աշ-
խարհը դատուելու կ'սկսի։ Անոնք աշխարհի օրհնու-
թեան գործին մէջ Աստուծոյ գործակալները պիտի
ըլլան—տալով անոնց այն պիտանի խրատն ու կըր-
թութիւնը, որոնք կարևոր են անոնց վերջնական
փորձին ու դատաստանին համար։ «Չէ՞ք գիտեր որ
սուրբերը պիտի դատեն աշխարհը»։—Ա. Կորնթ. Զ.

2։ Մատթ. ԺԹ. 28։ Սաղմ. ՃԽԹ. 4—9։ Դան. Է. 13, 14, 27։

*Այս կանխաւ դատուած դասերը թէև մնացեալ մարդկութեան նման, անգամ մը Ադամական դատապարտութեան ներքև էին, սակայն հաւատքով բաժանորդ եղան Քրիստոսի մահուան ընծայած բարիքներուն։ Նախ՝ փրկագնին նկատմամբ ունեցած հաւատքովնին արդարացան, ու ապա՝ իրենց վերաբերեալ կոչումներուն յաջորդական պայմանները կատարելով՝ արժանի համարուեցան պատուաւոր և իշխանական դիրքերու մեծ բարձրացման։*

*Այս երկու դասակարգերուն փորձը կամ դատաստանը շատ աւելի խիստ եղած է քան աշխարհի փորձը, որ տեղի պիտի ունենայ իր դատաստանի օրուայ մէջ. որովհետև ասոնք ստիպուած էին պայքարիլ Սատանային՝ այս աշխարհի իշխանին ու անոր բոլոր խորամանկութիւններուն ու նենգութիւններուն դէմ, մինչդեռ աշխարհի դատաստանի օրուայ մէջ Քրիստոս պիտի թագաւորէ, ու Սատանան պիտի կապուի, որպէսզի չմոլորեցնէ ազգերը։ (Յայտ. Ի. 3)։ Ասոնք հալածուած ու նախատուած են արդարութեան համար, մինչդեռ այն ատեն մարդիկ պիտի վարձատրուին արդարութեան համար, ու միայն անօրինութեան համար պիտի պատժուին։ Ասոնք իրենց ճամբուն մէջ մեծ արգելքներ ու թակարդներ ունէին, որոնք սակայն պիտի վերցուին՝ երբ աշխարհին փորձը սկսի։ Բայց թէև այս երկու մասնաւոր խումբերուն քննութիւնները շատ աւելի ծանր եղած են քան ապագայ աշխարհինը, սակայն վարձատրութիւններն ալ համեմատաբար աւելի մեծ են։*

*Մեծ Խաբեբային, Սատանային նենգութիւններուն ներքև թէ՛ աշխարհը և թէ՛ անուանական Եկեղեցին զրկուած են գալիք արդար Դատաստանի ժա-*

մանակուայ երանաւէտ խոստումներէն։ Անոնք գիտեն թէ Աստուածաշունչը դալիք դատաստանի օրուայ մը մասին կը խօսի, բայց վախով ու սոսկումով կը դիտեն զայն, ու այս վախին պատճառաւ, ո՛չ մէկ բան անոնց այնքան անախորժ կը թուի, քան այն լուրը՝ թէ Տիրոջը օրը մօտ է։ Անոնք զայն իրենցմէ խիստ հեռուն կը վանեն, ու չեն ուզեր նոյնիսկ լսել անոր յիշումը։ Անոնք Աստուծոյ՝ աշխարհը արդարութեամբ դատելու համար որոշած դատաստանին՝ Քրիստոսի փառաւոր տիրապետութեան ներքև աշխարհին վերապահուած օրհնութիւններուն նկատմամբ ոչինչ դիտեն։

Դատաստանի Օրուայ մասին մարդկութիւնը ճշմարտութենէն անտեղեակ պահելու համար Սատանային հնարած ամենամեծ կուրացուցիչ ազդեցութիւններուն կը վերաբերին այն մոլորութիւնները, որոնք սպրդած են այլևայլ կրօնական յարանուանութեանց հաւատոյ հանգանակներուն և չարականներուն մէջ։ Շատերու տրամաբանութիւնը այն աստիճան խանգարուած է որ, այս մոլորութիւններուն Ած․ոյ Խօսքէն աւելի մեծ կարևորութիւն կուտան։

Ո՛րքան տարբեր կերպով նկատեցին Մարգարէներն ու Առաքեալները խոստացեալ Դատաստանի Օրը։ Նկատի առէք Դաւիթի ցնծալի մարգարէական արտասանութիւնը (Ա․ Մնացորդաց ԺԶ․ 31—34)։ Նա կ՚ըսէ․—

«Երկինքը թող ուրախանա՛յ,
Ու Երկիրը ցնծայ․
Եւ ազգերուն մէջ թող ըսեն թէ Տէրը կը թագաւորէ։
Ծովը իր լիութեամբը թող գոռայ,
Դաշտը ու բոլոր անոր մէջը եղողները թող ուրախանան։

*Ան առնէր անտառին ծառերը Տիրոջը առջեւը ցնծան,*
*ՔԱՆԶԻ ԵՐԿՐԻՆ ԴԱՏԱՍՏԱՆ ԸՆԵԼՈՒ ԿՈՒԳԱՅ ։*
*Գոհացէ՛ք Տիրոջմէն, ինչու որ բարի է,*
*Ինչ՜ու որ Անոր ողորմութիւնը յաւիտեան է»։*

*Միեւնոյն օրուանը կ'ակնարկէ նաեւ Առաքեալը, վստահացնելով մեզ թէ անիկա փառաւոր ու բաղձալի օր մը պիտի ըլլայ, եւ թէ անոր համար ամէն ստեղծուածները մինչեւ հիմա մէկտեղ կը հառաչեն ու ծնանելու ցաւ կը քաշեն—Մեծ Թագաւորին սպասելով, Որը պիտի ազատէ ու օրհնէ աշխարհը, նոյնպէս բարձրացնէ ու փառաւորէ Եկեղեցին ։—Հռովմ. Ը. 21, 22 ։*

*Յովհ. Ե. 28, 29ին մէջ աշխարհին յաւիտենական կենաց համար տրուած* Դատաստանի—քննութեան *խոստումը, սխալ թարգմանութեան պատճառաւ սոսկալի նզովքի մը փոխուած է ։ Ըստ Յունարէն Բնագրին, անոնք որ չար գործեր են—որոնք անարժան գտնուեր են Աստուածային Գնահատման—դուրս պիտի գան դատաստաններով «ծեծ»ով, խը'րատներով, Յարութեան (կատարելութեան բարձրանալու) համար ։ Նոյնիսկ Հայերէնի գրաբար եւ աշխարհաբար թարգմանութիւնները այս կէտին մէջ իրարմէ կը տարբերին. գրաբարը՝ «ի յարութիւն* դատաստանաց» *կ'ըսէ, իսկ աշխարհաբարը՝ «Դա-*տապարտութեան *յարութեան համար»։ Մինչդեռ ամէն ոք գիտէ եւ կամ գիտնալու է, թէ դատաստան եւ դատապարտութիւն իրարմէ խիստ կը տարբերին նշանակութեամբ ։*

## ԻՄ ՆՈՒԷՐՍ

«Քեզ կը մատուցանեմ.
Ամէն տրոփ սրտիս՝ Քուկդ են,
Ամէն կապերն՝ մարմնեղէն,
Ամէն խայտանք ու ամէն ցաւ,
Ամէն մըտքի վսեմ խորհուրդ.
Աստուա՛ծս օրհնեալ:

Ամէն յոյս և ամէն վախ,
Ամէն ժպիտ ու ամէն արցունք,
Ամէն տաղ ու ամէն օրհներգ.
Ներբողելի՛դ Դու:

«Ա՛ռ զանոնք բոլոր, Տէրդ իմ օրհնեալ,
Կապէ՛ զանոնք կապերովդ գաղանի.
Փառաւորէ՛ զՔեզ իմ մէջ,
Պաշտելի՛դ իմ:

Խօսքովդ բազմացո՛ւր զանոնք,
Զօրացո՛ւր, օրհնէ՛, աճեցո՛ւր, իմ Տէրս,
Կատարեալ սիրով.
Դո՛ւն Ալֆա և Օմէղան:

# ԳԼՈՒԽ Թ.

## ՓՐԿԱՆՔ ԵՒ ՎԵՐԱՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ

Վերահաստատութիւնը Երաշխաւորուած է Փրկանքին միջոցաւ.—Փրկանքով ո՛չ թէ Յաւիտենական կեանք՝ այլ առոր Տիրացման համար Փորձ մը, Պատեհութիւն մը Միայն Ապահովուած է.—Փորձին Պայմանները ու Բարիքները.—Քրիստոսի Զոհաբերութեան Անհրաժեշտութիւնը.—Ի՞նչպէս Կարելի է մէկ Անձի մը Մահովը Ցեղը Փրկել, և այդ ի՞նչպէս Տեղի Ունեցաւ.—Հաւատք ու Գործ Տակաւին Անհրաժեշտ են.—Կամաւոր Մեղաց Վարձքը Բացայայտ է.—Յարուցուած Միլիոնաւոր Մարդոց Համար միթէ Տեղ պիտի Գտնուի՞ Երկրի վրայ.—Վերահաստատութիւնը Բարեըրջութեան կը Հակառէ:

*ԱՍՏՈՒԾՈՑ յայտնած Ծրագրին ընդհանուր երևոյթէն, ինչպէս որ մինչև Հիմա ուրուագծեցինք, կը տեսնուի որ մարդկութեան Համար Իր Նպատակը Վերահաստատութիւն մը կամ Վերանորոգութիւն մ'է այն կատարելութեան և փառքին՝ որոնք կորսուեցան Եդեմի մէջ: Այս Նիւթը շատ աւելի զօրաւոր ու գոհացուցիչ կերպով կարելի է ըմբռնել, երբոր Փրկանքին ծաւալին և բնոյթին մասին որոշ գաղափար մը առած ենք: Այն Վերահաստատութիւնը՝ որուն մասին Նախաձայնած են առաքեալներն*

*ու մարգարէները*, պէտք է որ *փրկանքին* հետևի, *իբրև անոր* օրինաւոր և բանաւոր շարունակութիւնը: *Ըստ Աստուծոյ փրկանք մը հայթայթելու կարգադրութեանը, բոլոր մարդկութիւնը, բացի անոնցմէ որոնք կամաւորապէս կ'ընդդիմանան Մեծ Ազատարարին փրկող զօրութեանը, պէտք է որ սկզբնական պատիժէն՝ «ապականութեան լուծէն», մահէն ազատուի, եթէ ո՛չ փրկանքը բոլորին ալ չի նպաստեր:*

*Այս խնդրոյն շուրջ Ս. Պօղոսի ըրած խորհրդածութիւնը խիստ պարզ ու բացայայտ է. նա կ'ըսէ (Հռովմ. ԺԴ. 9), «Վասնզի Քրիստոս ալ անոր համար մեռաւ ու յարութիւն առաւ և նորէն ապրեցաւ՝ որ մեռելներուն և կենդանիներուն իշխէ»: *Այսինքն թէ՝ մեր Տիրոջ մահուան և յարութեան նպատակը պարզապէս կենդանիներուն վրայ միայն իշխել, զանոնք օրհնել և վերանորոգել չէր, հապա նաև իր բացարձակ իշխանութիւնը մեռելոց վրայ ալ տարածել՝ և իր փրկագործութեան օրհնութիւնները բո-*

---

* Պաշտպանելով հանդերձ վերոյիշեալ յայտարարութեան նշանակութիւնը՝ թէ մեր Տէրը իր մահուամբը ամբողջ մարդկային ընտանիքին Տէրը կամ իշխանը դարձաւ, մենք Առաքեալին խօսքերուն մէջ աւելի խոր իմաստ մը կը նշմարենք. այսինքն թէ՝ «մեռելները» ասացուածքով մարդկային ամբողջ ընտանիքն էր որ կ'ակնարկէր: Մահուան դատապարտութեան տակ եղած ամբողջ մարդկութիւնը՝ Աստուծոյ տեսակէտով իբրև մեռած կը հաշուըուի (Մատթ. Ը; 22): որով՝ «կենդանիները» բառը մարդկային ընտանիքէն դուրսը գտնուողներուն պէտք է վերաբերի, որոնց կեանքերը կորսուած չեն —հրեշտակներուն:

լորին ալ հաւասարապէս բաշխել էր։ Նա «Ինքզինքը իբրև փրկանք (իբրև համապատասխան գին) տուաւ բոլորին համար», որպէսզի կարենայ բոլորն ալ օրհնել, և իւրաքանչիւր մարդու՝ կեանքի տիրանալու անհատական փորձ մը—պատեհութիւն մը—շնորհել։ Ըսել՝ թէ Նա Ինքզինքը «ամէնուն համար Փըրկանք» տուաւ, և միւս կողմէն ալ աւելցնել՝ թէ փըրկուածներէն պարզապէս ափ մը ժողովուրդ միայն պիտի օգտուի անկէ, անհեթեթութեան մատնուիլ կը նշանակէ. ինչու որ ասիկա այն եզրակացութեան պիտի տանէր մեզ թէ՝ կ'ամ Աստուած Փրկանքը ընդունելէն յետոյ անիրաւօրէն մերժեց փրկուածներուն ազատութեան շնորհը, կա՛մ թէ՝ բոլորը փրկուելէն յետոյ՝ Տէրը կա՛մ անկարող էր և կա՛մ անբարեհաճ, Իր սկզբնական մարդասիրական նպատակները յառաջ տանելուն մէջ։ Աստուծոյ Ծրագիրներուն անփոփոխելիութիւնը, և Անոր Արդարութեան ու Սիրոյն կատարելութիւնը կը հակասեն ու կը մերժեն այսօրինակ մտածումները, ու կ'ապահովցնեն մեզ թէ՝ այն սկզբնական մարդասիրական Ծրագիրը, որուն հիմը «ամէնուն համար տրուած փրկանք»ն էր, ամբողջապէս պիտի իրականանայ Աստուծոյ «որոշեալ ժամանակ»ին մէջ. թէ՝ անիկա բոլոր անկեղծ հաւատացեալներուն Ադամական դատապարտութենէն ձերբազատուելու օրհնութիւնը և պատեհութիւնը պիտի ընծայէ, վերադառնալու Աստուածորդւոց իրաւունքներուն և ազատութիւններուն, այն ամէն բաներուն՝ որոնք գոյութիւն ունէին մեղքէն ու անէծքէն առաջ։

Երբոր Փրկանքին իրական բարիքներն ու արդիւնքները որոշապէս կը տեսնուին, անոր ընդհանուր աշխարհին համար գործածութեան դէմ եղած առարկութիւններն ալ պիտի դադրին։ «Յիսուս Քրիստոս

մարդ»էն «ամենուն համար տրուած փրկանքը» ո՛ևէ մարդու յաւիտենական կեանք կամ օրհնութիւն չ՚ընծայեր կամ երաշխաւորեր, հապա՝ յաւիտենական կենաց տիրանալու ուրիշ պատեհութիւն մը կամ փորձ մը: Մարդուն առաջին դատաստանը կամ փորձը, որը վերջացաւ առաջուց շնորհուած օրհնութիւններուն կորուստովը, Աստուծոյ հայթայթած Փրկանքին շնորհիւ, բոլոր ուղիղ սրտի տէր անհատներուն համար օրհնեալ փորձառութեան մը վերածուած է: Բայց այն իրողութիւնը թէ մարդիկ փրկուած են առաջին պատիժէն, երաշխաւորութիւն մը չէ՝ թէ երբոր յաւիտենական կենաց տիրանալու անհատական փորձը ստանան՝ անոնք պիտի չկրնան թերանալ իրենց հնազանդութեան մէջ, առանց որուն (հնազանդութեան), ո՛չ ոք պիտի թոյլատրուի յաւիտենապէս ապրելու:

Մարդը՝ մեղքին ու անոր դառն պատիժին հետ ունեցած ներկայ փորձառութեամբը լաւ մը խրատուած պիտի ըլլայ, և երբ Փրկանքին պատճառաւ իրեն շնորհուած է ուրիշ՝ անհատական փորձ մը, Անոր հսկողութեան ներքև որ Իր կեանքը տուաւ իրեն սիրոյն՝ որով չի փափաքիր որ ո՛ևէ մէկը կորսուի, այլ Աստուծոյ դառնայ ու ապրի՝ կրնանք վըստահ ըլլալ թէ միմիայն կամաւոր և կամակոր անհնազանդներն են որ այդ երկրորդ դատաստանին կամ փորձին մէջ պատիժ պիտի ստանան: Եւ անոնց պատիժը պիտի ըլլայ Երկրորդ Մահը, ուրկէ ա՛լ փըրկութիւն, ազատութիւն պիտի չըլլայ, ինչու որ փըրկանքի կամ փորձի պէտք մնացած պիտի չըլլայ: Բոլորն ալ կատարելապէս տեսած ու ճաշակած պիտի ըլլան թէ՛ բարին և թէ՛ չարը. բոլորն ալ նշմարած պիտի ըլլան Աստուծոյ բարութիւնն ու սէրը և ծանօթացած անոնց հետ. բոլորն ալ՝ ամենանպաստա-

ւոր պայմաններու ներքեւ, կենաց տիրանալու կատարեալ՝ բարւոք՝ անհատական փորձ մը ունեցած պիտի ըլլան։ Անկէ ալ աւելին չի՛ կրնար պահանջուիլ՝ եւ ո՛չ ալ աւելին պիտի տրուի։ Այդ փորձը կամ դատաստանը, վերջնականապէս պիտի վճռէ՝ թէ ո՞վ արդար եւ սուրբ պիտի մնայ եթէ նոյնիսկ հազար անգամներ ալ փորձուի, եւ թէ՝ ո՞վ նոյնչափ փորձերուն մէջ իսկ անսուրբ եւ կեղտոտ պիտի շարունակէ մնալ։

Բոլորովին անօգուտ ու անպէտ բան մը պիտի ըլլար, եթէ ճիշդ միեւնոյն պարագաներուն ներքեւ կենաց տիրանալու ուրիշ փորձ մը եւս շնորհուէր։ Իրաւ է թէ այն փորձի ենթարկուածներուն պարագաները Ադամի ունեցածներէն պիտի տարբերին, աւելի նըպաստաւոր պիտի ըլլան, սակայն յաւիտենական կենաց տիրանալու իրենց անհատական փորձին՝ դատաստանին պայմանները միեւնոյնը պիտի մնան։ Աստուծոյ Օրէնքը միշտ նոյնը պիտի մնայ—ան անփոփոխ է. որ կրկին պիտի յայտարարէ՝ «Այն հոգին որ կը մեղանչէ՝ անիկա պիտի մեռնի». միջավայրի այն վիճակը որուն մէջ պիտի ըլլան մարդիկ՝ Եդեմէն աւելի նպաստաւոր պիտի ըլլայ, բայց մեծագոյն տարբերութիւնը պիտի կայանայ առաւելագոյն գիտութեան մէջ։ Զարին նկատմամբ ստացուած փորձառութիւնը բաղդատելով բարիին հետ, որուն պիտի հասնին գալիք դարու փորձին ժամանակ՝ առաւելութիւն մը պիտի կազմէ. որուն պատճառաւ երկրորդ փորձին արդիւնքները առաջիննէն մեծապէս պիտի տարբերին. եւ ատոր համար էր որ Աստուածային Իմաստութիւնն ու Սէրը «ամէնուն համար փրկանք» մը հայթայթած՝ եւ ամենուն համար ալ նոր փորձի մը օրհնութիւնը երաշխաւորած են։ Եթէ Հազարամեայ Դարէն յետոյ ուրիշ փրկանք մը կամ փորձ

մը տրուելու պէտքը զգացուէր, անկարելի պիտի ըլլար անոնցմէ ա՛լ աւելի նպաստաւորը շնորհել, տըրուածէն ա՛լ աւելի նպաստաւոր օրէնք մը, փորձ մը, պայմաններ կամ պարագաներ ստեղծել:

Տրուած Փրկանքը ո՛և է մէկը իր մեղքերէն չ'արդարացներ. և անոր նպատակը չէ մեղաւորները սուրբեր հաշուել՝ ու այդպէսով յաւիտենական երջանկութեան առաջնորդել. այդ Փրկանքը ընդունող մեղաւորը պարզապէս Ադամական դատապարտութենէն և անոր ուղղակի թէ անուղղակի հետևանքներէն է որ պիտի ազատի, և կրկին պատրաստ ըլլայ կեանքի տիրանալու փորձին, որուն մէջ իր ցուցադրած կամաւոր հնազանդութեամբն է որ պիտի վճռուի յաւիտենական կենաց արժանի կամ անարժան ըլլալը:

Պէտք չէ ենթադրել, ինչպէս որ ոմանք հակամէտ են ընելու՝ թէ ամէն անոնք որ քաղաքակիրթ միջավայրի մը մէջ կ'ապրին, և Ս. Գիրք մը կը տեսնեն կամ ունին, այդպէսով կենաց կատարեալ պատեհութիւն մը կամ փորձ մը ունեցած կ'ըլլան: Պէտք է յիշենք թէ Ադամի անկումը իր զաւակաց բոլորին վրայ ալ միևնոյն չափով ազդած չէ: Ոմանք ա՛յնքան տկար ու ինկած վիճակի մէջ աշխարհ եկած են, որ ենթակայ են այս աշխարհի աստուծմէն, Սատանայէն հեշտօրէն կուրանալու և իրենց շրջապատի ու միջավայրի մեղաց գերիներն ըլլալու. և արդէն բոլորն ալ քիչ թէ շատ այդ ազդեցութեան ներքև են. այնպէս որ՝ երբ նոյնիսկ կը փափաքին բարին գործել՝ չարը ներկայ է, և աւելի ազդեցիկ՝ շրջապատող պարագաներու և այլնի պատճառաւ. ու այն բարին զոր կը ցանկան կատարել՝ դրեթէ անկարելիութիւն մ'է. մինչդեռ չարը՝ զոր կ'ատեն՝ շատ անգամներ անկարող են անկէ խուսափիլ:

Արդարև, աննշան թիւ մը միայն կը կազմեն անոնք, որոնք ներկայ ժամանակուայ մէջ ճշմարտապէս և փորձառաբար գիտակցութեան կուգան այն ազատութեանը, զոր Քրիստոս կը շնորհէ Իր Փրկագործութիւնը ընդունողներուն, և ապագայ առաջնորդութեան համար իրենք զիրենք Անոր իշխանութեան ենթարկողներուն: Սակայն այս փոքրամասնութիւնը Եկեղեցին է միայն—որը առաջուց հրաւիրուած է ու կը դատուի մասնաւոր նպատակի մը համար, աշխարհի օրհնութեան գործին մէջ Աստուծոյ աշխատակիցները ըլլալու, որ իր մարտիրոսութեամբը կը վկայէ ներկայիս, ու կը պատրաստուի իշխելու, օրհնելու և դատելու աշխարհը իր դատաստանի (քննութեան) Դարուն մէջ—որ ո՛ևէ չափով կը վայելէ Փրկանքին օրհնութիւնները և կամ Ներկայիս կենաց դատաստանի մէջ է: Այս փոքրամասնութեան տրուած կը սեպուի (և իրենք ալ հաւատքով կ'ընդունին), Վերահաստատութեան այն բոլոր օրհնութիւնները, որոնք աշխարհին պիտի մատակարարուին Գալիք Դարու տևողութեանը: Թէև ասոնք կատարելապէս և իրապէս Ադամի նախնական վիճակին մէջ հաստատուած չեն, բայց այն վերաբերմունքը որ կը ցուցադրուի իրենց հանդէպ՝ այդ պակասը լիովին կը հակակշռէ: Քրիստոսի վրայ իրենց ունեցած հաւատքին պատճառաւ կատարեալ կը համարուին, ու այսպէս իբրև արդարներ՝ կատարելութեան և Աստուածային շնորհին մէջ վերահաստատուած են: Իրենց անկատարութիւններն ու անխուսափելի տկարութիւնները Փրկանքին միջոցաւ հակակշռուած ըլլալով՝ այլևս իրենց վերագրելի չեն, հապա Փրկչին կատարելութեամբը քօղարկուած են: Հետևաբար, Քրիստոսէ վերագրուած դիրքին պատճառաւ, Եկեղեցիին դատաստանը ա՛յնքան բարւոք է՝ որքան

որ աշխարհինը պիտի ըլլայ իր դատաստանին ժամանակ։ Ամբողջ աշխարհը ճշմարտութեան լիուլի գիտութեան պիտի բերուի, ու ամէն մէկը որ կ՚ընդունի այն ժամանակուայ հոգածութիւններն ու պայմանները, այլեւս ո՛չ թէ իբրեւ մեղաւոր մը պիտի նկատուի, այլ որպէս որդի մը. որուն համար պատրաստուած են Վերահաստատութեան բոլոր օրհնութիւնները։

Դատաստանի ենթարկուած աշխարհին ու Եկեղեցիին փորձառութեանց միջեւ գտնուած տարբերութիւններէն մէկը այն պիտի ըլլայ՝ որ աշխարհի մարդկութեան հնազանդները պիտի սկսին անմիջապէս Վերահաստատութեան օրհնութիւնները վայելել, իրենց իմացական եւ ֆիզիքական տկարութեանց աստիճանական բարձումովը. մինչդեռ, Աւետարանական Եկեղեցին, մինչեւ ի մահ Քրիստոսի ծառայութեան նուիրուած՝ դէպի մահ կը դիմէ, եւ առաջին յարութեամբ վայրկենական կատարելութեան կը տիրանայ։ Ուրիշ տարբերութիւն մ՚ալ որ գոյութիւն ունի այս երկու դատաստաններուն մէջ, այն է թէ՝ գալիք Դարու մէջ ներկայինէն աւելի նպաստաւոր միջավայր մը գոյութիւն պիտի ունենայ՝ ինչու որ այն ատենուան մարդկային ընկերական կազմը, կառավարութիւնը եւն., ձեռնտու պիտի ըլլան արդարութեան, երբ հաւատքն ու հնազանդութիւնը վարձատրութեան պիտի արժանանան, իսկ մեղքը՝ պատիժի. մինչդեռ ներկայիս, այս աշխարհի իշխանին տիրապետութեան ներքեւ, Եկեղեցիին դատաստանը այնպիսի պարագաներու տակ յառաջ կ՚երթայ, որոնք աննպաստ են արդարութեան, հաւատքի եւն.։ Բայց ինչպէս որ տեսանք, ասիկա պիտի փոխարինուի Եկեղեցիին ընծայուած Աստուածային բնութեան

Փառաց ու պատուոյ մրցանակովը, բացի յաւիտենական կենաց պարգեւէն:

Ադամի մահը ստոյգ էր՝ թէեւ անոր գործադրութիւնը աստիճանաբար տեղի ունեցաւ 930 տարուայ ընթացքին. Եւ քանի որ նա ինքնին այլեւս մեռնող էակ մ'էր, իր բոլոր որդիներն ալ միեւնոյն մեռնող վիճակին մէջ՝ առանց ապրելու իրաւունքի ծնան. Եւ իրենց ծնողաց պէս՝ անոնք բոլորն ալ կը մեռնին, ուշ կամ կանուխ: Պէտք է յիշենք սակայն, թէ մեղքին պատիժը մահուան ընթացքին մէջ տեղի ունեցած ցաւերն ու տառապանքները չեն, հապա մահը— կեանքէ ընչուիլը—որը մեռնելու ընթացքին վերջակէտն է: Տառապանքը պատահական բան մ'է միայն. եւ պատիժը, շատերուն վրայ փոքրիկ տառապանքով մը կամ առանց տառապանքի կուգայ: Դարձեալ պէտք է յիշենք, թէ երբ Ադամ իր կեանքը կորսընցուց, այդ կորուստը անդառնալի էր. Եւ իր սերունդէն եւ ո՛չ մէկը կարող եղած է մինչեւ հիմա քաւել անոր մեղքը, կամ վերաշահիլ կորսուած ժառանգութիւնը: Մարդկային ամբողջ ցեղը կ'ամ մեռած եւ կա՛մ մեռնելու վիճակին մէջ է: Եւ եթէ իրենք անկարող են մահուընէ առաջ քաւել իրենց մեղքը, անշուշտ եւ ո՛չ ալ կրնան իրենց մահուան վիճակին մէջ —երբ այլեւս գոյութիւն ունենալէ դադրած են: Մեղաց պատիժը պարզապէս մեռնիլ եւ վերջն ալ վերակենդանանալու շնորհն ու իրաւունքը ունենալ չէր: Յայտարարուած պատիժին մէջ ազատութեան ո'եւէ ակնարկութիւն չկար: (Ծննդ. Բ. 17): Ուրեմն Վերահաստատութիւնը ձրի ողորմութեան եւ կամ շնորհի գործ մ'է Աստուծոյ կողմէ: Նոյնիսկ պատիժին արտասանուած ատեն, այն պահուն երբ դատապարտութեան տակ եկաւ Ադամ՝ Աստուծոյ ձրի շնորհին

նկատմամբ արտայայտութիւն մը կար, որը երբ իրականանայ՝ խիստ կատարելապէս ի յայտ պիտի բերէ Անոր Սէրը։

Եթէ չըլլար Տիրոջը յայտարարութեամբ ընծայուած յուսոյ նշոյլը, թէ կնոջ սերունդը օձին գլուխը պիտի ճզմէ, մարդկային ցեղը յետին յուսահատութեան մատնուած պիտի ըլլար. սակայն, այս խոստումը կը ցուցնէ թէ Աստուած մարդկութեան ի նպաստ Ծրագիր մը ունի։ Երբ Աստուած Աբրահամի երդում ըրաւ, թէ իր սերունդովը աշխարհի բոլոր ազգերը պիտի օրհնուին, ըսել ուզեց թէ ամէնուն համար Վերահաստատութիւն մը կամ յարութիւն մը տեղի պիտի ունենայ. ինչու որ արդէն շատեր այն ատեն մեռած էին և անկէց ի վեր շատեր ալ կը մեռնին, առանց օրհնուած ըլլալու։ Սակայն և այնպէս, տրուած խոստումը ապահով է. բոլորն ալ պիտի օրհնուին, երբոր Վերահաստատութեան կամ Վերանորոգութեան ժամանակները գան։ (Գործ. Գ. 19)։ Աւելի ևս, քանի որ օրհնութիւնը շնորհի նշան է, և քանի որ Աստուծոյ շնորհը գլացուած էր եւ նզովքը յաջորդած՝ մեղքին պատճառաւ, ուրեմն ապագայի օրհնութեան այս խոստումը՝ կը մատնանշէ նզովքին բարձումը, ու հետևաբար, Անոր շնորհաց վերադառնալը։ Ասիկա նաև այն գաղափարը կուտայ թէ՝ կա՛մ Աստուած պիտի մեղմանա՛յ՝ փոխէ Իր դատավճիռը ու մաքրէ ցեղը, և կա՛մ թէ՝ Նա որոշ Ծրագիր մը ունի, որով կարող պիտի ըլլայ փրկել մարդկութիւնը, անոր պատիժը ուրիշի մը կրել տալով։

Աստուած Աբրահամը անստուգութեան մէջ չը ձգեց Իր Ծրագրին նկատմամբ՝ հապա այլևայլ այլաբանական զոհագործութիւններով՝ որոնք բոլոր Իրեն մերձեցողները պարտ էին բերել, ցուցադրեց,

*թէ Ինք կարող չէր մեղմանալու, ու չմեղմացաւ, և ո՛չ ալ մեղքը արդարացուց. Թէ՝ զայն սրբելու և պատիժը վերցնելու միակ միջոցը, տուգանքը վճարող զոհագործութեան մը բաւարարութիւնը պիտի ըլլար: Ասիկա ցոյց տրուեցաւ Աբրահամին խիստ խորհրդաւոր օրինակով մը: Աբրահամի որդին՝ որուն վրայ կեդրոնացած էր խոստացուած օրհնութիւնը, պէտք է նախապէս զոհուէր, ուրիշները կարենալ օրհնելէ առաջ. և Աբրահամ զայն մահուընէ ետ ստացաւ այլաբանօրէն: (Եբր. ԺԱ. 19): Այդ պատկերին մէջ՝ Իսահակ ներկայացուց ճշմարիտ Սերունդը, Յիսուս Քրիստոսը, որ մարդոց փրկութեան համար մեռաւ, որպէսզի բոլոր փրկուածները կարող ըլլան խոստացեալ օրհնութիւնները ստանալ: Եթէ Աբրահամ խորհէր թէ Տէրը պիտի արդարացնէ ու սրբէ մեղաւորը, պիտի զգար թէ Աստուած փոփոխամիտ է, և որով իրեն տրուած խոստմանը կատարեալ հաւատք պիտի չկրնար ընծայել: Նա պիտի կրնար պատճառաբանել թէ՝ Եթէ Աստուած մէկ անգամ փոփոխամիտ գտնուեցաւ՝ ի՞նչ ապացոյց պիտի կրնամ ունենալ թէ կրկին չպիտի փոխուի. եթէ Նա մեղմանայ մահուան անէծքին նկատմամբ, միթէ կարելի պիտի չըլլա՞յ որ թուլնայ Իր խոստացած շնորհին և օրհնութեան նկատմամբ ալ: Բայց Աստուած այսօրինակ անստուգութեանց չի մատներ մեզ: Անիկա լիառատ ապացոյց կ'ընծայէ Իր արդարութիւնն ու անփոփոխելիութիւնը հաստատող: Նա չկրցաւ սրբել մեղաւորը. թէև զայն ա՛յնքան սիրեց որ «Իր Որդին չխնայեց, հապա մեր ամէնուն համար (մահուան) մատնեց զԱնիկա»:*

*Ինչպէս որ Ադամ դատապարտուած ժամանակ իր մէջ կը պարունակէր ապագայ ամբողջ ցեղը, և որը իր պատճառաւ կենաց իրաւունքէն զրկուեցաւ, այսպէս ալ՝ երբ Յիսուս Քրիստոս մարդը Ինքզինքը*

բոլորին համար՝ իբրև Փրկագին տուաւ, Իր երանքին մէջ ալ մեռաւ նոյնպէս կարելի սերունդ մը, ու այսպէսով՝ ամէն մարդու համար՝ Արդարութեան կատարեալ գոհացում մը կամ համապատասխան Փրկագին մը տրուեցաւ—«Որոշեալ ժամանակին» գործածուելու համար. և նա՝ որ այս կերպով բոլորը զննեց, կատարեալ իշխանութիւն ունի վերանորոգելու և վերակենդանացնելու ամէն անոնք, որոնք Իր միջոցաւ Աստուծոյ կը մերձենան։

«Ինչպէս որ մէկուն յանցանքովը բոլոր մարդոց դատապարտութեան վճիռ եղաւ, այնպէս ալ մէկուն արդարութեամբը բոլոր մարդոց կենաց արդարութեան շնորհ եղաւ։ Վասնզի, ինչպէս որ մէկուն անհնազանդութեամբը շատերը մեղաւոր եղան, այնպէս ալ մէկուն հնազանդութեամբը շատերը արդար պիտի ըլլան»։ (Հռովմ. Ե. 18, 19)։ Վերոյիշեալ խօսքերը բաւական դիւրահասկնալի են. Թէ ամէն անոնք, որոնք Ադամի մեղաց պատճառաւ մահուան ենթարկուեցան, Տէրն մեր Յիսուսէն ալ կեանքի տիրանալու պատեհութիւններ պիտի ստանան, Որը արդարութեան վճարեց անոնց տուգանքը՝ օրինազանց Ադամին տեղը դնելով Իր անձը, և այսպէսով «Ինքզինքը ամէնուն համար իբրև Փրկանք տուաւ»։ «Արդարը (Յիսուս)՝ անարդարներուն համար (մեռաւ), որպէսզի կարենայ մեզ Աստուծոյ մօտեցնել»։ (Ա. Պետ. Գ. 18)։ Սակայն և այնպէս, երբե՛ք պէտք չէ անտեսել՝ թէ մարդկային ցեղին համար Աստուծոյ ըրած կարգադրութեանց համաձայն, որպէսզի մարդիկ կարենան ա՛յնքան լիառատօրէն հայթայթուած շնորհաց տիրանալ, պէտք է որ իրենց կամքը ի գործ դնեն։ Ոմանք կ՚անտեսեն այս կէտը, երբ վերոյիշեալ (Հռովմ. Ե. 18, 19) համարները ուսումնասիրութեան կ՚ենթարկեն։ Ա-

առջեւալը կը յայտարարէ թէ՝ ինչպէս որ դատապարտութեան վճիռը Ադամի ամբողջ սերունդին վրայ տարածուեցաւ, այնպէս ալ Տէրն մեր Յիսուս Քրիստոսի՝ Հօրը Ծրագրին նկատմամբ ցոյց տուած հնազանդութեամբը, և մեզ համար կատարած անձնազոհութեան շնորհիւ՝ ձրի պարգև մ'է որ կը շնորհուի բոլորին ալ—ներողութեան պարգև մը, որը երբ ընդունուելու ըլլայ՝ յաւիտենական կենաց տիրանալու արդարացում մը կամ հիմ մը պիտի գոյացընէ։ Եւ «ինչպէս որ մէկ մարդուն անհնազանդութեամբը շատերը մեղաւոր եղան, այնպէս ալ մէկուն հնազանդութեամբը շատերը արդար պիտի ըլլան», (և ո՛չ թէ եղան)։ Եթէ առանց մեր ընդունելուն՝ պարզ Փրկագինը մեզ արդարացուց, այն ժամանակ պէտք էր որ կարդացուէր՝ թէ մէկուն հնազանդութեամբը շատերը արդար եղան։ Սակայն, թէև Փրկիչը Փրկանքը վճարած և Եհովան ալ ընդունած է զայն, բայց Աւետարանական Դարուն մէջ փոքրամասնութիւն մը միայն արդարացած է «Անոր արեան հաւատքովը»։ Քանի որ Քրիստոս ամբողջ աշխարհի մեղքերուն «քաւութիւն»ն (հատուցումն) է, ուրեմն Նոր Ուխտին ներքև ամէն մարդ կրնայ ազատ արձակուիլ Ադամական դատապարտութենէն, Անոր միջոցաւ։

Աստուծոյ մէջ անարդարութիւն ըսուած բանը գոյութիւն չունի· և «եթէ խոստովանինք մեղքերնիս, հաւատարիմ ու արդար է Անիկա մեր մեղքերուն թողութիւն տալու և մեզ բոլոր անիրաւութենէ մաքրելու»։ (Ա. Յովհ. Ա. 9)։ Ինչպէս որ անարդարութիւն մը պիտի ըլլար Անոր համար, եթէ թողուր որ գոհացում տրուելէն առաջ յայտարարուած պատիժէն խոյս տայինք՝ հոս մեզի կ'ուզէ հասկցնել թէ՝ նոյնպէս ալ Անարդարութիւն մը պիտի ըլլար, եթէ մեր

Վերահաստատութեան արգելք հանդիսանար, քանի որ Իր իսկ կարգադրութեամբը մեր պատիժը ուրիշ մը կրած է մեզի համար։ Այն միևնոյն անմոլոր արդարութիւնը, որ ժամանակ մը մարդը մահուան դատապարտեց՝ ներկայիս իբրև երաշխաւոր կը կանգնի բոլոր անոնց համար, որոնք խոստովանելով իրենց մեղքերը, Քրիստոսի միջոցաւ կեանք կը խնդրեն։ «Աստուած է որ կ՚արդարացնէ. ուրեմն ո՞վ է որ կը դատապարտէ. Քրիստոս է որ մեռաւ, մանաւանդ թէ յարութիւն առաւ, ու Աստուծոյ աջ կողմն է և բարեխօսութիւն կ՚ընէ մեզ համար»։— Հռովմ. Ը. 33, 34։

Փրկանքին կատարելութիւնը ամենազօրաւոր փաստն է՝ թէ Վերահաստատութիւն մը պիտի ըլլայ բովանդակ մարդկութեան այն բոլոր անդամներուն, որոնք պիտի ընդունին զայն իր առաջադրած պայմաններովը։ (Յայտ. ԻԲ. 17)։ Աստուծոյ արդար ու պատուախնդիր նկարագիրը այս բանին իբրև ապահով երաշխիք կը կենայ. Իր ըրած ամէն մէկ խոստումները այդ բանին է որ կ՚ակնարկեն. և այլաբանական ամէն մէկ զոհագործութիւն, իրմէ վերջը գալիք աւելի մեծ ու բաւարար զոհագործութիւնը կը մատնանշէր—«Աստուծոյ Գառը, որ ԱՇԽԱՐՀԻ ՄԵՂՔԸ կը վերցնէ—« Անիկա մեր՝ (Եկեղեցիին) մեղքերուն քաւութիւնն (հատուցումն) է. ու ո՛չ միայն մերիններուն՝ հապա բոլոր աշխարհին ալ»։ (Յովհ. Ա. 29։ Ա. Յովհ. Բ. 2)։ Եւ քանի որ մեղաց պատիժը կամ վարձքը մահ է, հետևաբար, երբոր մեղքը ջնջուած է, պէտք է որ իր վարձքն ալ վերջանայ։ Ասկէ տարբեր ո՛և է տեսութիւն ունենալը անտրամաբանական և անարդար պիտի ըլլար։ Այն իրողութիւնը թէ մինչև հիմա Ադամական կորուստէն ո՛և է վերադարձ տեղի ունեցած չէ, թէև մեր

Տիրոջ մեռնելէն յետոյ մօտաւորապէս երկու հազար տարիներ անցած են, ապացոյց մը չէ թէ Վերահաստատութիւն մը տեղի պիտի չունենայ. ինչպէս որ Անոր մահուընէ առաջ բոլորած չորս հազար տարիները ապացոյց մը չէին՝ թէ Աստուած փրկութիւնը աշխարհի հաստատուելէն առաջ ծրագրած չէր։ Քրիստոսի մահուընէ յետոյ սահած երկու հազար՝ և անկէ առաջուան չորս հազար տարիները, Աստուծոյ գործին ուրիշ բաժիններուն իրականացման համար նախագծուած ժամանակներն էին. նախապատրաստական քայլեր՝ «Ամէն բաներու Վերահաստատութեան ժամանակներ»ուն առաջնորդող։

Թո՛ղ ո՛և է մէկը անխորհրդաբար չենթադրէ թէ այս տեսութեան մէջ ո՛և է կէտ գոյութիւն ունի որ կը հակասէ Ս. Գրոց ուսուցմանց, որը կը յայտնէ թէ հաւատք առ Աստուած, մեղաց ապաշխարութիւն և նկարագրի բարեփոխութիւն անհրաժեշտ են փրկութեան արժանանալու համար։ Այս կէտին նըկատմամբ վերջէն աւելի ընդարձակօրէն պիտի գըրենք, բայց ներկայիս սա չափը կ'ուզենք ըսել թէ՝ մինչև հիմա շատ քիչերը միայն բաւականաչափ լոյս ստացած են, իրենց մէջ արտադրելու համար կատարեալ հաւատք, ապաշխարութիւն և առաքինութիւն։ Ոմանք մասամբ և ոմանք ալ ամբողջութեամբ կուրացած են այս աշխարհին աստուծմէն (Սատանայէն), և ինչպէս որ մահէն՝ նոյնպէս ալ կուրութենէն պէտք է որ վերադառնան անոնք, որպէսզի անոնց ամէն մէկը անհատապէս կատարեալ պատեհութիւնը ունենայ իր հնազանդութեամբը կամ անհընազանդութեամբը յաւիտենական կենաց արժանի կամ անարժան ըլլալը ցոյց տալու։ Եւ այն ատեն, անոնք որ իրենք զիրենք կենաց անարժան ցոյց կուտան՝ կրկին պիտի մեռնին—երկրորդ մահուամբ—

*ուրկէ ա՛լ փրկութիւն պիտի չըլլայ, և հետևաբար, ո՛չ ալ յարութիւն։*

*Այն մահը որ տեղի կ'ունենայ Ադամի մեղքին պատճառաւ, և այն բոլոր անկատարութիւնները ո-րոնք մահուընէ արթննալէն յետոյ ալ կը հետևին, Յիսուս Քրիստոսի կատարած փրկագործութեանը շնորհիւ պիտի հեռացուին ու ջնջուին. բայց ա՛յն մահը, որ տեղի կ'ունենայ իբր հետևանք անհատական կամաւոր դառնալքութեան՝ վերջնական պիտի ըլլայ։ Այս մեղքը միշտ աններելի եղած է և իր պատիժը՝ երկրորդ մահ՝* յաւիտենական *պիտի ըլլայ— ո՛չ թէ յաւիտենական աստիճանաբար մահացում, հապա՝ յաւիտենական մահ—առանց յարութեան մահ մը։*

*Փրկագործութեան ծրագրին իմաստասիրութիւնը յաջորդ հատորներէն մէկուն մէջ պիտի կատարենք։ Հոս մեր ընթերցողաց միտքին մէջ կ'ուզենք լաւ մը տպաւորել այն իրողութիւնը թէ՝ Յիսուս Քրիստոսի միջոցաւ կատարուած փրկագործութիւնը, իր օրհնեալ հետևանքներով և պատեհութիւններով ա՛յնքան համայնապարփակ պիտի ըլլայ՝ որքան որ էր Ադամի մեղքը իր յուսախաբութիւններովն ու աւերակներովը—թէ՝ ամէն անոնք որ մէկ անձի մը պատճառաւ դատապարտուեցան ու տառապեցան, նոյնքան օրինաւորապէս ալ՝ ուրիշի մը շնորհիւ, այս բոլոր աղէտներէն պիտի ձերբազատուին, «յարմար ժամանակին»։ Սակայն, ամէն անոնք որ կը մերժեն ընդունիլ Ս. Գրոց յայտարարութիւնները՝ թէ մահը—էակին բնաջնջումն է—մեղաց պատիժը, անկարող են գնահատել Ս. Գրոց այս փաստերը։ Բոլոր անոնք՝ որ մահ ըսելով տանջարանի մէջ ապրիլ կը հասկնան՝ ո՛չ միայն կ'անտեսեն* մահ *և* կեանք

բառերուն նշանակութիւնը, որոնք հականիշներ են, հապա նաև իրենք զիրենք երկու անհեթեթութեանց կը մատնեն։ Անհեթեթութիւն մ'է խորհիլ՝ թէ Աստուած Ադամի գործած ո՛և է մեղքին համար զայն յաւիտենական տանջանաց պիտի կրնար մատնել, և այն ալ՝ արգիլուած պտուղէն կերած ըլլալու բաղդատաբար փոքրիկ օրինազանցութեանը համար։ Նոյնպէս ալ՝ եթէ մեր Տէրը Յիսուս մարդկութիւնը փրկելու համար մեր տեղը (մեզի համար) մահուան դիմեց, որպէսզի մենք անկէ ազատ արձակուինք, մի՞թէ ապացոյց մը չէր, թէ այն մահը զոր Ինք ճաշակեց անարդարներուն համար, այն միևնոյն տեսակն էր՝ որուն բոլոր մարդկութիւնը դատապարտուեցաւ։ Եւ կամ, մի՞թէ Նա մեր մեղաց համար յաւիտենական չարչարանաց մէջ է. իսկ եթէ ոչ, և եթէ Նա մեր մեղաց համար մեռաւ՝ մեր մեղաց պատիժն ալ մահ ըլլալու է և ո՛չ թէ կեանք, ո՛և է նշանակութեամբ կամ վիճակի մէջ։

Բայց տարօրինակ է ըսել՝ թէ երբ մարդիկ կը գտնեն որ յաւիտենական տանջանաց վարդապետութիւնը անհամաձայն է Ս. Գրոց հետ, որ կ'ըսէ թէ «Տէրը մեր բոլորին անօրինութիւնները Անոր վրայ դրաւ», թէ՝ Քրիստոս «մեր մեղքերուն համար մեռաւ», և երբ կը տեսնեն թէ ասոնցմէ մէկը կամ միւսը պէտք է որ մէկ կողմ դրուի իբրև հակասութիւն, անոնք ա՛յնքան փարած են յաւիտենական տանջանաց գաղափարին և ա՛յնքան կը գնահատեն զայն անուշ պատառի մը պէս, որ անոր կը կառչին՝ անտեսելով Ս. Գրոց ուսուցումը, և գիտակցաբար կ'ուրանան Յիսուսի աշխարհին փրկանքը վճարելը, ճշմարտութիւն մը՝ որը արձանագրուած է Ս. Գրոց ամեն մէկ էջին վրայ։

## ՎԵՐԱՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆԸ ԿՐՆԱ՞Յ ԳՈՐԾՆԱԿԱՆԱՆԱԼ

*Ոմանք այն կարծիքը ունին թէ՝ եթէ երկիլլիոնաւոր մեռելները յարութիւն առնեն, երկրին վրայ իրենց տեղ պիտի չգտնուի· թէ՝ եթէ նո՛յնիսկ տեղ ալ ըլլայ, այնքան հսկայ բնակչութիւն մը ապրեցնելու կարող պիտի չըլլայ երկիրը։ Եւ ոմանք ալ աւելի առաջ երթալով կ'ըսեն՝ թէ երկիրը ընդարձակ գերեզմանատուն մ'է, թէ՝ եթէ բոլոր մեռելները վերակենդանանան, տեղին նուազութեանը պատճառաւ զիրար պիտի կոխկռտեն։*

*Ասիկա կարեւոր կէտ մ'է։ Ո՛րքան տարօրինակ պիտի ըլլար, եթէ անսխալ երկրաչափութեամբ իրապէս ապացուցանէինք թէ՝ թէեւ Աստուածաշունչը բոլոր մարդոց յարուցումը կ'ուսուցանէ՝ բայց երկրին վրայ անոնց համար ոտք դնելու տեղ անգամ պիտի չըլլայ։ Բայց, կանգ առնենք պահ մը· եթէ հաշուելու ըլլանք՝ պիտի տեսնենք թէ այդ վախը անհիմն է։ Պիտի տեսնենք թէ «ամենուն վերահաստատութեանը» համար առատ տեղ պիտի ըլլայ, ինչպէս որ «Աստուած Իր բոլոր սուրբ մարգարէներուն բերնովը խօսած է»։*

*Ընդունինք թէ մարդուն ստեղծուիլը վեց հազար տարի է· թէ՝ ներկայիս աշխարհի վրայ հազար չորս հարիւր միլիոն մարդիկ կ'ապրին։ Մեր ցեղը զոյգ մը անձերէ առաջ եկաւ· բայց առատաձեռն ըլլանք մեր հաշուին մէջ, ու ենթադրենք թէ սկիզբէն այնքան մարդ գոյութիւն ունէր, որքան որ կայ ներկայիս· թէ՝ ո՛եւէ ժամանակ մարդոց թիւը աւելի չպակսեցաւ, թէեւ իրապէս՝ ջրհեղեղը բնակչութեան թիւը ութը անձերու իջեցուց։ Եւ կրկին՝ առատաձեռն ըլլալով՝ հաշուենք թէ ամէն մէկ դարու մէջ երեք սերունդներ առաջ եկած են, կամ՝*

մէկ սերունդ, իւրաքանչիւր 33 տարուայ մէջ. թէև ըստ Ծննդոց Ե. գլխուն՝ Ադամէն մինչև Ջրհեղեղ, 1,656 տարուայ շրջանին մէջ 11 սերունդներ միայն գոյութիւն ունեցան. դրեթէ 150 տարի իւրաքանչիւր սերունդին համար: Այժմ դիտենք. 6,000 տարիները 60 դարեր կ՚ընեն. ամեն մէկ դարուն մէջ 3 սերունդներ հաշուելով՝ կ՚ունենանք 180 սերունդներ Ադամէն մինչև հիմա. և ամեն մէկ սերունդի թիւը 1,400 միլիոն սեպելով՝ կ՚ստանանք 252 հազար միլիոն, իբրև մեր ցեղին ամբողջական համագումար թիւը ստեղծագործութենէն մինչև հիմակ, ըստ այս առատաձեռն հաշուելակերպին, որը հաւանօրէն իրական թուէն կրկնապատիկէն աւելի է:

Այս մեծ բազմութիւնը ո՞ւր պիտի կրնանք զետեղել արդեօք. ուրեմն չափենք երկիրը ու տեսնենք: Միացեալ Նահանգաց միայն Թէկզաս նահանգը կը պարունակէ 237 հազար քառակուսի մղոն. մէկ քառ. մղոնին մէջ 27,878,400 քառ. ոտնաչափ կայ. որով՝ Թէկզասի մէջ 6 եռիլիոն՝ 607 երկիլիոն՝ 180 միլիոն և 800 հազար քառ. ոտնաչափ կայ: Ընդունելով թէ ամէն մէկ մեռած մարմին 10 քառ. ոտնաչափ տեղ կը գրաւէ, կը տեսնենք որ Թէկզասը պիտի կրնայ՝ իբրև գերեզմաննոց՝ այս հաշուով 660 երկիլիոն՝ 718 միլիոն և 80 հազար դիակներ պարունակել, և կամ՝ անցեալին և ներկայիս մէջ երկրի վըրայ ապրող մեր ցեղին չափազանցուած թուին մօտաւորապէս երեք անգամը:

Ոտքի վրայ կանգնած անձ մը, մէկ ամբողջ և երկու երրորդ քառ. ոտնաչափ տեղ կը գրաւէ: Այս հաշուով՝ երկրիս ներկայ բնակչութիւնը (1 երկիլիոն և 400 միլիոն անձեր), կարող պիտի ըլլայ 86 քառ. մղոն տարածութեան մը վրայ կանգնելու տեղ գտնել—տարածութիւն մը՝ որ Լոնտոն կամ Ֆիլա-

տէլֆիա քաղաքներէն շատ փոքր է։ Եւ Իսլանտայ կղզին՝ (որ 32 հազար քառ. մղոնի տարածութիւն ունի), պիտի կրնայ մինչև ցարդ երկրիս վրայ ապրող ժողովուրդին՝ նոյնիսկ մեր չափազանցուած հաշւոյն երկու անգամին՝ ոտքի վրայ կանգնելու տեղ հայթայթել։

Ուրեմն, այնքան ալ դժուար չէ եղեր այս առարկութեան գոհացուցիչ պատասխան մը գտնելը։ Ու երբ նկատի կ՚առնենք Եսայիի (ԼԵ. 1—6) մարգարէութիւնը՝ թէ երկիրը պիտի արգասաւորի, անապատին և անբնակ երկիրներուն մէջ ջուրեր ու գետեր պիտի բղխին, և պիտի ցնծան ու ծաղկին շուշանի պէս, այլեւս կը տեսնենք որ Աստուած կանխատեսած է այն բոլոր բաները՝ որոնք Իր Ծրագրին անթերի գործադրութեան պիտի նպաստեն, և առատապէս պիտի հոգայ Իր արարածոց բոլոր պէտքերը՝ խիստ բնական ճամբով մը։

## ՎԵՐԱՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆԸ ԲԱՐԵՇՐՋՈՒԹԵԱՆ ԿԸ ՀԱԿԱՍԷ

Թերևս ոմանք առարկեն թէ մարդոց՝ նախնական վիճակին մէջ վերահաստատուելու մասին Ս. Գրոց ըրած յայտարարութիւնները անհաշտ են գիտական և փիլիսոփայական ուսուցմանց հետ, որոնք՝ ակներև պատճառներով՝ տասն և իններորդ դարու բարձրագոյն մտաւորականութիւնը կը մատնանշեն մեզի, ու կ՚ընդունին զայն որպէս համոզիչ ապացոյց մը, թէ սկզբնական մարդը բաղդատաբար, մտաւորապէս խիստ թերի վիճակի մէջ էր՝ որով ներկայի յառաջդիմութիւնը բարեշրջութեան կը վերագրեն։ Այս տեսակէտով՝ նախկին վիճակին վերադառնալը խիստ անփափաքելի պիտի ըլլայ, և անտարակոյս՝ անէծք մը։

Առաջին ակնարկով, այսօրինակ տրամաբանու-

թիւն մը ծափահարելի կը թուի. և շատեր հակամէտ կ՚երևան առանց խնամոտ ուսումնասիրութեան՝ որպէս ճշմարտութիւն մը կլլելու զայն, լսելով Գրուքլինի երևելի քարոզչի մը հետ թէ՝ «Եթէ երբեք Ադամ ինկաւ, անիկա դէպի վեր անկում մ՚էր, ու որքան աւելի և որքան արագ որ իյնանք անոր սկզբնական վիճակէն՝ ա՛յնքան լաւ պիտի՛ ըլլայ թէ՛ մեզի և թէ՛ մեր բոլոր մերձաւորներուն համար»։

Եւ այս փիլիսոփայութիւնը, որ նոյնիսկ եկեղեցիի բեմերէն կը քարոզուի, Աստուծոյ Խօսքը առ ոչինչ կը դրէ՝ և եթէ կարելի ըլլար՝ պիտի համոզէր մեզ թէ առաքեալները տխմարներ էին, երբ յայտարարեցին թէ մահը և ամեն տառապանք առաջին մարդուն անհնազանդութեամբը յառաջ եկան. թէ՝ ասոնք կարելի պիտի ըլլայ ջնջել և մարդը վերանորոգել Աստուածային շնորհաց և կենաց մէջ, պարզապէս Փրկանքի մը շնորհիւ միայն։ (Հռովմ. Ե. 10, 12, 17—19, 21։ Ը. 19—22։ Գործ. Գ. 19—21։ Յայտ. ԻԱ. 3—5)։ Բայց ո՛չ ոք թող անճապարանօք ենթադրէ թէ վերոյիշեալ փիլիսոփայութիւնը զօրաւոր հիման մը վրայ հաստատուած ու անբեկանելի է. որովհետև եթէ սկզբնական մեղքին ու մահուան, և նախնական կատարելութեան մէջ վերահաստատութեան մասին Առաքեալներու ընծայած վարդապետութիւնները մերժելու ստիպուած ըլլանք, մենք, որպէս պարկեշտ անձեր, ստիպուած պիտի ըլլանք նաև ամբողջապէս մերժել անոնց ամեն խնդրոյ նկատմամբ տուած վկայութիւնները՝ իբրև ոչ-ներշնչեալ և հետևաբար՝ անկարևոր ու անճիշդ։ Ուրեմն, իրողութիւնները աչքի առջև ունենալով, համառօտակի քննենք այս ծաւալող ժողովրդական տեսութիւնը և դիտենք անոր փիլիսոփայութեան խորութիւնը։

Այս տեսութեան պաշտպան և ներկայացուցիչ մէկը կ՚ըսէ. —«Մարդը նախ և առաջ գոյութեան այնպիսի վիճակի մը մէջ էր, որ անոր անասնական բնութիւնը կը գերիշխէր, և գրեթէ միմիայն Ֆիզիքականն էր որ կը կառավարէր զինքը։ Յետոյ՝ աստիճանաբար բարձրացաւ և հասաւ ներկայ դրութեան՝ երբ հասարակ մարդն իսկ հասած է այնպիսի վիճակի մը, ուր, կարելի է ըսել թէ նա ուղեղի իշխանութեան ներքև կուգայ։ Ուրեմն այս դարը կրնայ նկատուիլ և ճանչցուիլ որպէս Ուղեղի Դար։ Ուղեղն է որ առաջ կը մղէ օրուան մեծ ձեռնարկները. ուղեղն է որ կառավարութեան սանձը ձեռք կ՚առնէ. և անոր շնորհիւ է որ երկրիս տարերքները, օդ ու ջուր, հետզհետէ կը նուաճուին։ Մարդը իր թաթն է որ կը դնէ նիւթական բոլոր զօրութեանց վրայ, և յամրօրէն՝ բայց ապահովաբար այնպիսի զօրութիւն մը կ՚ստանայ բնութեան տիրապետութեան վրայ, որ կ՚ապացուցանէ թէ ի վերջոյ կարող պիտի ըլլայ Աղէքսանդր Սէլքըրքի լեզուով բացագանչելու՝ «Իմ բոլոր տեսածներուս վրայ արքայ եմ»։

Այն խրողութիւնը՝ թէ վարդապետութիւն մը առաջին ակնարկով բանաւոր կը թուի, պատճառ մը պէտք չէ ըլլայ որ զայն անմիջապէս ընդունինք, և Աստուածաշունչը հոս ու հոն քաշկռտենք անոր հետ համաձայնեցնելու համար։ Ս. Գիրքը հազարումէկ կերպերով քննած ու փորձած ենք՝ և ամէն տարակոյսէ վեր համոզուած ենք՝ թէ անիկա կը պարունակէ գերմարդկային իմաստութիւն մը, որը անոր ամէն մէկ խօսքերուն անսայթաք անվրէպութիւնը ի յայտ կը բերէ։ Պէտք է յիշենք նաև թէ՝ թէև գիտական խուզարկութիւնները գովելի են՝ և ընծայած թելադրութիւնները նկատողութեան արժանի՝

տակայն իր եզրակացութիւնները կրնան սխալական ըլլալ։ Եւ զարմանք չէ, որ նա ինքնին իր տեսութեանց սխալ ըլլալը երեւան բերած է հազար ու մէկ անգամներ. և արդէն ճշմարիտ գիտնականը պարզապէս ուսանող մ'է, որը աննպաստ պայմաններու ներքև, և գրեթէ անյաղթելի դժուարութեանց դէմ պայքարելով՝ կը ջանայ Բնութեան մեծ Գրքէն ծանօթանալ մարդուն պատմութեան, ճակատագրին և բնակավայրին մասին։

Ուրեմն, մենք ո՛չ պիտի հակառակինք դիտական խուզարկութեանց և ո՛չ ալ արգիլենք զանոնք. հապա՝ երբ Բնութեան Գրքին ուսանողներէն թելադրութիւններ կ'ստանանք, պիտի բաղդատենք իրենց եզրակացութիւնները—որոնց մասամբ կամ ամբողջութեամբ սխալ ըլլալը յաճախակի ապացուցուած է—Աստուածային Յայտնութեան Գրքին հետ, ու հաստատենք կամ ժխտենք գիտնականներու վարդապետութիւնները «Օրէնքին ու Վկայութեան հարցընելով. թէ որ այս խօսքին համեմատ չըրուցեն, անոնք ամենեւին լոյս չունին»։ (Ես. Ը. 20)։ Երբ երկու գրքերուն, (Հին ու Նոր Կտակարաններուն նկատմամբ ուղիղ գիտութեան մը տիրանանք, պիտի տեսնենք թէ երկուքն ալ իրարու հետ հաշտ ու համերաշխ են. բայց այսօրինակ գիտութեան մը տիրանալէ առաջ, անհրաժեշտ է Աստուծոյ որդւոցը համար, որ Անոր Յայտնութիւնը նախադասեն և իրենց նեցուկը ընեն, որուն միջոցաւ միայն իրենց նման սխալական մարդոց կարծեցեալ գիտերը պիտի կարենան դատել։

Բայց յարելով հանդերձ այս սկզբունքին, փնտռենք ու տեսնենք, թէ մարդուն աճուն գիտութեան, հանճարին ու զօրութեան նկատմամբ աւելի տարբեր ու բանաւոր մեկնաբանութիւն մը չե՞նք կրնար

գտնել՝ Բարեշրջութեան ընծայած Հայեացքէն ի զատ—որը կ'ուսուցանէ թէ՝ թէև մարդը նախապէս կեանքի խիստ ստորին մակարդակէ մը սկսաւ, սակայն շնորհիւ յառաջդիմութեան ներկայի գերազանցապէս բարձր վիճակին՝ «Ուղեղի Դար»ուն հասած է։ Հաւանական է որ ի վերջոյ. այն եզրակացութեան պիտի յանգինք՝ թէ այս գիւտերուն ու դիւրութիւններուն, ընդհանուր դաստիարակութեան ու գիտութեան շատնալը և ընդարձակօրէն ծաւալումը ո՛չ թէ ուղեղի առաւելագոյն դատողութեան վերագրելի են, այլ ուղեղի գործածութեան նպաստաւորագոյն պարագաներուն։ Թէ այսօրուայ ուղեղի տարողութիւնը անցեալ դարերէն աւելի մեծ է՝ մենք կը ժխտենք. թէև անվերապահօրէն կ'ընդունինք թէ նպաստաւոր պայմաններուն շնորհիւ, մարդուն այս օրուայ ունեցած ուղեղի տարողութեան գործածութիւնը աւելի ընդհանրական է, քան ուրիշ ո՛ևէ ժամանակաշրջանի մէջ՝ որով աւելի աչքառու ցուցադրութիւն մը կը կատարէ ներկայիս։ Նկարչութեան և քանդակագործութեան ուսման մէջ միթէ այս «Ուղեղի Դար»ու աշակերտները դէպի անցելոյն մեծ վարպետներուն չե՞ն նայիր, և այս կերպով միթէ չե՞ն խոստովանիր անցելոյն ուղեղի կարողութեան և ինքնատիպ հանճարի ու օրինակելի ճարտարագործութեան գերակայութիւնը։ Միթէ ներկայ «Ուղեղի Դար»ը իր ճարտարապետութիւնները անցեալ դարերու յատակագծերուն վրայ չի՞ ձևեր։ Միթէ այս ներկայ «Ուղեղի Դար»ուն ատենախօսներն ու տրամաբանները Պղատոնի, Արիստոտէլի, Տիմոսթենէսի և անցելոյն այլևայլներուն ոճերն ու հաւաքաբանութիւնները չէ՞ որ կ'ուսումնասիրեն ու կ'ընդօրինակեն։ Միթէ ներկայի շատ մը հրապարակախօսները մեծապէս չե՞ն ցանկար տիրանալ Տի-

մոսթենէսի մը կամ Ապողոսի մը լեզուին, և աւելի ևս՝ Պօղոս Առաքեալի յստակօրէն տրամաբանելու կարողութեան:

Քիչ մը ևս ետ երթանք. թէև կրնանք ամենայն պատշաճութեամբ մէջ բերել այլևայլ մարգարէներու ճարտասանական կարողութիւնները, և ամբողջ Սաղմոսի հոս ու հոն ցանցնուած բանաստեղծական գերազանց նկարագրութիւնները. բայց այս «Ուղեղի Դար»ու փիլիսոփաներուն ուշադրութեանը ա՛լ աւելի կ'ուզենք յանձնել այն իմաստութիւնն ու տրամաբանութիւնը, նաև ոչ նուազ բարոյական այն ներքին դիւրազգածութիւնները՝ զորս երևան բերին Յոբ և իր մխիթարիչները: Բայց ի՞նչ պիտի ըսենք նամանաւանդ Մովսէսի նկատմամբ, որը «Եգիպտացւոց բոլոր իմաստութեամբը կրթուած» էր, և այն օրէնքները՝ որ անոր միջոցաւ տրուեցան, և որոնք բոլոր քաղաքակիրթ երկիրներու օրինաց հիմը կը կազմեն, ու դեռ կը գնահատուին որպէս սքանչելի իմաստութեան մը մարմնացումը:

Հին թաղուած քաղաքներու պեղումները՝ նախնի Դարերու պատկանող գեղարուեստից և գիտութեանց ա՛յնպիսի հմտութիւն մը ի լոյս կը բերեն՝ որ ներկայ անուանական «Ուղեղի Դար»ու փիլիսոփաները կ'ապշեցնէ: Մեռել զմռսելու, պղինձի ջուր տալու, առաձգական ապակի և Դամասկոսի պողպատ չինելու արուեստները հին անցեալին այն գործերէն են, որոնք ներկայ դարու ուղեղը իր բոլոր առաւելութիւններովը հանդերձ, անկարող է ըմբռնել կամ նմանը արտադրել:

## ՄԵԾ ԲՈՒՐԳԸ ԱՐԴԻ ԱՄԵՆԱՀՄՈՒՏ ԳԻՏՆԱԿԱՆՆԵՐՈՒ ՀԻԱՑՄԱՆ ԱՌԱՐԿԱՆ Է

Չորս հազար տարի դէպի ետ՝ Աբրահամի ժամանակները երթալով՝ կը գտնենք Եգիպտոսի Մեծ

*Բուրգը—որը այսօրուայ ամենահմուտ գիտնականներուն համար աքանչացման ու հիացման առարկայ մ'է։ Անոր կառուցումը այս «Ուղեղի Դար»ու մէջ եղած Մաթեմաթիքի և Աստղաբաշխութեան ամենայառաջադէմ գիւտերուն հետ կատարելապէս կը համաձայնի։ Անիկա այն տեսակ իրողութիւններ ի յայտ կը բերէ, որոնց կարենալ մերձենալու համար պէտք է որ արդի միջոցներ գործադրուին։ Անոր ընծայած դասերը ա՛յնքան աչքառու և ա՛յնքան յըստակ են, որ աշխարհիս ամենահմուտ աստղագէտներէն ոմանք առանց վարանելու յայտարարած են, թէ նա Աստուածային ծագում ունի։ Եւ նոյնիսկ, եթէ մեր «Ուղեղի Դար»ու բարեշրջականները ընդունին թէ անիկա Աստուածային կարգադրութեամբ եղած է, թէ ցոյց տրուած իմաստութիւնը գերմարդկային է, սակայն միևնոյն ատեն պէտք է խոստովանին թէ անիկա մարդկային շինուածք մ'է։ Ու այն իրողութիւնը՝ թէ այդ հին անցեալոյն մէջ, կարգ մը մարդիկ, մտաւորական կարողութիւնը ունէին Աստուածային այսպիսի կարգադրութիւն մը իրականացնելու, բան մը, որ ներկայիս խիստ քիչերը կարող պիտի ըլլան ընել, իրենց աչքին առջև օրինակ մը և ներկայի բոլոր գիտական դիւրութիւնները իրենց տրամադրութեան տակ ունենալով հանդերձ, ապացոյց մ'է թէ մեր «Ուղեղի Դար»ը պարագաներուն և իրողութեանց ներածէն ալ աւելի ինքնահաւանութիւն է որ երևան կը բերէ։*

*Սակայն, եթէ ապացուցանենք թէ ներկայի մտաւորական կարողութիւնը անցեալ Դարերէն աւելի մեծ չէ, այլ հաւանօրէն աւելի նուազ՝ ուրեմն ի՞նչ բանի պիտի վերագրենք ընդհանուր գիտութեան ծագկիլը, արդի գիւտերը, ևն.։ Կը յուսանք թէ կարող պիտի ըլլանք գոհացուցիչ կերպով ցոյց տալ,*

առանց Ս. Գիրքը հակասելու։ Այն հնարագիտութիւններն ու գիւտերը, որոնք ներկայիս երևան կուգան իրենց մեծ արժէքովը, և որոնք իբրև ապացոյց կը նկատուին թէ ներկան է «Ուղեղի Դար»ը, արդարև խիստ վերջին ժամանակուայ գործեր են— անոնց գրեթէ բոլորն ալ անցեալ դարու տևողութեանը յայտնուած են, և ամենակարևոր շրջանը կը կազմեն վերջին վաթսուն տարիները՝ որոնց մէջ, օրինակի համար՝ տեղի ունեցած են հեռագրի, երկաթուղիի, նաւարկութեան և մեքենայով առաջ տարուած արհեստներու համար՝ ելեքտրականութեան ու շոգիի գործածութիւնը։ Եւ եթէ ասոնք ուղեղի կարողութեան աճելուն ապացոյցներ են, ուրեմն «Ուղեղի Դար»ը դեռ իր սկզբնաւորութեան մէջն է· և տրամաբանական հետևութիւնը այն պիտի ըլլայ թէ՝ ուրիշ դար մը ականատեսը պիտի ըլլայ ամէն կերպ հրաշքներու, իբրև ամենօրեայ պատահարներ· և եթէ աճումի միևնոյն համեմատութիւնը առաջ երթայ, ի՞նչպիսի վերջաւորութեան մը պիտի յանգի արդեօք։

Բայց դարձեալ քննենք։ Մի՞թէ ամէն մարդ հնարիչ է· և իրապէս ո՛րքան քիչ են անոնք, որոնց գիւտերը իսկապէս օգտակար ու գործնական են· ու բաղդատաբար ո՛րքան փոքրիկ թիւ մը կը կազմեն նաև անոնք, որոնք կը գնահատեն ու կը նպաստաւորուին, երբոր այդ գիւտերու գործածութիւնը իրենց տրամադրութեան տակ դրուած է։ Մենք այդ խիստ օգտակար և մեծապէս գնահատուած հասարակութեան ծառաներու դասակարգին նկատմամբ անարգանօք չէ որ կը խօսինք, երբ կ՚ըսենք թէ անոնցմէ փոքրագոյն թիւ մը միայն ուղեղի մեծ կարողութեան տէր անձեր են։ Աշխարհի ամենամեծ ուղեղի տէր մարդերէն և ամենալուրջ խորհողներէն

ոմանք մեքենաներու հնարիչներ եղած չեն։ Եւ կարգ մը հնարիչներ մտաւորապէս ա՛յնքան դանդաղ են, որ, բոլորն ալ կը զարմանան թէ ի՛նչպէս պատահեցաւ որ անոնք իրենց գիւտերուն մէջ գլորեցան։ Այն մեծ սկզբունքները (ելեքտրականութիւն, շոգիի զօրութիւն, ևն.), որոնք իրագործելու համար շատեր երկար տարիներ աշխատեցան, ուսումնասիրութիւններ ու բարեփոխութիւններ ընելով՝ ընդհանրապէս, և ըստ երևոյթին, ամենապարզ արկածով մը գանուեցան, առանց ուղեղի մեծ կարողութիւն գործածելու, և գրեթէ այնպիսի պարագաներու մէջ երբ հետամուտ անգամ եղած չէին։

Մարդկային տեսակէտով՝ արդի գիւտերուն պատճառը սապէս կրնանք բացատրել. Ք. Թ. 1440ի տպագրութեան գիւտը սկզբնակէտը կրնայ հաշուըուիլ։ Գրքերու տպագրութեան հետ եկան նաև մտածումներու, խորհող ու արթնամիտ անձանց գիւտերու արձանագրութիւնները, առանց որոնց պիտի չկրնային իրենց յաջորդները տեղեակ պահել։ Գրքերուն հետ եկաւ աւելի ընդհանուր դաստիարակութիւն մը. իսկ վերջէն ալ հասարակաց դպրոցները։ Դպրոցներն ու գոլէճները մարդոց կարողութեանց վրայ բան չեն աւելցներ, այլ կը նպաստեն մտքին աւելի ընդարձակ գործունէութիւն մը ստանալու, և հետևաբար արդէն իսկ գոյութիւն ունեցած կարողութիւնը ի յայտ կը բերեն։ Գիտութիւնը որքան ընդհանրանայ ու գրքերը տարածուին, անոնց տիրացող ամէն մէկ սերունդ իր նախորդներուն վրայ որոշ առաւելութիւն մը կ՚ունենայ։ Եւ այդ ո՛չ միայն անոր համար է որ անցելոյն մէկին դէմ հազար խորհողներ կան ներկայիս, իրարու միտք սրելու և խթանելու այլևայլ թելադրութիւններով, այլ անոր համար որ, վերջին սերունդներէն

ամէն մէկը իր փորձառութեանց հետ անցեալինն ալ ունի գրքերու շնորհիւ։ Այն դաստիարակութիւնը և գովելի փառասիրութիւնը, որ կ'ընկերանայ ձեռներէցութեան, առաջնութեան, և մրցակցութեան այն փափաքը որը ուժ կ'ըստանայ օրաթերթերու մէջ գտնուած գիւտերու արձանագրութիւններէն ու նկարագրութիւններէն, խթանած և փայլեցուցած են մարդուն ըմբռնողական զօրութիւնները, և ամէն մէկը արթուն ու աջալուրջ պահած՝ թէ մի՛ գուցէ մարդկութեան բարիքին ու բարեկեցութեան համար բան մը կարենան հնարել։ Ուրեմն արդի գիւտերը, զուտ մարդկային տեսակէտէ դիտելով՝ ո՛չ թէ ուղեղի դատողութեան յաւելում կ'ուսուցանեն, այլ բնական պատճառներէ յառաջ եկած սուր հասկացողութիւն մը։

Այժմ Ս. Գրոց կը դիմենք, տեսնելու թէ ան ի՞նչ կ'ըսէ այս խնդրոյն մասին. և թէև կը հաւատանք, ինչպէս վերը յիշեցինք՝ թէ մարդոց մէջ հնարողութիւնը, գիտութեան շատնալը, ևն., բնական պատճառներու արդիւնքներ են, սակայն և այնպէս կը հաւատանք որ Եհովայ Աստուծմէ հեռաւոր անցեալին մէջ ծրագրուած ու կարգադրուած էին այս բնական պատճառները, որոնք իրենց յարմար ժամանակին մէջ իրականացած են—Իր վերհսկող նախախնամութեամբը, որուն միջոցաւ Նա «ամէն բան Իր կամքին խորհրդովը ի գործ կը դնէ»։—Եփես. Ա. 11։

## ՎԵՐՋԻՆ ԺԱՄԱՆԱԿԸ ԳԻՏՈՒԹԻՒՆԸ ԳԻՏԻ ՇԱՏՆԱՅ

Իր խօսքին մէջ պարզուած ծրագրին համաձայն, Աստուծոյ նպատակն էր թոյլատրել որպէսզի մեղքն ու թշուառութիւնը իրենց աղէտալի և ճնշող իշխանութիւնը ունենան աշխարհի վրայ ամբողջ վեց հա-

զար տարիներ, և յետոյ՝ եօթներորդ հազարամեակին մէջ՝ ամէն ինչ վերահաստատել, մեղքը արմատախիլ ընել—ջնջել իր հետևանքներով մէկտեղ Յիսուս Քրիստոսի միջոցաւ, Որը Նախապէս Աստուծմէ այդ գործին համար սահմանուած էր։ Ուրեմն, երբ չարիքի վեց հազար տարուայ տիրապետութիւնը ըսկըսաւ իր վախճանին մօտենալ, Աստուած թոյլատրեց որպէսզի պարագաները նպաստեն գիւտերու յառաջացման, երբ մարդիկ կը պրպտէին թէ՛ Իր Յայտնութեան և թէ՛ Բնութեան Գիրքերը․ երբ մեքենաներու ու քիմիական նիւթերու գործածութիւնը կը պատրաստէին, որոնք այժմ ներածուելիք Հազարամեայ Դարուն մէջ մարդկութեան օրհնութեանը և վերականգնումին օգտակար պիտի ըլլան։ Թէ՝ ասիկա էր Աստուծոյ Ծրագիրը՝ յստակօրէն երևան կուգայ մարգարէական հետևեալ յայտարարութեամբը․ «Եւ դու, ո՛վ Դանիէլ, խօսքերը գոցէ, ու գիրքը կնքէ մինչև վերջին ժամանակը․ (այն ատեն) շատերը հոս ու հոն պիտի վազեն, և ԳԻՏՈՒԹԻՒՆԸ (ո՛չ թէ կարողութիւնը) պիտի շատնայ», «ու բնաւ մէկ ամբարիշտ մը պիտի չհասկնայ (Աստուծոյ Ծրագիրն ու ճամբաները), հապա իմաստունները պիտի հասկնան»․ «ու Նեղութեան ժամանակ մը պիտի ըլլայ, որ ազգ ըլլալէն մինչև այն ատենը անոր նմանը եղած չէ»։—Դան․ ԺԲ․ 1, 4, 10։

Թերևս ոմանց տարօրինակ թուի որովհետև Աստուած չկարգադրեց որ ներկայի գիւտերն ու օրհնութիւնները աւելի կանուխէն երևան գային ու մարդուն վրայ ծանրացող անէծքը մեղմացնէին։ Բայց յիշելու ենք թէ Աստուծոյ Ծրագիրը եղած է անէծքին ինչ ըլլալը լաւ մը զգացնել տալ մարդոց, որպէսզի երբ օրհնութիւններ ընծայուին բոլորին՝ մեղքին վնասակարութեան մասին հաստատապէս համոզ-

ուած ըլլան։ Նոյնպէս, Աստուած նախատեսած ու նախասահմանած է այն՝ ինչ որ աշխարհը դեռ չէ հասկցած, այսինքն թէ եթէ իր ամենաընտիր օրհնութիւնները բաշխուէին այնպիսիներու որոնց սրտերը հակառակ են տիեզերքի արդար օրէնքներուն, ատիկա միջոցը պիտի ըլլայ զանոնք մեծագոյն վատութիւններու առաջնորդելու, մեծագոյն չարիքներ ըստեղծելու։ Ի վերջոյ պիտի տեսնուի թէ բազմացած օրհնութեանց Աստուծոյ ըրած ներկայ թոյլատուութիւնը գործնական ապացոյց մ'է վերոյիշեալ պատճառաբանութիւնը հաստատող, որը այս սկզբունքին իբրև-յաւիտենական օրինակ կրնայ ծառայել— թէ' հրեշտակաց և թէ' վերահաստատուած մարդոց։ Թէ ի'նչ կերպով կրնայ ասիկա տեղի ունենալ՝ մենք հետևեալ թելադրութիւնը կուտանք.—

Առաջին. Որքան ատեն որ մարդկութիւնը իր ներկայ ինկած կամ ապականած վիճակին մէջ է, զուրկ խիստ օրէնքներէ ու պատիժներէ և զանոնք ի գործ դնելու կարող կառավարութենէ մը, եսախնդիր հակումները բոլորին ալ պիտի տիրեն քիչ թէ շատ։ Եւ երբ մարդոց անհատական կարողութեանց անհաւասարութիւնը ուշադրութեան կ'առնենք՝ կը տեսնենք որ մեքենաներուն արտադրութեան յուզումէն և ոգևորումէն յետոյ, աշխատանք խնայող մեքենաներ հնարուելուն հետևանքը պարզապէս այն պիտի ըլլայ որ, հարուստը ա'լ աւելի պիտի հարստանայ, իսկ միւս կողմէն ալ՝ աղքատը ա'լ աւելի պիտի աղքատանայ։ Ակներև միտումը դէպի մենավաճառութիւն ու անձնամեծարում է, և որը պատեհութիւնը ուղղակի անոնց ձեռքը կը յանձնէ, որոնց կարողութիւնը և բնական առաւելութիւնները արդէն ամենանպաստաւորներն են։

Երկրորդ. Եթէ կարելի ըլլար այնպիսի օրէնք մը

անցնել, որուն շնորհիւ կարենային ներկայ հարըստութիւնները և իրենց յարաճուն արդիւնքները ամէն դասակարգերու մէջ հաւասարապէս բաժնել (որը սակայն անկարելիութիւն մ'է), մարդկութիւնը կատարելութենէ և կամ մարդկային գործերը կանոնաւորելու կարող գերմարդկային կառավարութենէ մը զուրկ ըլլալով՝ հետևանքը ներկայինէն աւելի ողբալի վիճակ մը պիտի ըլլար: Եթէ աշխատանք խնայող մեքենաներու և արդի բոլոր դիւրութիւններու բարիքները հաւասարապէս բաժնուէին՝ կարճ ժամանակի մը մէջ, ասոր իբր հետևանք, աշխատութեան ժամերը մեծապէս պիտի կարճնային, և պարապոյ ժամերն ալ իրենց կարգին մեծապէս պիտի երկարէին: Ինկած արարածներու համար անգործութիւնը ամենավնասակար բանն է: Եթէ ապրելու համար աշխատանքն ու ճակտի քրտինքը անհրաժեշտ չըլլային՝ մեր ցեղին վատթարացումը ներկայինէն շա՛տ աւելի արագ պիտի ըլլար: Անգործութիւնը մոլութեանց մայրն է, որուն անխուսափելիօրէն պիտի հետևէր մտաւորական, բարոյական և ֆիզիքական ստորնացումը: Որով՝ Աստուծոյ Իմաստութիւնն ու Բարութիւնն էր որ ետ պահեց այս բոլոր օրհնութիւնները մինչև որ անոնց ուրախ ժամանակը հասաւ, ուր այլևս պէտք էին երևան գալ, իբր նախապատրաստութիւն Հազարամեայ օրհնաւէտ Դարու տիրապետութեան: Աստուծոյ Թագաւորութեան գերբնական կառավարութեան ազդեցութեան ներքև, ո՛չ միայն մէն մի օրհնութիւն մարդոց մէջ հաւասարապէս պիտի բաժնուի, հապա նաև՝ անգործութիւնը ա՛յնպէս մը պիտի կանոնաւորուի, որ անոր հետևանքները առաքինական պիտի ըլլան, և մտաւորական, բարոյական ու ֆիզիքական՝ բարձրացման ու կատարելութեան պիտի ա-

առաջնորդեն։ Գիւտերու ներկայ բազմապատկումը և յարաճուն գիտութեան տարբեր օրհնութիւնները ա՛յնպիսի բնական ճամբով մը կուգան այս «պատրաստութեան օր»ուանը մէջ, որ մարդիկ իրենք զիրենք կը խաբեն, խորհելով թէ պատճառը «Ուղեղի Դար»ն է։ Բայց, պիտի Թոյլատրուի որպէսզի անիկա ա՛յնպիսի կէտի մը յանգի, որը անտարակոյս, մեծապէս յուսախաբ պիտի ընէ ներկայի խելացի փիլիսոփաները։ Այս միեւնոյն օրհնութեանց շատնալովն է որ սկսած է աշխարհի վրայ տառապանաց ա՛յնպիսի շրջան մը գալ, որը իր նախընթացը չէ ունեցած ազգաց պատմութեանը մէջ։

Ինչպէս վերը յիշեցինք, Դանիէլ Մարգարէն գիտութեան շատնալը և Նեղութեան ժամանակը իրարու հետ կը կապէ։ Մարդկային ցեղին ինկածութեանը պատճառաւ, գիտութիւնը տառապանաց պիտի առաջնորդէ։ Գիտութեան շատնալը աշխարհի ո՛չ միայն ընծայած է աշխատութիւն խնայող հիանալի մեքենաներ ու դիւրութիւններ, հապա նաև բժշկական հմտութեանց առաջնորդը եղած է, որուն շընորհիւ հազարաւոր կեանքեր երկարած են, ու մարդկութիւնը ա՛յնքան լուսաւորուած է, որ պատերազմն ու արիւնահեղութիւնը հետզհետէ կը դադրին ժողովրդականութիւն վայելելէ. որով հազարաւոր կեանքեր խնայուելով՝ իր կարգին ցեղին բազմապատկուելուն կը նպաստէ, որը հաւանօրէն իր աւելի արագ աճումին մէջ է ներկայիս՝ ՝քան պատմութեան ո՛եւէ մէկ շրջանին մէջ։ Այսպէս, երբ մարդկութիւնը արագօրէն կը բազմապատկուի, իր աշխատութեան պահանջն ալ կը նուազի համեմատօրէն. և «Ուղեղի Դար»ու փիլիսոփաները իրենց առջև գորդեան հանգոյց մը ունին լուծելու, գործ ու ապրուստ հայթայթելու այս հսկայ ու յարաճուն

դասակարգին համար, որուն ծառայութեան այլեւս շատ ալ պէտքը չզգացուիր՝ մեքենաները կատարելով մեծագոյն բաժինը. և սակայն, պէտք է որ անոր անհատնում պէտքերուն ու փափաքներուն գոհացում տրուին: Մեր փիլիսոփաները պէտք է ընդունին՝ թէ իրենց ուղեղի կարողութենէն վեր է այս առեղծուածին լուծումը:

Շահախնդրութիւնն է որ պիտի շարունակէ տիրել հարուստներուն վրայ, որոնք իրենց ձեռքին մէջ ունին ոյժն ու առաւելութիւնը, և որոնք ինքզինքնին կոյր պիտի ձեւացնեն ողջմտութեան ու արդարութեան առջև: Իսկ անդին, նոյնակերպ շահախնդրութիւն մը, միացած անձնապաշտպանութեան և իրենց իրաւանց յարաճուն գիտակցութեան՝ պիտի ջղագրգռէ և զայրացնէ աւելի աղքատ դասակարգը. ու այս օրհնութեանց հետեւանքը՝ ժամանակի մը համար՝ ահռելի պիտի ըլլայ—իրաւ իրօք տառապանաց ա՛յնպիսի շրջան մը, որուն նմանը ազգերու գոյութիւն ունենալէն ի վեր տեղի ունեցած չէ—և ասոր պատճառը այն է որ, մարդիկ իրենց ներկայ ինկած վիճակին մէջ պատշաճ կերպով չեն կրնար գործածել այս օրհնութիւնները, երբ իրենց կամքին ու գլխուն թողուած են: Մինչև որ Մեսիայի Հազարամեայ տիրապետութիւնը վերանորոգուած մարդկութեան սրտին մէջ Աստուծոյ Օրէնքը չվերաքանդակէ, մարդիկ ի վիճակի պիտի չըլլան առանց վնասուելու կամ վտանգուելու կատարեալ ազատութիւն գործածելու:

Նա որ երբեմ Խաղաղութեան Իշխան Գալիլիոյ փոթորկած Ծովուն հրամայեց, մեծ զօրութեամբ պիտի կանգնի ու սաստէ նաև մարդկային կիրքերու մոլեգին ծովը, ըսելով՝ «Դադարէ՛, լո՛ւռ կեցիր». և որոշեալ ժամանակին մէջ Նեղութեան շրջանը պի-

տի վերջանայ, ու երբ հետեւանք մեծ խաղաղութիւն մը պիտի ըլլայ։ Այն ատեն մոլեգնած ու կատաղի տարրերը պիտի ճանչնան «Եհովայի Օծեալ»ին իշխանութիւնը. «Տիրոջը փառքը պիտի յայտնուի, ու ամէն մարմին միատեղ պիտի տեսնեն զայն»։ և այս կերպով սկսած Քրիստոսի տիրապետութեան շրջանին՝ «աշխարհի բոլոր ազգերը պիտի օրհնուին»։— Անգեայ Բ. 6, 7։

Այն ատեն մարդիկ պիտի տեսնեն թէ այն՝ ինչ որ իրենք բարեշրջութեան կամ բնական զարգացման և «Ուղեղի Դար»ու ուշիմութեանը վերագրած էին՝ արդարև, աշխարհի օրհնութեան համար «պատրաստութեան օր»ուան մէջ, Եհովայի փայլակներուն տուած լոյսն է եղեր պարզապէս։ (Սաղմ. ՀԷ. (18)։ Բայց ներկայիս միայն սուրբերը, երկնային իմաստութեան տիրացողները կրնան տեսնել ու հասկնալ զայն. ինչու որ «Տիրոջը գաղտնիքը իրմէ վախցողներուն հետ է, ու Իր ուխտը անոնց կը սորվեցնէ»։ (Սաղմ. ԻԵ. 14)։ Եւ մինչդեռ ընդհանուր գիտութիւնը շատցած է, փառք Աստուծոյ կարգադրութեանը, որ Իր որդիները Իր ծրագիրները ըմբռնելու և «Տէր Յիսուս Քրիստոսի գիտութեանը մէջ պարապ և անպտուղ ըլլալու» ո՛և է պատճառ մը չունին. ու Անոր Խօսքին ու ծրագիրներուն նկատմամբ իրենց ստացած ծանօթութեամբը կրնան զանազանել Աստուծոյ Խօսքը հակառակ մարդկային դատարկ փիլիսոփայութիւններն ու յիմարական աւանդութիւնները ու ձեռնպահ մնալ անոնցմէ։

Մարդուն ստեղծագործութեանը նկատմամբ Աստուածաշունչի տուած լուսաբանութիւնը այն է՝ թէ Աստուած զայն կատարեալ և ուղիղ ստեղծեց, իբրև Իր երկնային պատկերը. թէ՝ մարդը այլևայլ խարէութեանց ետևէ ինկաւ ու ինքզինք ապականեց

(Ծննդ. Ա. 27 ։ Հռովմ. Ե. 12 ։ Ժողով. Է. 29)․ Թէ՝ բոլորն ալ մեղաւորներ ըլլալով՝ ցեղը ինքզինքին օգնելու անկարող էր, և ո՛չ ոք կրնար ո՛ևէ կերպով փրկել իր եղբայրը՝ Աստուծոյ Փրկանք մը վճարելով (Սաղմ. ԽԹ. 7, 15)․ Թէ՝ Աստուած Իր գթասըրտութեամբն ու սիրովը այդ բանը նախապէս հոգացած էր․ Թէ՝ ատոր համեմատ՝ Աստուածորդին մարդու մը վերածուեցաւ ու մարդուն Փրկանքը վճարեց․ Թէ՝ իբր վարձատրութիւն այդ զոհագործութեան, և իբր անհրաժեշտութիւն Քաւութեան մեծ գործին լրացման՝ Նա խիստ բարձրացուեցաւ ու Աստուածային բնութեան տիրացաւ․ և Թէ՝ Նախասահմանեալ ժամանակին մէջ Նա պիտի իրականացնէ ցեղին վերահաստատութիւնը, վերադարձնելով ըսկըզբնական կատարելութիւնը իր պատկանեալ բոլոր օրհնութիւններով մէկտեղ ։ Ասոնք բացորոշ կերպով կը քարոզուին Ս. Գրոց մէջ՝ սկիզբէն մինչև վերջը, և Բարեշրջութեան գաղափարը հիմնապէս կը ժխտեն․ և կամ, ուրիշ խօսքով՝ այս նման «սուտանուն գիտութեան ունայնաբանութիւններ»ը բուռն և անհաշտ կերպով կը հակառակին Աստուծոյ Խօսքին ։



# ԳԼՈՒԽ Ժ.

## ՀՈԳԵՂԷՆ ԵՒ ՄԱՐՄՆԵՂԷՆ ԲՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԱՆՋԱՏ ԵՒ ՈՐՈՇ

Հասարակ Թիւրիմացութիւնները.—Երկրային կամ Մարդկային և Երկնային կամ Հոգեղէն Բնութիւնները.—Երկրային Փառք և Երկնային Փառք.—Հոգեղէն էակներու Նկատմամբ Աստուածաշունչին Վկայութիւնը.—Մահկանացութիւն և Անմահութիւն.—Կրնա՞ն Մահկանացու էակները Յաւիտենական Կեանք Ունենալ.—Արդարութիւնը Շնորհաց Բաշխումին մէջ.—Ենթադրական Սկըզբունք մը Քննուած.—Կատարելութեան մէջ Բազմազանութիւն.—Աստուծոյ Գերագոյն Իրաւունքները.—Աստուծոյ Մարդուն Համար Ըրած Կանխահոգածութիւնը Գոհացուցիչ Բաժին մ'է.—Քրիստոսի Մարմնոյն Ընտրութիւնը.—Ի՛նչպէս Իրականացած է Անոնց Բնութեան Փոփոխութիւնը։

*ԹԵՐԱՆԱԼՈՎ տեսնել թէ Աստուած Իր Ծրագրին մէջ ընդհանուր մարդկութեան համար դէպի իրենց նախկին վիճակին դառնալու Վերահաստատութիւն մը—Եդեմի մէջ կորսուած մարդկային կատարելութիւն—տնօրինած է, և թէ Քրիստոնէական Եկեղեցին, իբր բացառութիւն այս ընդհանուր Ծրագրին՝ բնութեան փոփոխութիւն մը պիտի ունենայ, մարդկայինէն դէպի հոգեղէն՝ Քրիստոնեաները ընդհանրապէս ենթադրած են թէ հոգեղէն բնութեան հասնողներէն ի զատ ո՛չ ոք պիտի փրկուի։ Աստուածաշունչը ընդհակառակը, աշխարհի բոլոր ընտա-*

նիքներուն կենաց օրհնութեան ու վերահաստատութեան խոստումներ տալով հանդերձ՝ Աւետարանական Դարու տեւողութեան հաւաքուող Եկեղեցիին միայն հոգեղէն բնութեան փոխուելու առաջարկութիւն մը և խոստում մը կ'ընէ. մինչդեռ չէ կարելի գտնել համար մը՝ որ ուրիշներու համար այս կարգի յոյսեր պաշտպանէ:

Եթէ մարդկութեան զանգուածները փրկուին բոլոր անկումէն, տկարութենէն, ցաւէն, թշուառութենէն ու մահէն, որոնք մեղաց արդիւնքն էին՝ ու անկումէն դէպի առաջուայ մարդկային կատարելութեան վիճակին մէջ վերականգնուին, անոնք նո՛յնքան իրապէս ու ամբողջովին փրկուած պիտի ըլլան այն անկումէն, որքան անոնք, որոնք Աւետարանական Դարու մասնաւոր «վերին կոչ»ին ներքև «Աստուածային բնութեան հաղորդ պիտի ըլլան»:

Կատարեալ մարդու մը իրական յատկանիշները ճշդրիտ կերպով չկարենալ ըմբռնելը, նոյնպէս եւ մահկանացութիւն և անմահութիւն աստուածքներուն սխալ ըմբռնումը, ու արդարութեան սխալ գաղափարները, հաւաքաբար նպաստած են այս սխալին, ու կնճռոտած շատ մը համարներ, որոնք ինքնին դիւրըմբռնելի են: Այն տեսակէտը, թէ աշխարհի վրայ տեսնուած մարդուն բոլոր յատկանիշները միայն մասամբ զարգացած մարդը կը ներկայացնեն, որը կատարելութեան հասնելու համար պէտք է հոգեղէնի վերածուի՝ հասարակ ըմբռնում մ'է, որը սակայն Ս. Գրոց ո՛չ մէկ համարով կարելի է վաւերացնել: Այս տեսակէտը կը խառնաշփոթէ Աստուածաշունչը, փոխանակ յառաջ բերելու այն համաձայնութիւնն ու գեղեցկութիւնը, որը «Ճշմարտութեան Խօսքը ուղիղ բացատրել»էն յառաջ կուգայ:

Աստուածաշունչը կ'ուսուցանէ թէ միմիայն երկու կատարեալ մարդիկ եղած են—Ադամ և Յիսուս։ Ադամ Աստուծոյ պատկերովը ստեղծուած էր. այսինքն՝ տրամաբանելու նոյնանման մտաւոր զօրութիւններով, յիշողութեամբ, դատելու կարողութեամբ և կամքով, նաև արդարութեան, մարդասիրութեան, սիրոյ ևն.ի մտաւորական յատկութիւններով։ «Երկրէն, երկրային՝» նա Հողեղէն էակներու երկրային պատկեր մ'էր, նոյնանման յատկութիւններով, թէև ատոնց մէջ աստիճանով, սահմանով և մեծութեամբ անոնցմէ խիստ կը տարբերէր։ Մարդը ա'յնքան Աստուծոյ պատկերն է, որ Նա կրնայ նո'յնիսկ անկեալ մարդուն ըսել, «Եկէ՛ք Վիճաբանինք (տրամաբանենք. Տե'ս Անգ. Թարգմ.)»։

Ինչպէս որ Եհովան ամէն բաներու վրայ կը տիրապետէ, նոյնպէս ալ մարդը աշխարհային ամէն բաներու վրայ իշխան դրուած էր—Մեր նմանութեանը պէս, թող ծովու ձուկերուն և երկինքի թռչուններուն ու անասուններուն ևն. վրայ իշխէ։ (Ծննդ. Ա. 26. Տե'ս Անգ. Թարգ.)։ Մովսէս Ծննդոց Ա. 31ին մէջ կ'ըսէ մեզ թէ Աստուած ճանչցաւ Իր բրած—ո'չ թէ պարզապէս ստեղծելու սկսած՝ հապա ամբողջացուցած—մարդը, ու Աստուած Իր ստեղծած արարածը «շատ բարի», այսինքն՝ կատարեալ նկատեց, որովհետև Աստուծոյ համար Իր դիտակից արարածներուն մէջ կատարելութենէ պակաս եղող ո'չ մէկ բան շատ բարի է։

Մարդուն ստեղծուած ժամանակուայ կատարելութիւնը Սաղմ. Ը. 5—8ին մէջ արտայայտուած է. «Քիչ մը վար ըրիր զանիկա հրեշտակներէն, փառքով ու պատուով պսակեցիր զինքը. Քու ձեռացդ գործքերուն վրայ իշխան ըրիր զանիկա. ամէն բան անոր ոտքերուն տակը դրիր. բոլոր ոչխարները ու

արջառները, նաև վայրի անասունները, երկինքի թռչունները ու ծովուն ձուկերը»: Ոմանց կողմանէ՝ որոնք կուզեն Աստուածաշունչին բարեշրջութեան ուսուցման գոյն տալ, թելադրուած է թէ Եբր. Բ. 7րն մէջ յիշուած «քիչ մը» ասացուածքը, քիչ մը ժամանակ վար նշանակութեամբ թերևս ըմբռնուի, և ո՛չ թէ հրեշտակներէն աստիճանով քիչ մը վար: Սակայն, այսպիսի մեկնաբանութեան ո՛չ իրաւասութիւն և ո՛չ ալ պատճառ գոյութիւն ունի: Ասիկա Սաղմ. Ը. 5էն կրկնում մ'է, ու Եբրայեցերէն և Յունարէն բնաբաններու քննադատական բաղդատութիւն մը, անոր նշանակութեան ո՛չ մէկ կասկած կը թողու: Բացայայտ կերպով արտայայտուած գաղափարը՝ հրեշտակներէն աստիճանով քիչ մը վար ըլլալն է:

Դաւիթ՝ Սաղմոսին մէջ, մարդուն կ'ակնարկէ իր սկզբնական վիճակին մէջ, ու կանխագուշակութեամբ կը ծանուցանէ թէ Աստուած մարդը Իր պատկերովը՝ ու իբր երկրի թագաւորը ունենալու Իր սկզբնական ծրագիրը չէ լքած. և թէ՝ Նա պիտի յիշէ զայն, ու միևնոյն վիճակին բարձրացնէ:

Առաջեալը Եբր. Բ. 7րն մէջ միևնոյն իրողութեան շուրջ կը հրաւիրէ մեր ուշադրութիւնը—թէ Աստուծոյ սկզբնական նպատակը լքուած չէ. թէ մարդը որ սկիզբէն վսեմ ու կատարեալ էր, երկրի թագաւորը, պիտի յիշուի ու այցելուի և վերականգնուի: Ու ապա կ'աւելցնէ, Մենք դեռ չենք տեսներ այս խոստացեալ Վերականգնումը, սակայն դէպի անոր իրականացումը առնուած Աստուծոյ առաջին քայլը կը տեսնենք: Մենք Յիսուսը կը տեսնենք՝ մարդկային կատարելութեան փառքով ու պատուով պսակուած, որպէսզի Նա իբրև յարմար Փրկանք մը և կամ մարդկութեան փոխանորդը, Աստուծոյ շնորհքովը

*ամէնուն համար մահ ճաշակէ, ու այս կերպով բոլոր կորուսած բաներուն Վերականգնումի ճանապարհը պատրաստէ։* Ռօթըրհէմ՝ *ամենախղճամիտ Թարգմանիչներէն մին, այս համարը հետեւեալ կերպով կը Թարգմանէ —*

*«Ի՞նչ է մարդը՝ զոր Դուն կը յիշես,*
*Եւ կամ մարդու որդին՝ որուն կ'այցելես.*
*Դուն զայն պատգամաբերներէն* քիչ մը աւելի պզտիկ ըրիր.
*Փառքով ու պատուով զայն պսակեցիր,*
*Ու զայն ձեռագործներուդ վրայ նշանակեցիր»։*

*Ո՛չ ալ աստիճանով քիչ մը վար ըրուածքը քիչ մը նուազ կատարեալ պէտք է ըմբռնուի։ Արարած մը կրնայ կատարեալ ըլլալ, սակայն ուրիշէ մը աւելի ստորին մակարդակի վրայ. այսպէս, կատարեալ ձի մը աւելի ցած պիտի ըլլայ, քան կատարեալ մարդ մը, ևն.։ Զանազան բնութիւններ կան, կենդանի կամ անկենդան։ Ասիկա հետեւեալ աղիւսակով կ'ուզենք պատկերացնել.*

| Երկնային կամ Հոգեղէն Էակաց Դասերը | Աշխարհային կամ Կենդանի Էակաց Դասերը | Բուսական Աշխարհի Դասերը | Հանքային Աշխարհի Դասերը |
|---|---|---|---|
| Աստուածային | Մարդկային | Ծառեր | Ոսկի |
| ——— | Անասուն | Թփեր | Արծաթ |
| ——— | Թռչուն | Խոտեր | Պղինձ |
| Հրեշտակային | Ձուկ | Մամուռներ | Երկաթ |

*Վերոյիշեալ հանքերուն իւրաքանչիւրը կրնայ մաքուր ըլլալ, սակայն ոսկին ամենէն բարձր կը դասուի։ Թէև բոյսերուն իւրաքանչիւր դասերը կարելի է իրենց կատարելութեան բարձրացնել, սակայն ա-*

արջառները, նաև վայրի անասունները, երկինքի թռչունները ու ծովուն ձուկերը»։ Ոմանց կողմանէ՝ որոնք կուզեն Աստուածաշունչին բարեշրջութեան ուսուցման գոյն տալ, թելադրուած է թէ Եբր. Բ. 7ին մէջ յիշուած «քիչ մը» ասացուածքը, քիչ մը ժամանակ վար նշանակութեամբ թերևս ըմբռնուի, և ո՛չ թէ հրեշտակներէն աստիճանով քիչ մը վար։ Սակայն, այսպիսի մեկնաբանութեան ո՛չ իրաւասութիւն և ո՛չ ալ պատճառ գոյութիւն ունի։ Ասիկա Սաղմ. Ը. 5էն կրկնում մ'է, ու Եբրայեցերէն և Յունարէն բնաբաններու քննադատական բաղդատութիւն մը, անոր նշանակութեան ո՛չ մէկ կասկած կը թողու։ Բացայայտ կերպով արտայայտուած գաղափարը՝ հրեշտակներէն աստիճանով քիչ մը վար ըլլալն է։

Դաւիթ՝ Սաղմոսին մէջ, մարդուն կ'ակնարկէ իր սկզբնական վիճակին մէջ, ու կանխագուշակութեամբ կը ծանուցանէ թէ Աստուած մարդը Իր պատկերովը՝ ու իբր երկրի թագաւորը ունենալու Իր սկզբնական ծրագիրը չէ լքած. և թէ՝ Նա պիտի յիշէ զայն, ու միևնոյն վիճակին բարձրացնէ։

Առաքեալը Եբր. Բ. 7ին մէջ միևնոյն իրողութեան շուրջ կը հրաւիրէ մեր ուշադրութիւնը—թէ Աստուծոյ սկզբնական նպատակը լքուած չէ. թէ մարդը որ սկիզբէն վսեմ ու կատարեալ էր, երկրի թագաւորը, պիտի յիշուի ու այցելուի և վերականգնուի։ Ու ապա կ'աւելցնէ, Մենք դեռ չենք տեսներ այս խոստացեալ Վերականգնումը, սակայն դէպի անոր իրականացումը առնուած Աստուծոյ առաջին քայլը կը տեսնենք։ Մենք Յիսուսը կը տեսնենք՝ մարդկային կատարելութեան փառքով ու պատուով պսակուած, որպէսզի Նա իբրև յարմար Փրկանք մը և կամ մարդկութեան փոխանորդը, Աստուծոյ շնորհքովը

ամէնուն համար մահ ճաշակէ, ու այս կերպով բոլոր կորսուած բաներուն վերականգնումի ճանապարհը պատրաստէ: Րօթըրհէմ՝ ամենախղճամիտ Թարգմանիչներէն մին, այս համարը հետեւեալ կերպով կը թարգմանէ —

«Ի՞նչ է մարդը՝ զոր Դուն կը յիշես,
Եւ կամ մարդու որդին՝ որուն կ'այցելես.
Դուն զայն պատգամաբերներէն քիչ մը աւելի պզտիկ
ըրիր.
Փառքով ու պատուով զայն պսակեցիր,
Ու զայն ձեռագործներուդ վրայ նշանակեցիր»:

Ո՛չ ալ աստիճանով քիչ մը վար ըսուածքը քիչ մը նուազ կատարեալ պէտք է ըմբռնուի: Արարած մը կրնայ կատարեալ ըլլալ, սակայն ուրիշէ մը աւելի ստորին մակարդակի վրայ. այսպէս, կատարեալ ձի մը աւելի ցած պիտի ըլլայ, քան կատարեալ մարդ մը, ևն.: Զանազան բնութիւններ կան, կենդանի կամ անկենդան: Ասիկա հետեւեալ աղիւսակով կ'ուզենք պատկերացնել.

| Երկնային կամ Հոգեղէն Էակաց Դասերը | Աշխարհային կամ Կենդանի Էակաց Դասերը | Բուսական Աշխարհի Դասերը | Հանքային Աշխարհի Դասերը |
|---|---|---|---|
| Աստուածային | Մարդկային | Ծառեր | Ոսկի |
| ——— | Անասուն | Թփեր | Արծաթ |
| ——— | Թռչուն | Խոտեր | Պղինձ |
| Հրեշտակային | Զեռուն | Մամուռներ | Երկաթ |

Վերոյիշեալ հանքերուն իւրաքանչիւրը կրնայ մաքուր ըլլալ, սակայն ոսկին ամենէն բարձր կը դասուի: Թէեւ բոյսերուն իւրաքանչիւր դասերը կարելի է իրենց կատարելութեան բարձրացնել, սակայն ա-

*նոնք դեռ բնութեամբ և կարգով պիտի տարբերին իրարմէ։ Նոյնպէս ալ կենդանիները. եթէ իւրաքանչիւր սերունդ կատարելութեան հասնի, դարձեալ տեսակներու զանազանութիւն պիտի ըլլայ*։ Նոյնպէս ալ Հոգեղէն էակներու դասերը թէև կատարեալ, սակայն բնութեամբ և տեսակով իրարու բաղդատմամբ աւելի բարձր և կամ աւելի ցած են։ Հոգեղէն բոլոր բնութեանց մէջ Աստուածային բնութիւնը բարձրագոյնը և գերագոյնն է։ Քրիստոս՝ Իր յարութեան ժամանակ «ա՛յնչափ աւելի լաւ» եղած էր կատարեալ հրեշտակներէն, որքան որ Աստուածային բնութիւնը բարձր է հրեշտակային բնութենէն։—Եբր. Ա. 3—5։*

*Ուշադրութեամբ նկատի առէք, թէ թէև վերոյիշեալ աղիւսակին մէջ յիշուած դասերը տարբեր ու անջատ են, սակայն անոնց մէջ կարելի է բաղդատութիւն մը ընել. զորօրինակ՝ հանքային ամենէն բարձր դասը ստորադաս, կամ* քիչ մը աւելի վար *է, քան ամենաստորին կարգի բուսականութիւնը՝ որովհետև բուսականութեան մէջ կեանք կայ։ Իսկ բարձրագոյն դասու բուսականութիւնը* քիչ մը աւելի վար *է, քան ամենաստորին դասու կենդանական կեանքը, որովհետև կենդանական կեանքը, նոյնիսկ իր ստորնագոյն ձևին մէջ, բուսականաչափ գիտակցութիւն*

---

* *Բնութիւն* բառը երբեմն փոխաբերաբար կը գործածուի. զորօրինակ՝ երբ կ'ըսուի թէ շունը *վայրենի բնութիւն* մը ունի, կամ թէ ձին *ազնիւ բնութիւն* մը ունի, և կամ *վատ բնութեան* տէր է։ Բայց այս պարագային տակ անիկա միայն մէկուն *բնաւորութիւնը* կը նշանակէ բաղդատմամբ ուրիշներուն, որով բառին բովանդակ նշանակութեամբը *բնութեան* չի վերաբերիր։

ունի զգալու իր գոյութիւնը։ Նոյնպէս ալ մարդը․ որը թէեւ կենդանական կամ երկրային էակաց բարձրագոյնն է, սակայն «հրեշտակներէն քիչ մը վար» է, որովհետեւ հրեշտակները հոգեւոր կամ երկնային էակներ են։

Ներկայիս մեր տեսած մարդուն՝ որը մեղքով ըստորնացած է, ու կատարեալ մարդուն միջեւ զոր Աստուած Իր պատկերովը ստեղծեց՝ զարմանալի տարբերութիւն մը կայ։ Մեղքը հետզհետէ փոխած է անոր կերպարանքը, նոյնպէս ալ անոր նկարագիրը։ Բազմացած սերունդները, տգիտութեան, անառակութեան եւ ․ ընդհանուր անկումի պատճառաւ ա՛յնքան նսեմացած ու ապականած են, որ մեծամասնութեանը մէջ Աստուծոյ նմանութիւնը գրեթէ ջնջուած է։ Բարոյական եւ մտաւորական յատկութիւնները թզուկացած են․ իսկ կենդանական բընազդները, անկանոն կերպով զարգացած՝ այլեւս բարձրագոյն բնազդներէ չեն հաւասարակշռուիր։ Մարդը ա՛յնքան մեծ համեմատութեամբ կորսնցուցած է ֆիզիքական զօրութիւնը, որ բժշկական գիտութեան ընծայած բոլոր օգնութիւններով հանդերձ, իր միջին կեանքը գրեթէ երեսուն տարի է․ մինչդեռ սկիզբէն նա 930 տարի ապրեցաւ միեւնոյն պատիժին ներքեւ։ Բայց թէեւ իր մէջ գործող մեղքին, ու անոր պատիժը եղող մահուան պատճառաւ ապականած եւ ստորնացած է, սակայն Քրիստոսի Հազարամեայ տիրապետութեան ժամանակ ու միջոցաւ նա պիտի վերահաստատուի իր նախնական մտաւորական ու ֆիզիքական կատարելութեան, նոյնպէս եւ փառաց, պատուոյ ու իշխանութեան մէջ։ Քրիստոսի միջոցաւ վերահաստատուելիք բաները անոնք են, որոնք Ադամի մեղանչումով կորսուեցան։ (Հըռովմ․ Ե․ 18, 19)։ Մարդը երկնային դրախտ մը չը

կորսնցուց, հապա երկրային դրախտ մը։ Մահուան պատիժին ներքև Նա հոգեղէն գոյութիւն մը չկորսնցուց, այլ մարդկային գոյութիւն մը. ու ինչ որ կորսուած էր, Փրկչին միջոցաւ գտնուեցաւ. Որը ըսաւ թէ Ինքը եկաւ կորսուածը փնտռելու ու փրկելու։—Ղուկ. ԺԹ. 10։

Վերոյիշեալին իբր յաւելուած, մենք ապացոյց ունինք թէ կատարեալ մարդը հոգեղէն էակ չէ։ Մեզի ըսուած է թէ մեր Տէրը, մարդ ըլլալու համար Իր փառքը ձգելէ առաջ, «Աստուծոյ կերպարանքը ունէր»—հոգեղէն կերպարանք մը, հոգեղէն էակ մը. բայց մարդկութեան Փրկագին ըլլալու համար պարտէր մարդ ըլլալ, միևնոյն բնութեամբը, ինչպէս մեղաւորինը, միայն թէ կատարեալ՝ որպէսզի Իր մահուամբը կարենար վճարել անոր փրկութեան փոխարժէք գինը. որով Իր բնութեան փոփոխման պէտքը կ'զգացուէր։ Պօղոս կ'ըսէ մեզ թէ Նա հրեշտակաց բնութիւնը չառաւ, որը Իրենինէն քայլ մը վար էր, հապա թէ Նա երկու քայլ վար եկաւ ու մարդկային բնութիւն ստացաւ—մարդ մը եղաւ. Նա «մարմին եղաւ»։—Եբր. Բ. 16 (Անգլիերէն թարգ.)։ Փիլիպ. Բ. 7, 8։ Յով. Ա. 14։

Նշմարեցէք, թէ ասիկա ո՛չ միայն կ'ուսուցանէ թէ հրեշտակային բնութիւնը հոգեղէն էակաց միակ կարգը չէ, բայց թէ անիկա աւելի ստորին բնութիւն մ'է, քան այն՝ զոր մեր Տէրը ունէր մարդ ըլլալէ առաջ. ու այն ժամանակ ներկայինին չափ բարձր չէր, որովհետև «Աստուած զԱնիկա խիստ բարձրացուց», իբր վարձատրութիւն մարդուն կամաւոր Փրկագինը ըլլալու Իր հնազանդութեանը։ (Փիլիպ. Բ. 8, 9)։ Նա ներկայիս հոգեղէն էակի ամենաբարձր դասէն է, Աստուածային (Եհովայի) բնութեան բաժանորդ մը։

Բայց այսպէսով ո՛չ միայն Աստուածային, Հրեշտակային և մարդկային բնութեանց անջատ և որոշ ըլլալը կ՚ապացուցանենք, հապա ասիկա նաև կ՚ապացուցանէ թէ կատարեալ մարդ մը ըլլալը հրեշտակ մը ըլլալ չի նշանակեր, ինչպէս որ հրեշտակային բնութեան կատարելութիւնը չի նշանակեր թէ հրեշտակները Աստուածային են ու Եհովային հետ Համհաւասար. որովհետև Յիսուս հրեշտակաց բնութիւն չ՚առաւ, հապա ուրիշ բնութիւն մը—մարդոց բնութիւնը. ո՛չ թէ մեր ներկայիս ունեցած անկատար բնութիւնը, այլ կատարեալ մարդկային բնութիւնը: Նա մարդ մը եղաւ. ո՛չ թէ ինկած ու գրեթէ մեռած արարած մը՝ ինչպէս որ մարդիկ ներկայիս են, հապա մարդ մը՝ կատարելութեան լիուլի կորովով:

Դարձեալ, Յիսուս կատարեալ մարդ մը եղած ըլլալու էր, ապա թէ ոչ պիտի չկարենար պահել կատարեալ օրէնքը, որը կատարեալ մարդու մը կարողութեան լիուլի չափն է: Դարձեալ, Նա կատարեալ մարդ մը եղած ըլլալու էր, եթէ ոչ չէր կրնար կատարեալ Ադամի կորսնցուցած կենաց տեղ Փըրկանք (Համապատասխանող գին մը—Ա. Տիմ. Բ. 6) տալ. «Որովհետև Մարդով եղաւ մահը, մարդով ալ նաև մեռելոց յարութիւնը»: (Ա. Կորնթ. ԺԵ. 21): Եթէ Նա ամենապզտիկ չափով անկատար եղած ըլլար, ատիկա պիտի ապացուցանէր թէ Նա դատապարտութեան տակ էր, որով չէր կրնար ընդունելի զոհ մը ըլլալ. ո՛չ ալ կրնար Աստուծոյ Օրէնքը կատարեալ կերպով պահել: Կատարեալ մարդ մը փորձուած, թերացած ու դատապարտուած էր. որով միմիայն կատարեալ մարդ մը կրնար որպէս Փրկիչ վճարել համապատասխան գինը:

Ներկայիս հարցումը որոշ կերպով մեր առջև ունինք տարբեր ձևով մը, այսինքն՝ եթէ Յիսուս մարմնով կատարեալ մարդ մ'էր, ինչպէս որ Աստուածաշունչը ցոյց կուտայ, միթէ ատիկա չ'ապացուցաներ թէ կատարեալ մարդ մը մարդկային, մարմնեղէն էակ մ'է—ո՛չ թէ հրեշտակ մը, հապա հրեշտակներէն քիչ մը վար։ Տրամաբանական այս հետևութիւնը անսխալ է. ասկէ ի զատ, մենք ունինք Սաղմոսերգուին ներշնչուած խօսքը (Սաղմ. Ը. 5—8) և Պօղոս Առաքեալին անոր նկատմամբ ըրած ակնարկութիւնը։—Եբր. 7—9։

Ոչ ալ Յիսուս երկու բնութեանց խառնուրդ մ'էր. մարդկային և հոգեղէն։ Երկու բնութեանց միացումը երկուքէն և ո՛չ մէկը կ'արտադրէ, այլ անկատար, տարասեռ բան մը, որը Աստուածային կարգադրութեանց ատելի է։ Երբոր Յիսուս մարմնի մէջ էր, Նա կատարեալ մարդկային էակ մ'էր. ատկէ առաջ Նա կատարեալ հոգեղէն էակ մ'էր. իսկ Իր յարութենէն ի վեր, Նա դարձեալ կատարեալ հոգեղէն բարձրագոյն կամ Աստուածային դասու էակ մ'է։ Նա Իր երեսնամեայ հասակին (ըստ Օրինաց առնական տարիքին, ու հետևաբար իբրև մարդ նուիրուելու պատշաճ ժամանակին) մահուան նուիրուելու— որ մկրտութեամբը պատկերացուած է—ժամանակն էր որ Աստուածային բնութիւն ժառանգելու իրաւունքը ստացաւ։ (Մատթ. Գ. 16, 17)։ Նա Աստուածային բնութեան նոյնիսկ գրաւը ստանալէ առաջ պարտէր Իր մարդկային բնութեան մինչև ի մահ նուիրման ուխտ մը ընել։ Ու մինչև որ այս նուիրումը իրականապէս չկատարեց, ու իրապէս մինչև ի մահ չզոհաբերեց Իր մարդկային բնութիւնը, մեր Տէրը Յիսուս Աստուածային բնութեան լիուլի ժառանգորդ մը չեղաւ։ Մարդ մը ըլլալէ վերջ Նա մինչև

ի մահ հնազանդ գտնուեցաւ. «ասոր համար Աստուած ալ զԱնիկա խիստ բարձրացուց» Աստուածային բնութեան: (Փիլիպ. Բ. 8, 9): Եթէ այս համարը ճիշդ է, ուրեմն կը հետեւի թէ Նա Աստուածային բնութեան չբարձրացուեցաւ, մինչեւ որ Իր մարդկային բնութիւնը իրապէս զոհաբերուեցաւ—մեռաւ:

Այսպէս, ահա՛ կը տեսնենք թէ Յիսուսի մէջ բնութեանց խառնուրդ չկար, հապա թէ երկու անգամ Նա բնութիւն փոխելու փորձառութիւնը ունեցաւ. նախ՝ հոգեղէնէն դէպի մարդկային, իսկ յետոյ՝ մարդկայինէն դէպի հոգեղէն բնութեան ամենաբարձր, Աստուածային կարգը. եւ իւրաքանչիւր պարագայի մէջ ալ մէկը միւսին համար տրուած էր:

Մարդկային կատարելութեան այս վսեմ օրինակին մէջ, որը մինչեւ մարդկութեան փրկութեան համար զոհաբերուիլը անարատ կանգնեցաւ աշխարհին առջեւ՝ մենք կը տեսնենք այն կատարելութիւնը, ուրկէ մեր ցեղը Ադամով ինկաւ, եւ որուն մէջ սակայն կրկին պիտի վերականգնի: Մեր Տէրը Յիսուս, մարդուն Փրկանքը եղած ժամանակ անոր կորսնցուցածին տեղը համհաւասար գին մը տուաւ. որով բոլոր մարդկութիւնը Քրիստոսի վրայ ունեցած հաւատքի ու Անոր պահանջներուն հնազանդութեան միջոցաւ, կարող պիտի ըլլայ դարձեալ ստանալ, ո՛չ թէ հոգեղէն՝ այլ փառաւոր, կատարեալ մարդկային բնութիւն մը—անիկա՝ զոր կորսուած էր:—Ղուկ. ԺԹ. 10:

Կատարեալ մարդուն կատարեալ կարողութիւնները եւ զօրութիւնները կարելի է անսահմանօրէն մարզուին ու զարգանան նոր եւ հետաքրքրական այլազան նպատակներու շուրջ, ու գիտութիւնը եւ հմտութիւնը կարելի է մեծապէս բազմապատկուին, սակայն գիտութեան կամ զօրութեան այս նման ո՛չ

մէկ յաւելումն կարող պիտի ըլլայ ազդել բնութեան փոփոխութեան վրայ, և կամ զայն աւելի կատարեալ ընել: Անիկա միմիայն պիտի ընդարձակէ ու զարգացնէ մարդկային կատարեալ զօրութիւնները: Գիտութեան ու հանճարի յաւելումը, անտարակոյս մարդուն յաւիտենական երանաւէտ առանձնաշնորհը պիտի ըլլայ. սակայն նա դարձեալ մարդ պիտի մնայ, միայն թէ պիտի սորվի աւելի լեցուն կերպով գործածել իր արդէն տիրացած մարդկային բնութեան զօրութիւնները: Անոր լայն սահմաններէն անդին, նա չի կրնար յուսալ՝ ո՛չ ալ պիտի փափաքի յառաջանալ, որովհետև իր փափաքները իր զօրութեանց սահմանին մէջ պարփակուած պիտի ըլլան:

Թէև Յիսուս որպէս մարդ նմոյշ մ'էր կատարեալ մարդկային բնութեան, որուն պիտի վերականգնին մարդկային զանգուածները՝ սակայն Իր յարութենէն ի վեր Նա Աստուածային փառաւոր բնութեան նմոյշ մ'է, որուն՝ յաղթող Եկեղեցին յարութեան ժամանակ Իր հետ բաժնեկից պիտի ըլլայ:

Որովհետև ներկայ Դարը գլխաւորաբար այս դասակարգի զարգացմանը յատկացուած է՝ որուն բնութեան փոփոխութիւն մը խոստացուած է, և որովհետև Առաքելական թուղթերը այս «փոքրիկ հօտ»ին դաստիարակութեանը համար յատկացուած էին, պէտք չէ ըմբռնուի թէ Աստուծոյ Ծրագիրները այս ընտրեալ խումբի ամբողջացումովը կը վերջանան: Ո՛չ ալ հակառակ ծայրահեղութեան դիմելու ենք, ենթադրելով թէ Աստուածային բնութեան, հոգեղէն մարմիններու ևն.ի ասոնց տրուած մասնաւոր խոստումները, Աստուծոյ նպատակն է ընդհանուր մարդկութեան շնորհել: Ասոնց կը պատկանին «խիստ մեծ ու թանկագին խոստումները», որոնք բոլոր մարդկութեան տրուած թանկագին խոստում-

*ներէն անջատ ու բարձր են։ Ճշմարտութեան խօսքը կարենալ ուղիղ բացատրելու համար, պարտինք նըկատել թէ Աստուածաշունչը Աստուածային բնութեան կատարելութիւնը «փոքրիկ հօտ»ին կը վերագրէ, իսկ մարդկային բնութեան կատարելութիւնը՝ վերահաստատուած մարդկութեան. երկու իրարմէ տարբեր բաներ։*

*Ուրեմն աւելի մանրամասնօրէն հարցնենք թէ ի՞նչ են հոգեղէն էակները, ի՞նչ են իրենց զօրութիւնները, ու ի՞նչ օրէնքներով կը կառավարուին։ Շատեր՝ որոնք չեն կրնար ըմբռնել հոգեղէն էակի մը բնութիւնը, կը խորհին թէ անիկա պարզ առասպել մը ըլլալու է, թէ՝ այս նիւթին շուրջ շատ նախապաշարումներ գոյութիւն ունին։ Սակայն Պօղոս այս տեսակ գաղափարներով տոգորուած ըլլալ չի թըւիր։ Թէև նա կը յայտնէ թէ մարդկային էակը չի կրնար բարձր, հոգեղէն բնութիւնը ըմբռնել (Ա. Կորնթ. Բ. 14), սակայն առասպելական կամ նախապաշարմանց գաղափարներու դէմ պաշտպանելու համար, որոշ կերպով կ՚ըսէ թէ հոգեղէն մարմին կայ, ինչպէս որ շնչաւոր (մարդկային) մարմին կայ. երկնային մարմին մը կայ՝ ինչպէս որ երկրային մարմին մը կայ. նոյնպէս ալ երկնաւոր փառք մը՝ ինչպէս որ երկրային փառք մը. Երկրայինին փառքը, ինչպէս որ տեսանք՝ նախամարդուն, Ադամին մեղքովը կորսուեցաւ. և որը մարդկութեան պիտի վերադարձուի Տէր Յիսուսի ու Իր Հարսին (Քրիստոսին, Գլուխին ու Մարմինին) միջոցաւ, Հազարամեայ տիրապետութեան ժամանակ։ Երկնային փառքը դեռ անտեսանելի է, բացի այն պարագայէն, երբ ան Ս. Հոգիէն, Խօսքին միջոցաւ, հաւատքի աչքին կը յայտնուի։ Այս փառքերը անջատ և որոշ են։ (Ա. Կորնթ. ԺԵ. 38—49)։ Մասամբ գիտենք՝*

Թէ ի՛նչ է շնչաւոր, աշխարհային մարմինը, որովհետեւ մեր ներկայիս ունեցածը այս կարգի է. սակայն մենք միայն վերիվերոյ կերպով կրնանք հաշուել անոր կատարելութեան փառքը: Ան՝ մարմին, արիւն և ոսկոր է. որովհետեւ «մարմինէն ծնածը մարմին է»: Եւ քանի որ երկու տարբեր տեսակ մարմիններ կան, գիտենք թէ հոգեղէնը՝ ինչպէս որ ալ ըլլայ, մարմինէ, արիւնէ և ոսկորներէ չի բաղկանար. անիկա երկնային է, հոգեղէն—«հոգիէն ծնածը հոգի է»: Բայց հոգեղէն մարմինին ինչ ըլլալը չենք գիտեր, որովհետեւ «տակաւին յայտնի չէ թէ ինչ պիտի ըլլանք, բայց...Անոր պէս պիտի ըլլանք»—մեր Տէր Յիսուսին նման:—Յովհ. Գ. 6: Ա. Յովհ. Գ. 2:

Մենք՝ բացի Աստուծոյ Որդիէն, ուրիշ ո՛եւէ հոգեղէն կամ շնչաւոր էակի մը մէկ բնութենէն դէպի միւսը փոխուելուն ո՛եւէ արձանագրութիւնը չունինք. և ասիկա բացառութիւն մ'էր, արտակարգ նպատակի մը համար: Երբ Աստուած ստեղծեց հրեշտակներն ու մարդիկը, անտարակոյս, մտադրած էր որպէսզի հրեշտակները յաւիտեան հրեշտակ մնան ու մարդիկ ալ՝ մարդ. իւրաքանչիւրը իր մակարդակին վրայ կատարեալ ըլլալով: Վերջապէս, Աստուածաշունչը ուրիշ տարբեր նպատակի մասին ակնարկութիւն չ'ըներ: Ինչպէս որ անկենդան ըստեղծագործութեան մէջ հաճելի ու գրեթէ անվերջ զանազանութիւն մը կայ, նոյնպէս ալ կենդանի և գիտակից ստեղծագործութեան մէջ միեւնոյն զանազանութիւնը իրենց կատարելութեանը մէջ կարելի է: Ամեն արարած իր կատարելութեանը մէջ փառաւոր է. սակայն, ինչպէս որ Պօղոս կ'ըսէ, երկնաւորներուն փառքը ուրիշ է և երկրաւորներուն փառքը ուրիշ ու տարբեր:

*Մեր Տէր Յիսուսի յարութենէն վերջը Իր նըկատմամբ գրուած իրականութիւնները քննելով, նոյնպէս և հրեշտակներունը՝ որոնք ալ հոգեղէն էակներ են, այսպէս «Հոգևոր բաները հոգևորներու հետ բաղդատելով» (Ա. Կորնթ. Բ. 13 Անգ. Թարգ.), կրնանք հոգեղէն էակներու շուրջ ընդհանուր ծանօթութիւն մը ստանալ: Առաջին.—ուրեմն հրեշտակները կրնան ներկայ ըլլալ, ու յաճախ ալ ներկայ են՝ թէև աներևոյթ: «Տիրոջը հրեշտակը իր բանակը Անկէ վախցողներուն չորս կողմը կը դնէ», «Չէ՞ որ անոնք ամէնը սպասաւորող հոգիներ են, որոնք սպասաւորութեան համար կը ղրկուին անոնց համար՝ որ փրկութիւն պիտի ժառանգեն»: (Սաղմ. ԼԴ. 7: Եբր. Ա. 14): Արդեօք տեսանելի՞, թէ անտեսանելի կերպով ծառայած են: Անտարակոյս, վերջինով: Եղիսէ՝ Ասորւոց բանակով մը շրջապատուած էր. իր ծառան կը վախնար. Եղիսէ Տիրոջը աղօթեց. և ահա՛ ծառային աչքերը բացուեցան, ու նա զիրենք շրջապատող լեռները հրեղէն կամ հրանըման կառքերով և ձիաւորներով լեցուն տեսաւ: Դարձեալ, մինչդեռ հրեշտակը Բաղաամին անտեսանելի էր, սակայն իր աւանակին աչքերը բացուած ըլլալուն համար տեսաւ զայն:*

*Երկրորդ.—Հրեշտակները կրնան շնչաւոր մարմին ստանալ ու* իբր *մարդ երևնալ: Տէրը և երկու հրեշտակներ այսպէս երևցան Աբրահամին, որը անոնց ընթրիք մը պատրաստեց, որմէ անոնք կերան: Նախ Աբրահամ զանոնք 3 մարդիկ ենթադրեց, և անոնց մեկնելուն ժամանակն էր որ ըմբռնեց թէ անոնցմէ մէկը Տէրն էր, իսկ միւս երկուքը, հրեշտակներ՝ որոնք վերջէն Սոդոմ գացին ու Ղովտը ազատեցին: Ծննդ. ԺԸ. 1, 2): Հրեշտակ մը մարդու կերպարանքով Գեդեոնի երևցաւ, որը վերջէն յայտնեց իր*

*խակութիւնը։ Սամփսոնի հօրն ու մօրը հրեշտակ մը երեւցաւ, որոնք զայն մարդ կարծեցին, մինչեւ որ նա սեղանին կրակին մէջէն երկինք վերացաւ։— Դատաւորաց Ժ. 11—22։ ԺԳ. 20։*

*Երրորդ.—Հոգեղէն էակները իրենց սովորական վիճակին մէջ փառաւոր են, ու յաճախ ակնարկուած են որպէս փառաւոր և պայծառ։ Գերեզմանին կափարիչը մէկդի գլորող հրեշտակին տեսքը «փայլակի պէս էր»։ Դանիէլ ալ հոգեղէն էակի մը մէկ նշոյլը տեսաւ, զոր կը նկարագրէ, ըսելով՝ անոր աչքերը կրակի բոցերու պէս, երեսը՝ փայլակի երեւոյթի պէս, ու թեւերը ու ոտքերը՝ փայլուն պղնձի գոյնին պէս, ու իր խօսքերուն ձայնը՝ բազմութեան ձայնին պէս էր։ Որուն առջեւ Դանիէլ իբր մեռած մարդ ինկաւ։ (Դան. Ժ. 6, 10, 15, 17)։ Տարսոնցի Սօղոսն ալ նոյնանման նշոյլ մը տեսաւ Քրիստոսի փառաւորուած մարմնէն, որը կէսօրուայ արեւէն աւելի պայծառ կը փայլէր։ Սօղոս աչքերուն լոյսը կորսնցուց ու գետին փռուեցաւ։*

*Մինչեւ ցարդ տեսանք թէ հոգեղէն էակները իրաւ իրօք փառաւոր են, թէեւ մարդոց անտեսանելի՝ բացի այն պարագայէն, երբ անոնց աչքերը կը բացուին զանոնք տեսնելու, և կամ, երբ անոնք* մարմնով *կը յայտնուին որպէս մարդ։ Այս եզրակացութիւնը աւելի կը հաստատուի, երբ քննենք այս յայտնութեանց մասնաւոր մանրամասնութիւնները։ Տէրը միմիայն Սօղոսի երեւցաւ. իր հետ ճամբորդողները թէեւ ձայնը լսեցին, սակայն ո՛չ ոք տեսան։ (Գործ. Թ. 7)։ Դանիէլի հետ գտնուողներն ալ չտեսան անոր նկարագրած փառաւոր էակը, հապա մեծ վախ մը ինկաւ անոնց վրայ, որոնք փախան ու ծածկուեցան։ Դարձեալ, այս փառաւոր էակը կը յայտնէր, «Պարսից թագաւորութեանը իշխանը 21 օր իմ երե-*

տիս դէմ կեցաւ»։ (Դան. Ժ. 13)։ Մի՞թէ Դանիէլ՝ Տիրոջմէն խիստ սիրուած մարդը՝ մեռեալի մը նման ինկաւ ասոր առջևը, որուն դէմ կեցաւ Պարսից իշխանը 21 օր։ Ի՞նչպէս կրնայ ըլլալ ասիկա։ Անտարակոյս, նա իշխանին փառքով չերևցաւ։ Ո՛չ. կամ այն է որ անհրևոյթ կերպով ներկայ էր անոր հետ, և կամ թէ իբր մարդ երևցաւ։

Մեր Տէրը՝ Իր յարութենէն ի վեր՝ Հոգեղէն էակ մ'է. հետևաբար, այս միևնոյն զօրութիւնները ուրոնք հրեշտակներուն (հոգեղէն էակներուն) մէջ ներկայացուած կը տեսնենք, պէտք է որ Ինքն ալ ունենայ։ Ու ասիկա ճշմարիտ է, ինչպէս որ աւելի ընդարձակ կերպով պիտի տեսնենք յաջորդ գլխուն մէջ։

Այսպէս, ահա՛ մենք կը տեսնենք որ Աստուածաչունչը հոգեղէն ու մարմնեղէն բնութիւնները որպէս անջատ և որոշ բաներ կը նկատէ, ու ո՛և է փաստ չի ներկայացներ, թէ մէկը բարեշրջութեամբ կամ զարգացմամբ միւսին պիտի փոխուի. բայց ընդհակառակը, ան ցոյց կուտայ թէ շատ քիչերը միայն մարդկայինէն Աստուածային բնութեան պիտի փոխուին. Յիսուս՝ անոնց Գլուխը՝ արդէն բարձրացուած է։ Եհովայի Ծրագրին այս նշանաւոր ու մասնաւոր հանգամանքը նշանաւոր և մասնաւոր նպատակի մը համար է, այսինքն, ասոնք իբրև Աստուծոյ գործակատարներ պատրաստել ամէն բաներու Վերահաստատումի ապագայ մեծ գործին համար։

Այժմ քննենք հետևեալ բառերը.

## ՄԱՀԿԱՆԱՑՈՒԹԻՒՆ ԵՒ ԱՆՄԱՀՈՒԹԻՒՆ

Մենք ասոնց ուղիղ նշանակութիւնը խիստ համաձայն պիտի գտնենք անոր հետ՝ զոր սորվեցանք մարդկային ու հոգեղէն էակաց, ու երկրային ու

երկնային խոստումներուն նկատմամբ մեր Աստուածաշունչի ասացուածքներուն իրարու հետ բաղդատութենէն։ Այս բառերուն, սովորաբար խիստ անըստոյգ նշանակութիւններ տրուած են, և անոնց նշանակութեան սխալ ըմբռնումները սխալ գաղափարներ կուտան այն նիւթերուն նկատմամբ որոնց հետ կապակցութիւն ունին, թէ՛ ընդհանուր և թէ՛ Ս. Գրոց գործածութեան մէջ։

**«Մահկանացութիւն»**ը **մահուան կարելիութեան** կացութիւն մը կամ վիճակ մը կը նշանակէ. ո՛չ թէ մահուան վիճակ մը, այլ վիճակ մը՝ ուր մահը **կարելի** է։

**«Անմահութիւն»**ը **մահուան անկարելիութեան** կացութիւն մը կամ վիճակ մը կը ներկայացնէ. ո՛չ թէ միայն մահուընէ զերծ վիճակ մը, այլ վիճակ մը՝ ուր մահը **անկարելիութիւն** մ'է։

**Մահկանացութեան** հասարակ բայց սխալ գաղափարն է՝ դրութիւն մը կամ վիճակ մը, ուր մահը անխուսափելի է. իսկ **անմահութեան** նկատմամբ գոյութիւն ունեցած ընդհանուր կարծիքը աւելի մօտ է ճշմարտութեան։

**Անմահութիւն** բառը **ոչ մահկանացութիւն** կը նշանակէ. որով բառերուն կազմութիւնը իսկ կը յայտնէ անոնց ճշգրիտ նշանակութիւնները։ **Մահկանացութիւն** բառին նկատմամբ գոյութիւն ունեցած սխալ գաղափարէն է որ շատեր շփոթուած են, երբ կ'ուզեն գտնել թէ արդեօք Ադամ իր մեղանչելէն առաջ մահկանացո՞ւ էր թէ անմահ։ Անոնք կը խորհին թէ եթէ նա **անմահ** եղած ըլլար՝ Աստուած պիտի չըսէր, «Անկէ կերած օրդ անշուշտ պիտի մեռնիս». որովհետև անմահ էակի մը համար անկարելի է մեռնիլ։ Ասիկա տրամաբանական եզրակացութիւն մ'է։ Միւս կողմէն, անոնք կ'ըսեն թէ՝ եթէ

Նա մահկանացու եղած ըլլար, ուրեմն ի՞նչպէս կըրնար սպառնալիք կամ պատիժ ըլլալ այն ասացուածքը՝ թէ «Անշուշտ պիտի մեռնիս», քանի որ եթէ մահկանացու էր (ըստ իրենց սխալ նշանակութեան), չէր կրնար մահուընէ խուսափիլ:

Դժուարութիւնը, ինչպէս որ պիտի տեսնուի, մահկանացութեան վերագրուած սխալ նշանակութեանը մէջ կը կայանայ: Գործածէ ուղիղ նշանակութիւնը՝ ու ամեն դժուարութիւն պիտի փարատուի: Ադամ մահկանացու էր—այսինքն՝ այն տեսակ վիճակ մը ունէր, ուր մահը կարելի էր: Նա լիուլի ու կատարեալ չափով կեանք ունէր, սակայն ո'չ անբաժան կեանք (ինհըրրընթ լայֆ): Անորինը կեանք մ'էր, որը վառ պահուած էր «պարտէզին ամեն ծառեր»ովը, բացի արգիլուած մէկ ծառէն. և մինչև այն ատեն որ նա կը շարունակէր հնազանդ ու համաձայն ըլլալ իր Արարչին հետ, իր կեանքը ապահովուած էր—կեանքը վառ պահող նիւթերը իրմէ պիտի չզլացուէին: Այս տեսակէտէ, Ադամ կեանք ունէր. ու մահը բոլորովին խուսափելի էր. սակայն նա կը գտնուէր վիճակի մը մէջ, ուր մահը կարելի էր—նա մահկանացու էր:

Ուրեմն հարց կը ծագի թէ՝ եթէ Ադամ մահկանացու էր ու փորձի ենթարկուած, միթէ անմահութեա՞ն համար փորձի մէջ էր: Ընդհանուր պատասխանը Այո՛ պիտի ըլլայ. բայց մենք Ո՛չ կը պատասխանենք: Իր փորձը անոր համար էր, որպէսզի տեսնուէր թէ արդեօք արժանի էր կեանքի շարունակուելուն ու այն օրհնութեանց՝ որոնք արդէն կը վայելէր: Քանի որ ո՛չ մէկ տեղ խոստացուած էր՝ թէ եթէ հնազանդ մնար, անմահ պիտի ըլլար՝ ուրեմն մենք ստիպուած ենք այս կարգի բոլոր կարծիքները հարցումէն դուրս ձգել: Անոր՝ այն ատեն

վայելած օրհնութեանց յարատեւութիւն *մը խոստացուած էր միայն, այնքան երկար՝ որքան ատեն որ հաւատարիմ կը մնար. իսկ անհնազանդութեան պարագային, կեանքի կորուստ—մահ սպառնացուած էր։* Մահկանացու *բառին սխալ նշանակութեան կարծիքն է որ առաջնորդած է ժողովուրդը ընդհանրապէս եզրակացնելու թէ՝ ամէն էակ որ չմեռնիր՝ անմահ է։ Այս դասին մէջ ուրեմն կը դնեն մեր Երկնաւոր Հայրը, մեր Տէրը Յիսուս, հրեշտակները ու բոլոր մարդկութիւնը։ Ասիկա սակայն սխալ մ'է. անկումէն փրկուած մարդկային մեծ զանգուածը, նոյնպէս և երկինքի հրեշտակները, չարունակ մահկանացու պիտի ըլլան. թէև կատարելութեան և օրհնութեան վիճակի մէջ՝ սակայն անոնք չարունակ պիտի ունենան այդ մահկանացու բնութիւնը, որը մեղանչելու պարագային կրնայ մեղաց պատժոյն՝ մահուան ենթարկուիլ։ Իրենց դոյութեան երաշխաւորութիւնը, ինչպէս որ Ադամինն էր, պայմանաւորուած պիտի ըլլայ Ամենաիմաստուն Աստուծոյ նկատմամբ հնազանդութեան վրայ, որուն Արդարութիւնը, Սէրն ու Իմաստութիւնը, ինչպէս նաև Զօրութիւնը, որ ամէն բան բարիի գործակից ընել կուտայ բոլոր անոնց որ կը սիրեն զինքը ու իրեն կը ծառայեն, կատարելապէս ցուցադրուած պիտի ըլլան ներկայիս մեղքին հետ Իր ունեցած վարուելակերպովը։*

*Աստուածաշունչին մէջ ո՛չ մէկ տեղ ըսուած է թէ հրեշտակները անմահ են. ո՛չ ալ՝ թէ վերականգնած մարդկութիւնը անմահ պիտի ըլլայ։ Ընդհակառակը, անմահութիւնը միմիայն Աստուածային բնութեան վերագրուած է—սկզբնապէս՝ Եհովային միայն. վերջը՝ մեր Տէր Յիսուսին, Իր ներկայ խիստ բարձրացած վիճակին մէջ. իսկ վերջէն ալ՝ Եկեղեցիին,*

*Քրիստոսի Մարմինին խոստացուած է, Անոր հետ փառաւորուած ժամանակ։—Ա. Տիմ. Զ. 16։ Յովհ. Ե. 26։ Բ. Պետ. Ա. 4։ Ա. Կորնթ. ԺԵ. 53, 54։*

*Ո՛չ միայն մենք ապացոյց ունինք թէ անմահութիւնը միմիայն Աստուածային բնութեան կը պատկանի, հապա նաև ապացոյց ունինք թէ հրեշտակները մահկանացու են, այն իրողութեամբ՝ թէ Սատանան, որ հրեշտակապետ մ՚էր, պիտի փճացուի (Եբր. Բ. 14)։ Այն իրականութիւնը թէ նա կրնայ փճացուիլ՝ ոչնչացուիլ՝ կ՚ապացուցանէ թէ հրեշտակները որպէս դասակարգ անմահ չեն։*

*Այս հաշուով՝ կը տեսնենք թէ երբ անուղղայ մեղաւորները այլևս բնաջինջ եղած են, թէ՛ անմահ և թէ՛ մահկանացու էակները յաւիտենապէս պիտի ապրին ուրախութեան և երջանկութեան ու սիրոյ մէջ։ Առաջին դասակարգը՝ մեռնելու անկարող բնութիւն մը, անբաժան կեանք—իրենք իրենց մէջ կեանք ունենալով (Յովհ. Ե. 26), իսկ վերջին դասակարգը՝ մեռնելու ընդունակ բնութիւն մը. բայց շնորհիւ էութեան կատարելութեան և չարիքին ու մեղքին մեղսալիութեան գիտութեան՝ մահուան չարժաուիթ պիտի չտրուի։ Անոնք Աստուծոյ Օրէնքէն գնահատուած ըլլալով՝ յաւիտենապէս պիտի մատակարարուին այն բոլոր տարերքներովը, որոնք կարևոր են զիրենք կատարելութեան մէջ պահելու, ու երբեք պիտի չմեռնին։*

**Մահկանացու և անմահ** *բառերուն պատշաճ նըշանակութեան ճանաչումը, ու անոնց Ս. Գրոց մէջ գործածուիլը, կը քանդէն յաւիտենական տանջանքի վարդապետութեան բուն հիմը։ Այս ճիւաղային ուսուցումը Ս. Գրոց հակառակ տեսութեան վրայ հիմնուած է, թէ Աստուած մարդը անմահ ստեղծեց, թէ նա չի կրնար գոյութենէ դադրիլ, և թէ Աստուած*

չի կրնար ոչնչացնել զայն. որով տիրող կարծիքը այն է թէ՝ կամակոր մեղաւորները պարտին կերպով մը ու տեղ մը չարունակել ապրիլ. և եզրակացութիւնը այն է թէ՝ քանի որ անոնք Աստուծոյ հետ հաշտ չեն, անոնց յաւիտենականութիւնը թշուառութեան յաւիտենականութիւն մը պարտի ըլլալ։ Բայց Աստուծոյ Խօսքը ասոր բոլորովին հակառակը կ'ապացուցանէ. թէ մարդը մահկանացու է, և թէ կատարեալ լուսոյ և գիտութեան դէմ կամակոր մեղանչման լեցուն պատիժը կեանք պիտի չըլլայ չարչարանաց մէջ, հապա երկրորդ մահ մը։ «Այն հոգին որ կը մեղանչէ, անիկա պիտի մեռնի»։

## «ԲԱՅՑ Ո՞Վ ԵՍ ԴՈՒՆ՝ ՈՐ ԱՍՏՈՒԾՈՅ ԴԷՄ ՊԱՏԱՍԽԱՆ ԿՈՒՏԱՍ»—ՀՌՈՎՄ. Թ. 20։

Ոմանց սխալ կարծիքն է թէ՝ արդարութիւնը կը պահանջէ որպէսզի Աստուած Իր արարածներուն նուիրած շնորհաց մէջ ո՛և է տարբերութիւն չդնէ. թէ՝ եթէ մէկը բարձր դիրքի մը բարձրացնէ, ստիպուած է, ըստ արդարութեան, միևնոյն բանը բոլորին ալ ընել, բացի այն պարագային՝ երբ ցոյց տրուի թէ ոմանք իրենց իրաւունքները կորսնցուցած են, որ պարագային այսպիսիները կարելի է իրաւացիօրէն աւելի ստորին դիրքի մը փոխանցել։

Եթէ այս սկզբունքը ուղիղ ըլլար, ցոյց պիտի տար թէ Աստուած իրաւունք չունէր Յիսուսը հրեշտակներէն աւելի բարձր ստեղծելու, ու վերջէն ալ զԱյն Աստուածային բնութեան բարձրացնելու, եթէ միւս կողմէն նաև մտադրած չըլլար միևնոյն բանը բոլոր հրեշտակաց ու բոլոր մարդկութեան ալ ընել։ Իսկ եթէ այս սկզբունքը աւելի յառաջ տանինք, պիտի նշանակէ թէ՝ եթէ մարդոցմէ ոմանք խիստ պիտի բարձրացուին ու Աստուածային բնութեան հաղորդ ըլլան, ի վերջոյ, ամէն մարդ ալ միևնոյն դիրքին պէտքէ որ բարձրացուի։ Ու ինչո՞ւ այս սկզբունքը /

իր ծայրագոյն սահմանին չտանիլ, ու չառաջդիմութեան միևնոյն օրէնքը անասուններուն և միջատներուն ալ չվերագրել ու ըսել՝ թէ քանի որ անոնք ալ Աստուծոյ արարածներն են՝ անոնք բոլորն ալ ի վերջոյ պարտին տիրանալ գոյութեան ամենաբարձր մակարդակին—Աստուածային բնութեան: Ասիկա բացայայտ անհեթեթութիւն մ'է, բայց նոյնքան տրամաբանական է որքան ուրիշ ո՛և է հետևութիւն որ կրնանք ստանալ այս ենթադրական սկզբունքէն:

Թերևս ո՛չ ոք պիտի ուզէ այս սխալ ենթադրութիւնը այսքան հեռուները տանիլ: Սակայն եթէ անիկա պարզ ճշմարտութեան վրայ հիմնուած սկզբունք մ'է, ուրեմն ո՞ւր կրնայ կարճ կապուիլ ու դեռ ուղիղ ըլլալ: Ու արդարև, եթէ այսպէս ըլլար Աստուծոյ Ծրագիրը, ո՞ւր պիտի մնային Իր գործերուն մէջ գոյութիւն ունեցող հաճելի զանազանութիւնները: Սակայն ասիկա չէ Աստուծոյ Ծրագիրը: Ամէն բնութիւն, թէ՛ կենդանի և թէ՛ անկենդան, կ'արտայայտէ Աստուածային Զօրութեան և Իմաստութեան փառքն ու պէսպիսութիւնները: Ու ինչպէս որ «երկինքը Աստուծոյ փառքը կը պատմէ, ու երկնից հաստատութիւնը Անոր ձեռացը գործքերը կը ցուցնէ» զարմանալի պէսպիսութեամբ ու գեղեցկութեամբ, հապա ո՛րքան աւելի Անոր գիտակից ստեղծագործութիւնը զանազան կերպերով պիտի արտայայտէ Անոր զօրութեան գերագոյն փառքը: Աստուծոյ Խօսքին որոշ ուսուցումը, տրամախոհութիւնը և բնութեան վերաբանութիւնները մեզ այս եզրակացութեան կը բերեն:

Մեզ համար խիստ կարևոր է արդարութեան շուրջ ճշգրիտ գաղափար ունենալ: Շնորհ մը երբե՛ք պէտք չէ որպէս արդարութեամբ շահուած վարձատրութիւն մը հաշուել: Պարզ արդարութեան գործ

մը մասնաւոր շնորհակալութեան պարագայ մը չէ, ո՛չ ալ սիրոյ ապացոյց մ'է. սակայն, Աստուած Իր արարածներուն հանդէպ ունեցած սէրը աներեւակայելի շնորհներու անծայրածիր շարքով մը ցոյց տուաւ, որուն փոխարէն պարտին արտայայտել իրենց սէրն ու գովեստը։

Աստուած եթէ ուզէր, իրաւունք ունէր մեզ կարճ ժամանակուայ մը համար ստեղծել, եթէ նոյնիսկ բնաւ մեղանչած չըլլայինք։ Այսպէս ըրած է Նա Իր կարգ մը ստորին դասու արարածները։ Նա կրնար կարճ ժամանակուայ մը համար թոյլատրել մեզ վայելել Իր օրհնութիւնները, ու ապա՝ առանց անարդարութեան՝ մեզ գոյութենէ բնաջինջ ընել։ Իսկապէս, նոյնիսկ այսքան կարճ գոյութիւն մ'ալ շնորհ մը պիտի ըլլար։ Իր շնորհացը պատճառաւն է միայն որ մենք այս գոյութիւնը ունինք։ Ո՛րքան աւելի մեծ շնորհ մ'է հապա մեղքով կորսուած գոյութեան մը փրկութիւնը։ Դարձեալ, Աստուծոյ շնորհքովն է որ մենք մարդ ստեղծուեցանք փոխան անասունի. բոլորովին Աստուծոյ շնորհքն է որ հրեշտակները բնութեամբ քիչ մը աւելի բարձր են քան մարդիկ. դարձեալ Աստուծոյ շնորհքովն որ Տէր Յիսուսը ու Իր հարսը Աստուածային բնութեան հաղորդ կ'ըլլան։ Ուրեմն, բոլոր գիտակից արարածներուն կը մնայ, երախտագիտութեամբ ընդունիլ ինչ որ Աստուած կը նուիրէ։ Ուրիշ ո՛եւէ ոգի իրաւամբ դատապարտութեան արժանի է, որուն մէջ յարատեւելը նուաստացումով և կործանումով պիտի վերջանայ։ Մարդ մը իրաւունք չունի հրեշտակ մը ըլլալ փափաքելու, երբ բնաւ այդ դիրքին հրաւիրուած չէ. ո՛չ ալ հրեշտակ մը իրաւունք ունի Աստուածային բնութեան ցանկալու, երբ անոր տիրանալու պատեհութիւն տրուած չէ իրեն։

Սատանային փառասիրական ցանկութիւնն էր որ իր նուաստացմանը պատճառ եղաւ, և որը իր կործանումովը պիտի վերջանայ։ (Եսայի ԺԴ. 14)։Ամեն ո՛վ որ իր անձը կը բարձրացնէ, պիտի խոնարհի. և ո՛վ որ իր անձը կը խոնարհեցնէ, պիտի բարձրանայ» (Ղուկ. ԺԴ. 11). բայց ո՛չ անպատճառ բարձրագոյն դիրքին։

Մասամբ արդարութեան սխալ գաղափարներով, և մասամբ ալ ուրիշ պատճառներով, Ս. Գրոց մէջ ուսուցուած ընտրութեան վարդապետութիւնը շատ վիճաբանութեանց և սխալ ըմբռնումներու պատճառ եղած է։ Քիչեր միայն պիտի մերժեն Ս. Գրոց Ընտրութիւն ուսուցանելը. սակայն, այս ընտրութեան բուն ինչ սկզբունքի վրայ հիմնուած ըլլալը բաւական տարբեր կարծիքներու առիթ տուած է. ոմանք կը կարծեն թէ անիկա կամայական, անպայման ընտրութիւն մ'է։ Այս երկու տեսութեանց մէջ ալ կը հաւատանք թէ չափաւոր ճշմարտութիւն մը կայ։ Աստուծոյ կողմանէ ընտրութիւն մը, որոշ նպատակ մը, պաշտօնի մը կամ վիճակի մը նկատմամբ Իր կամքին արտայայտութիւնն է։ Աստուած ընտրած է՝ թէ Իր արարածներէն ոմանք հրեշտակներ պիտի ըլլան, ոմանք, մարդիկ՝ ոմանք, անասուններ՝ թռչուններ՝ միջատներ ևն. պիտի ըլլան, իսկ ոմանք ալ՝ Իր Աստուածային բնութեան հաղորդ պիտի ըլլան։ Ու թէև Աստուած մասնաւոր պայմաններու համաձայն կ'ընտրէ ամէն անոնք որոնք Աստուածային բնութիւն պիտի ստանան, սակայն չէ կարելի ըսել թէ ասոնք միւսներէն աւելի արժանի են անոր, որովհետև ոևէ մակարդակի վրայ ոևէ արարածի գոյութիւն ունենալը զուտ շնորհաց արդիւնք է։

Ուրեմն ո՛չ անկէ է որ կը կամի, ու ո՛չ ալ անկէ որ կը վազէ, հապա Աստուծմէ որ կ'ողորմի»—բա-

*ընտրութիւն կամ շնորհ ցոյց կուտայ: (Հռովմ. Թ. 16): Չէ թէ ընտրուածները միւսներէն աւելի լաւ ըլլալնուն համար էր որ Աստուած անոնց տուաւ Աստուածային բնութեան հրաւէրը. որովհետեւ Նա անտեսեց հրեշտակները որոնք չէին մեղանչած, ու փրկուած մեղաւորներէն ոմանք կանչեց Աստուածային պատիւներու: Աստուած իրաւունք ունի իրեններուն հետ ուզածին պէս վարուելու, ու Նա որոշած է Իր Ծրագիրներուն ամբողջացմանը համար գործածել այս իրաւունքը: Ուրեմն քանի որ մեր բոլոր ունեցածները Աստուածային շնորհ են, «Դու ո՞վ ես մարդ՝ որ Աստուծոյ դէմ պատասխան կուտաս. միթէ ստեղծուածը իր ստեղծողին կրնա՞յ ըսել թէ զիս ինչո՞ւ ասանկ շինեցիր: Բրուտը իշխանութիւն չունի՞ կաւին վրայ՝ նոյն շաղուածքէն աման շինելու, մէկը պատուոյ և միւսը անարգանաց (և կամ նուաղագոյն պատուոյ) համար»: (Հռովմ. Թ. 20, 21): Բոլորն ալ Աստուածային միևնոյն զօրութեամբ ստեղծուեցան—ոմանք աւելի բարձր բնութեան և աւելի մեծ պատիւ ունենալու, իսկ ոմանք ալ աւելի խոնարհ բնութեան և նուաղ պատուի:*

*«Այսպէս կ'ըսէ Տէրը՝ Իսրայէլին սուրբը ու անոր (մարդուն) արարիչը. գալու բաներուն վրայով Ինծի* հարցուցէք: *Իմ որդւոցս՝ ու ձեռացս գործքերուն համար Ինծի՞* պատուէր *կուտաք: Երկիրը Ես շինեցի, ու անոր վրայ մարդը ստեղծեցի. երկինքը Իմ ձեռքերս տարածեցին, և անոր բոլոր զօրքին Ես պատուէր տուի»: «Այսպէս կ'ըսէ երկինքը ստեղծող Տէրը, ան Աստուածը որ երկիրը կազմեց, զանիկա շինեց և հաստատեց. զանիկա պարապ տեղը չստեղծեց, հապա բնակութեան համար կազմեց. Տէրը Ես եմ, ու Ինծմէ զատ ուրիշ չկայ»: (Ես. ԽԵ.*

11, 12, 18)։ Ո՛չ ոք իրաւունք ունի Աստուծոյ հրամայելու։ Եթէ Նա հաստատեց երկիրը, և եթէ Նա զայն պարապ տեղը չը չինեց, այլ վերականգնելիք կատարեալ մարդոց բնակութեանը համար ստեղծեց, ուրեմն մենք ո՞վ ենք Աստուծոյ դէմ պատասխանելու ու ըսելու թէ անոնց բնութիւնը չփոխելը, ու անոնց բոլորին ալ հրեշտակաց նման հոգեղէն բնութիւն և կամ Իր ունեցածին նման Աստուածային բնութիւն չտալը, անարդարութիւն է։ Ո՛րքան աւելի վայելուչ է խոնարհաբար Աստուծոյ Խօսքին դիմել ու «հարցնել» զայն մեր բաներուն շուրջ, փոխանակ «hրամայել»ու կամ պնդելու թէ Նա պարտի մեր գաղափարները իրագործել։ Տէ՛ր, պահէ Քու ծառաներդ ամբարտաւան մեղքերէն. թող անոնք մեր վրայ չտիրեն։ Մենք կը հաւատանք թէ Աստուծոյ զաւակներէն ո՛չ մէկը գիտակցաբար պիտի փորձէ Տիրոջը հրամայել. սակայն ո՛րքան դիւրութեամբ և գրեթէ անգիտակցօրէն շատեր այս սխալին մէջ կ'իյնան։

Մարդկային ցեղը՝ ստեղծագործութեամբ Աստուծոյ որդիներն են—Իր ձեռագործները—և որոնց նըկատմամբ ունեցած Իր Ծրագիրը որոշ կերպով արտայայտուած է Իր Խօսքին մէջ։ Պօղոս Առաքեալ կ'ըսէ թէ առաջին մարդը (որը նմոյշ մ'էր ապագայ կատարեալ ցեղին) երկրէն էր՝ հողեղէն. ու անոր սերունդը, բացի Աւետարանական Եկեղեցիէն, յարութեան ժամանակ դարձեալ հողեղէն, մարդկային պիտի ըլլայ, երկրին վրայ ապրելու սահմանուած։ (Ա. Կորնթ. ԺԵ. 38, 44)։ Դաւիթ կ'ըսէ թէ մարդը հրեշտակներէն քիչ մը վար եղած էր միայն, ու փառքով, պատուով և իշխանութեամբ պսակուած։ (Սաղմ. Ը. 4—8)։ Իսկ Պետրոս, մեր Տէրը և բոլոր Մարգարէները աշխարհի սկիզբէն ի վեր

յայտնած են թէ մարդկութիւնը այդ փառաւոր կատարելութեան մէջ պիտի վերականգնի, ու իր Ներկայացուցիչին, Ադամին ունեցածին նման դարձեալ իշխանութիւն պիտի ունենայ երկրի վրայ։—Գործ. Գ. 19—21։

Ահա՛ այս է այն բաժինը զոր Աստուած ընտրած է մարդկութեան տալու։ Ու արդարև, ի՛նչ փառաւոր բաժին մը։ Վայրկեանի մը համար գոցէ աչքերդ թշուառութեան, տառապանքի, անկումի և վիշտերու տեսարաններուն առջև՝ որոնք դեռ կը տիրապետեն մեղքի պատճառաւ. ու քու մտքի տեսողութեանդ առջև պատկերացուր կատարեալ երկրին փառքը, ուր ո՛չ մէկ մեղքի արատ պիտի խանգարէ մարդկային կատարեալ ընկերութեան ներդաշնակութիւնն ու հանդիստը. ո՛չ մէկ դառն խորհուրդ և կամ անբարեսէր նայուածք կամ խօսք. ընդհակառակը, ամէն սրտէ բղխող սէրը միւս բոլոր սրտերուն մէջ արձագանք կը գտնէ, ու ամէն շարժում մարդասիրութիւն և գորով կ՛արտայայտէ։ Հոն այլևս հիւանդութիւն պիտի չըլլայ, ո՛չ մէկ ցաւ կամ վիշտ, քայքայումի ո՛չ մէկ նշան—ո՛չ ալ նոյնիսկ այս տեսակ բաներու վախը։ Երևակայէ առողջութեան և մարդկային ձևի ու դիմագծի գեղեցկութեան այն բոլոր համեմատական պատկերները, որոնք երբե՛ք չես տեսած. յիշելով սակայն, թէ կատարեալ մարդկութիւնը անոնց բոլորէն ա՛լ աւելի գերազանց սիրունութիւն մը և հրապոյր մը պիտի ունենայ։ Ներքին մաքրութիւնը ու մտաւոր և բարոյական կատարելութիւնը, պիտի գերազանցէ ու փառաւորէ ամեն շողշողուն դիմագիծ։ Այսպէս պիտի ըլլայ աշխարհի մարդկային ընկերութիւնը. ու կողոպտուած և խոշտանգուած արտասուողներուն աչքերէն պիտի սրբուին դառնութեան արցունքնե-

րը, երբ ալլեւս աւարտած է յարութեան գործը։— Ցայտ. ԻԱ. 4։ Սաղմ. ԻԲ. 26—29։ ՀԲ. 1—19։ Մաղաք. Ա. 11։ Երեմ. Գ. 17։ Միք. Դ. 1—18։ Եսա. ԻԵ. 6—9։ Ա. Կորնթ. ԺԵ. 25, 26։

Բայց ասիկա միմիայն մարդկային ընկերակցութեան մէջ տեղի ունենալիք փոփոխութիւնն է։ Մենք կուզենք նաեւ յիշեցնել թէ՝ երկիրը, որ այս կարգի մարդկային էակներու «բնակութեան համար» ստեղծուած էր, անոնց յարմար ու հաճելի բնակավայր մը պիտի ըլլայ, որը Եդեմի պարտէզով ներկայացուած էր, ուր որ սկիզբէն զետեղուած էր մարդկութեան ներկայացուցիչը։ Դրախտը պիտի վերահաստատուի, աշխարհածաւալ։ Երկիրը ալլեւս փուշ ու տատասկ պիտի չբուսցնէ, եւ ո՛չ ալ մարդուն ճակտի քրտինքը պիտի պահանջուի իր հացը հայթայթելու համար՝ հապա «Երկիրը (դիւրութեամբ եւ բնականօրէն) իր պտուղը պիտի տայ»։ «Անապատը շուշանի պէս պիտի ծաղկի»։ (Սաղմ. ԿԷ. 2—7։ Եսա. ԼԵ. 1—10։ Ստորին դասու կենդանական ստեղծագործութիւնը կատարեալ, կամաւոր եւ հնազանդ ծառաներ պիտի ըլլան կատարեալ մարդկութեան. բնութիւնը իր բոլոր հաճելի զանազանութիւններովը ամեն կողմէ պիտի հրաւիրէ մարդը փնտռելու եւ գտնալու Աստուծոյ փառքն ու զօրութիւնը. եւ միտքն ու սիրտը Անով. պիտի հըրճուին։ Նոր բանի մը անհանգիստ փափաքը որ ներկայիս գոյութիւն ունի, ո՛չ թէ բնական՝ հապա անկանոն վիճակ մ'է, արդիւնք մեր անկատարութեան ու մեզ շրջապատող ներկայ անգոհացուցիչ պարագաներուն։ Աստուածանման բան մը չէ անհանգըստօրէն նոր բանի մը ցանկալ։ Շատ մը բաներ Աստուծոյ համար հին են. ու Նա ամենէն շատ այն բաներուն մէջ կը հրճուի, որոնք հին եւ կատարեալ են։

Նոյնպէս ալ մարդը այսպէս պիտի ըլլայ, երբ Աստուծոյ պատկերին բարձրանայ։ Կատարեալ մարդը լիօրէն պիտի չգիտնայ կամ գնահատէ հոգեղէն էակաց փառքը, որով պիտի չնախընտրէ զայն, որովհետև տարբեր բնութեան մը կը պատկանի. ինչպէս որ ձուկը և թռչունը, միևնոյն պատճառաւ, ամենէն աւելի կը նախընտրեն իրենց բնութիւնը և տարերքը, ու անոնցմէ կ՚ախորժին։ Մարդը իր մակարդակին վրայ զինքը շրջապատող փառքով ա՛յնքան պիտի հետաքրքրուի ու զմայլի, որ իր ունեցած բնութենէն կամ միջավայրերէն զատ ուրիշներու պիտի չցանկայ, ո՛չ ալ զանոնք պիտի նախընտրէ։ Եկեղեցիին ներկայ փորձառութեանց վրայ ձգուած հարևանցի ակնարկ մը, պիտի պատկերացնէ այս կէտը։ «Ո՛րքան դժուարաւ», ո՛րքան տաժանքներով Աստուծոյ Թագաւորութիւնը պիտի մտնեն անոնք՝ որ այս աշխարհային ստացուածքներուն մէջ հարուստ են ։ Ներկայ չարի ու մահուայ տիրապետութեան ներքև իսկ, ունեցած մի քանի լաւ բաները ա՛յնքան կը գերեն մարդկային բնութիւնը, որ մենք Աստուծմէ մասնաւոր օգնութեան պէտքը կ՚զգանք մեր աչքն ու նպատակը հոգեղէն խոստումներու վրայ կարենալ պահելու համար։

Աստուծոյ՝ մարդկութեան հանդէպ ունեցած ընդհանուր Ծրագրին մէջ Քրիստոնէական Եկեղեցիին, Քրիստոսի Մարմինին բացառութիւն կազմելը որոշ կերպով կը նշմարուի այն յայտարարութեան մէջ՝ թէ անոր ընտրութիւնը աշխարհի սկիզբէն առաջ որոշուած էր Աստուածային Ծրագրին մէջ (Եփես. Ա. 4, 5). ուր Աստուած ո՛չ միայն կանխատեսեց մարդկութեան մեղաց մէջ իյնալը, հապա նաև կանխորոշեց այս դասին արդարացումը, սրբացումը և փառաւորումը, որոնք այս Աւետարանական Դարու տե-

*[illegible]ղութեան աշխարհէն դուրս կանչած է Իր Որդւոյն պատկերին կերպարանափոխուելու, Աստուածային բնութեան հաղորդ ըլլալու, և տիեզերական արդարութիւն ու խաղաղութիւն հաստատելու համար գալիք Հազարամեայ Թագաւորութեանը մէջ Քրիստոս Յիսուսի հետ ժառանգակիցներ ըլլալու։— Հռովմ. Ը. 28—31։*

*Ասիկա ցոյց կուտայ որ Եկեղեցիին ընտրութիւնը Աստուծմէ նախասահմանուած բան մ'էր. բայց լաւ նշմարեցէ՛ք, ասիկա Եկեղեցիին* անհատական անդամներու *անպայման ընտրութիւն մը չէ։ Աստուած աշխարհի սկիզբէն առաջ որոշեց՝ թէ այս տեսակ խումբ մը պիտի ընտրուի, որոշեալ ժամանակուայ մը—Աւետարանական Դարու մէջ, որոշ նպատակի մը համար։ Թէև մենք չենք կասկածիր թէ Աստուած կրնար կանխատեսած ըլլալ Եկեղեցւոյ անդամներուն անհատական գործունէութիւնը, ու կրնար կանխաւ դիտնալ թէ ո՛վ արժանի պիտի ըլլայ կազմելու «փոքրիկ հօտ»ի անդամները, սակայն Աստուծոյ Խօսքը այս կերպով չի ներկայացներ ընտրութեան վարդապետութիւնը։ Անհատական նախասահմանութեան մտածելակերպ մը չէ որ Առաքեալը կը ջանայ մեր մտքերուն մէջ տպաւորել, հապա՝ թէ Աստուծոյ նպատակին մէջ* դասակարգ *մը նախասահմանուած էր, որը պիտի գրաւէր այս պատուաւոր դիրքը. և որուն ընտրութիւնը հաւատքի խիստ փորձութեանց և հնազանդութեան ու երկրային պատեհութեանց ևայլնի մինչև ի մահ զոհաբերման պայմաններու վրայ հիմնուած էր։ Այսպէս, անհատական քննութեամբ ու անհատական «յաղթութեամբ», այս* նախասահմանուած դասին *անհատական անդամները, կ'ընդունուին կամ կ'ընտրուին այն բոլոր օրհնութեանց և առանձնաշնորհմանց մէջ, որոնք*

*Աստուծմէ նախասահմանուած են այս դասին համար ։*

*Հռովմայեցւոց (Ը. 30)ին մէջ յիշուած «փառաւորուած» բառը որ Յունարէն* տօքսագօ *բառէն թարգմանուած է՝* պատուըրուած *կը նշանակէ. Այն պաշտօնը, որուն համար ընտրուած է Եկեղեցին՝ մեծ պատիւ մ'է իրեն ։ Ո՛չ մէկ մարդ կրնայ երևակայել այս տեսակ մեծ պատիւ մը տենչալ ։ Նո՛յնիսկ մեր Տէրը Յիսուս, անոր բաղձալէ առաջ հրաւիրուած էր, ինչպէս որ կը կարդանք. «անանկ ալ Քրիստոս չէ՛ թէ Իր անձը մեծարեց (տօքսագօ—պատուեց) Քահանայապետ ըլլալու, հապա Անիկա՝ որ ըսաւ Անոր թէ «Դուն Իմ Որդիս ես, Ես այսօր քեզ ծնայ» ։ Երկնային Հայրը ա՛յսպէս պատուեց մեր Տէր Յիսուսը ։ Նմանապէս, ընտրեալ Մարմինէն անոնք, որոնք Անոր հետ ժառանգակիցներ պիտի ըլլան՝ Եհովային շնորհէն այսպէս պիտի պատուըուին ։ Եկեղեցին՝ իր Գլուխին նման՝ «պատուոյ» սկզբնաւորութեան փորձառութիւն մը կ'ունենայ Աստուծոյ Հոգւով ու Ճշմարտութեան Խօսքին միջոցաւ (Յակոբ. Ա. 18), Հոգեղէն բնութեան* յղացած *ժամանակ. ու բոլորովին պիտի առաջնորդուի պատուոյն մէջ՝ երբոր* ծնի *Հոգիէն, որպէս հոգեղէն էակ—Գլուխին պատկերովը փառաւորուած ։ Ամէն անոնք որ Աստուած այսպէս պիտի պատուէ, պարտին կատարեալ և մաքուր ըլլալ. ու քանի որ մենք ժառանգականօրէն մեղաւորներ էինք, Նա ո՛չ միայն մեզ այս պատուոյն կանչեց կամ հրաւիրեց, հապա նաև Իր Որդւոյն մահուամբը մեղքէ* արդարացում *հայթայթեց մեզի, որպէսզի կարենանք ընդունիլ այն պատիւը, որուն որ կանչեց մեզ ։*

*«Փոքրիկ հօտ»ի ընտրութեան համար Աստուած խիստ ընդհանուր կոչ մը ըրած է—«շատեր կանչուած*

*են»։ Բոլորը չեն կանչուած։ Սկիզբէն, մեր Տիրոջ առաքելութեան ժամանակ, կոչը միմիայն մարմնեղէն Իսրայէլի սահմանուած էր. բայց ներկայիս Աստուծոյ ծառաները որու որ հանդիպին (Ղուկ. ԺԴ. . ) պէտք է թախանձեն (ո՛չ թէ ստիպեն) այս մասնաւոր շնորհաց խնճոյքին գալու։ Սակայն, նոյնիսկ լսողներուն և եկողներուն բոլորը արժանի չեն։ Հարսանեաց հանդերձներ (Քրիստոսի՝ Իր հետևորդներուն վերագրած, ընծայած արդարութիւնը) հայթայթըւած են, բայց ոմանք պիտի չգործածեն զանոնք, որով պիտի մերժուին. իսկ արդարութեան հանդերձները հագնողներէն, և նոր բնութեան մը յղանալու պատիւը ունեցողներէն ոմանք, պիտի թերանան իրենց կնքած ուխտին հաւատարիմ մնալու՝ իրենց կոչումն և ընտրութիւնը ապահովելու։ Գառնուկին հետ փառքով յայտնուելու արժանի եղողներուն համար գրուած է. «Անոնք* կանչուած *ու* ընտրըուած *և* հաւատարիմ *են»։—Յայտ. ԺԴ. 1, և ԺԷ. 14։*

*Կոչը ճշմարիտ է. Աստուծոյ՝ Եկեղեցիի մը ընտրութեան և բարձրացման որոշումը անխախտելի է. բայց թէ ո՛վ պիտի կարենայ այս ընտիր դասին պատկանիլ, ատիկա այլևայլ պայմաններէ կախում ունի։ Անոնք որ նախասահմանուած պատիւներուն մէջ բաժին ունենալ կ՚ուզեն, պարտին կոչման պայմանները կատարել։ «Ուրեմն վախնանք, որպէսզի չըլլայ թէ Անոր հանգիստը մտնելու խոստումը որ մեզի մնացեր է, ձեզմէ մէկը անկէ զրկուած գտնուի»։ (Եբր. Դ. 1)։ Այս մեծ շնորհը ո՛չ կամեցողէն կախում ունի և ո՛չ ալ վազողէն, այլ կանչուելէն յետոյ կամեցողին և վազողին կը պատկանի։*

*Ցուսալով թէ կրցանք որոշ կերպով պաշտպանել Աստուծոյ՝ Իրեններուն հանդէպ Իր կամացը համա-*

*ձայն գործելու* բացարձակ իրաւունքն ու նպատակը, *ներկայիս ուշադրութիննիդ կը հրաւիրենք այն իրո-ղութեան՝ թէ Աստուծոյ շնորհաց բաշխման յատ-կանշական սկզբունքը, բոլորին ընդհանուր լաւու-թեանը համար է։*

*Ուրեմն Ս. Գրոց հեղինակութեան վրայ հիմնուած՝ հաստատուած իրողութիւն մը կ՚ընդունինք թէ՝ երկրային և հոգեղէն բնութիւնները անջատ և որոշ են—թէ՝ Աստուծոյ նպատակը չէ այս երկու բնու-թիւնները իրար խառնել, որը անկատարելութիւն պիտի նշանակէ, և թէ՝ մէկ բնութենէն դէպի միւ-սը փոխուիլը ո՛չ թէ կանոն մ՚է, այլ բացառութիւն մը՝ որը միմիայն Օծեալ դասակարգին նկատմամբ տեղի կ՚ունենայ. որով խիստ հետաքրքրական է գիտնալ՝ թէ ի՞նչպէս տեղի պիտի ունենայ այս փո-փոխութիւնը, ի՞նչ պայմաններով կարելի է տիրա-նալ անոր և ի՞նչ եղանակով պիտի իրականանայ։*

*Եկեղեցիին՝ իր Տիրոջը հետ Աստուածային բը-նութեան բարձրանալու պայմանները (Բ. Պետ. Ա. 4) յարևնման են այն պայմաններուն, որոնցմով Նա բարձրացաւ. այսինքն՝ Անոր քայլերուն հետևիլ (Ա. Պետ. Բ. 21), ինքզինքը Անոր նման կենդանի զոհ (պատարագ մը ներկայացնել, ու ապա հաւա-տարմօրէն կատարել, (իրականացնել) այդ զոհա-բերութեան ուխտը, մինչև որ զոհը մահուամբ վեր-ջանայ։ Երկրայինէն դէպի երկնային բնութեան այս փոփոխութիւնը իբր վարձատրութիւն կը տրուի ամեն անոնց, որոնք Աւետարանական Դարու տե-ւողութեան մեր Տիրոջ նման մինչև ի մահ կը զոհա-բերեն* մարդկային բնութիւնը *իր ներկայ և ապագայ բոլոր շահերովը, յոյսերովը և նպատակներովը։ Յարութեան ժամանակ ասոնք պիտի արթննան, ո՛չ թէ մնացեալ մարդկութեան հետ մարդկային կատա-*

ընլութեան երանաւէտ Վերահաստատութեան ու անոր չարակից օրհնութեանց մասնակցելու, այլ Տիրոջը նմանութեանը, փառացը և ուրախութեանը մէջ բաժին ունենալու, Աստուածային բնութեան մէջ Անոր բաժնեկիցները ըլլալու։— Հռովմ. Ը. 17։ Բ. Տիմ. Բ. 12։

Նոր բնութեան սկսումը և զարգացումը մարդկային կենաց սկզբնաւորութեանը և զարգացմանը նմանցուած է։ Ինչպէս որ մէկուն մէջ նախ յղացում մը տեղի կ՚ունենայ ու ապա ծնունդ՝ նոյնպէս ալ միւսին մէջ։ Սուրբերուն համար ըսուած է թէ Աստուծմէ յղացած են ճշմարտութեան Խօսքովը։ (Ա. Պետ. Ա. 3։ Յովհ. Ե. 18։ Յակոբ. Ա. 18)։ Այսինքն՝ թէ անոնք Աստուածային կեանք ստանալու առաջին կայծը Աստուծմէ կ՚ստանան Անոր Խօսքին միջոցաւ։ Փրկութեան մէջ ունեցած հաւատքովնին ձրիաբար արդարացած ըլլալով՝ կը լսեն կոչը, «Ընծայեցէ՛ք ձեր մարմինները կենդանի զոհ մը՝ սուրբ, (փրկուած, արդարացած—որով) Աստուծոյ հաճելի, որ է ձեր բանաւոր պաշտօնը» (Հռովմ. ԺԲ. 1)․ ու երբ այս կոչին հլու հնազանդ, անոնք իրենց արդարացած մարդկային բնութիւնը բոլորովին Աստուծոյ կը նուիրեն, որպէս կենդանի զոհ մը, Յիսուսինին հետ քով քովի՝ Աստուծմէ կ՚ընդունուին, ու բուն այս գործողութեան մէջ հոգեղէն կեանքը կ՚սկսի։ Այսպիսինները ինքզինքնին անմիջապէս նոր խորհելակերպի ու նոր գործունէութեան մէջ կը գտնեն, ինչպէս որ նոր (կերպարանափոխուած) միտքը կը ներշնչէ, մարդկային ըղձանքները խաչելու աստիճան։ Նուիրման կամ զոհաբերութեան վայրկեանէն սկսեալ, անոնք Աստուծմէ իբր «նոր արարածներ» հաշուըուած են։

Այսպէս, այս սաղմնային «նոր արարածներ»ուն համար հին բաները (մարդկային ըղձանքները, յոյսերն ու ծրագիրները) կը վերջանան, և ամէն ինչ նոր կըլլայ։ Սաղմնային «նոր արարած»ը կը շարունակէ աճիլ ու զարգանալ, որքան որ մարդկային հին բնութիւնը, իր յոյսերով, նպատակներով, փափաքներով ևն. կը խաչուի։ Նուիրման ժամանակէն սկսեալ այս երկու գործողութիւնները միասնաբար կ'ընթանան, մինչև որ մարդկեղէնին մահը և հոգեղէնին ծնունդը տեղի ունենայ։ Երբ Աստուծոյ Հոգին Իր Խօսքին միջոցաւ կը շարունակէ աւելի ու աւելի քօղազերծել Իր Ծրագիրները, Նա այս կերպով կը կենդանացնէ (կ'ոգևորէ, կը զօրացնէ) նոյնիսկ մեր մահկանացու մարմինները (Հռովմ. Ը. 11), կարելի ընելով այս մահկանացու մարմիններուն Իրեն ծառայութիւն մատուցանելու. սակայն յարմար ժամանակին նոր, հոգեղէն, երկնային մարմիններ պիտի ունենանք, որոնք ամէն կերպով պատշաճ պիտի ըլլան նոր, Աստուածային մտքերուն։

«Նոր արարած»ին ծնունդը յարութեան ժամանակ տեղի պիտի ունենայ (Կող. Ա. 18). ու այս դասին յարութիւնը առաջին (կամ գլխաւոր) յարութիւն կոչուած է։ (Յայտ. Ի. 6)։ Պէտք է յիշենք սակայն, թէ մենք իրապէս հոգեղէն էակներ պիտի չըլլանք, մինչև յարութեան ժամանակը՝ թէև որդեգրութեան հոգին ստացած ատենէն սկսեալ այսպէս հաշուըուած ենք։ (Հռովմ. Ը. 23—25։ Եփես. Ա. 13, 14։ Հռովմ. Զ. 10, 11)։ Երբ իրապէս հոգեղէն էակներ ըլլանք, այսինքն՝ երբ Հոգիէն ծնանինք, այլևս հոգեղէն արարածներ պիտի ըլլանք. որովհետև «Հոգիէն ծնածը հոգի է»։

Հողեղէն բնութեան յարութեան ժամանակուայ այս ծնունդը, պարտ է հոգւոյ յղացումով մը սկսի նուիրման ժամանակ, ինչպէս որ մարմնեղէն ծնունդը մարմնեղէն յղացմամբ մը կ'սկսի: Բոլորը որ առաջին Ադամին նմանութեամբը մարմինէ ծնած էին՝ նախ մարմինէ յղացած էին. իսկ ոմանք դարձեալ յղացած են Աստուծոյ Հոգւովը, Ճշմարտութեան Խօսքին միջոցաւ, որպէսզի յարմար ատենին—Առաջին Յարութեան ժամանակ—կարենան Հոգիէն ծընանիլ երկնային նմանութեամբ. «Ինչպէս որ հողեղէնին կերպարանքը հագած ենք (Եկեղեցին), երկնաւորին կերպարանքն ալ պիտի հագնինք»—եթէ հաւատարիմ մնանք:—Ա. Կորնթ, ԺԵ. 49: Եբր. Զ. 6:

Թէև երկնային կոչը ընդունիլը, և անոր հնազանդելու իբր արդիւնք մեր նուիրումը, կարելի է մանաւոր վայրկեանի մը մէջ վճռել, սակայն ամեն խորհուրդներու Աստուածային կամաց համաձայնութեան բերելը՝ աստիճանական գործ մ'է, մեր մտքի ու սրտի դէպի երկինք հակման աստիճանական գործ մ'է, որը բնականէն դէպի երկիր կը հակի: Առաքեալը այս ընթացքը կերպարանափոխման գործ մը կ'անուանէ, ըսելով՝ «Մի' կերպարանիք այս աշխարհիս, հապա ձեր մտքի նորոգութեամբը նորոգուեցէք (կերպարանափոխուեցէք երկնային բնութեան), որպէսզի կարենաք քննել թէ ի'նչ է Աստուծոյ բարի, հաճելի ու կատարեալ կամքը»:—Հռովմ. ԺԲ. 2:

Պէտք է նշմարել թէ Առաքեալին այս խօսքերը անհաւատ աշխարհին ուղղուած չեն, այլ անոնց՝ որոնք իբր եղբայրներ կը ճանչնայ, որը կը տեսնուի առաջին համարէն—«Արդ կ'աղաչեմ ձեզի՝. Եղբայր-

ներ՝ ... որ ձեր մարմինները ընծայէք կենդանի զոհ մը՝ սուրբ, Աստուծոյ հաճելի»։

Հասարակութեան հաւատքը այն է թէ՝ երբ մարդ մը դարձի եկած է, և կամ մեղքէն արդարութեան դարձած է, ու անհաւատութենէ և Աստուծոյ հանդէպ թշնամական ընթացքէ մը դարձած՝ ու Անոր ապաւինած է, ահա՛ այս է Պօղոս Առաքեալին յիշած կերպարանափոխումը։ Արդարև, ասիկա մեծ փոփոխութիւն մ'է—կերպարանափոխութիւն մը, բայց ո՛չ այն կերպարանափոխութիւնը, զոր Պօղոս հոս կը մատնանշէ։ Ասիկա նկարագրի կերպարանափոխութիւն մ'է. մինչդեռ Պօղոս բնութեան կերպարանափոխութիւն մը կ'ակնարկէ, որը մասնաւոր պայմաններով խոստացուած է ներկայ Աւետարանական Դարու հաւատացեալներուն. ու նա կը խրախուսէր հաւատացեալները, որպէսզի կատարեն այս պայմանները։ Եթէ նկարագրի այսպիսի կերպարանափոխութիւն մը արդէն տեղի ունեցած չըլլար իր ակնարկած անհատներուն մէջ, պիտի չկարենար զանոնք եղբայրներ կոչել. եղբայրներ, որոնք «Աստուծոյ սուրբ և հաճելի» բան մը ունէին նուիրելու, զոհաբերութեամբ։ Միմիայն Փրկանքին նկատմամբ ունեցած հաւատքովնին արդարացողները Աստուծմէ սուրբ և հաճելի նկատուած են։ Բնութեան կերպարանափոխութիւն կը կրեն անոնք, որոնք ներկայ Աւետարանական Դարու տևողութեան, իրենց արդարացած մարդկութիւնը կենդանի զոհ մը կը մատուցանեն Աստուծոյ, ինչպէս որ Յիսուս Իր կատարեալ մարդկութիւնը իբր զոհ մատուց՝ զըրկուելով ապագայ մարդկային գոյութեան բոլոր իրաւունքներէն և պահանջներէն, ինչպէս նաև անտեսելով ներկայ մարդկեղէն վայելքները, պատեհութիւնները, իրաւունքները ևն.։ Զոհաբերուած ա-

ռաջին բանը մարդկային կամքն է. որով անկէ վերջ պէտք չէ ո՛չ մեր և ո՛չ ալ ուրիշ ո՛և է մարդկային կամքով առաջնորդուինք, հապա միմիայն Աստուածային կամքովը: Աստուածային կամքը կը դառնայ մեր կամքը, իսկ մարդկային կամքը այլևս մերը չենք համարեր, հապա ուրիշի մը կամքը, որը պէտք է անտեսուի և զոհաբերուի: Աստուածային կամքը մեր կամքը եղած ըլլալով՝ կ՚սկսինք Աստուծային տեսակէտէ խորհիլ, տրամաբանել ու դատել: Աստուծոյ Ծրագիրը՝ մեր ծրագիրը կը դառնայ, ու Աստուծոյ ճամբաները՝ մեր ճամբաները: Անոնք որ ընտիր հաւատքով ինքզինքնին իբր զոհեր չեն ներկայացուցած՝ չեն կրնար լիուլի ըմբռնել այս կերպարանափոխութիւնը: Կանխաւ, թերևս մենք կ՚ախորժէինք ուէ բանէ, որոնք իրապէս մեղսալից չէին. որովհետև աշխարհը ու անոր բոլոր լաւ բաները մարդոց վայելքին համար եղած էին. միակ դժուարութիւնը որ կար, մեղսալից հակումները սանձահարելն էր: Սակայն նուիրուածները, կերպարանափոխուածները, մեղքը նուաճելու ջանքէն ի զատ, պարտին ներկայի լաւ բաներն ալ զոհաբերել ու իրենց բոլոր զօրութիւնները Աստուծոյ ծառայութեանը յատկացնել: Արդարև, այս ծառայութեան և զոհաբերութեան մէջ հաւատարիմ եղողները օրէ օր պիտի ըմբռնեն՝ թէ այս աշխարհը չէ իրենց հանգստեան վայրը, և թէ՝ իրենք հոս տևական քաղաք չունին. հապա իրենց սրտերն ու յոյսերը պէտք է դառնան դէպի այն հանգիստը՝ որ կը մնայ Աստուծոյ ժողովուրդին: Ու փոխադարձաբար, այդ երանաւէտ յոյսը պիտի զօրացնէ ու ներշնչէ զանոնք շարունակելու զոհաբերութեան գործը:

Այսպէս, նուիրման միջոցաւ, միտքը նորոգուած կամ կերպարանափոխուած է, ու փափաքները, յոյ-

սերը և նպատակները սկսած են խոստացուած հոգեղէն ու անտեսանելի բաներուն բարձրանալ՝ մինչդեռ մարդկային յոյսերը և․ կը մեռնին։ Այս նման կերպարանափոխուածները, կամ այս փոփոխման ընթացքին մէջ գտնուողները, «Նոր արարածներ» հաշուըուած են, Աստուծմէ յղացած, ու այդ համեմատութեամբ՝ բաժանորդներ Աստուածային բնութեան։ Լաւ նշմարեցէ՛ք այն տարբերութիւնը, որը գոյութիւն ունի այս «Նոր արարածներ»ուն և այն հաւատացեալներուն կամ «եղբայր»ներուն միջև, որոնք միայն արդարացած են։ Այս վերջին դասակարգին պատկանողները դեռ երկրէն են՝ հողեղէն․ ու բացի մեղսալից ցանկութիւններէն՝ անոնց յոյսերը, փառասիրութիւնները և նպատակները այնպիսիներ են, որոնք լիուլի պիտի յագեցուին խոստացուած բոլոր բաներու Վերահաստատութեան ժամանակ։ Սակայն, առաջին դասակարգին պատկանողները այս աշխարհէն չեն, ինչպէս որ Քրիստոս այս աշխարհէն չէ, ու անոնց յոյսերը անտեսանելի բաներու վրայ կեդրոնացած են՝ ուր Քրիստոս Աստուծոյ աջ կողմը կը նստի։ Աշխարհային փառաց հեռանկարը՝ որը ա՛յնքան հրապուրիչ է բընական մարդուն՝ այլևս երկնային յոյսէն յղացողներուն համար գոհացուցիչ բաժին մը չէ, որոնք կըրնան տեսնել երկնային խոստումներուն փառքերը, և որոնք կը գնահատեն Աստուծոյ Ծրագրին մէջ իրենց համար որոշուած բաժինը։ Այս Նոր, Աստուածային միտքը մեր ամբողջական Աստուածային բընութեան—մտքի և մարմնի ժառանգութեան գրաւականն է։ Թերևս ոմանք քիչ մը խրտչին այս արտայայտութենէն, Աստուածային մարմին մը․ սակայն մեզի ըսուած է թէ՝ ներկայիս Յիսուս «Իր Հօրը էութեանը բուն պատկերն է», և թէ՝ յաղթողներն

ալ «Անոր պէս պիտի ըլլան, ու տեսնեն զԱնիկա ինչպէս որ է»։ (Եբր. Ա. 3։ Ա. Յովհ. Գ. 2)։ «Շնչաւոր (մարդկային) մարմին կայ, հոգևոր մարմին ալ կայ»։ (Ա. Կորնթ. ԺԵ. 44)։ Մենք չենք կրնար երևակայել թէ՝ մեր Երկնային Հայրը և կամ Տէր Յիսուսը միմիայն մեծ մտքեր են, առանց մարմիններու։ Անոնք հոգեղէն փառաւոր մարմիններ ունին, թէև դեռ մեզի յայտնի չէ անոնց փառաց որակն ու քանակը. ու յայտնի պիտի չըլլայ՝ մինչև որ մենք ալ բաժնեկից ըլլանք Աստուածային բնութեան։

Թէև մտքին մարմնեղէնէն դէպի հոգեղէնի այս կերպարանափոխումը աստիճանական գործ մ՚է, սակայն մարմնեղէնէն դէպի հոգեղէն մարմնի փոփոխման գործը աստիճանական պիտի չըլլայ, այլ վայրկենական։ (Ա. Կորնթ. ԺԵ. 52)։ Արդ՝ ինչպէս որ Պօղոս կ՚ըսէ՝ «մենք այս գանձը (Աստուածային բնութիւնը) հողէ ամաններու մէջ ունինք», սակայն որոշեալ ատենին այս գանձը իրեն յատուկ փառաւոր ամանի մը—հոգեղէն մարմնի մը—մէջ պիտի զետեղուի։

Մենք տեսանք թէ մարդկային բնութիւնը հոգեղէնին մէկ նմանութիւնն է։ (Ծննդ. Ե. 1)։ Օրինակ Աստուած կամք մը ունի, նոյնպէս ալ մարդիկ ու հրեշտակները. Աստուած տրամաբանութիւն և միտք ունի, նոյնպէս ալ Իր գիտակից արարածները—հրեշտակներն ու մարդիկ։ Իւրաքանչիւրին մտային գործողութեան բնոյթը միևնոյնն է։ Տրամաբանութեան միևնոյն փաստով, ու նոյնանման պայմաններու ներքև, այս տարբեր բնութիւնները կարող են միևնոյն եզրակացութեանց յանգիլ։ Թէև Աստուածային, հրեշտակային և մարդկային մտային կարողութիւնները նոյնանման են, սակայն մենք գիտենք թէ հոգեղէն բնութիւնները մարդկայինէն դերիվերոյ

և բարձր զօրութիւններ ունին–զօրութիւններ՝ որոնք կը խորհինք թէ արդիւնք են ո՛չ թէ տարբեր կարողութեանց, այլ միևնոյն կարողութեանց աւելի լայն սահմանին ու տարբեր պարագաներու՝ որոնց ներքև կը գործեն։ Մարդկային բնութիւնը հոգեղէն բնութեան երկրային մէկ կատարեալ պատկերն է, ու միևնոյն կարողութիւնները ունի, որոնք սակայն երկրային շրջանակներու մէջ սահմանափակուած են ու հեռու նշմարելու ա՛յնքան մը կարողութիւն և ընդունակութիւն ունի միայն, որքան որ Աստուած յարմար կը դատէ յայտնելու, անոր օգտին ու երջանկութեանը համար։

Աստուածայինը՝ հոգեղէն բնութեան ամենաբարձըր կարգն է. ու ո՛րքան անչափելի է այն հեռաւորութիւնը, որը կը գտնուի Աստուծոյ և Իր արարածներուն մէջ։ Մենք Աստուածային իմաստութեան, զօրութեան և բարերարութեան փառաց նշոյլները միայն կրնանք նշմարել՝ երբ Նա որպէս թէ համայնապատկերի տեսարաններու մէջէն, կը թոյլատրէ մեր առջևէն անցնիլ Իր հզօր գործերէն մի քանիները։ Բայց կրնանք չափել ու ըմբռնել կատարեալ մարդկութեան փառքը։

Այս խորհուրդները յստակօրէն մեր մտքերուն մէջ ունենալով՝ մենք կրնանք ըմբռնել, թէ ի՛նչպէս կը կատարուի մարդկեղէնէն դէպի հոգեղէնի փոփոխութիւնը. այսինքն՝ միևնոյն մտքի զօրութիւնները դէպի բարձրագոյն վիճակները տանելով։ Երկնային մարմինը հագած ժամանակ, մենք պիտի ունենանք նաև երկնային այն զօրութիւնները, որոնք այդ փառաւոր մարմնին կը պատկանին. Նոյնպէս ալ պիտի ունենանք խորհելու այն սահմանը և զօրութեան այն մեծութիւնը, որոնք անոր կը պատկանին։

*Մտքի՝ երկրայինէն երկնայինի կերպարանափոխութիւնը կամ փոփոխութիւնը, որուն բովէն հոս ուխտուած Քրիստոնեաները կ'անցնին, բնութեան ապագայ փոփոխման սկիզբն է։ Անիկա ուղեղի փոփոխութիւն մը չէ, ո՛չ ալ իր փոխուելու գործողութիւնը հրաշք մ'է, այլ կամքը ու մտքի հակումն է որ փոխուած են։ Մեր կամքն ու զգացումները կը ներկայացնեն մեր անհատականութիւնը. որով մենք կերպարանափոխուած ենք, ու որպէս թէ իրականապէս երկնային բնութեան պատկանողներ հաշուըուած ենք, երբ մեր կամքերն ու զգացումները այսպէս փոխուած են։ Արդարեւ, ասիկա խիստ պզտիկ սկզբնաւորութիւն մ'է. սակայն, սկզբնաւորութիւն մը, ինչպէս որ ասիկա կոչուած է՝ թէեւ շարունակ պզտիկ կ'ըլլայ, բայց անիկա ամբողջանալիք գործին դրաւականը կամ երաշխիքն է։—Եփես. Ա. 13, 14։*

*Ոմանք կը հարցնեն թէ փոխուած ժամանակ ի՞նչպէս պիտի ճանչնանք ինքզինքնիս. ի՞նչպէս պիտի գիտնանք թէ մենք միեւնոյն անձինքն ենք, որ այս փառաց տիրանալու համար ապրեցանք, տառապեցանք ու զոհաբերուեցանք։ Միթէ* մենք *միեւնոյն ըղձալուն էակնե՞րը պիտի ըլլանք։ Այո՛, անտարակոյս։ Թէ որ* մենք*, Քրիստոսի հետ մեռնինք, Անոր հետ ալ պիտի ապրինք։ (Հռովմ. Զ. 8)։ Օրէ օր մեր հողեղէն մարմիններուն մէջ տեղի ունեցած փոփոխութիւնները, մեր անցեալը և կամ ինքնութիւնը* մոռնալու պատճառ չեն ըլլար։*

---

*Մեր հողեղէն մարմինները շարունակ կը փոխուին։ Գիտունները կը յայտնեն թէ՝ ամեն եօթը տարին անգամ մը, մեր մարմնի բաղկացուցիչ հիւլէները բոլորովին կը փոխուին։ Նոյնպէս ալ՝ մարդկեղէնէն հոգեղէն մարմինները խոստացեալ փոփո-

*Այս խորհրդածութիւնները թերեւս օգնեն մեզ նաեւ ըմբռնելու՝ թէ ի՛նչպէս Որդին, հոգեղէնէն մարդկային վիճակներու—մարդկային բնութեան եւ աշխարհային սահմանափակմանց փոխուած ժամանակ մարդ մ՚էր, թէեւ երկու պարագաներուն մէջ ալ միեւնոյն էակն էր. առջի պայմաններուն ներքեւ Ան հոգեղէն էր, իսկ երկրորդ պայմաններուն ներքեւ՝ մարդկային։ Եւ թէեւ երկու բնութիւնները անջատ եւ որոշ են, սակայն մէկը միւսին նմանութիւնն է. որով մտքի միեւնոյն կարողութիւնները (յիշողութիւն եւն.) երկուքին համար ալ սովորական բաներ ըլլալով՝ Յիսուս կրնար յիշել մարդ ըլլալէ առաջ Իր ունեցած փառքը, որը սակայն չէր վայելէր մարդ եղած ժամանակ, ինչպէս որ Իր խօսքերը կ՚ապացուցանեն—«Հայր՝ փառաւորէ՛ զիս Քու քովդ այն փառքովը՝ որ աշխարհի ըլլալէն առաջ քովդ ունէի»*

---

խութիւնը, պիտի չոչնչացնէ ո՛չ յիշողութիւնը եւ ո՛չ ալ ինքնութիւնը, հապա պիտի ընդարձակէ անոնց զօրութիւնը եւ սահմանը։ Միեւնոյն Աստուածային միտքը՝ որը մերն է ներկայիս, միեւնոյն յիշողութեամբ, միեւնոյն տրամաբանելու զօրութիւնով եւն., այն ժամանակ իր զօրութիւնները անչափելի բարձրութեամբ եւ խորութեամբ ընդարձակուած պիտի գտնէ իր հոգեղէն նոր մարմնի համաձայն. ու յիշողութիւնը կարող պիտի ըլլայ իր առջեւ պատկերացընել մեր կենաց ընթացքը՝ կանուխ մանկութենէ սկսեալ. եւ մենք կարող պիտի ըլլանք, հակադրութեամբ, լիուլի ըմբռնել մեր զոհաբերութեան փառաւոր վարձատրութիւնը։ Սակայն ասիկա չէր կըրնար իրականանալ՝ եթէ մարդկայինը հոգեղէնին *պատկերը* չըլլար։

(Յովհ. Ժէ. 5)—Իր Հոգեղէն բնութեան այն փառքը, զոր մէկդի ձգած էր մարդեղութեան ժամանակ։ (Բ. Կորնթ. Ը. 9)։ Յիսուսի այս աղօթքը աւելի մեծ համեմատութեամբ պատասխանուած է, Իր ներկայիս Հոգեղէն էակաց ամենաբարձր կարգին, Աստուածային բնութեան բարձրացումովը։

Վերադառնալով դարձեալ Պօղոսի խօսքերուն, կը նշմարենք թէ նա չ՚ըսեր, Ինքզինքնիդ այս աշխարհին մի՛ կերպարանէք, հապա ինքզինքնիդ Աստուածային նմանութեան կերպարանեցէք. այլ կ՚ըսէ. «Մի՛ կերպարանիք,... հապա նորոգուեցէ՛ք»։ Ասիկա լաւ արտայայտութիւն մ՚է. որովհետև մենք ո՛չ ինքզինքնիս կը կերպարանենք և ո՛չ ալ կը նորոգենք, կը կերպարանափոխուինք, հապա կամ ինքզինքնիս աշխարհային ազդեցութեան կ՚ենթարկենք՝ աշխարհին կերպարանելու, և կամ, ինքզինքնիս Աստուծոյ կամաց, սուրբ կամաց կամ Հոգիին կ՚ենթարկենք՝ երկնային ազդեցութիւններով կերպարանափոխուելու, որոնք Աստուծոյ Խօսքին միջոցաւ կը կատարուին։ Դուք որ ուխտուած էք, ո՞ր ազդեցութեան ենթարկած էք ինքզինքնիդ։ Կերպարանափոխիչ ազդեցութիւնները ներկայ զոհաբերութեան և տառապանաց կ՚առաջնորդեն, սակայն վերջը փառաւոր է։ Եթէ դուք այս կերպարանափոխիչ ազդեցութեանց ներքև կը զարգանաք՝ դուք օրէ օր կը քննէք թէ ի՛նչ է Աստուծոյ այն բարի, հաճելի ու կատարեալ կամքը։

Անոնք որ իրենց բոլոր ունեցածը զոհի սեղանին վրայ դրած են՝ թող չարունակ յիշեն թէ՝ մինչդեռ Աստուծոյ Խօսքը Երկրային ու Երկնային խոստումներ կը պարունակէ, սակայն միայն վերջինը իրենց կը պատկանի։ Մեր զանձը երկինքն է. թող մեր

արտերը շարունակ հոն ըլլան։ Մեր կոչումը ո՛չ միայն դէպի հոգեղէն բնութիւն է՝ հապա հոգեղէնին ամենաբարձր կարգը, Աստուածային բնութիւն—«ա՛յնչափ աւելի հրեշտակներէն»։ (Բ. Պետ. Ա. 4։ Եբր. Ա. 4)։ Այս երկնային կոչումը միայն Ներկայ Աւետարանական Դարուն յատկացուած է. անկէ առաջ երբե՛ք տրուած չէր, և որը անոր լրանալովը վերջ պիտի գտնէ։ Երկնային այս կոչէն առաջ՝ երկրային կոչ եղած է, որը սակայն անկատար կերպով ըմբռնուած էր, և որուն համար մեզի ըսուած է թէ Աւետարանական Դարու վերջանալէն յետոյ ալ պիտի շարունակուի։ Կեանք (որպէս մարդկային էակներ վերակենդանացողներուն) և անմահութիւն (այն մրցանակը, որուն համար կը վազէ Քրիստոսի Մարմինը) ի լոյս բերուած են Ներկայ դարու տեւողութեան (Բ. Տիմ. Ա. 10)։ Թէ՛ մարդկային և թէ՛ հոգեղէն բնութիւնները իրենց կատարելութեանց մէջ փառաւոր պիտի ըլլան, սակայն որոշ և անջատ։ Աստուծոյ լրացած գործի փառաց նշանաւոր հանգամանքները պիտի կազմեն գեղեցիկ պէսպիսութիւնները, սակայն ամեն բաներու՝ կենդանի և անկենդան զարմանալի ներդաշնակութեամբ—ներդաշնակ իրարու հետ ու ներդաշնակ Աստուծոյ հետ։



# ԳԼՈՒԽ ԺԱ.

## ԵՐԵՔ ՃԱՄԲԱՆԵՐԸ—ԼԱՅՆ ՃԱՄԲԱՆ, ՆԵՂ ՃԱՄԲԱՆ, ՓՈՂՈՏԱՆ

Կործանումի Լայն Ճամբան.—Կենաց Նեղ Ճամբան.—Ի՞նչ է Կեանքը.—Աստուածային Բնութիւնը.—Աստուածային և Մարդկային Բնութեանց Առնչութիւնը.—Նեղ Ճամբուն Վերջաւորութեան Վարձատրութիւնը.—Վերին Կոչը Միմիայն Աւետարանական Դարուն Սահմանուած է.—Նեղ Ճամբուն Դժուարութիւններն ու Վտանգները.—Սրբութեան Փողոտան։

*"Լ**ԱՅՆ** է այն դուռը ու ընդարձակ՝ այն ճամբան, որ դէպի կորուստ կը տանի. և շատուոր են անոնք որ անկէ կը մտնեն։ Ինչու որ նեղ է այն դուռը ու նեղուածք է այն ճամբան, որ դէպի կեանք կը տանի. և քիչուոր են անոնք որ զանիկա կը գտնեն»։ —Մատթ. է.* 13, 14։

*«Եւ հոն պողոտայ ու ճամբայ պիտի ըլլայ, որ անիկա սուրբ ճամբայ պիտի ըսուի. անկէ պիղծ մէկը պիտի չանցնի, հապա անիկա անոնց համար պիտի ըլլայ. ան ճամբուն մէջ քալողը, ու յիմարները անգամ պիտի չմոլորին։ Հոն առիւծ պիտի չըլլայ, ու անոր վրայ պատառող գազան պիտի չ'ելլէ, և հոն պիտի չգտնուի, հապա փրկուածները հոն պիտի քալեն»։—Եսայի ԼԵ.* 8, 9։

*Ս. Գրոց մէջ երեք ճամբաներ մեր ուշադրութեանը յանձնուած են. «Ընդարձակ ճամբա»ն, «Նեղ ճամբա»ն ու «Գողոտան»։*

## ԿՈՐՍՏԵԱՆ ՏԱՆՈՂ ԸՆԴԱՐՁԱԿ ՃԱՄԲԱՆ

*Այս ճանապարհը այս անունով կոչուած է որովհետև այլասեռած մարդկութեան համար անիկա ամենէն դիւրինն է։ Վեց հազար տարի առաջ, կործանումի դատապարտուած մեղապարտը՝ Ադամ (ու իրմով ներկայացուած սերունդը) այս ճամբան ձեռք առաւ, ու 930 տարի վերջը նա անոր ծայրը հասաւ— կործանում։ Մինչ տարիներն ու դարերը սահեցան անցան, դէպի վար տանող ճանապարհը շնորհիւ մեղքին աւելի սայթաքեցուցիչ ու տղմալի դարձաւ, և մարդկութիւնը աւելի ու աւելի արագօրէն սկսաւ գահավիժել դէպի կործանումը։ Եւ ո՛չ միայն ճամբան աւելի սահուն կը դառնայ, հապա մարդկութիւնը օրէ օր կը կորսնցնէ իր դիմադրութեան զօրութիւնը. որով ներկայիս մարդկային կենաց միջին տեւողութիւնը գրեթէ երեսուն տարի է։ Մարդիկ ներկայիս առաջին մարդէն 900 տարի առաջ կը հասնին կործանումի ճամբուն ծայրը։*

*Վեց հազար տարիէ ի վեր մարդկութիւնը շարունակաբար հետապնդած է լայն՝ դէպի վար տանող ճամբան։ Մի քանիները միայն, բաղդատաբար, փորձած են փոխել իրենց ընթացքը ու Նոր ճամբէն քալել։ Արդարև, անցեալին մէջ առնուած բոլոր սխալ քայլերը ուղղել, ու սկզբնական կատարելութեան հասնիլ անկարելի եղած է, թէպէտև անիկա իրականացնելու համար ոմանց ջանքերը գնահատելի եղած են և օգտակար արդիւնքներ ալ ունեցած են։ Ամբողջ 6000 տարիներ մեղքն ու մահը անգրթօրէն տիրապետած են մարդկութեան վրայ, ու զայն Կործանումի այս Լայն ճամբուն մէջ քշած են։*

Ու մինչև Աւետարանական Դարը՝ ազատման ո՛չ մէկ ճամբայ ի լոյս հանուած էր. թէև անցեալ Դարերուն մէջ նախատիպերու և շուքերու միջոցաւ յուսոյ նըշոյլներ աղօտ կերպով նշմարուած էին, որոնք՝ ոմանք հրճուանօք ողջունած ու ըստ այնմ շարժած էին. սակայն կեանք և անմահութիւն լոյս բերուած չէր մինչև մեր Տիրոջ և Փրկչին Յիսուս Քրիստոսի գալուստը, և Առաքեալներուն կողմանէ փրկութեան և մեղաց թողութեան ու կործանումէն ի վերջոյ յարութիւն առնելու ուրախ լուրերուն քարոզութիւնը։ (Բ. Տիմ. Ա. 10)։ Յիսուսի և Առաքեալներուն ուսուցումները ի լոյս բերին կեանք—կենաց Վերահաստատութիւն մը կամ Վերականգնում մը բոլոր մարդկութեան համար, որը հիմնուած էր Փրկչին արժանիքին և զոհաբերութեանը վրայ. ու անոնք ցոյց տուին թէ ասիկա էր Հին Կտակարանի շատ մը խորհրդաբանական պատկերներուն նշանակութիւնը։ Անոնք նաև ի լոյս բերին Անմահութիւն, Աւետարանական Եկեղեցւոյ վերին կոչման մրցանակը։

Թէև Աւետարանին միջոցաւ կործանումի լայն ճամբէն ազատելու միջոց մը ի լոյս բերուած է, սակայն մարդկութեան մեծ զանգուածը ուրախ լուրերուն ուշադրութիւն չի տար, որովհետև մեղքին միջոցաւ ապականած ու Հակառակորդէն ալ կուրացուած են։ Անոնք որ ներկայիս երախտագիտօրէն կ՚ընդունին կենաց խոստումը՝ Քրիստոսի միջոցաւ մարդկային գոյութեան վերականգնումը, անոնց նոր բացուած ճամբայ մը ցոյց տրուած է, որուն միջոցաւ նուիրուած հաւատացեալները կրնան նոյնիսկ մարդկային բնութենէն ալ անդին անցնիլ ու աւելի բարձր բնութեան մը—հոգեղէնի փոխուիլ։ Այս նոր ճամբան զոր «բացաւ մեզի»—Արքայական Քահանայութեան (Եբր. Ժ. 20)—մեր Տէրը կոչեց

## «ԿԵՆԱՑ ՆԵՂ ՃԱՄԲԱՆ»

*Մեր Տէրը կ'ըսէ մեզ թէ այս ճամբուն նեղուածք ըլլալուն համար է որ շատեր կը նախադասեն կործանումի լայն ճամբուն վրայ մնալ։ «Նեղ (դժուար) է այն դուռը ու նեղուածք է այն ճամբան, որ դէպի կեանք կը տանի, և քիչուոր են անոնք որ զանիկա կը գտնեն»։*

*Այս ճամբան ու անոր վտանգներն ու դժուարութիւնները նկատի առնելէ առաջ, նկատի առնենք նախ անոր վախճանը—կեանք։ Ինչպէս որ արդէն տեսանք՝ ուէ մակարդակի վրայ գտնուող էակ կրնայ վայելել կեանքը, հոգ չէ թէ այդ մակարդակը մարդկայինէն աւելի բարձր կամ ցած է։ Կեանքը լայն և ընդարձակ բառ մ'է, բայց հոս մեր Տէրը կեանքի ամենաբարձր դասին—անմահութեան—կ'ակնարկէ, որը Աստուածային բնութեան կը պատկանի. ասիկա է այն մրցանակը որուն տիրացմանը համար Նա հրաւիրեց մեզ վազելու։ Ի՞նչ է կեանքը։ Մենք զայն ո'չ միայն մեր մէջ կը տեսնենք՝ հապա նաև անոր գործունէութիւնը կը տեսնենք ստորին դասու կենդանիներուն և նոյնիսկ բուսականութեան մէջ. և ըսուած է մեզ թէ անիկա բարձրագոյն դասերուն՝ հրեշտակային ու Աստուածային բնութեանց մէջ ալ գոյութիւն ունի։ Ի՞նչպէս պիտի կարենանք սահմանել այսքան ընդարձակ բառ մը։*

*Եթէ մենք չկարենանք գտնել բոլորին մէջ գտնուող կենաց թաքուն ակերը, սակայն կրնանք վստահօրէն ենթադրել թէ Աստուածային էակը, Եհովան է ամեն կենաց մեծ աղբիւրը, որմէ կը մատակարարուին այս բոլոր ակերը։ Բոլոր կենդանի բաները Անկէ յառաջ եկած են, ու կեանքի համար Անկէ կախում ունին։ Ամեն կեանք՝ ըլլայ այն Աստուծոյ կամ Անոր արարածներուն մէջ՝ միևնոյնն է. անիկա*

ոգեւորիչ սկզբունք մ'է և ո՛չ թէ նիւթ մը։ Ան սկզբունք մ'է որը Աստուծոյ մէջ կեդրոնացած է, բայց Իր արարածներուն մէջ՝ Աստուծոյ սահմանած կարգ մը պատճառներէն յառաջ կուգայ. ուրեմն Նա անոր պատճառն է, Հեղինակը կամ Աղբիւրը։ Որով արարածը ո՛չ մէկ կերպով Արարչին էութեան կամ բնութեան մասը կամ սերունդն է, ինչպէս որ ոմանք կ'ենթադրեն, հապա՝ ան Աստուծոյ ձեռագործն է, կեանքով ոգեւորուած։

Ընդունելով այն իրականութիւնը, թէ միմիայն Աստուածային բնութեան մէջ անկախ, անսահման, անսպառ և բոլորովին անընդհատ կեանք կայ, որը ո՛չ պարագաներէ կը հայթայթուի և ո՛չ ալ կը կառավարուի, ուրեմն կը տեսնենք թէ Եհովան ի հարկէ գերիվերոյ է այն Ֆիզիքական օրէնքներէն և մատակարարութիւններէն որոնք Նա սահմանեց Իր արարածներուն գոյութեանը համար։ Այս յատկութիւնն է որ Աստուածային բնութեան կը պատկանի, և որը անմահութիւն բառով բացատրուած է։ Ինչպէս որ առջի գլխուն մէջ ցոյց տրուեցաւ, անմահութիւնը մահուան—անընդունակութիւն կը նշանակէ, և հետևաբար, անընդունակ հիւանդութեան և ցաւի։ Արդարև, անմահութիւնը կարելի է Աստուածութեան իբր հոմանիշ գործածել։ Աստուածային Անմահ Աղբիւրէն կը բղխի ամեն կեանք և օրհնութիւն, ամեն բարի ու կատարեալ պարգև, ինչպէս որ երկիրը արեգակէն կ'ընդունի իր լոյսը և զօրութիւնը։

Արևը երկրին լուսոյ մեծ աղբիւրն է որը կը լուսաւորէ ամեն բան, կը հայթայթէ պէսպէս գոյներ և լուսոյ երանգներ, համաձայն այն առարկային բնութեան, որուն վրայ ան կը փայլի։ Միևնոյն արեւուն լոյսը փայլելով ադամանդի մը, աղիւսի մը և

տարբեր տեսակ ապակիներու վրայ՝ բոլորովին տարբեր արդիւնքներ յառաջ կը բերէ։ Լոյսը միեւնոյնն է, սակայն առարկաները՝ որոնց վրայ ան կը փայլի, կը տարբերին իրենց ընդունելու եւ արտացոլելու կարողութեան մէջ։ Նոյնպէս ալ կեանքը. ան բոլորովին մէկ անսպառ աղբիւրէ կը բղխի։ Ոստրէն ալ կեանք ունի, սակայն անոր յօրինուածքը ա՛յնքան խեղճ է, որ չի կրնար շատ կեանք գործածել, ինչպէս որ աղիւսը չի կրնար արեւին լոյսէն շատ ցոլացնել։ Նոյնպէս ալ նաեւ կեանքի աւելի բարձր արտայայտութեանց իւրաքանչիւրին մէջ, անասնոց, ձուկի եւ թռչունի մէջ։ Արեւին ներքեւ գտնուած զանազան կարգի ապակիներուն նման՝ այս արարածները տարբեր կերպով ցոյց կուտան իրենց ունեցած գործարանական այլեւայլ զօրութիւնները, երբոր կեանքը կը կենդանացնէ անոնց յօրինուածքները։

Յղկուած ադամանդը լուսոյ ա՛յնքան ընդունակ է որ, այնպէս ցոյց կուտայ իբր թէ ինքն իր մէջը լոյս կը պարունակէ, ու ինքնին պզտիկ արեւ մ'է։ Նոյնպէս ալ մարդը, Աստուծոյ ստեղծագործութիւններուն մէկ գլուխ գործոցը, որը միայն «հրեշտակներէն քիչ մը վար եղած է»։ Նա ա՛յնքան հիանալիօրէն կերտուած էր որ, Աստուծոյ հայթայթած միջոցներուն գործածութեամբը կարող պիտի ըլլար ընդունիլ ու պահել կեանքը, առանց երբեք աղօտանալու։ Այսպէս էր Ադամ իր անկումէն առաջ. աւելի վսեմ քան երկրային ո՛եւէ արարած. ո՛չ թէ իր մէջը գտնուող կենաց սկզբունքի ո՛եւէ տարբերութեան համար, հապա աւելի վսեմ յօրինուածքի պատճառաւ։ Սակայն պարտինք յիշել թէ՝ ինչպէս որ ադամանդը չի կրնար ո՛եւէ լոյս ցոլացնել եթէ արեւը չը փայլի իր վրայ, նոյնպէս ալ մարդը կեանքի պարէնի

չարունակաբար հայթայթմամբը միայն կրնայ պահպանել ու վայելել կեանքը։ Մարդը իր մէջ ինքնաբուխ կեանք չունի․ նա կենաց աղբիւր մը չէ, ինչպէս որ աղամանդը լուսոյ աղբիւր մը չէ։ Եւ ամենազօրաւոր փաստերէն մէկը, թէ մենք անսպառ կենաց մթերք չունինք մեր մէջ, և կամ, ուրիշ խօսքով, թէ մենք անմահ չենք, այն է, թէ մեղաց աշխարհ մտնելէն ի վեր մահը բոլորին վրայ տիրած է։

Աստուած կարգադրած էր, թէ մարդը Եդեմի մէջ ազատութիւն պիտի ունենայ կեանքը վառ պահող ծառերուն մօտենալու․ ու այն դրախտը ուր որ նա զետեղուած էր, կերակուրի կամ զարդարանքի «ամէն (տեսակ) ծառերով» պճնուած էր։ (Ծննդ․ Բ․ 9, 16, 17)։ Ուտելու յարմար կենաց ծառերուն մէջէն մէկը արգիլուած էր։ Թէև ժամանակուայ մը համար արգիլուած էր ուտելու գիտութեան ծառէն, սակայն նա թոյլատրուած էր ազատօրէն ուտելու միւս ծառերէն, որոնք կեանքը կատարեալ կերպով վառ կը պահէին․ իսկ իր մեղանչելէն վերջն էր միայն որ նա զրկուեցաւ անոնցմէ, որպէսզի այդ կերպով կարելի ըլլայ մահուայ պատիժին գործադրութիւնը։ Ծննդ․ Գ․ 22։

Այսպէսով, կը տեսնուի որ մարդկութեան փառքն ու գեղեցկութիւնը կենաց յարատև պարէնէ կախում ունի, ինչպէս որ աղամանդին գեղեցկութիւնը արևի լոյսի յարատև հայթայթումէն կախում ունի։ Երբոր մեղքը մարդկութիւնը կենաց իրաւունքէն զրկեց, ու պարէնը դադրեցաւ, անմիջապէս գոհարը սկսաւ կորսնցնել իր պայծառութիւնը և գեղեցկութիւնը, ու ի վերջոյ գերեզմանին մէջ զրկուեցաւ անոր վերջին ցոլքերէն։ «Անոր ցանկալի բաները ցեցի պէս կը հալին»։ (Սաղմ․ ԼԹ․ 11)։ Ինչպէս որ աղամանդը լոյսին դադարումովը կը կորսնցնէ իր գե-

ղեցկութիւնը և փայլը, այսպէս ալ նաև մարդը կը կորսնցնէ կեանքը՝ երբոր Աստուած կը դադրեցնէ անկէ պարէնը։

«Մարդը իր հոգին (կեանքը) կ՚աւանդէ, ու ետքը ո՞ւր տեղ է»։ «Անոր տղաքը պատիւ կ՚ունենան ու ինքը չի գիտնար. անոնք անարգ կ՚ըլլան, ու ինքը անոնց վիճակը չ՚իմանար։ (Յոբ ԺԴ. 10, 21)։ «Քանզի ան քու երթալու գերեզմանիդ մէջ գործք, խորհուրդ, գիտութիւն և իմաստութիւն չկայ»։ (Ժողովող Թ. 10)։ Բայց քանի որ փրկանք մը գըտնուած է, քանի որ մահուան պատիժը Փրկչին կողմանէ վճարուած է, ադամանդը իր կորսնցուցած գեղեցկութիւնը պիտի վերստանայ, ու դարձեալ կատարելապէս պիտի արտացոլէ Արարչին պատկերը, երբ որ Արդարութեան Արեգակը ծագի Իր թեւերուն վրայ բժշկութիւն ունենալով։ (Մաղ. Դ. 2)։ Մեղաց պատարագին՝ Քրիստոսի զոհաբերութեան պատճառաւ է որ «Ամէնը որ իրենց գերեզմաններուն մէջ են դուրս պիտի գան»։ Ամէն բաներու Վերահաստատութիւն մը պիտի ըլլայ. նախ՝ բոլորին ալ Վերականգնումի պատեհութիւն մը պիտի տրուի, իսկ ի վերջոյ՝ մարդկային կատարելութիւն մը ամէն անոնց, որոնք պիտի հնազանդին Փրկչին։

Ասիկա սակայն Յիսուսի ակնարկած նեղ ճամբուն վերջաւորութեանը վարձատրութիւնը չէ։ Ուրիշ համարներէ կը սորվինք թէ նեղ ճամբուն մէջ քալողներուն խոստացուած վարձատրութիւնը «Աստուածային բնութիւն»—ինքնաբուխ կեանք է, բարձրագոյն աստիճանի կեանք մը՝ զոր միայն Աստուածային բնութիւնը կրնայ ունենալ—անմահութիւն։ Ի՜նչ մեծ յոյս։ Միթէ պիտի յանդգնի՞նք տենչալ փառաց այսպիսի բարձրութեան մը։ Անտարակոյս, ա-

*ռանց դրական և բացորոշ հրաւիրումի ո՛չ ոք կըրնայ ըստ օրինի այդպէս ընել։*

*Ա․ Տիմ․ Զ․ 14—16էն կը սորվինք թէ անմահ կամ Աստուածային բնութիւնը սկզբաննէ միմիայն Աստուածութեան ստացուածքն էր։ Մենք կը կարդանք․ «Որն որ (Յիսուս) Իր ատենին (Հազարամեայ Դարուն) պիտի ցուցնէ՝ Երանելին ու միմիայն Հզօր—Թագաւորներուն Թագաւորը ու տէրերուն Տէրը, որ Ինքը միայն ունի անմահութիւն՝ անմերձենալի լուսոյ մէջ բնակած․ Որն որ մարդիկներէն մէկը չտեսաւ, ո՛չ ալ տեսնելու կարող է»։ Միւս բոլոր էակները, հրեշտակներ, մարդիկ, անասունք, թռչունք, ձկներ, ևայլն, միմիայն ամաններ են, իւրաքանչիւրը իր չափովը կեանք ունենալով․ և բոլորն ալ նկարագրով, կարողութեամբ ու յատկութեամբ կը տարբերին ըստ իրենց յօրինուածքին զոր Արարիչը հաճած է հայթայթել իւրաքանչիւրին։*

*Դարձեալ, մենք կը սորվինք թէ Եհովան՝ որը միմիայն սկզբաննէ անմահութիւն ունէր, խիստ բարձրացուցած է Իր Որդին, մեր Տէրը Յիսուս, միևնոյն Աստուածային անմահ բնութեան․ որով ներկայիս Նա Հօրը էութեանը բուն պատկերն է։ (Եբր․ Ա․ 3)։ Որով կը կարդանք, «Ինչպէս որ Հայրը ԻՐ ԱՆՁԻՆ ՄԷՋԸ ԿԵԱՆՔ ունի (Աստուծոյ «անմահութեան» ստուգաբանութիւնը*—Իր անձին մէջ կեանք*—ո՛չ տարբեր աղբիւրներէ ստացած և ո՛չ ալ պարագաներէ կախում ունեցած, հապա՝ անկախ, անբաժան կեանք), անանկ ալ Որդիին տուաւ որ Իր ԱՆՁԻՆ ՄԷՋ ԿԵԱՆՔ ունենայ»։ (Յովհ․ Ե․ 26)։ Որով մեր Տէր Յիսուսի յարութենէն ի վեր, երկու անմահ էակներ կան․ և ի՛նչ ապշեցուցիչ շնորհ՝ որ միևնոյն պարգևը Գառնուկին Հարսին ալ խոստացուած է, որը ներկայ Աւետարանական Դարուն կը*

հաւաքուի։ Սակայն անուանապէս Եկեղեցիին մէջ գտնուող մեծ բազմութիւնը պիտի չստանայ այս մեծ մրցանակը, հապա միմիայն յաղթողներու «փոքրիկ հօտ»ը, որոնք զայն շահելու համար ամէն բան աղտեղութիւն կը համարեն. որոնք մօտէն կը հետեւին Տիրոջը քայլերուն. որոնք Անոր նման, զոհաբերութեան նեղ ճամբէն կը քալեն մինչեւ ի մահ։ Ասոնք՝ յարութեան ժամանակ՝ մեռելներէն ծնած ատեն՝ Աստուածային բնութիւն եւ կերպարանք պիտի ունենան։ Այս անմահ, անկախ, ինքնագոյ, Աստուածային բնութիւնը այն կեանքն է, որուն կ'առաջնորդէ նեղ ճամբան։

Այս դասակարգը գերեզմանէն որպէս մարդկային էակներ յարութիւն պիտի չառնէ. որովհետեւ Առաքեալը կը վստահեցնէ մեզ թէ՝ թէեւ գերեզմանին մէջ հողեղէն մարմիններ կը սերմանուին, սակայն հոգեղէն մարմիններ յարութիւն պիտի առնեն։ Ասոնք բոլորն ալ պիտի «փոխուին», ու ինչպէս որ անոնք անգամ մը հողեղէնին կերպարանքը, մարդկային բնութիւն հագած էին, երկնայինին կերպարանքն ալ պիտի հագնին։ Սակայն «տակաւին յայտնի չէ թէ ի'նչ պիտի ըլլանք»—թէ ի'նչ է հոգեղէն մարմինը. «բայց գիտենք որ երբ Անիկա յայտնուի, Անոր պէս պիտի ըլլանք», ու «յայտնուելիք փառաց» մէջ բաժին պիտի ունենանք։—Ա. Յով. Գ. 2։ Կող. Ա. 27։ Բ. Կորնթ. 7—17։ Յովհ. ԺԷ. 22։ Ա. Պետ. Ե. 10։ Բ. Թես. Բ. 14։

Ո'չ միայն բնութեան փոփոխութեան մը այս վերին կոչը միմիայն Աւետարանական Դարուն կը վերաբերի, հապա՝ այս դարու միակ առաջարկն է։ Որով՝ այս գլուխին սկիզբը յիշուած մեր Տիրոջը խօսքերը, Կորուստի Լայն Ճամբուն մէջ կը ներփակեն ամէն անոնք, որոնք ներկայիս առաջարկուած միակ մրցանակի նեղ ճամբուն մէջ չեն։ Մնացեալ բոլորը

դեռ լայն ճամբուն վրայ են։ Միայն նուիրեալ Քրիստոնեաները խուսափած են աշխարհի վրայ ծանրացող դատապարտութենէն։ Անիկա է ներկայիս բացուած կեանքի միակ ճամբան, ուր գտնուող դըժուարութեանց պատճառաւ, քիչեր միայն կուզեն անկէ քալել։ Մարդկութեան զանգուածները իրենց տկարութեանց պատճառաւ, կը նախընտրեն անձնահաճութեան լայն ու դիւրին ճամբէն քալել։

Նեղ Ճամբան, որը թէև կեանքով ու անմահութեամբ կը վերջանայ, կրնայ մահուան ճանապարհ մը կոչուիլ, քանի որ անոր մրցանակը մարդկային բնութեան մինչև ի մահ զոհաբերմամբը կը շահուի։ Անիկա մահուան նեղ ճամբան է որ կեանքի կ'առաջնորդէ։ Ադամական մեղքէն ու մահուան դատապարտութենէն ազատ համարուած ըլլալով, նուիրուածները կամաւորաբար կուտան և կամ կը զոհաբերեն մարդկային այն իրաւունքները, որոնք իրենցը հաւուրուած են, և որոնք յարմար ժամանակին ընդհանուր աշխարհի հետ միասին իրականապէս պիտի ստանային։ Ինչպէս որ «Քրիստոս Յիսուս մարդը» աշխարհին համար զոհաբերեց Իր կեանքը, նոյնպէս ալ սոնք Անոր հետ զոհակիցներ կ'ըլլան։ (Կող. Ա. 24։ Ա. Պետ. Դ. 12, 13։ Գործ. Թ. 4, 5)։ Ո՛չ թէ Անոր զոհը անբաւական էր և ուրիշներու պէտքը կ'զգացուէր, այլ՝ թէև Անորինը բոլորին-բաւական էր, սակայն սոնք թոյլատրուած են Անոր հետ ծառայել ու չարչարուիլ, որպէսզի Անոր Հարսը ու ժառանգակիցը ըլլան։ Այսպէս, մինչդեռ աշխարհը մահուան դատապարտութեան ներքև է, ու Ադամի հետ կը մեռնի, այս «փոքրիկ հօտ»ը հաւատքի միջոցաւ արդար համարուելու և զոհաբերութեան ընթացքի շնորհիւ որոնք արդէն բացատրեցինք, Քր-

Քրիստոսի հետ կը մեռնի կոչուած է։ Անոնք Անոր հետ որպէս մարդկային էակներ կը զոհաբերուին ու կը մեռնին, որպէսզի Անոր հետ կարենան Աստուածային բնութեան ու փառաց հաղորդ ըլլալ. որովհետեւ մենք կը հաւատանք թէ՝ եթէ Անոր հետ մեռնինք, Անոր հետ ալ պիտի ապրինք։ Եթէ անոր հետ չարչարուինք, Անոր հետ ալ պիտի փառաւորուինք։ —Հռովմ. Ը. 17 և Բ. Տիմ. Բ. 11, 12։

Հազարամեայ Դարու սկզբնաւորութեան, ասոնք որ ներկայիս Նեղ Ճամբէն կը քալեն, չահած պիտի ըլլան այն մեծ մրցանակը, անմահութիւն, որուն համար վազեցին. ու այսպէս, Աստուածային բնութիւն և զօրութիւն զգեցած ըլլալով՝ անոնք պատրաստ պիտի ըլլան աշխարհի վերականգնումի և օրհնութեան մեծ գործին, որը այդ Դարուն տեղի պիտի ունենայ։ Աւետարանական Դարու վերջաւորութեամբ՝ պիտի գոցուի նաև անմահութեան Նեղ Ճամբան. որովհետև ընտրուած «փոքրիկ հօտ»ը ուրուն փորձութեանը և պացուցմանը համար որոշուած էր ան՝ ամբողջացած պիտի ըլլայ։ «Հիմա է ընդունելի ժամանակը»—այն ժամանակը, ուր զոհաբերողները, որոնք Յիսուսի արժանիքովը կուգան ու Անոր հետ կը մեռնին՝ ընդունելի են Աստուծոյ— անուշահոտ պատարագ մը։ Մահը՝ որպէս Ադամական դատապարտութիւն, յաւիտեան պիտի չթոյլատրուի. անիկա Հազարամեայ Դարու տևողութեան պիտի ոչնչանայ։ Մահուայ զոհերը միմիայն Աւետարանական Դարու տևողութեանը պիտի ընդունուին ու վարձատրուին։

Այս դարու սուրբերը միայն որպէս «նոր արարածներ» կենաց ճամբուն մէջ են. և որպէս մարդկային էակներ միայն իբրև զոհեր մահուան ուխտ ըրած են։ Եթէ որպէս մարդկային արարածներ Քրիստոսի հետ

մեռնինք, որպէս նոր, հոգեղէն էակներ, Անոր հետ պիտի ապրինք։ (Հռովմ. Զ. 8)։ Մեր մէջ գտնուած Աստուծոյ միտքը՝ կերպարանափոխուած միտքը՝ նոր բնութեան սերմն է։

Նոր կեանքը ենթակայ է դիւրութեամբ խեղդուելու. ու Պօղոս Առաքեալ կը վստահեցնէ մեզ թէ՝ եթէ ճշմարտութեան միջոցաւ Հոգիէն յղանալէ վերջ մարմինին ետեւէն քալենք՝ պիտի մեռնինք (կորսնցընենք կեանքերնիս), բայց թէ որ Հոգիով մարմինին գործքերը (մարդկային բնութեան միտումները) մեռցնենք՝ պիտի ապրինք (որպէս նոր արարածներ). որովհետեւ Աստուծոյ Հոգիէն առաջնորդուածները Աստուծոյ որդիներն են։ (Հռովմ. Ը. 13, 14)։ Ասիկա խիստ կարեւոր խորհուրդ մ'է բոլոր նուիրուածներուն. որովհետեւ եթէ Աստուծոյ հետ ուխտ ըրած ենք զոհաբերելու մարդկային բնութիւնը, ու եթէ այդ զոհը Իրմէ ընդունուած է, այլեւս անօգուտ է փորձել զայն ետ առնել։ Հողեղէն մասը ներկայիս Աստուծմէ այլեւս մեռած համարուած է, ու պէտք է իրապէս մեռնի. ան երբե՛ք պիտի չվերականգնի։ Ուրեմն այն բոլորը որ մեր ետ առնելովը ու մարմինին ետեւէ քալելովը պիտի շահինք, մարդկային ըղձանաց պզտիկ վայելք մ'է, որը սակայն հոգեղէն նոր բնութեան կորուստը պիտի նշանակէ։

Սակայն շատ մը նուիրուածներ կան, որոնք թէեւ կը փափաքին մրցանակին, եւ որոնք Հոգիէն ալ յըղացած են, բայց մասամբ յաղթուած են աշխարհի հրապոյրներէն, մարմնի հաճոյքներէն եւ կամ Սատանային հնարքներէն։ Անոնք մասամբ իրենց տեսութենէն կը կորսնցնեն մեր առջեւ դրուած մրցանակը, ու կը փորձեն միջին ճամբու մը մէջ քալել— պահելով՝ թէ՛ Աստուծոյ եւ թէ՛ աշխարհին հաճութիւնը, մոռնալով թէ «աշխարհիս սէրը Աստուծոյ

*դէմ թշնամութիւն է» (Յակոբոս Դ. 4), և թէ՝ մըրցանակը շահելու համար ասպարէզէն վազողներուն տրուած հրահանգներն են. մի՛ սիրէք աշխարհը,՝ և իրարմէ փառք մի՛ առնէք, հապա այն փառքը ու պատիւը որը միմիայն Աստուծմէ կուգայ։—Ա. Յովհ. Բ. 15։ Յովհ. Ե. 44։*

*Անոնք՝ որ կը սիրեն ներկայ աշխարհը, թէպէտև Տէրը բոլորովին չեն թողած, ո՛չ ալ անարգած իրենց ուխտը՝* տառապանքի *կրակովը կը պատժուին ու կը մաքրուին։ Ինչպէս որ Առաքեալը կը յայտնէ, անոնք Սատանային ձեռքը մատնուած են՝ որ մարմինը փճացնէ, որպէսզի հոգին (Նոր յղացած բնութիւնը) փրկուի Տէր Յիսուսի օրը։ (Ա. Կորնթ. Ե. 5)։ Եթէ անոնք այս խրատներէն սորվին իրենց պիտանի դասերը, ի վերջոյ հոգեղէն վիճակներու մէջ պիտի ընդունուին։ Անոնք հրեշտակաց նման յաւիտենական, հոգեղէն կեանք պիտի ունենան, սակայն պիտի կորսնցնեն անմահութեան մրցանակը։ Անոնք Աստուծոյ պիտի ծառայեն Անոր Տաճարին մէջ, ու կայնին գահին* առջևը, *իրենց ձեռքերուն մէջ արմաւենիի ճիւղերով։ (Յայտ. Է. 9—17)։ Թէև ասիկա փառաւոր վիճակ մը պիտի ըլլայ, սակայն յաղթողներու «փոքրիկ հօտ»ինին նման փառաւոր պիտի չըլլայ, որոնք Աստուծոյ թագաւորներ և քահանաներ պիտի ըլլան, ու Յիսուսի հետ որպէս Անոր Հարսն ու ժառանգակիցը, նստին* Գահին *վրայ, անմահութեամբ պսակուած։*

*Մերինը խորտուբորտ, սեպ ու նեղ ճամբայ մ՚է, ու եթէ ճամբորդութեան իւրաքանչիւր յաջորդական քայլի համար պէտք եղած զօրութիւնը հայթայթուած չըլլար, երբե՛ք կարելի պիտի չըլլար մեզի նպատակակէտին հասնիլ։ Սակայն մեր Զօրավարին խօսքը քաջալերիչ է. Քաջասի՛րտ եղէք. Ես*

յաղթեցի. Իմ շնորհքս բաւ է քեզի, ինչու որ Իմ զօրութիւնս տկարութեան մէջ կը կատարուի: (Յովհ. ԺԶ. 33: Բ. Կորնթ. ԺԲ. 9): Այս ճամբուն դժուարութիւնները իբր անջատող սկզբունք մը պիտի ծառայեն, սրբացնելու և մաքրելու համար «սեփական ժողովուրդ մը», «Աստուծոյ ժառանգներ և Յիսուս Քրիստոսի ժառանգակիցներ ըլլալու»: Այս բաներուն ի տես, ուրեմն համարձակութեամբ մօտենանք շնորհաց աթոռին առջևը, որպէսզի ողորմութիւն ընդունինք ու շնորհք գտնենք պէտք եղած ատենը մեզի օգնելու, երբ կը պայքարինք հաւատքին բարի պատերազմը, ամուր բռնելով «փառաց անթառամ պսակը»—անմահութիւն, Աստուածային բնութիւն: Բ. Տիմ. Դ. 8: Ա. Պետ. Ե. 4:

## ՍՐԲՈՒԹԵԱՆ ՊՈՂՈՏԱՆ

Թէև Աւետարանական Դարու մասնաւոր յոյսը գերազանցապէս փառաւոր է, ու անոր ճանապարհը համեմատաբար դժուար—նեղ, ու ամեն քայլափոխի վրայ դժուարութիւններով և վտանգներով ցանկապատուած է—որպէսզի քիչեր միայն գտնեն զայն ու տիրանան մեծ մրցանակին, անոր վերջաւորութեանը սակայն յետագայ Դարու իրերու կարգն ու սարքը բոլորովին տարբեր պիտի ըլլայ: Ինչպէս որ տարբեր յոյս մը ցոյց տրուած է, նոյնպէս ալ տարբեր ճանապարհ մը անոր կ'առաջնորդէ: Անմահութեան ճամբան այնպիսի ճանապարհ մ'է, որը կը պահանջէ իրապէս օրինաւոր և պատշաճ յոյսերու, փառասիրութիւններու և փափաքներու—մարդկային բնութեան ընդմիշտ զոհաբերումը: Սակայն, դէպի մարդկային կատարելութեան, Վերահաստատութեան տանող ճամբան, աշխարհի յոյսը՝ մեղաց մէկդի դնելը միայն կը պահանջէ. ո՛չ թէ մարդկային իրաւունքներու և պատեհութիւններու զոհա-

*բերումը, ընդհակառակը անոնց պատչաճ վայելումը։ Անիկա անհատական մաքրագործումով և վերականգնումով մարդկութիւնը՝ Աստուծոյ պատկերին պիտի առաջնորդէ, զոր մեղքին աշխարհ մտնելէն առաջ Ադամ կը վայելէր։*

*Դէպի ետ՝ մարդկային կատարելութիւն առաջնորդող ճանապարհը խիստ պարզ և դիւրին պիտի ըլլայ. ա՛յնքան դիւրին, որ «ուղևորող մարդը, ու անոր անծանօթ եղողները, պիտի չմոլորին «(Եսա. ԼԵ. 8—Տե՛ս Լիսըրի Թարգ.). ա՛յնքան պարզ, որ ո՛չ ոք իր դրացիին պիտի սորվեցնէ՝ ըսելով թէ ճանչցի՛ր Տէրը, որովհետև բոլորն ալ պիտի ճանչնան Տէրը պզտիկէն մինչև մեծը։ (Երեմ. ԼԱ. 34)։ Փոխանակ նեղ ճամբայ մը ըլլալու որ քիչեր կրնան գտնել, «պողոտայ» մը կոչուած է, հասարակաց ճամբայ մը—ո՛չ թէ նեղ, սեպ, խորտուբորտ, դըժուարին, ցանկապատ արահետ մը, հապա՝ դիւրին, ճամբորդութեան համար մասնաւորապէս պատրաստուած ճամբայ մը—ուղևորողներուն դիւրութեանը համար յատկապէս պատրաստուած։ 8 և 9 համարները ցոյց կուտան թէ անիկա հասարակաց ճամբայ մը պիտի ըլլայ, բացուած բոլոր փրկուածներուն—ամեն մարդու համար։ Ամեն մարդ՝ որուն համար Քրիստոս մեռաւ, երբ Անոր թանկագին արեամբ գնուած պատեհութիւնները և խորհուրդները կը ճանչնայ ու կ'օգտուի անոնցմէ, կարող պիտի ըլլայ այս Սրբութեան Պողոտայէն դէպի վեր քալելով՝ մարդկային կատարելութեան անթերի Վերականգնումի մեծ նպատակակէտին և յաւիտենական կենաց հասնիլ—հասնիլ այն ամէնուն՝ որ Ադամով կորսուեցաւ և Յիսուսով փրկուեցաւ։*

*Ասիկա արդարացած* համարուած *և Աստուծոյ առջև սուրբ և կատարեալ հաշուըուած կեցուածք մը*

*պիտի չըլլայ. երբոր սկսին քալել այս սրբութեան պողոտայէն, անոնք պիտի կարենան* իրական *կատարելութեան բարձրանալ՝ իբր արդիւնք ջանքի և հնազանդութեան, որոնց համար ամեն բան նպաստաւոր վիճակի մը պիտի վերածուի այն ժամանակ զօրութեամբ տիրապետող Փրկչէն: Իւրաքանչիւր անհատ՝ իր պէտքերուն համեմատ օգնութիւն պիտի ստանայ նոր Թագաւորութեան իմաստուն և կատարեալ վարչութենէն: Ասիկա, ինչպէս որ ոմանք պիտի յիշեն, փրկութեան իրական արդիւնքը պիտի ըլլայ: Քանի որ մեր Տէրը, Քրիստոս Յիսուս մարդը, ինքզինքը բոլորին տեղը Փրկանք տուաւ, ու կը փափաքի որպէսզի բոլորն ալ ճշմարտութեան գիտակցութեան գան, ու անոր միջոցաւ իրական կատարելութեան՝ ուրեմն ինչո՞ւ նա անմիջապէս բոլորին համար ալ լաւ և լայն պողոտայ մը չի բանար: Ինչո՞ւ չի վերցներ արգելքները, գայթակղութեան քարերը, փոսերը և որոգայթները: Ինչո՞ւ չ'օգներ մեղաւորին՝ Աստուծոյ հետ կատարեալ համաձայնութեան վերադառնալու, փոխանակ ճամբան այսքան նեղ, սեպ, փշոտ, դժուարագիւտ և անոր մէջ քալելը աւելի դժուար ընելու: Ճշմարտութեան Խօսքը ուղիղ բացատրելու մէկ թերութիւնը՝ ու անտեսելը՝ թէ ներկայ նեղ ճամբան դէպի մասնաւոր մրցանակի մը կ'առաջնորդէ, և* որը *ժառանգակիցներու փոքրիկ հօտին, Քրիստոսի Մարմինին քննութեան և ընտրութեան համար է, որը երբ ընտրուի և իր Գլուխին հետ բարձրանայ, պիտի օրհնէ բոլորը՝ այս նիւթին շուրջ ոմանք խիստ չփոթեցուցիչ գաղափարներու առաջնորդած է: Թերանալով տեսնել Աստուծոյ Ծրագիրը, շատեր ներկայ Դարուն մէջ կը ջանան սրբութեան պողոտայ մը, կենաց դիւրին ճանապարհ մը քարոզել, երբ այս տե-*

*սակ ո՛չ մէկ ճամբայ գոյութիւն ունի. ու անոնք խնդիրը կը շփոթեն և կը վտանգեն, երբ կը ջանան իրականութիւնները և Ս. Գիրքը իրենց սխալ տեսութիւններուն հետ հաշտեցնել: Ի մօտոյ բացուելիք Պողոտային մէջ, միմիայն մեղսալից բաները պիտի արգիլուին, մինչդեռ ներկայիս նեղ ճամբէն քալողները պարտին ինքզինքնին զրկել ու զոհաբերել շատ մը բաներ որոնք մեղսալից չեն, նոյնպէս ալ շարունակ պայքարիլ զիրենք պաշարող ու բռնաբարող մեղքերուն դէմ: Ասիկա զոհաբերութեան շաւիղ մ'է, մինչդեռ յառաջիկայ Դարունը՝ արդարութեան պողոտայ մը պիտի ըլլայ:*

*Այս պողոտային մասին նշանակելի կերպով մը բայց խորհրդաբանական լեզուաւ ըսուած է թէ՝ «Հոն առիւծ պիտի չըլլայ, ու անոր վրայ պատառող գազան պիտի չելլէ, և հոն պիտի չգտնուի»: (Ես. ԼԵ. 9): Քանի՛ քանի ահաբեկիչ առիւծներ կան ներկայիս անոնց ճամբուն մէջ, որոնք ուրախ պիտի ըլլան թողուլ մեղսալից ճամբաները ու արդարութեան ետևէ երթալ: Հոս այլասեռ հասարակաց կարծիքի առիւծը կայ, որը շատերը կը կասեցնէ համարձակելու խղճմտանքին ձայնը լսելու կեանքի առօրեայ խնդիրներուն— հաղուստի, տան և առևտուրի կարգադրութեանց և այլնի նկատմամբ: Ոգելից ըմպելիքի փորձութեան առիւծը հազարաւորներու արդելք կ'ըլլայ, որոնք ուրախ պիտի ըլլային զայն մէջտեղէն վերցած տեսնել: Ոգելից ըմպելիքի դէմ պայքարողները իրենց առջև հերակլեան գործ մը կը գտնեն, զոր միայն յառաջիկայ Դարու իշխանութիւնը և զօրութիւնը կրնայ խափանել: Միևնոյն բանը կարելի է ըսել նաև բարոյական բարեկարգութեանց ուրիշ ընտիր ջանքերու համար ալ: «Ու անոր վրայ պատառող գազան պիտի չելլէ»: Ո՛չ մէկ հսկայ ըն-*

*կերութիւն պիտի չթոյլատրուի կազմակերպուիլ, յառաջ տանելու համար շահախնդիր և անհատական շահեր, որոնք ընդհանուրին շահերը պիտի վտանգեն: «Անոնք պիտի չվնասեն ու չապականեն Իմ բոլոր սուրբ լերանս (Թագաւորութեանս) վրայ կ՚ըսէ Տէրը»: (Ես. ԺԱ. 9): Թէև հոն դժուարութիւններ պիտի կենան որոնց դէմ պէտք է պայքարիլ՝ յաղթելու համար դէպի չարը հակող միտումները, ևն., սակայն, բաղդատաբար ներկայ դարու նեղ ճամբուն հետ, անիկա դիւրին ճամբայ մը պիտի ըլլայ: Քարերը (գայթակղութեան քարերը) բոլորն ալ պիտի հաւաքուին, ու ժողովուրդին համար պիտի բարձրացուի ճշմարտութեան դրօշը: (Ես. ԿԲ. 10): Տգիտութիւնը և նախապաշարումը անցեալի բաներ պիտի ըլլան, ու արդարութիւնը իր պատշաճ վարձատրութիւնը պիտի ստանայ, մինչդեռ չարը իր արժանի պատիժը պիտի ստանայ: (Մաղ. Գ. 15, 18): Օգտակար պատիժներով, յարմար խրախուսանքներով ու պարզ հրահանգներով, որպէս վերադարձած անառակ որդիներ, մարդկութիւնը պիտի կրթուի և հրահանգուի այն վսեմ կատարելութեան համար, ուրկէ Ադամ ինկաւ: Այսպէս՝ «Տիրոջը փրկածները* պիտի դառնան *(կործանումէն, վսեմ պողոտային միջոցաւ) ... և անոնց գլխուն վրայ յաւիտենական ուրախութիւն պիտի ըլլայ, անոնք ցնծութիւն և ուրախութիւն պիտի ստանան, ու տրտմութիւնը և հեծութիւնը անոնցմէ պիտի հեռանայ». (Ես. ԼԵ. 10): Մեր Տէրը այս ճամբաներէն միայն երկուքը յիշեց, որովհետև երրորդը բացուելու որոշեալ ժամանակը չէր—ինչպէս որ ուրախ լուրերը ծանուցած ժամանակ ըսաւ. «Այս օր այս գրուածքը կատարուեցաւ ու ձեր ականջները լսեցին». սակայն Նա չյիշեց «Վրէժխնդրութեան Օրը», որովհե-*

եւ այն ատեն անոր որոշեալ ժամանակը չէր։ (Բաղդատէ Ղուկ. Դ. 19 և Ես. ԿԱ. 2)։ Ներկայիս սակայն, երբ Նեղ Ճամբան կ'սկսի գոցուիլ, Արդարութեան Հիանալի Պողոտան աւելի ու աւելի որոշ կերպով կ'սկսի տեսնուիլ, շնորհիւ Նոր Օրուայ Արշալոյսին։

Այսպէս, մենք գտանք «Ընդարձակ Ճամբայ» մը որուն վրայէն ներկայիս կը ճամբորդեն մարդկութեան հսկայ բազմութիւնները, խաբուած «այս աշխարհի իշխան»էն, ու խանգարուած ճաշակներէ առաջնորդուած։ Մենք տեսանք թէ անիկա «մէկ մարդու մը անհնազանդութեամբը» բացուած էր, ու անով մեր սերունդը սկսած էր իր դահավէժ գնացքը։ Մենք տեսանք թէ «Սրբութեան Պողոտա»ն մեր Տիրոջմով պիտի բացուի, Որը Իր անձը բոլորին տեղը Փրկանք տուաւ ու բոլորնալ փրկեց կործանումէն, որուն կ'առաջնորդէ «Լայն Ճամբա»ն. և թէ՝ այս Պողոտան որոշեալ ատենին, մատչելի և դիւրին պիտի ըլլայ բոլոր փրկուածներուն, որոնք Իր Թանկագին արեամբը գնեց։ Մենք դարձեալ տեսանք՝ թէ ներկայ «Նեղ Ճամբա»ն միևնոյն Թանկագին արեան արժանիքովը բացուեցաւ. անիկա մասնաւոր ճանապարհ մ'է, որը դէպի մասնաւոր մրցանակ մը կ'առաջնորդէ, ու անիկա որպէս փորձի և կրթութեան միջոց, մասնաւորապէս նեղ ու դժուարին եղած է, բոլոր անոնց, որոնք ներկայիս կ'ընտրուին Աստուածային բնութեան բաժանորդ՝ և մեր Տէր Յիսուսի հետ ալ ժառանգակիցներ ըլլալու Թագաւորութեան փառաց մէջ, որը ի մօտոյ պիտի յայտնուի բոլորին օրհնութեանը համար։ Ամեն անոնք որ ունին այս յոյսը—որոնք կը տեսնեն այս մրցանակը—կրնան մնացեալ բոլոր յոյսերը կորուստ և աղտեղութիւն համարել ատոր բաղդատմամբ։—Փիլ. Գ. 8—15։

# ԳԼՈՒԽ ԺԲ·

## ԴԱՐԵՐՈՒ ԾՐԱԳԻՐԸ ՆԵՐԿԱՅԱՑՆՈՂ ՔԱՐՏԷՍԻՆ ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆԸ

Դարերը.—Հունձքերը.—Մակարդակներ Իրական և Հաշուըուած Կանգնումի.—Տէրն մեր Յիսուս Քրիստոսի Ճամբան.—Իր Հետևորդներուն Ճամբան.—Երեք Դասակարգեր Անուանական Եկեղեցւոյն մէջ.—Բաժանումը Հունձքի ժամանակ.—Օծեալ Դասակարգը Փառաւորուած.—Մեծ Նեղութեան Դասակարգը.—Այրուած Որոմները.—Օրհնուած Աշխարհը.—Փառաւոր Վախճանը:

*ԱՅՍ ՀԱՏՈՐԻՆ սկիզբը պիտի տեսնուի քարտէս մը, որը աշխարհի մարդկութեան փրկութեան համար Աստուծոյ որդեգրած Ծրագիրը կը ներկայացնէ: Մեր ջանքը եղած է աչքին միջոցաւ նպաստել մտքին՝ հասկնալու համար Աստուծոյ Ծրագրին յառաջդիմական բնոյթը, նաև յառաջդիմական այն քայլերը, զոր պէտք է առնեն անոնք, որոնք մարդկեղէնէ Աստուածային բնութեան կատարեալ «փոփոխում» մը կ'ակնկալեն:*

*Նախ և առաջ, երեք մեծ Տնօրինութիւններու շըրջագիծը կը գրաւէ մեր ուշադրութիւնը՝ Ա, Բ, Գ,— որոնցմէ առաջինը, Ա՝ կ'սկսի մարդուն ստեղծագործութենէն ու կը տևէ մինչև Ջրհեղեղ· երկրորդը, Բ՝ Ջրհեղեղէն սկսելով կ'երկարի մինչև Քրիստոսի Հազարամեայ տիրապետութեան սկիզբը, Անոր Երկրորդ Գալստեան ժամանակը· իսկ երրորդը, կամ «Ժամանակուայ Լրանալու Տնտեսութիւնը» Գ՝*

կ'սկսի Քրիստոսի տիրապետութենէն ու կը տեւէ մինչեւ «Գալու Դարերը»: (Եփես. Ա. 10: Բ. 7): Ս. Գրոց մէջ յաճախակի ակնարկութիւններ եղած են այս Երեք Մեծ Տնօրինութիւններուն նկատմամբ. Աը՝ կոչուած է «հին աշխարհը». Բը՝ Տէրն մեր Յիսուսէն կոչուած է «այս աշխարհը», Ս. Պօղոսէն՝ «ներկայ չար աշխարհը», եւ Ս. Պետրոսէն՝ «հիմակուան աշխարհը»: Գը՝ կոչուած է «գալու աշխարհը, որուն մէջ արդարութիւն կը բնակի», իբր հակապատկեր մը ներկայ չար աշխարհին: Ներկայիս չարերը կ'իշխեն եւ արդարները կը տառապին. սակայն, գալիք աշխարհին մէջ այս կարգն ու սարքը պիտի յեղաշրջուի. արդարութիւնը պիտի տիրապետէ եւ չարագործները պիտի տառապին, իսկ ի վերջոյ, ամեն ինչ որ չար է պիտի բնաջնջուի:

Աստուածային Ծրագիրը մարդուն նկատմամբ ուրոյն ու անջատ ուրուագիծ մը ունի այս Երեք Մեծ Տնօրինութիւններուն կամ «աշխարհներուն» իւրաքանչիւրին մէջ. բայց եւ այնպէս, ասոնցմէ ամեն մէկը, մասը կը կազմէ այն հսկայ Ծրագրին, որը երբ ամբողջանայ՝ պիտի ցուցադրէ Աստուածային Իմաստութիւնը—թէեւ, երբ այս մասերը, անջատօրէն նկատի կ'առնուին, անտեսելով մէկը կամ միւսը, անոնց խոր նպատակին թափանցելը անկարելի կ'ըլլայ: Քանի որ առաջին «աշխարհ»ը («երկինքն ու երկիր»ը, կամ այն ժամանակուայ կարգ ու սարքերը) ջրհեղեղին ժամանակ կործանեցաւ, այնպէս կը հետեւցուի թէ այն ատենուան կարգ ու սարքերը տարբեր էին «այս չար աշխարհ»ինէն, որուն իշխանը Սատանան է ըսաւ մեր Տէրը. որով՝ ներկայ չար աշխարհի իշխանը ջրհեղեղէն առաջուայ աշխարհին վրայ չէր տիրեր, թէեւ այն ատեն ալ ազդեցութենէ զուրկ չէր: Ս. Գրոց կարգ մը համարները լոյս կը

սփռեն Աստուծոյ այն ժամանակուայ ունեցած գործառնութեանց վրայ, տալով մեզի որոշ ծանօթութիւն մը Անոր բովանդակ Ծրագրին նկատմամբ։ Անոնցմէ այն գաղափարը կ'ստանանք՝ թէ առաջին «աշխարհ»ը կամ անդրջրհեղեղեան Տնօրինութիւնը, ենթարկուած էր հրեշտակներու վերահսկողութեանը և մասնաւոր սպասարկութեանը, որոնք թոյլատրուած էին իրենց կրցածը ի գործ դնել, բարձրացընելու համար ինկած և այլասերած մարդկային ցեղը։ Անտարակոյս, Աստուծոյ թոյլատուութեամբն էր որ անոնք ջանացին փորձել այդ բանը. իրենց հետաքրքրութիւնը արտայայտուած էր նո՛յնիսկ ստեղծագործութեան ժամանակ, ուր կը փառաբանէին և ցնծութեամբ կ'աղաղակէին։ (Յոբ ԼԸ. 7)։ Այդ առաջին Դարաշրջանի թոյլատրուած հրեշտակներուն անյաջող տիրապետութեան իրողութիւնը ո՛չ միայն այդ շրջանին ակնարկող բոլոր վկայութիւններէն է որ կը հասկցուի, հապա նաև այն ծանօթագրութիւններէն զոր Առաքեալը կուտայ. որը ներկայ Տընօրինութիւնը անցեալին ու ապագային հետ բաղդատելով, կ'ըսէ՝ «Հրեշտակներուն չէ որ հնազանդեցուց այն գալու աշխարհը»։ (Եբր. Բ. 5)։

Ո՛չ. այն աշխարհը Տէր Յիսուսին ու Իր ժառանգակիցներուն իշխանութեանը ենթակայ պիտի ըլլայ. որով անիկա ո՛չ միայն«ներկայ չար աշխարհ»էն աւելի արդար վարչութիւն մը պիտի ունենայ, հապա նաև աւելի յաջողակ պիտի ըլլայ առաջին աշխարհէն կամ Տնօրինութենէն, որը հպատակած էր «հրեշտակներու վարչութեան»ը, որոնց՝ մարդկութիւնը վերականգնելու անկարողութիւնը ի յայտ կուգայ այն իրողութեամբը թէ՝ մարդուն չարութիւնը ա՛յնքան շատցաւ որ, Աստուած Իր արդար

*բարկութեամբը ամբողջ ցեղը ջնջեց Ջրհեղեղով, բացի ութը հոգիներէ։—Ծննդ. Է.* 13։

*«Ներկայ չար աշխարհ»ի տեւողութեանը, մարդը թոյլատրուած է ինքզինքը կառավարել ջանալ. բայց անկումին հետեւանքով «այս աշխարհի իշխանին», Սատանային ազդեցութեանը տակ է, և Ջրհեղեղէն մինչև հիմա տեւող այս երկար ժամանակամիջոցին, մարդկութիւնը ի զո՛ւր ջանացած է ինքնավարութեան՝ պայքարելով Սատանայի թաքուն մեքենայութիւններուն և դաւերուն դէմ. որուն իշխանութեան ներքև՝ մարդուն փափաքած ու փորձած տիրապետութիւնը նմանը չտեսնուած մեծ նեղութեան և տառապանաց ժամանակով մը պիտի վերջանայ։ Եւ այսպէսով, պիտի ապացուցուի ո՛չ միայն մարդկութիւնը փրկելու համար հրեշտակներուն ի գործ դրած զօրութեան ունայնութիւնը, հապա նաև՝ գոհացուցիչ պայմաններու կարենալ հասնելու համար* մարդուն թափած ջանքերուն սնանկութիւնը։

*Այս Երեք Մեծ Տնօրինութիւններուն երկրորդը, Բ՝ երեք որոշ Դարերէ բաղկացած է, որոնցմէ իւրաքանչիւրը, իբրև յառաջացման քայլ, Աստուծոյ Ծրագրին կատարմանը և լրացմանը կ՚առաջնորդէ աստիճանաբար։*

*Դ Դարը այն ժամանակաշրջանն է, որու տեւողութեանը Աստուած մասնաւոր յարաբերութեան մէջ մտաւ Աբրահամ, Իսահակ և Յակոբ նահապետներուն հետ։*

*Ե ը՝ Հրէական Դարն է, կամ Յակոբի մահուան յաջորդող այն շրջանը՝ որուն մէջ անոր ամբողջ սերունդը իբրև Աստուծոյ մասնաւոր պաշտպանեալը— «Իր ժողովուրդը» նկատուեցաւ։ Ասոնց մասնաւոր առանձնաշնորհումներ ըրաւ, և յայտարարեց թէ «Երկրիս բոլոր ազգատոհմներէն* միայն ձեզ *ճանչ-*

ցայ» (Իմ շնորհքս մէջ ընդունեցի․ Ամովս․ Գ․ 2)։ Ասոնք, իբրև ազգութիւն, նախապատկերներն էին Քրիստոնեայ Եկեղեցւոյն, «սուրբ ազգ»ին, «սեփական ժողովուրդ»ին։ Անոնց տրուած այս խոստումները, մեզի ընծայուած «լաւագոյն խոստումներ»ուն գաղափարականներն էին։ Խոստացեալ երկրին տիրացմանը համար անապատին մէջ իրենց կատարած ճամբորդութիւնը, գաղափարականն էր այն ճամբորդութեանը, զոր մենք, (Քրիստոնեաներս) կ՚ունենանք մեղաց անապատին մէջ Երկնաւոր Քանանը հասնելու համար։ Իրենց զոհագործութիւնները միայն այլաբանօրէն արդարացուցին զիրենք և ո՛չ թէ իրապէս․ ինչու որ ցուլերուն ու նոխազներուն արիւնները երբե՛ք չեն կրնար մեղքերը սրբել։ (Եբր․ Ժ․ 4)։ Բայց Աւետարանական Դարուն մէջ, որն է Զ, «լաւագոյն զոհագործութիւններն են որ տեղի կ՚ունենան, որոնք կարող են բովանդակ աշխարհի մեղքերուն համար քաւութիւն ընել։ Մենք ունինք «Թագաւորական քահանայութիւն»ը, բաղկացած ամեն անոնցմէ, որոնք իրենք զիրենք Աստուծոյ նուիրած են որպէս «կենդանի զոհեր», սուրբ և հաճելի ըլլալով «մեր դաւանութեան Քահանայապետ»ին, Յիսուս Քրիստոսի միջոցաւ։ (Եբր․ Գ․ 1)։ Հրէական Դարու մէջ գալիք բաներու իբր շուքեր ծառայող արարողութիւններուն ու ծէսերուն իրականներն են որ տեղի կ՚ունենան Աւետարանական Դարուն մէջ։—Եբր․ Ժ․ 1։

Աւետարանական Դարը, Զ՝ այն շրջանն է, որու տեւողութեան Քրիստոսի մարմինը կը կանչուի ու կ՚ընտրուի աշխարհէն․ և հաւատքի միջոցաւ անոնց կը ցուցադրուի կենաց պսակը, այն ամենամեծ եւ պատուական խոստումները, որոնց շնորհիւ կրնան Աստուածային բնութեան հաղորդակիցներ ըլլալ

(Եթէ սակայն վերին կոչմանը և անոր պահանջներուն գոհացում տան: Բ. Պետ. Ա. 4): Դեռ չարին է, որ թոյլատրուած է տիրապետելու և իշխելու աշխարհի վրայ, որպէսզի վերոյիշեալ դասակարգին պատկանողները անոր հետ չփման գալով՝ փորձըուին ու ցոյց տան թէ արդեօք պատրա՞ստ են զոհելու իրենց մարդկային բնութիւնը, իր բոլոր իրաւունքներով և օրհնութիւններով մէկտեղ, կենդանի զոհեր ըլլալու, Քրիստոսի մահուան կերպարանակից և բաժնեկից ըլլալով, որպէսզի արժանի համարուին Անոր փառացն ալ կերպարանակից ըլլալու յարութեան ժամանակ:—Սաղմ. Ժէ. 15:

Երրորդ ամենամեծ Տնօրինութիւնը, Գ՝ չատ մը Դարերէ պիտի բաղկանայ, որոնք «Գալիք Դարեր» կոչուած են: Ասոնց առաջինին, Հազարամեայ Դարուն', է ին նկատմամբ է միայն որ որոշ տեղեկութիւն մը ունինք: Ասիկա այն հազար տարին է, որուն տևողութեան Քրիստոս պիտի թագաւորէ եւ օրհնէ աշխարհի բոլոր ազգերը, իրագործելով «Վերահաստատութիւնը այն ամեն բաներուն, որոնց համար Աստուած սկիզբէն ի վեր Իր սուրբ Մարգարէներուն բերնովը խօսած է»: (Գործ. Գ. 19—21): Այս Դարու ընթացքին՝ մեղքն ու մահը յաւիտենապէս պիտի ջնջուին. «ինչու որ Նա (Քրիստոս) պէտք է թագաւորէ՝ մինչև որ բոլոր թշնամիները Իր ոտքերուն տակը հնազանդեցնէ: Վերջին թշնամին որ պիտի խափանի (բնաջնջուի)՝ մահն է»—Ադամական մահը: (Ա. Կորնթ. ԺԵ. 25, 26): Ասիկա վերաշինութեան մեծ շրջանը պիտի ըլլայ: Այս Թագաւորութեան մէջ Յիսուս Քրիստոսի ընկերացած պիտի ըլլայ նաև Եկեղեցին, Իր Հարսը, Իր Մարմինը, ինչպէս որ Նա խոստացաւ, ըսելով՝ «Ան որ կը յաղթէ, Իմ հետս՝ Իմ աթոռս նստել պիտի տամ անոր,

*ինչպէս որ Ես ալ յաղթեցի ու Իմ Հօրս հետ Անոր աթոռը նստայ»։—Յայտ. Գ. 21։*

*Այն «դալիք դարերը», Ը՝ որոնք մեծ վերաշինութեան շրջանին կը յաջորդեն, կատարելութեան, օրհնութեան և երջանկութեան դարեր պիտի ըլլան, որոնց մասին Ս. Գիրքը բոլորովին լուռ կը մնայ։ Բաւական է սա չափը միայն գիտնալ ներկայիս՝ թէ անոնք փառաց և օրհնութեան դարեր պիտի ըլլան Աստուծոյ շնորհաց ներքև։*

*Այս Տնօրինութիւններէն ամեն մէկը իր պատկանեալ գործին սկսմանն ու յառաջացմանը համար մասնաւոր ժամանակ մը ունի, և որոնց իւրաքանչիւրը հնձումով մը կը վերջանայ, երևան հանելով անոր արդիւնքները։ Հրէական Դարու վերջաւորութեան հնձումը քառասուն տարուայ շրջան մ'էր, որը սկսաւ Յիսուսի առաքելութեամբ՝ Աստուծոյ Ս. Հոգւով օծուելէն անմիջապէս վերջ (Գործ. Ժ. 37, 38), Ք. Թ. 29ին, ու վերջացաւ Երուսաղէմի կործանումով Ք. Թ. 70ին։Այս հնձման մէջ Հրէական Դարը վերջացաւ և Աւետարանականը սկսաւ։ Այս երկու Դարերուն ծայրերը իրարու մէջ ագուցուած են, ինչպէս որ ցուցադրուած է քարտէսով։*

*Քրիստոսի երեք ու կէս տարուայ առաքելութեան վախճանովը՝ Հրէական Դարը մասամբ վերջացաւ. երբ Տէրը երես դարձուց այն ազգէն, ըսելով՝ «ահա՛ ձեր տունը ձեզի աւերակ պիտի մնայ»։ (Մատթ. ԻԳ. 38)։ Բայց ասկէ յետոյ երեք ու կէս տարի ևս շնորհ տրուեցաւ անոնց, իրենց մէջ միայն սահմանափակուած ըլլալով Աւետարանական կոչը, անոնց պատկանած եօթանասուն շաբաթներու շնորհին պատճառաւ և Մարգարէին յայտնութեան համաձայն, որոնց վերջինին մէջտեղը Մեսիան պիտի կտրուէր (մեռնէր, բայց ո՛չ թէ Իրեն համար։ Դան. Թ. 24—27)։*

*«Քրիստոս մեռաւ (ո՛չ թէ Իրեն համար, այլ) մեր մեղքերուն համար»։ Այսպէսով զոհը և պատարագը դադրեցուց շաբթուն մէջտեղը—Հրէից իբր շնորհ խոստացուած եօթանասուն շաբաթներուն լրանալէն երեք ու կէս տարի առաջ։ Երբ իրական զոհագործութիւնը տեղի ունեցաւ, բնականաբար, գաղափարականներն այլեւս ընդունելի չէին Աստուծոյ։ Որով աւելի լայն իմաստով՝ Հրէական Դարը վերջացաւ եօթանասուններորդ շաբթուան լրանալովը, և կամ խաչելութենէն երեքուկէս տարի վերջ—երբ Կոռնելիոսէ սկսելով՝ Աւետարանը Հեթանոսներուն ըսկըսաւ քարոզուիլ։ (Գործ. Ժ. 45)*։ Հոս Հրէական*

---

*Եօթանասուն շաբաթները 490 օրեր կընեն. (եօթանասուն անգամ եօթը հաւասար 490)։ Այս 490 օրերը այլաբանական իմաստով գործածուած են. ու ինչպէս Ս. Գրոց ուրիշ պարագաներու մէջ՝ հոս ալ իւրաքանչիւր օրը մէկ տարի կը ներկայացնէ։ Տե՛ս Թուոց ԺԴ. 33, 34։ Եզեկ. Դ. 5, 6։ Այս 70 շաբաթները կամ 490 տարիները պիտի սկսէին Երուսաղէմի (պարիսպներու) վերաշինութեան հրամանը ելլելէն, որ տեղի ունեցաւ Ք. Ա. 454ին։

Այս եօթանասուն շաբաթներու 69ին լրանալէն յետոյ պիտի գար Օծեալ Իշխանը կամ Մեսիան։ 69ը *շաբաթները* 483 *օրեր են որոնք* 483 *տարիներ կը ներկայացնեն* (69 անգամ 7 հաւասար է 483)։ Երբ 454ը, որ Երուսաղէմի (պարիսպներու) վերաշինութեան հրամանը ելլելուն թուականն է՝ կը հանենք 483էն, կ'ունենանք 29ը տարիներ (483 պակաս 454 հաւասար 29 Ք. Ե.)։ Այսպէս, կը հասկնանք որ Յիսուսին Յորդանանու մէջ մկրտուելէն յետոյ Ս. Հոգիով օծուելուն թուականը Ք. Ե. 29ն է։

Մէկ շաբաթ եւս կը մնայ այս 69 շաբաթներու լրա-

*Դարը կը վերջանար, այն տեսակէտով՝ որ Հրէից եկեղեցւոյ Նկատմամբ Աստուծոյ ցոյց տուած շնորհքն ու ընդունելութիւնը վերջ կը գտնէին, և անոնց յաջորդող մեծ նեղութեան ժամանակով մը իրենց ազգային գոյութիւնը կը դադրէր:*

*Հրէական հունձքի շրջանին մէջ էր որ կ՚սկսէր Աւետարանական Դարը: Այս Դարուն Նպատակն է հրաւիրել, զարգացնել և գտնել «Աստուծոյ Քրիստոսը» —Գլուխն ու Մարմինը: Ասիկա Հոգեղէն Տնօրինութիւնն է. որով պատշաճօրէն կրնանք ըսել՝ թէ Աւետարանական Դարը Յիսուսի «Ս. Հոգւով և Զօրութեամբ» օծուելովը սկսաւ Իր մկրտութեան ժամանակ: (Գործ. Ժ. 38: Ղուկ. Գ. 22: Դ. 1, 18): Բայց Եկեղեցիին, Իր Մարմինին նկատմամբ, երեք ու կէս տարի վերջը սկսաւ:*

*Աւետարանական Դարու Վերջաւորութեանն ալ «հունձք» մը գոյութիւն ունի, և ուր դարձեալ երկու Դարեր իրարու մէջ կ՚ագուցուին, կը հիւսուին —երբ Աւետարանական Դարը կը վերջանայ ու Վերահաստատութիւնը կամ Հազարամեայ Դարը կ՚ըսկսի: Իր օրինակին կամ «շուք»ին, Հրէական Դարուն նման՝ Աւետարանականն ալ աստիճանաբար կը վերջանայ: Ինչպէս որ Հրէական հունձքի առաջին*

---

ճայէն յետոյ, որը 7 օրէ, ու 7 տարի կը ներկայացնէ Դանիէլէ մարգարէութեան համաձայն: Քրիստոս այս վերջին շաբաթուայ մէջտեղը խաչուեցաւ, Իր օծումէն երեք ու կէս տարի յետոյ, Ք. Թ. 32 ու կէսին. իսկ Հրէայ ազգին իբր շնորհ խոստացուած 70 շաբաթները խաչելութենէն երեք ու կէս տարի վերջը լրացաւ. Ք. Թ. 36ին (490—454 հաւասար 36), որմէ յետոյ Աւետարանը սկսաւ Հեթանոսներուն ալ քարոզուիլ, Կոռնէլիոսէն սկսելով:

եօթը տարիները մասնաւոր նպատակով մը մարմնեղէն Իսրայէլի և անոր պատկանող գործի մը յատկացուած էին, նոյնպէս ալ ներկայիս կը գտնենք եօթը տարիներ, որոնք միևնոյն նշանակութիւնը ունին Աւետարանական Եկեղեցիին համար, որմէ յետոյ Նեղութեան («կրակ»)ի շրջան մը պիտի հասնի աշխարհի վրայ, իբր պատիժ գործադրուած անարդարութեանց, և իբր պատրաստութիւն արդարութեան տիրապետութեան, որուն նկատմամբ կրկին պիտի խօսինք։

## ՓԱՌԱՑ ՃԱՄԲԱՆ

Ի, Լ, Խ, Ծ, Հ. Ղ, իւրաքանչիւրը կը ներկայացնէ տարբեր մակարդակ մը։ Ծ մարդկային կատարեալ բնութեան մակարդակն է։ Ադամ այս մակարդակին վրայ էր մեղանչելէ առաջ. բայց անհնազանդութեան վայրկեանէն սկսեալ ինկաւ ապականեալ կամ մեղանչական մակարդակին՝ Ղ գծին վրայ։ Ասիկա կը համապատասխանէ «Լայն Ճամբուն», որը կործանում կ՚առաջնորդէ։ Հ այլաբանական արդարացումի մակարդակը կը ներկայացնէ, որը տեղի ունեցած կը հաշուըուէր Օրէնքին զոհագործութիւններովը. սակայն ասիկա իրական կատարելութիւն (կամ արդարութիւն) չէր, «ինչու որ Օրէնքը բան մը կատարեալ չըրաւ»։—Եբր. է. 19։

Ծ կը ներկայացնէ ո՛չ միայն մարդկային կատարելութեան մակարդակը, որուն տիրացած էր կատարեալ մարդը, Ադամ ատեն մը, հապա նաև բոլոր արդարացած անձերու մակարդակը։ «Գրքերուն ըսածին համաձայն, Քրիստոս մեր մեղքերուն համար մեռաւ», և որուն շնորհիւ բոլոր Քրիստոսի հաւատացողները—բոլոր անոնք որոնք Անոր անթերի և ամբողջացած գործը իբրև զիրենք արդարացնելու

միջոցը կ'ընդունին—իրենց հաւատքին համար արդարացած կը նկատուին Աստուծմէ, իբրև կատարեալ մարդեր, իբր թէ բնաւ մեղանչած չէին։ Ուրեմն, բոլոր անոնք որոնք Քրիստոսը իբրև իրենց Փրկիչը կ'ընդունին, մարդկային կատարելութեան մակարդակին՝ Ծ ին վրայ եղած կը հաշուըուին Աստուծմէ։ Միմիայն այս տեսակէտով է որ մարդ Աստուծոյ կրնայ մօտենալ և կամ հաղորդակցութեան մըտնել Անոր հետ։ Այս մակարդակին վրայ եղողներէն բոլորն ալ որդիներ կը կոչուին Աստուծմէ—մարդկային որդիներ։ Ադամ այս կարգի որդի մ'էր (Ղուկ. Գ. 38), և իր անհնազանդութենէն առաջ Տիրոջ հետ հաղորդութիւն ունէր։ Այն ամէնը, որոնք կ'ընդունին Տէրն մեր Յիսուսի կատարած փրկագործութիւնը՝ նախնական սրբութեան մէջ վերահաստատուած կը սեպուին, և որով Աստուծոյ հետ յարաբերութիւն կամ հաղորդութիւն կ'ունենան։

Աւետարանական Դարու տևողութեան Աստուած մասնաւոր առաջարկութիւն մ'ըրած է արդարացած մարդկային էակներուն, ըսելով անոնց թէ կարգ մը պայմաններու հպատակելով՝ եթէ ուզեն, կրնան բընութեան փոփոխութիւն մը կրել. երկրային, մարդկեղէն էակներ ըլլալէ դադրելով՝ երկնային, հոգեղէն էակներ ըլլալ, Քրիստոսի, իրենց Փրկչին նման։ Կարգ մը հաւատացեալներ— արդարացած անձեր— դոհ են իրենց ունեցած ուրախութեանը և խաղաղութեանը համար, որոնք կը ծագին այն համոզումէն՝ թէ սրբուած են իրենց մեղքերէն. ու այսպէս, ուշադրութիւն չեն ընծայեր այն ձայնին որը դէպի վեր կը կանչէ զիրենք։ Իսկ ուրիշներ, զգացուած Աստուծոյ այն սէրէն որ արտայայտուած էր զիրենք իրենց մեղքերէն փրկելու գործին մէջ, և զգալով թէ այլևս իրենք իրենց չեն պատկանիր, քանի որ փըր-

կաղնով մը ծախու առնուեցան, կ'աղաղակեն՝ «Տէ՛ր, ի՞նչ կ'ուզես որ ընեմ»․ այսպիսիները Աստուծոյ պատասխանը կ'ստանան Ս. Պօղոսի միջոցաւ, որ կ'ըսէ՝ «Արդ՝ կ'աղաչեմ ձեզի եղբայրներ՝ Աստուծոյ ողորմութեամբը, որ ձեր մարմինները ընծայէք կենդանի զոհ մը՝ սուրբ, Աստուծոյ հաճելի, որ է ձեր բանաւոր պաշտօնը»։ (Հռովմ. ԺԲ. 1)։ Ի՞նչ ըսել կ'ուզէ Առաքեալը, երբ այսպէս մեզ կը թախանձէ որ մեր անձերը իբրև կենդանի զոհեր ներկայացնենք. Նա ըսել կ'ուզէ թէ՝ մենք պարտինք մեր ունեցած բոլոր կարողութիւններն ու ձիրքերը Աստուծոյ ծառայութեանը նուիրել, յատկացնել. թէ՝ մենք պարտինք այսուհետև ո՛չ թէ մեր անձերուն, մեր բարեկամներուն, ընտանեաց, աշխարհի և կամ ուրիշ ո՛և է բանի համար ապրիլ, այլ հնազանդ ծառայի մը պէս միմիայն Անոր համար՝ որ Իր իսկ թանկագին արեամբը մեզ ծախու առաւ։

Բայց քանի որ Աստուած այլաբանական արատաւոր կամ անկատար զոհերը չի կրնար ընդունիլ, ու քանի որ բոլորս ալ Ադամի պատճառաւ մեղքի մէջ ինկանք, կարելի՞ է մեզի համար որ ընդունելի զոհեր ըլլանք. Ս. Պօղոս կը յայտնէ թէ մեր սուրբ ըլլալուն պատճառաւ է որ ընդունելի զոհեր ենք։ Մեր սրբութիւնը Յիսուսինին նման չէ, Որը միշտ անմեղ էր, ինչու որ մենք դատապարտուած ցեղին կը պատկանինք. և ո՛չ ալ սուրբ ենք անոր համար որ վարք ու բարքի կատարելութեան հասնելու յաջողած ենք. ինչու որ այն կատարելութիւնը որուն հրաւիրուած ենք՝ դեռ տիրացած չենք սեպեր. բայց այս սրբութիւնը, գանձը, (մեղանչական և անկատար) հողէ ամաններու մէջ ունինք, որպէսզի բոլորն ալ կարենան տեսնել՝ թէ այն փառաւոր կատարելութիւնը որուն պիտի տիրանանք ի՛ վերջոյ, ո՛չ թէ մեր կա-

րողութեամբը տեղի ունեցած է, այլ Աստուծոյ շնորհքը։ Սակայն, մեր սրբութիւնը և Աստուծմէ իբրև զոհեր ընդունուիլը Արարչին շնորհն է միայն, որը ձրիօրէն արդարացուց մեզ մեր բոլոր մեղքերէն, որովհետև հաւատացինք Քրիստոսի մեզի համար կատարած փրկագործութեանը։

Անոնք որոնք կը գնահատեն այս կոչումը և կը հնազանդին անոր, կ՚ուրախանան՝ որ արժանի համարուած են Քրիստոսի անուանը համար նախատանաց ենթարկուելու․ ու կը նային այն բաներուն, որոնք անտեսանելի են—«կենաց պսակին»—«Յիսուս Քրիստոսով մեր վերին կոչման մրցանակ»ին, և «այն փառաց՝ որ մեր մէջ պիտի յայտնուի»։ Ասոնք, Աստուծոյ ըրած իրենց նուիրումի վայրկեանէն սկսեալ, այլևս մարդկային էակներ չեն նկատուիր, այլ հոգեղէն զաւակներ—ինչու որ Աստուծմէ յղացած են Ճշմարտութեան Խօսքովը։ Հիմա քայլ մը աւելի մօտեցած են մրցանակին, քան երբ առաջին անգամ հաւատացին․ բայց իրենց հոգեղէն էութիւնը դեռ ևս անկատար է․ անոնք յղացած վիճակի մէջ են միայն, հոգիէն ծնած չեն տակաւին։ Սաղմնային վիճակի մէջ հոգեղէն էակներ են,՝ Խ ին վրայ—որը հոգիէ յղացման մակարդակը կը ներկայացնէ։ Հոգիէն յղացած ըլլալով՝ այլևս մարդկեղէն չեն համարուիր, հապա հոգեղէն․ ինչու որ իրենց պատկանող նախկին մարդկային բնութիւնը այլևս ուրացած են և կամ մեռած համարած—իբրև կենդանի զոհ մը՝ սուրբ, հաճելի և Աստուծմէ ընդունուած։ Այլևս նոր արարածներ են Յիսուս Քրիստոսով․ հին բաները (մարդկային յոյսեր, իղձեր ու փառասիրութիւններ) այլևս չեն հետաքրքրեր զիրենք․ անոնք անցած՝ ու նորերը յաջորդած են անոնց․ «բայց դուք մարմինով չէք, հապա հոգիով, թէ որ Աստուծոյ Հոգին ձեր

մէջը բնակած է»։ (Բ. Կորնթ. Ե. 17։ Հռովմ. Ը. Թ)։ Եթէ Հոգիէն չղացած էք, «դուք (իբրև մարդկային էակներ) մեռած էք, և ձեր կեանքը Քրիստոսով Աստուծոյ քով պահուած է»։

Լ մակարդակը կը ներկայացնէ հոգեղէն կատարեալ էակի մը վիճակը. բայց այդ մակարդակին կարենալ հասնելու համար, մեր ըրած ուխտի պայմաններուն անհրաժեշտ է որ գոհացում տանք։ Ո՛չ միայն ուխտելու ենք Աստուծոյ թէ ինքզինքնիս մեռած պիտի համարենք մարդկային ցանկութիւններու նըկատմամբ, հապա նաև ջանալու ենք գործնականացընել այդ ուխտը որքան որ աշխարհի մէջ կ՚ապրինք —մեր «մարմինը հպատակեցնելով» (մեռած պահելով), մեր իսկ կամքը անտես ընելով և Աստուծոյ կամքը միայն գործադրելով։ Լ մակարդակի վրայ կատարուած մուտքը ծնունդ կոչուած է, և կամ իբրև հոգեղէն էակ կատարեալ կեանքի տիրանալ։ Եկեղեցին ամբողջութեամբ այս մակարդակին վրայ պիտի ըլլայ, երբ Աւետարանական Դարու «հունձք»ին կամ վերջաւորութեան այս աշխարհէն հաւաքուած (ընտրուած) է։ «Քրիստոսով ննջողները առաջին յարութիւն պիտի առնեն»։ Յետոյ՝ մենք որ կենդանի ենք ու դեռ կ՚սպասենք, ակնթարթի մը մէջ պիտի փոխուինք—հոգեղէն կատարեալ էակներ պիտի ըլլանք Քրիստոսինին պէս փառաւոր մարմիններով, (վասնզի «պէտք է որ այս մահկանացուն անմահութիւն հագնի»)։ Եւ կատարելութեան տիրացած ըլլալով՝ այն որ շատէն քիչն էր, (չղացեալ վիճակը, մարմնին կողմէ իր ունեցած այլևայլ խոչընդոտներովը, որոնց ներկայիս ենթակայ է) այլևս պիտի անհետանայ։

Բայց մեր հոգեղէն էութեան կատարելութենէն յետոյ առնուելիք ուրիշ քայլ մը ևս կայ. այսինքն՝

դէպի «այն փառքը որ պիտի յաջորդէ»— Ի մակարդակը: Հոս անհատական փառքին չէ որ կ'ակնարկենք, հապա այն փառքին, որ պիտի գայ մեզի անկէ յետոյ՝ մեր զօրութիւնը կամ պաշտօնը ընդունելով: Լ մակարդակին հասնելով՝ անձնական կատարեալ փառքին է որ տիրացած կ'ըլլանք, որ է՝ Քրիստոսի նմանութեամբ հրաշալի էակի մը փոխուիլ: Բայց երբ այսպէս կատարելութեան հասած՝ և բոլորովին մեր Տիրոջ ու Գլխուն նման եղած ենք՝ Իր հետ Իր գահին վրայ պիտի նստինք, ինչպէս որ Ինքն ալ, Իր յարութեամբ կատարելութեան տիրանալէն յետոյ, Աստուծոյ աջ կողմը բարձրացուեցաւ: Այսպէս, մենք ալ յաւիտենական ուրախութեան մէջ պիտի մտնենք, Ի մակարդակը:

Արդ՝ խնամքով ուսումնասիրենք քարտէսը, եւ ուշադրութեան առնենք Աստուծոյ Ծրագրին այլևայլ երևոյթներուն մասին տուած լուսաբանութիւնները: Այս լուսաբանութեանց մէջ, իբր կատարելութեան խորհրդանշան բուրգի պատկերը կը գործածենք, իր պատշաճութեան և այն բացորոշ ակնարկութեանը համար զոր Ս. Գիրքը կ'ընէ:

Ադամ կատարեալ էակ մ'էր, բուրգ Ա: Նկատի առ իր վիճակը—Ծ մակարդակին վրայ, որը մարդկային կատարելութիւն կը ներկայացնէ: Մեղաց և անկատարութեան կամ ապականութեան մակարդակին՝ Ղ ին վրայ գտնուած անդլուխ և անկատար բուրգը, Բ՝ կը ներկայացնէ ինկած Ադամը և իր սերունդը— իրենց ապականեալ, մեղսալից և դատապարտուած վիճակին մէջ:

Աբրահամ և իր շրջանին մէջ գտնուող ուրիշներ, որոնք հաւատքով արդարացած՝ Աստուծոյ բարեկամները եղան, Ծ մակարդակին վրայ Գ բուրգով ներկայացուած են: Աբրահամ՝ ապականուած մարդ-

կայլին ցեղին մէկ անդամն էր, և ուրիշներուն պէս ինքն ալ ի բնէ Ղ մակարդակին կը պատկանէր. բայց Ս. Պօղոս կը յայտնէ մեզի թէ՝ Աբրահամ հաւատքով արդարացաւ. այսինքն՝ իր հաւատքին պատճառաւ Աստուծոյ իբրև անմեղ և կատարեալ մարդ մը սեպուեցաւ: Ու իբր հետևանք, ըստ Աստուծոյ նկատառութեան, ապականուած ու մեղաւոր մարդկային աշխարհէն Ծ մակարդակին վրայ բարձրացաւ. և թէև իրականին մէջ դեռ անկատար էր, բայց արժանի համարուեցաւ այն շնորհին զոր Ադամ կորուցած էր. որ է՝ Աստուծոյ հետ հաղորդութիւն ունենալ իբրև «բարեկամ» մը: (Յակոբ. Բ. 23): Ամէն անոնք, որոնք կատարեալ (անմեղ) մակարդակին, Ծ ին վրայ են, բարեկամներ են Աստուծոյ հետ. բայց մեղաւորները (որոնք Ղ մակարդակին վրայ կը գըտնուին), Աստուծոյ թշնամիներն են—«թշնամիներ՝ իրենց չար գործերուն համար»:

Ջրհեղեղէն վերջ գոյութիւն ունեցող մարդկութիւնը, որ Դ պատկերով ներկայացուած է, կրկին Ղ մակարդակին վրայ կը գտնուի—և թշնամիի դրութեան մէջ է, ուր պիտի շարունակէ մնալ՝ մինչև որ Աւետարանական Եկեղեցին ընտրուի և Հազարամեայ Դարը սկսի:

«Մարմնեղէն Իսրայէլը» երբ Հրէական Դարու տեւողութեան ցուլերու և նոխազներու այլաբանական զոհագործութիւններովը սրբուեցաւ՝ (ո՛չ թէ իրապէս, այլ այլաբանօրէն, «ինչու որ Օրէնքը բան մը կատարեալ չըրաւ»—Եբր. Է. 19), այլաբանօրէն միայն արդարացաւ. տե՛ս Ն ը Հ գծին վրայ) որը այլաբանական արդարութեան մակարդակն է, և որը Սինա Լերան Օրէնքին տրուելէն սկսաւ, ու տևեց՝ մինչև որ Քրիստոս Օրէնքը վախճանի մը բերաւ, զայն Իր խաչին գամելով: Հոն այլաբանա-

*կան արդարութիւնը դադրեցաւ, երբ Հրէական այ-լաբանութիւններուն տեղը «լաւագոյն զոհերը» հաս-տատուեցան, անոնք, որոնք իրականապէս «կը վերցնեն աշխարհին մեղքը», և «իրենց մօտեցողնե-րը (իսկապէս) կատարեալ կ'ընեն»: Եբր. Ժ. 1:*

*Դատաստանի և նեղութեան այն կրակը, որուն մէջէն անցաւ մարմնեղէն Իսրայէլը Յիսուսի ներ-կայութեան ժամանակ երբ կը մաղէր զանոնք, և իրենց անուանական եկեղեցիէն ցորենը, «ճշմարիտ Իսրայէլացիներ»ը կը հաւաքէր, և մասնաւորապէս, երբ ցորենին անջատումէն յետոյ «յարդը (այն ա-տեններու եկեղեցական կազմին անպիտան մասը) ան-շէջ կրակով կ'այրէր», պատկերացուած է զ ով: Ա-նիկա նեղութեան այնպիսի ժամանակ մ'էր, ուրկէ խոյս տալ անկարելի էր իրենց համար: Տե'ս Ղուկ. Գ. 17, 21, 22: Ա. Թես. Բ. 16:*

*Յիսուս՝ Իր երեսուն տարեկան հասակին մէջ, կա-տարեալ և չափահաս մարդ մ'էր (Է). Նա ձգելով հողեղէն աստիճանի փառքը,* մարդ *եղած էր, որ-պէսզի (Աստուծոյ ողորմութեամբը) ամեն մարդու համար մահ ճաշակէ: Աստուծոյ օրինաց արդարու-թիւնը բացարձակ էր, որը աչքի տեղ աչք, ակռայի տեղ ակռայ և կեանքի տեղ կեանք կը պահանջէր: Անհրաժեշտ էր որ կատարեալ* մարդ *մը մեռնէր մարդկութեան համար, ինչու որ արդարութեան պահանջին ուրիշ ո'և է կերպով գոհացում տալ ան-կարելի էր: Հրեշտակի մը մահը չէր կրնար իբրև փրկագին ընդունուիլ և ազատել մարդկութիւնը, ինչ-պէս որ «ցուլերուն և նոխազներուն մահը երբե'ք չէր կրնար մեղքերը վերցնել»: Հետևաբար, Նա որ «Ած.ոյ արարչագործութեան սկզբնաւորութիւնը» կոչուած է, մարդու մը վերածուեցաւ, «մարմնացաւ,» որ-*

պէսզի կարենար վճարել այն փրկագինը (համապատասխան գինը), որով միայն կարող պիտի ըլլար փրկել մարդկութիւնը։ Նա պէտք էր որ կատարեալ մարդ մը եղած ըլլար, եթէ ոչ ստորնացած մարդկութեան ո՛և է մէկ անդամին պէս Իրեն համար ալ անկարելիութիւն մը պիտի ըլլար փրկանքը վճարել։ Նա սուրբ, անմեղ, անարատ և մեղաւորներէն զատուած» էր։ Նա կերպարանքով մեղաւորներուն նմանեցաւ—«մեղաւոր մարմնին նմանութեամբ»—մարդու ձևով յայտնուեցաւ. բայց այդ նմանութեան՝ կատարեալ վիճակը միայն ստացաւ, և մեր մեղքերէն կամ անկատարութիւններէն ո՛և է բաժին չ՚ըստացաւ, միայն թէ Իր առաքելութեան ժամանակ, ոմանց վշտացն ու տառապանացը մասնակցեցաւ կամաւորապէս, Իր վրայ առնելով անոնց ցաւերն ու տկարութիւնները, մինչդեռ Իր կենսունակութիւնը, առողջութիւնը և զօրութիւնը կ՚ընծայէր։ Գրուած է թէ՝ «Անիկա մեր ցաւերը վերցուց և վիշտերը Իր վրան առաւ»(Եսայի ԾԳ. 4). և «զօրութիւն (կեանք, կենսունակութիւն, կորով) ելաւ Իրմէն և զանոնք բոլորն ալ բժշկեց»։—Մարկ. Ե. 30։ Ղուկ. Զ. 19։ Մատթ. Ը. 16, 17։

Կերպարանքով (կատարեալ) մարդ մ՚ըլլալով՝ Ինքզինքը խոնարհեցուց և մինչև ի մահ հնազանդ եղաւ։ Նա Աստուծոյ ներկայացուց Իր անձը, ըսելով՝ «Ահա՛ կուգամ՝ (ինչպէս որ դրքի տոմսին մէջ գրուած է Ինձ համար) Քու կամքդ կատարելու, ո՛վ Աստուած»—և ջրին մէջ թաղուելով կամ մկրտուելով՝ այլաբանօրէն պատկերացուց Իր նուիրումը։ Երբ Նա այսպէս ներկայացուց Ինքզինքը և նուիրեց Իր էութիւնը, Իր ընծան սուրբ (մաքուր) և հաճելի էր Աստուծոյ, Որը փոխադարձաբար Իր ընդունելու-

թիւնը յայտնեց, տալով Անոր Իր Հոգին և զօրութիւնը—երբ Սուրբ Հոգին Անոր վրայ իջնելով օծեց զԱյն։

Ս. Հոգիի այս ստացումը յղացումն էր նոր բնութեան մը—Աստուածային բնութեան տիրանալու համար—որը պէտք էր որ կատարելապէս զարգանար կամ ծնէր, երբ նուիրումը, մարդկային բնութեան զոհագործութիւնը ամբողջապէս լրանար։ Այս յղացումը զինքը մարդկային վիճակէն քայլ մը վեր, Խ ով ներկայացուած Հոգիէ յղացման մակարդակին վրայ բարձրացուց, ինչպէս որ ցուցադրուած է ը բուրգով։ Յիսուս Իր կենաց վերջին երեք ու կէս տարին այս մակարդակին վրայ անցուց—մինչև որ խաչին վրայ Իր մարդկային կեանքը վերջացաւ։ Երեք օր մեռած վիճակի մէջ մնալէ յետոյ, յարութեամբ կեանք ստացաւ (Լ մակարդակի վրայ Բ), Հոգիէն ծնած ըլլալով—«ննջեցեալներէն (ծնածներուն) անդրանիկը»։ «Այն որ Հոգիէն ծնած է հոգի է»։ Որով՝ Յիսուս Իր յարութեան ժամանակ և անկէ վերջն ալ Հոգի մը—Հոգեղէն էակ մ'էր, բառին բովանդակ նշանակութեամբը դադրած ըլլալով մարդկային էակ մ'ըլլալէ։

Արդարև, Իր յարութենէն յետոյ Նա զօրութիւնը ունէր երևնալու, ու երևցաւ Իր աշակերտներուն մարդու կերպարանքով, ապացուցանելու համար անոնց՝ թէ Ինք այլևս կենդանի է ո՛չ թէ մեռեալ. բայց Նա մարդկային էակ մը չէր, մարդկային կենցաղավարութեան պայմաններուն ու վիճակներուն հպատակ. Նա կրնար երթալ ու գալ հովի մը պէս (նո՛յնիսկ երբ դռները գոցուած էին), և ո՛չ ոք կրնար գիտնալ թէ ո՛ւրկէ եկաւ և ո՛ւր գնաց։ «Այսպէս ալ է այն ամէնը որ Հոգիէն կը ծնանի»—Յովհ. Գ. 8, բաղդատէ Յովհ. Ի. 19, 26։

Իր մկրտութեան ժամանակէն՝ Ինքզինքը իբրև զոհ մը նուիրած վայրկեանէն սկսեալ՝ իբրև մարդ մեռած և նոր բնութիւնը սկսած համարուեցաւ, որը կատարելութեան հասաւ Իր յարութեամբ․ Լ ով ներկայացուած կատարեալ հոգւոյ մակարդակին տիրացած ատեն, հոգեղէն մարմինով յարութիւն առած էր։

Յարութենէն քառասուն օր յետոյ, Յիսուս երկնային փառաց համբարձաւ—դէպի Աստուածային փառաց մակարդակը՝ Ի (բուրգ Ի)։ Աւետարանական Դարու տևողութեանը Նա փառաց մէջ եղած է (բուրգ Լ), «Նստելով Հօրը հետ Անոր գահին վրայ»․ Նոյնպէս, երկրի վրայ գտնուած Իր Եկեղեցւոյն Գլուխը, Վարիչը և Առաջնորդը եղած է միանգամայն։ Աւետարանական Դարու ամբողջ շրջանին՝ Եկեղեցին իր զարգացման, դաստիարակման և քննութեան ընթացքին մէջ եղած է, որպէսզի Դարուն վերջաւորութեանը կամ հնձմանը Անոր (Քրիստոսի) Հարսը և Ժառանգակիցը կարենայ ըլլալ։ Ասոր համար է որ Նա ներկայիս Անոր տառապանքներուն կը մասնակցի, որպէսզի որոշեալ ժամանակին՝ Անոր հետ ալ փառաւորուի (Ի մակարդակին վրայ)։

Բացի այն պարագայէն, որ Եկեղեցին աւելի խոնարհ մակարդակէ մը կ՚սկսի, դէպի փառաց առաջնորդող միւս քայլերը յար և նման են իր Առաջնորդին ու Տիրոջ քայլերուն․ Նա «մեզի օրինակ մ՚եղած է որպէսզի Իր քայլերուն հետևինք»։ Ինչպէս որ տեսանք՝ մեր Տէրը աշխարհ եկած ժամանակ մարդկային կատարելութեան մակարդակին՝ Ծ ին վրայ էր․ մինչդեռ, ամէնքս որ Ադամական ցեղէն ենք, խոնարհագոյն մակարդակի մը՝ Ղ ին վրայ ենք—որը մեղաց, անկատարութեան և առ Աստուած թշնամութեան վիճակը կը ներկայացնէ։ Ուրեմն, մեր ա-

ռաջին և անհրաժեշտ գործն է արդարանալ, ու այս-
պէս Ծ մակարդակին վրայ բարձրանալ։ Բայց այդ
վերելքը ի՞նչպիսի զօրութեամբ կրնայ տեղի ունե-
նալ արդեօք. մեր կատարած բարի՞ գործերուն հա-
մար միթէ. ո՛չ. ինչու որ մեղաւորները բարի (կա-
տարեալ) գործեր ընելու կարող չեն. մեր անձին նը-
ուիրումը Աստուծմէ անընդունելի է. այսպէս՝
«Աստուած Իր սէրը մեզ նկատմամբ յայտնեց, որ
երբ դեռ մեղաւոր էինք, Քրիստոս մեզի համար մե-
ռաւ»։ (Հռովմ. Ե. 8, 9)։ Հետևաբար, այն արդա-
րացումը և բարձրացումը ու մարդկային կատարե-
լութեան տիրացումը, պարզապէս Քրիստոսի մեր
սիրոյն համար կատարած փրկագործութեան և «Իր
արեանը վրայ մեր ունեցած հաւատքին շնորհիւ»
պիտի կրնայ տեղի ունենալ. «Մենք հաւատքով ար-
դարացած (Ծ մակարդակը բարձրացած) ենք»։ Եւ
«հաւատքով արդարացած ըլլալով՝ խաղաղութիւն
ունինք Աստուծոյ հետ» (Հռովմ. Ե. 1), ու այլևս
Աստուծմէ երբ թշնամիներ չենք նկատուիր, հապա՝
որպէս արդարացած մարդկային որդիներ. բարձրա-
ցած ըլլալով այն միևնոյն մակարդակին վրայ՝ ուր
Ադամ և մեր Տէր Յիսուսը կը դտնուէին, սա տար-
բերութեամբ միայն, որ անոնք իսկապէս կատարեալ
էին, մինչդեռ մենք այդպէս կընդունուինք Աստուծ-
մէ, իրականին մէջ առանց անոնց պէս ըլլալու։
Աստուծոյ Խօսքին նկատմամբ մեր ունեցած հաւատ-
քին պատճառաւ, կը տիրանանք այս հաշուըուած
արդարութեան, որը կ'ըսէ թէ Դուք «Ծախու առ-
նուած», «փրկուած» բոլոր բաներէն ձրիօրէն «ար-
դարացած» էք։ Մեր հաւատքին պատճառաւ մեզի
սեփականութիւն համարուած Քրիստոսի արդարու-
թեան պատմուճանին շնորհիւ, Աստուծոյ առջև ան-
մեղադրելի, անարատ և սուրբ էակի մը վիճակը ու-

*նինք։ Նա հաւանեցաւ որպէսզի Քրիստոս մեր տեղը մեղաւոր սեպուի և մեր կրելիք պատիժը Ինք կրէ մեզի համար․ և Նա մեռաւ մեր բարիքին, մեր սիրոյն համար՝ որպէս թէ Ինք եղած ըլլար իսկական մե-ղաւորը։ Եւ իբր հետեւանք, բոլոր Իր փրկագործու-թիւնը ընդունողներուն Իր արդարութիւնը* կը վե-րագրէ, *որուն կ'ընկերանան այն ամեն իրաւունք-ներն ու օրհնութիւնները, զորս մեղքին աշխարհ մտնելէն առաջ մեր նախածնողքը կը վայելէր․ ու այսպէս, կեանք ու Աստուծոյ հետ յարաբերութիւն կ'ստանանք։ Հաւատքի շնորհիւ կարելի է մեզ ան-միջապէս տիրանալ այս յարաբերութեանը, և Աս-տուծոյ «յարմար ժամանակին», իրական կենաց, կատարեալ յարաբերութեան և ուրախութեան տի-րանալու ապահով խոստումը տրուած է մեզի։*

*Սակայն և այնպէս յիշելու ենք թէ՝ թէև արդա-րացումը օրհնութիւն մ'է, բայց մեր *բնութիւնը չի*

---

*Երբ կ'ըսուի մարդու մը համար թէ *գէշ բնութիւն* մ'ունի, հոդ *բնութիւն* բառը պարագային յարմար-ցուած ոճով մը գործածուած է։ Շիտակը ըսելով՝ բնութեամբ ո'և է մարդ չար չէ։ Մարդկային բնու-թիւնը «խիստ բարի» է, Աստուածային բնութեան *երկրային պատկեր* մ'է․ որով՝ ամեն մարդ բարի բը-նութիւն մ'ունի․ խնդիրը հոն է որ այդ բարի բնու-թիւնը չարափոխուած է։ Հետեւաբար, մարդու մը համար անբնական է չար, անասնային են․ ըլլալ․ հապա բնական, Աստուածանման ըլլալ։ Այս գլխա-ւոր նշանակութեամբ է որ վերը *բնութիւն* բառը կը գործածենք։ Քրիստոսով արդարացած՝ իրաւունքը ունինք վերստանալու այն ամեն շնորհներն ու օրհ-նութիւնները, որոնք կը պատկանին մեր մարդկա-յին բնութեան—որը Աստուծոյ երկրային պատ-կերն է։

փոխեր· տակաւին մարդկային էակներ ենք։ Մեղաց
և Աստուծմէ օտարացած ողորմելի վիճակէն փըր-
կուած՝ փոխանակ մարդկային մեղաւորներ ըլլա-
լու, այլև մարդկային որդիներ ենք· և այդ իսկ
պատճառաւ՝ Աստուած ալ մեզի հետ կը խօսի որ-
պէս Իր որդիներուն։

Աւետարանական Դարաշրջանին՝ Աստուած «ժա-
ռանգակիցներ»ու «փոքրիկ հօտ»ին ուղղած է Իր
կոչը, ըսելով՝ «Որդիս, սիրտդ Ինծի տուր»—այ-
սինքն Ինծի նուիրէ ինքզինքդ, քու երկրային բոլոր
կարողութիւններդ, քու կամքդ, քու ձիրքերդ, քու
ամբողջ ունեցածդ, այնպէս՝ ինչպէս որ Քրիստոս
օրինակ մը թողուցած է քեզի· այսպէսով՝ որպէս
Իմ որդիս՝ Ես ալ մարդկայինէ աւելի բարձր մակար-
դակի վրայ պիտի բարձրացնեմ քեզ։ Յարուցեալ Յի-
սուսի—Որ «Հօրը անձնաւորութեան ճշգրիտ պատ-
կերն է»—մարմնոյն նման մարմին մը պիտի տամ
քեզի և հոգեղէն որդիի մը պիտի վերածուիս։ Եթէ
ուրանաս քու բոլոր երկրային յոյսերդ, ըղձանք-
ներդ, նպատակներդ, ևն., քու բովանդակ մարդ-
կային բնութիւնդ նուիրես, ու Ինծի ծառայելով ըս-
պառես, ատոր փոխարէն Ես ալ մարդկային ցեղիդ
մնացորդներէն աւելի բարձր բնութիւն մը պիտի շը-
նորհեմ, քեզ «Աստուածային բնութեան հաղորդա-
կից» մը պիտի ընեմ—«Ժառանգ Աստուծոյ և ժա-
ռանգակից մը Յիսուս Քրիստոսի, եթէ սակայն Ա-
նոր հետ տառապիս, Անոր հետ փառաւորուելու հա-
մար»։

Բոլոր անոնք, որոնք իրաւամբ կը գնահատեն Ա-
ւետարանին առաջարկած այս մրցանակը՝ ուրախու-
թեամբ մէկ կողմ կը նետեն ամեն ծանրութիւն, և
համբերութեամբ կը վազեն որոշուած ասպարէզը,
որպէսզի կարենան շահիլ իրենց համար սահմանուած

մրցանակը։ Մեր գործերը չէին որ ապահովցուցին մեր արդարացումը. այդ բանը յաջողցնելու համար մեր Տէր Յիսուսը բոլոր պէտք եղածը ըրաւ. ու երբ հաւատքով ընդունեցինք Իր կատարած գործը, այն ժամանակ արդարանալով՝ Ծ մակարդակին վրայ բարձրացանք։ Բայց, ասկէ վերջ, եթէ յառաջդիմել ուզենք, առանց գործելու չենք կրնար։ Անշուշտ պէտք չէ որ կորսնցնենք հաւատքնիս, հակառակ պարագային մեր արդարացումն ալ պիտի տուժենք. բայց արդարացած ըլլալէ յետոյ երբ մեր հաւատքին մէջ կը շարունակենք մնալ և յառաջդիմել, կարող ենք (Ս. Հոգիէն յղացման հետ մեզի ընծայուած շընորհին միջոցաւ) գործք ցոյց տալ, Աստուծոյ հաճելի պտուղ արտադրել, բան մը, զոր Աստուած կը պահանջէ արդէն, ինչու որ ասիկա այն զոհաբերութիւնն է զոր ուխտեցինք կատարել։ Աստուած կը պահանջէ որ այն մեծ մրցանակին նկատմամբ գնահատութիւննիս արտայայտենք՝ անոր սիրոյն նուիրելով մեր ամբողջ էութիւնը և հարստութիւնը. որը ո՛չ թէ մարդոց, հապա Աստուծոյ համար սուրբ, և Քրիստոսի միջոցաւ ընդունելի զոհ մը—բանաւոր ծառայութիւն մ'է։

Այս բոլոր բաները ներկայացուցած ատեննիս կը հարցնենք՝ Տէ՛ր, ի՞նչպէս կը փափաքիս որ այս իմ զոհս, իմ ժամանակս, ձիրքս, ազդեցութիւնս, ևն. Քեզ յանձնեմ. ու երբ պատասխան մը ստանալու համար Աստուծոյ Խօսքը կը պրպտենք, կը լսենք Իր ձայնը՝ որ կը հրահանգէ մեզ մեր ամբողջութիւնը Իրեն յանձնել, ինչպէս որ մեր Տէր Յիսուսը ըրաւ. պատեհութիւնը ներկայացած ատեն բոլոր մարդոց բարիք ընելով, և մասնաւորապէս անոնց, որոնք հաւատքի ընտանիքին կը պատկանին—հոգեղէն կամ մարմնեղէն սնունդ տալով անոնց ի հարկին, ծած-

*կելով զանոնք Քրիստոսի արդարութեամբը և կամ մարմնական հագուստով, որքան որ կրնանք։ Մեր* բոլոր ինչքը *նուիրած ըլլալով՝ Հոգիէն յղացած և Ն մակարդակին հասած ենք․ անկէ վերջ, եթէ մեզի տրուած զօրութիւնը գործադրութեան դնենք, կարող պիտի ըլլանք ուխտերնիս լիովին կատարել և աւելի քան յաղթականներ երևան գալ, Անոր միջոցաւը (զօրութեամբը կամ Հոգիովը), Որ սիրեց ու ծախու առաւ մեզ Իր իսկ թանկագին արեամբը։ Բայց, ներկայիս, երբ դեռ Քրիստոսի քայլերուն կը հետևիս,*

«Ջառնե՛ս ո՛չ մէկ պահ դադար,
Զի չես շահած յաղթանակ․
Պիտի տևէ միշտ քոյ պայքար,
Մինչ ստանաս քու պսակ»։

*Մեր հաւատարիմ Եղբայր Պօղոսին պէս, մեր պըսակը պիտի շահինք այն ատեն միայն՝ երբ այլևս բարի պայքար մը մղած և մեր ընթացքը աւարտած ենք, և ո՛չ թէ անկէ առաջ։ Մինչև այդ ժամանակը, մեր աշխատանքի ու ծառայութեան զոհաբերութեան բոցն ու խունկը պէտք է որ դէպի վեր բարձրանան ամեն օր—զոհաբերութիւն մը՝ որ անուշահոտ է Աստուծոյ համար, և ընդունելի՝ մեր Տէր Յիսուս Քըրիստոսի միջոցաւ։*

*Այս յաղթական դասին պատկանող «ննջեցեալներ»ը իբրև հոգեղէն էակներ յարութիւն պիտի առնեն, Լ մակարդակին վրայ․ նոյնպէս՝ այս միևնոյն դասին պատկանողներէն ամեն անոնք, որոնք մեր Տիրոջ եկած ժամանակը կենդանի պիտի ըլլան, պիտի փոխուին» ու հոգեղէն էութեան միևնոյն մակարդակին պիտի արժանանան․ այս վերջինները մէկ վայրկեան իսկ չպիտի «ննջեն», թէպէտև «փոփոխման» համար հողեղէն ամանին (մարմնին) քայքա-*

յումը հարկ պիտի ըլլայ։ Այն ատեն անոնք Հոգեղէն կատարեալ ծնունդ մ'ունենալով՝ երկնային, հոգեղէն, անապական և անմահ էակներ պիտի ըլլան, և ո՛չ այլևս տկար երկրային, մահկանացու և ապականացու։—Ա․ Կորնթ․ ԺԵ․ 44, 52։

Զենք գիտեր թէ «փոխուելում» կամ իբրև հոգեղէն էակներ (Լ մակարդակին վրայ) կատարելութեան հասնելում, և յետոյ Ի մակարդակին վրայ իբրև ամբողջացած ու անթերի խումբ մը Տիրոջ հետ Փառքով ու Զօրութեամբ միանալով փառաւորուելում միջև տեղի ունենալիք ժամանակամիջոցը ո՛րքան երկար պիտի ըլլայ։ Այնպէս կ'ըմբռնենք թէ՝ Քրիստոսի ամբողջ մարմնին՝ Գլխուն հետ այս միաւորումը և փառաւորումը «Գառնուկին ամուսնութիւն»ն է Հարսին հետ, երբ նա լիովին Տիրոջը ուրախութիւններուն մէջ պիտի մտնէ։

Կրկին դիտէ քարտէսը—ծ, խ, հ, ձ չորս որոշ դասակարգեր են, որոնք միացած՝ կը ներկայացնեն ամբողջ անուանական Աւետարանական Եկեղեցին, որը ինքզինքը Քրիստոսի Մարմինը կը կոչէ։ Թէ՛ ծ և թէ՛ խ դասակարգերը հոգիէ յղացման մակարդակին Խ ին վրայ են։ Այս երկու դասակարգերն ալ գոյութիւն ունեցած են միասին ամբողջ Աւետարանական Դարաշրջանին․ երկուքն ալ ուխտ ըրած են Աստուծոյ կենդանի զոհեր ըլլալու․ երկուքն ալ «ընդունուած են Սիրելիով» և Հոգիէն յղացած են իբր «նոր ստեղծուածներ»։ Այն տարբերութիւնը որ գոյութիւն ունի անոնց մէջ, հետևեալն է․ ծ ն կը ներկայացնէ ամեն անոնք, որոնք իրենց ուխտը կը գործադրեն, և Քրիստոսի պէս մեռած են երկրային կամքերու, նպատակներու և փառասիրութիւններու նկատմամբ․ մինչդեռ, խ ն կը ներկայացնէ Հոգիէ յղացած զաւակներու աւելի մեծկակ բազմութիւնը,

*որոնք թէև ուխտած են՝ բայց ցաւալի է ըսել որ կը թերանան իրենց ուխտին գործադրութեանը մէջ: Ծ դասակարգը յաղթողներէն կբաղկանայ, որը Քրիստոսի Հարսը պիտի ըլլայ, ու Տիրոջը հետ Անոր գահին վրայ պիտի բազմի փառքով—Ի մակարդակով ներկայացուած։Աւիկա այն «փոքրիկ հօտ»ն է, որուն Հայրը բարեհաճած է տալ Թագաւորութիւնը: (Ղուկ. ԺԲ. 32): Խ դասակարգին պատկանողները մարդկային կամքին մահացումէն խոյս կուտան. բայց Աստուած տակաւին կը սիրէ զանոնք, որով գրկանաց ու տառապանաց ճամբով պիտի հասցնէ զանոնք Լ մակարդակին վրայ, որը հոգեղէն կատարելութիւն կը ներկայացնէ: Բայց այլևս արժանի պիտի չըլլան Ի մակարդակին, որը փառաց գահն է, ինչու որ իրենք յաղթողներ չէին: Եթէ մեծապէս կը գնահատենք մեր Հօր սէրը, եթէ կ՚որոնենք մեր Տիրոջ հաճութիւնը, եթէ կը ցանկանք Իր մարմնին անդամները, Իր Հարսը բաղկացնելու և Անոր գահին վրայ բազմելու՝ պէտք է որ հաւատարմօրէն ու հաճոյքով կատարենք մեր զոհաբերութեան ուխտը:*

**Անուանական** *Եկեղեցւոյն մեծամասնութիւնը* **ի** *բաժինով ներկայացուած է: Նկատեցէ՛ք՝ թէ անիկա Խ մակարդակին վրայ չէ, հապա՝ Ծ: Այդ դասակարգին պատկանողները արդարացուած են միայն, բայց ո՛չ նուիրագործուած: Անոնք բոլոր սրտով Աստուծոյ նուիրուած չըլլալով՝ կղացուած չեն իբրև հոգեղէն՝ էակներ: Սակայն և այնպէս, Յիսուսը իրենց մեղաց փրկագինը ընդունելնուն համար, աշխարհի մնացեալ մարդկութենէն աւելի բարձր աստիճանի մը վրայ կը գանուին. բայց Աստուծոյ հոգեղէն ընտանիքին մասնակցելու այս Դարու վերին—կոչումը ընդունած չեն: Եթէ Վերանորոգութեան ժամանակներուն մէջ դեռ ևս շարունակեն ի-*

րենց հաւատքը, և բոլորովին հպատակին Քրիստոսի Թագաւորութեան արդար օրէնքներուն, ի վերջոյ երկրային կատարեալ մարդուն, Ադամի նմանութեանը պիտի հասնին: Անոնք կատարելապէս պիտի վերագտնեն այն բոլոր բաները, որոնք Ադամի մեղքին պատճառաւ կորսուեցան. պիտի վերստանան միևնոյն մարդկային իմացական, բարոյական և ֆիզիքական կատարելութիւնները, ու կրկին յառաջ պիտի գան Աստուծոյ այն միևնոյն պատկերովը՝ որոնցմով Ադամ ստեղծուեցաւ. ինչու որ անոնք փրկուեցան (մահուընէ) որպէսզի այդ բաներուն տիրանան: Անոնք լսած ու հաւատացած են թէ փրկութիւնը միայն Քրիստոսի միջոցաւ է. և այդ պատճառաւ Ծ մակարդակին վրայ ունեցած իրենց առաջացման վիճակը մասնաւոր օրհնութիւն մ'է, զոր աշխարհի ընդհանուր մարդկութենէն առաջ հաւատքի շնորհիւ կը վայելեն, (ինչու որ Հազարամեայ Դարուն մէջ բոլորն ալ ճշմարտութեան ուղիղ գիտութեան մը պիտի բերուին): Սակայն, ասոնք կանխազարթնումի և բարի ուղղութեամբ աւելի կամ նուազ չափով յառաջդիմած ըլլալու առաւելութիւնը պիտի ունենան: Բայց, այս h դասակարգը, ներկայիս վերագրուած արդարութեան իրական բարիքը լաւ կերպով գործածելուն մէջ կը թերանայ: Անիկա մասնաւոր նպատակի մը համար շնորհուած է, որպէսզի կարելիութիւն տրուի որոշ դասակարգի մը, հաճելի զոհ մ'ըլլալու, և իբրև «Քրիստոսի մարմնին» անդամները՝ ծ դասակարգին միանալու: h դասակարգին պատկանողները, Աստուծոյ (արդարացման) շնորհը «պարապ տեղը» կ'ընդունին (Բ. Կոր. Զ. 1). Հիմա որ զոհաբերութիւնները Աստուծոյ հաճելի են, անոնք կը թերանան իրենց արդարացումը չահաւոր կերպով գործածելով և յառաջ-

դիմելով՝ իրենք զիրենք ընդունելի զոհեր մատուցանել։ Ամէն անոնք, որոնք այս դասակարգէն են՝ թէեւ «սուրբեր» եւ զոհաբերուած «մարմնին» անդամները չեն, բայց Առաքեալէն «եղբայրներ» կոչուած են։ (Հռովմ. ԺԲ. 1)։ Այս միեւնոյն իմաստով է որ երբ մարդկային ամբողջ ցեղը վերանորոգուած է, յաւիտեան Քրիստոսի եղբայրներ եւ Աստուծոյ որդիներ պիտի ըլլան, թէեւ տարբեր բնութեան տէր։ Աստուած Հայրն է բոլոր անոնց որ Իրեն հետ համերաշխօրէն կ՚ապրին, հոգ չէ թէ ինչ մակարդակի վրայ եւ բնութեան տէր են անոնք։

Անուանական Եկեղեցիին հետ կապ ունեցող ուրիշ դասակարգ մ՚ալ կայ, որը Յիսուսի իր մեղքերուն համար զոհուելուն չի հաւատար, ուստի՝ արդարացած չըլլալով՝ Ծ մակարդակին վրայ չէ, այլ անոր վարի կողմը կը գտնուի, Ճ հատուածը։ Այս դասակարգին պատկանողները «գառնուկի մորթով գայլեր են», սակայն իրենք զիրենք Քրիստոնեայ կը կոչեն, եւ անուանական Եկեղեցիին իբր անդամներ կը ճանչցուին։ Իրականին մէջ, Քրիստոսը երբեք իրենց Փրկիչը չեն ընդունիր, եւ Ղ մակարդակին վրայ է իրենց տեղը. անոնք աշխարհի մարդկութեան մէկ մասը կը կազմեն, Եկեղեցւոյ անարժան անդամներ են, եւ մեծ չարիք կը պատճառեն անոր։ Աւետարանական Դարաշրջանին մէջ Եկեղեցին գոյութիւն ունեցած է այս ծ, խ, ի եւ ճ խառնակ դասակարգերով, որոնք Քրիստոնեայ կ՚անուանեն իրենք զիրենք։ Մեր Տիրոջ ըսածին պէս՝ երկնքի անուանական Թագաւորութիւնը (անուանական Եկեղեցին), ցորեն եւ որոմ ցանուած դաշտի մը կը նմանի. Նա աւելցուց թէ՝ «պիտի թող տայ որ երկուքն ալ մէկտեղ աճին մինչեւ (Դարուն վախճանին տեղի ունենալիք) հունձքի ատենը։ Երբ հունձքի ժամա-

նակը գայ, պիտի ըսէ Իր հնձողներուն («հրեշտակներուն»—պատուիրակներուն), Առաջ որոմը քաղեցէք, և զանիկա խուրձ խուրձ կապեցէք այրելու համար, իսկ ցորենը Իմ ամբարս ժողվեցէք:—Մատթ. ԺԳ. 38, 41, 49)

Մեր Տիրոջ այս խօսքերէն այնպէս կը տեսնուի թէ՝ թէև սահմանուած էր որ Դարուն տևողութեանը երկուքն ալ միատեղ աճին և անուանական Եկեղեցիին իբրև անդամներ ճանչցուին, սակայն միևնոյն ատեն որոշած էր որ այս երկու տարրերուն իրարմէ զատելու ժամանակ մը պիտի գայ, երբ ամեն անոնք որ իսկապէս Եկեղեցիին կը պատկանին, Աստուծոյ հաճելի և ընդունուած սուրբերն են (ծ), երևան պիտի գան:—Մատթ. ԺԳ. 39:

Աւետարանական Դարու տևողութեանը, բարի սերմին հետ որոմներ կամ կեղծ ցորեններ ալ կ'աճին. «Բարի սերմը անոնք են, որ Թագաւորութեանը որդիներ են», հողեղէն որդիները, ծ և խ դասակարգերը. «բայց որոմները չարին որդիքն են»: Ուրեմն, ամբողջ ձ դասակարգը, և ի դասակարգէն շատեր «որոմներ» են. ինչու որ «մարդ մը երկու տէրերու չի կրնար ծառայել», և «անոր ծառաներն էք, որուն որ ծառայութիւն կը մատուցանէք»: Իսկ ի դասակարգին պատկանողները, իրենց ծառայութիւններն ու տաղանդները (կարողութիւնները) իրենց Փրկիչ Տիրոջը չեն նուիրեր—որ բանաւոր պաշտօն մ'է—անտարակոյս, անոնք իրենց ժամանակին ու կարողութեան մեծագոյն մասը Աստուծոյ հակառակ գործերու կը յատկացնեն, հետևաբար Թշնամիին կը ծառայեն:

Կրկին նկատի առէք քարտէսը և դիտեցէք Աւետարանական Դարու հունձքը կամ վախճանը. դիտեցէ՛ք, թէ ի՛նչպէս երկու մասի բաժնուած է, մին՝

եօթը և միւսը՝ երեսուն երեք տարի, որը Հրէական Դարու ճշգրիտ համեմատականն է: Հրէական Դարու Հունձքին նման, ներկայինն ալ՝ նախ և առաջ Եկեղեցիին համար քննութեան և բաժանման շրջան մը պիտի ըլլայ, որմէ յետոյ աշխարհի և անուանական Եկեղեցիին համար պիտի յաջորդէ բարկութեան ժամանակ մը և կամ «վերջին եօթը պատուհասներուն» արձակումը: Հոգեղէն մակարդակի վրայ Աւետարանական Եկեղեցիին վայելածներուն «շուք»ը կամ օրինակն էր Հրէական Եկեղեցին իր երկրային մակարդակովը: Այն միջոցը, որով դատուեցաւ մարմնեղէն Իսրայէլը իր Դարու Հունձքին ժամանակ՝ այն ատեն իրեն ներկայացուած ՃՇՄԱՐՏՈՒԹԻՒՆՆ էր: Այն ժամանակուայ համար սահմանուած ճշմարտութիւնը մանգաղն էր, որը Հրէական անուանական Եկեղեցիէն «Ճշմարիտ Իսրայէլացիները» զատեց. ինքզինքնին ցորեն դաւանողներուն հետ բաղդատելով՝ ճշմարիտները բեկոր մը կը կազմէին միայն: Այսպէս ալ է ներկայ Դարու Հունձքը: Հրէական Դարու Հունձքին նման, Աւետարանական Դարունն ալ՝ գլխաւոր հնձողին, մեր Տէր Յիսուսի հսկողութեան ներքև տեղի կ'ունենայ, Որը այն ատեն ներկայ պէտք է ըլլայ: (Յայտ. ԺԴ. 14): Այս Դարու Հունձքին մէջ, մեր Տիրոջ առաջին գործը պիտի ըլլայ ճշմարիտը կեղծերէն զատել: Անուանական Եկեղեցին իր խառնաշփոթ վիճակին համար «Բաբելոն»—խառնակութիւն կոչուած է Տիրոջմէն. և Հունձքը այն ժամանակն է, որուն մէջ անուանական Եկեղեցւոյ այլ-և այլ դասակարգերը պիտի բաժանուին, և երբ ծ դասակարգը պիտի հասուննայ ու կատարելութեան հասնի: Ցորենը որոմէն պիտի զատուի, հասուն ցորենը՝ տհասէն, ևն.: Ամէն անոնք, որոնք ծ դասակարգէն են՝ ցորենի «առաջին բերքերն» են, և ի-

րենց բաժանուելէն յետոյ՝ սահմանեալ ժամանակին մէջ Քրիստոսի Հարսը պիտի ըլլան, ու յաւիտենապէս իրենց Տիրոջը հետ և Անոր նման պիտի ըլլան։

Այս փոքրիկ հօտին Բաբելոնէն բաժանումը ցուցադրուած է Ն պատկերով։ Նա իր Տիրոջ հետ մէկ ըլլալու, Անոր անունը կրելու և փառացը մասնակցելու ընթացքին մէջն է։ Փառաւորեալ Քրիստոսը՝ Գլուխով և Մարմինով միասին՝ Շ պատկերով ներկայացուած է։ Մ, Յ, և Ն պատկերները Բաբելոնը— անուանական Եկեղեցին կը ներկայացնեն, «մեր Տիրոջ Օրուան» մէջ տեղի ունենալիք «Նեղութեան ժամանակ»էն յառաջ եկած անկման և փշրման վիճակին մէջ։ Թերևս սաստիկ աՀաւոր բան մը թուի, բայց բոլոր ճշմարիտ ցորեններուն Համար իրապէս մեծ օգտակարութիւն մը պիտի ունենայ։ Բաբելոնը կ՚իյնայ, որովհետև նա իրականութեան մէջ չէ այն՝ ինչ որ կը կեղծէ ըլլալ։ Անուանական Եկեղեցին կը պարունակէ շատ մը կեղծաւորներ, որոնք անոր միացած են, որովհետև նա աշխարհի մէջ պատուաւոր դիրք մը ունի․ և ասոնք, իրենց կենցաղավարութեամբը, Բաբելոնը աշխարհի քթին գարշահոտութիւն մը կը դարձնեն։ Տէրը միշտ տեղեակ էր անոնց իսկական նկարագրին, բայց որոշ նպատակի մը Համար, զանոնք ազատ ձգած է մինչև Հունձքի ժամանակը, երբ պիտի «ժողվէ Իր Թագաւորութենէն (ճշմարիտ Եկեղեցիէն և խուրձ խուրձ կապէ) բոլոր գայթակղութիւնները, և զանոնք՝ որոնք անօրինութիւն կը գործեն, ու կրակի (Նեղութեան և իրենց անուանական դրութեան և կեղծ դաւանութեան ջնջման) Հնոցին մէջ պիտի ձգէ զանոնք․․․։ Այն ատենը արևի պէս պիտի փայլին արդարները (Ծ դասակարգը), իրենց Հօրը Թագաւորութեանը մէջ»։— Մատթ․ ԺԳ․ 41—43։

*Եկեղեցիին վրայ գալիք նեղութեան պատճառը մեծաւ մասամբ այլեւայլ տեսակ Անհաւատութեան և Ոգեհարցութեան ծաւալումը պիտի ըլլայ, որոնք խիստ փորձութիւններ պիտի ըլլան Բաբելոնի համար, ինչու որ նա Աստուծոյ Խօսքին հակառակ շատ մը վարդապետութիւններու կը փարի։ Ինչպէս որ Հրէական Դարու հունձքի ժամանակ փառք ու զօրութիւն ակնկալող Հրէային համար Քրիստոսի* խաչը *գայթակղութեան քար մ'էր և աշխարհային—իմաստուն Յոյնին յիմարութիւն՝ նոյնպէս ալ Աւետարանական Դարու հունձքին, կրկին գայթակղութեան քար մը և գլորման վէմ մը պիտի ըլլայ։*

*Ամէն ոք, որ Քրիստոսի վրայ ոսկիէ, արծաթէ և ճշմարտութեան թանկագին քարերէ և պէտք եղած նկարագրէն զատ ուրիշ բան կը կառուցանէ, ինքզինքը ողորմելիօրէն պաշարուած և անձուկ վիճակի մը մէջ պիտի գտնէ բարկութեան («կրակ»ին) ժամանակ. որովհետև բոլոր փայտէ, յարդէ և եղէգէ վարդապետութիւններն ու շինուածքները պիտի այրուին ու ջնջուին։ Ամեն անոնք, որոնք ուղիղ կերպով շինած են, և հետևաբար հաճելի նկարագրի տէր,* Ձ *պատկերով ներկայացուած են. մինչդեռ* Մ *«մեծ բազմութիւն»ը կը ներկայացնէ, որը թէև հոգիէն յղացած է, սակայն փայտով, յարդով և եղէգով շինած է—ցորեն է, բայց առաջին բերքին* Ձ *ին հաւաքուած ատեն կատարելապէս հասունցած չէ։ Այս դասակարգին պատկանողները* (Մ), *գահի և Աստուածային բնութեան մրցանակը կը կորսնցնեն. բայց ի վերջոյ իբրև հոգեղէն էակներ պիտի ծնանին, այնպիսի աստիճանի մը վրայ որ Աստուածային բնութենէն վար է։ Թէպէտև անոնք իսկապէս զոհաբերուած են, բայց այս աշխարհի ոգին ա՛յնքան յաղթահարած է զիրենք, որ իրենց կեանքերը իրա-*

պէս զոհաբերելու գործին մէջ կը թերանան։ Նո՛յնիսկ «հունձք»ի շրջանին, երբ Հարսին կենդանի անդամները միւսներէն կ'անջատուին Ճշմարտութեան զօրութեամբ, միւսներուն ականջները, մ դատակարգին հետ, լսելու խուլ պիտի ըլլան։ Անոնք այդ բաժանման շրջանին մէջ դանդաղ ընթացք մը պիտի ունենան հաւատալու և գործելու համար։ Տարակոյս չկայ, թէ անոնք մեծապէս շուարումի պիտի մատնուին, երբ ի վերջոյ ըմբռնեն թէ՝ Հարսը ամբողջացած ու Տիրոջ հետ միացած է, իսկ իրենք, իրենց անհոգութեանը և աշխարհային հոգերով ծանրաբեռնուած ըլլալնուն համար տուժած են մեծ մրցանակը. բայց այն ատեն, երբ կը նկատեն գեղեցկութիւնը Աստուծոյ Ծրագրին, որը մեծ սէր մը կը պարունակէ թէ՛ իրենց և թէ՛ ամբողջ աշխարհին համար, բոլորովին պիտի ցրուըուի իրենց վիշտը, և պիտի աղաղակեն՝ «Ալէլուիա, ինչու որ (մեր) Ամենակարող Տէր Աստուածը թագաւորեց։ Խնդանք և ուրախանանք ու փառք տանք Անոր, քանզի Գառնուկին հարսանիքը հասաւ, ու Անոր կինը ինքզինքը պատրաստեց» (Յայտ. ԺԹ. 6, 7)։ Նոյնպէս, նկատի առէք Տիրոջ լիառատ հոգածութիւնը, Որը խօսքը անոնց կ'ուղղէ ըսելով՝—Թէև Գառնուկին Հարսը չէք՝ բայց հարսանեաց ընթրիքին կրնաք ներկայ գտնուիլ—«Երանելի են անոնք որ Գառնուկին հարսանեացը ընթրիքին կանչուած են» (համար 9)։ Որոշեալ ժամանակին, Տիրոջմէն ստացած իրենց պատժին հետևանօք, այս բազմութիւնը Անոր ու Անոր Ծրագրին կատարելապէս պիտի հպատակի, ու իրենց պատմուճանները պիտի լուան, որպէսզի հոգեղէն Լ մակարդակին վրայ՝ Հարսին ստացած աստիճանէն անմիջապէս վար՝ դիրք մը (Չ) շահին։— Յայտ. է. 14, 15։

Ներողութեան ժամանակը, որ պիտի ազդէ աշխարհին վրայ, տեղի պիտի ունենայ՝ երբ Բաբելոնը ըսկըսած է իյնալ ու կազմալուծուիլ։ Մարդկային բոլոր ընկերութիւններու և կառավարութիւններու կործանման շրջան մը պիտի ըլլայ այն, աշխարհը արդարութեան տիրապետութեան համար պատրաստելով։ Մարմնեղէն Իսրայէլը (ե), որ մերժուած էր մինչև որ Հեթանոսաց լրութիւնը մտնէ, Ներողութեան ժամանակի տևողութեանը Աստուծոյ շնորհին պիտի վերադառնայ, և Աւետարանական Եկեղեցին կամ Հոգեղէն Իսրայէլը, պիտի ամբողջանայ ու փառաւորուի։ Հազարամեայ Դարաշրջանին՝ Իսրայէլը աշխարհի առաջնակարգ ազգը պիտի ըլլայ, երկրային մակարդակի վրայ եղող բոլոր արարածներուն գլուխը· և իրենց մէջ գոյութիւն ունեցող միութեանն ու համերաշխութեանը համար, բոլոր օրհնութեան և արդարութեան ցանկացող ազգերը իրենց պիտի դիմեն հնազանդելու իրենց կանոններուն և օրհնուելու։

Մարդկային կատարեալ բնութեան մէջ Վերահաստատութիւնը, ինչպէս նաև ամբողջ աշխարհի Վերանորոգութիւնը, աստիճանաբար տեղի պիտի ունենայ, և որը, գլուխ հանելու համար ամբողջ Հազարամեայ Դարը պէտք պիտի ըլլայ։ Քրիստոսի այս հազար տարուայ տիրապետութեանը ժամանակամիջոցին, Ադամական մահուան հետևանքները հետըզհետէ պիտի ջնջուին։ Անիկա իր ծայլևայլ երևոյթներով—հիւանդութիւններ, վիշտեր, տկարութիւններ, ինչպէս նաև գերեզման—պիտի խոնարհի Մեծ Վերանորոգչին զօրութեանը առջև, մինչև որ Դարուն վերջաւորութեանը մեր քարտէսին վրայի բուրգը ամբողջանայ։ Քրիստոսը՝ (ո), որ աստիճանով Հօրմէն անմիջապէս վերջը կուգայ, բոլոր բաներուն

—մեծ բազմութեան, հրեշտակներուն և մարդոց— Գլուխը պիտի ըլլայ. երկրորդ՝ աստիճանին կամ կարգին վրայ պիտի ըլլայ մեծ բազմութիւնը, իբրև հոգեղէն էակներ (չ). ասոնցմէ վերջ՝ հրեշտակները. յետոյ կուգայ մարմնեղէն Իսրայէլը (պ), պարփակելով միայն ճշմարիտ Իսրայէլացիները, իբրև երկրի ազգերուն գլուխը. որոնցմէ վերջ կուգայ մարդկային աշխարհը (Ծ), կենաց կատարելութեան մէջ վերահաստատուած. այն վիճակին մէջ՝ ուր որ էր մարդկային ցեղին գլուխը, Ադամ իր մեղանչելէն առաջ: «Վերահաստատութեան ժամանակներ»ուն՝ Հազարամեայ Դարու տևողութեանը՝ այս վերանորոգութիւնը աստիճանաբար պիտի իրականանայ: (Գործ.—Գ. 21): Բայց և այնպէս, ոմանք ժողովուրդին մէջէն պիտի ջնջուին. նախ՝ անոնք, որոնք կատարեալ լոյսի և պատեհութեան ներքև՝ ամբողջ հարիւր տարուայ տևողութեան կը մերժեն արդարութեան և կատարելութեան ճամբուն մէջ յառաջդիմել (Եսայի ԿԵ. 20). իսկ երկրորդ՝ անոնք, որոնք դէպի կատարելութիւն յառաջդիմելէ յետոյ, Հազարամեայի վախճանին տեղի ունենալիք վերջնական քննութեան մէջ անհաւատարիմ կը գտնուին: (Յայտ. Ի. 9): Ասոնք երկրորդ մահուամբ կը մեռնին, ուրկէ յարութիւն առնելու կամ վերահաստատուելու խոստում տրուած չէ: Ինչու որ անհատական կատարեալ դատաստան մը միայն ապահովուած է. և մէ՛կ ալ փրկագին մը միայն տրուած է: Քրիստոս ա՛լ չպիտի մեռնի:

Երբոր նկատի կ'առնենք մեր Երկնաւոր Հօր Ծրագրին մէջ պատրաստուած Եկեղեցիին բարձրացումը, և անոր միջոցաւ Իսրայէլի ու երկրի բոլոր ազգերուն օրհնութիւնը, որը զանոնք ամեն բաներու մէջ վերահաստատուելովը պիտի իրականանայ, մենք կը

յիշենք այն երգը, զոր հրեշտակները երգեցին՝ «Փառք ի բարձունս Աստուծոյ, և յերկիր խաղաղութիւն, ի մարդիկ հաճութիւն»։ Ասիկա Աստուծոյ Ծրագրին իրագործութիւնը պիտի նշանակէ— «ամէն բաները Քրիստոսի ներքև հաւաքելը»։ Եւ ո՞վ է որ այն ատեն պիտի համարձակի ըսելու թէ՝ Աստուծոյ Ծրագիրը ձախողութիւն մ՚եղած է. ո՞վ պիտի ըլլայ այն, որ պիտի ըսէ թէ՝ Նա չարիքը դեկավարած չէ բարի վախճանի մը համար. թէ Նա՝ թէ՛ մարդոց և թէ՛ դևերու բարկութիւնը զի՛նքը փառաբանելու չէ առաջնորդած։

Բուրգի մը պատկերը լաւ կերպով կը ծառայէ ո՛չ միայն կատարեալ էակներ խորհրդանշելու նպատակին, հապա նաև՝ ամենայն պատշաճութեամբ կը ներկայացնէ այն տիեզերական միութիւնը, որը գործնականացած պիտի ըլլայ այն ատեն, երբ Աստուծոյ Ծրագիրը իր կանխորոշ նպատակին հասած ու աւարտած է. երբ, թէ՛ երկնից մէջ ու թէ՛ երկրի վրայ կատարեալ խաղաղութիւն, սէր ու միաբանութիւն կը տիրէ. երբ Քրիստոս, ամենուն Գլուխը, Իր Մարմնին կամ Եկեղեցւոյն հետ, երկնից մէջ ու երկրի վրայ գտնուած ամէն բաները Իր վարչութեան սահմանին մէջ բերած՝ միութիւնը կոփած ու կերտած է։—Եփես. Ա. 10։

Յիսուս Քրիստոս այս շինութեան «սկիզբ»ը, «Գլուխ»ը, «Գագաթնավէմ»ը, «Գլխաւոր վերին) անկիւնաքար»ն էր, որը միայն իր սկզբնաւորութեանը մէջ է տակաւին. և այն ամէն մէկ քարերը որոնք կը շարուին ու կը տեղաւորուին այդ Գագաթնավէմին ներքև, պէտք է որ Անոր ուղղութեանը և անկիւններուն համեմատութեամբը ըլլան։ Հոգ չէ թէ քանի տեսակ քարեր ալ ըլլան այս շինութեան մէջ, հոգ չէ թէ քանի տարբեր տեսակ բնութիւններ ալ գտնուին

Աստուծոյ որդւոցը մէջ, ըլլան անոնք երկնային թէ երկրային, պէտք է որ բոլորն ալ Անոր Որդւոյն նմանութեանը կերպարանին, եթէ կ՚ուզեն Անոր հաճելի ըլլալ յաւիտեան։ Ամեն անոնք որ կը փափաքին այս շէնքին մէջ ո՛ևէ բաժին ունենալ՝ անհրաժեշտ է որ իրենց մէջ մշակեն Աստուծոյ հանդէպ հնազանդութեան և սիրոյ ոգին. հարկ է որ նոյնպէս սորվին սիրել Աստուծոյ բոլոր արարածները, (որուն կատարեալ արտայայտութիւնն էր Յիսուս). պէտք է որ օրէնքը գործադրեն, որ կ՚ըսէ՝ Քու Տէրդ պիտի սիրես բոլոր սրտովդ, մտքովդ, հոգիովդ և զօրութեամբդ, և դրացիդ անձիդ պէս։

Կառուցման ընթացքին մէջ (ինչպէս որ Աստուծոյ Խօսքը կ՚արտայայտէ թէ՝ թէ՛ երկնից մէջ և թէ՛ երկրի վրայ գտնուած բոլոր բաները մէկ իշխանութեան, մէկ գլխու ներքև պիտի հաւաքուին), նախ՝ Յիսուս Քրիստոսը, Գլուխը ընտրուեցաւ. յետոյ՝ Եկեղեցին որ Իր Մարմինն է։ Յաջորդ շարքին մէջ պիտի ըլլան հրեշտակները և հոգեղէն ուրիշ դասակարգեր. ասկէ ալ յետոյ կուգան Իսրայէլի հին սուրբերը և աշխարհի մարդկութիւնը։ Բարձրագոյնէն սկսելով՝ դասաւորումը պիտի շարունակուի, մինչև որ բոլոր փափաքողները համաձայնութեան և միութեան մէջ բերուին։

Յատկանշական բան մը որ կայ, այն է թէ՝ այս քննուած, Գլխաւոր, Անկիւնա—Գագաթնավէմը ամենէն առաջ զետեղուած և հիմնաւոր կոչուած է։ Այսպէս՝ լաւ կերպով լուսաբանուած է այն իրականութիւնը թէ՝ այն հիմը որով կը յուսանք Աստուծոյ մերձենալ և արդարացման արժանանալ, ո՛չ թէ երկրի՝ այլ երկնից մէջ հաստատուած է. և ամեն անոնք, որոնք այս երկնային հիմնաքարին ներքև հաստատուած ու միացած են, Անոր կառչած կը մը-

*նան միայն երկնային հրապուրանքներու և օրէնքներու միջոցաւ: Ու թէև կառուցման այս եղանակը երկրային շինութեան կերպին բոլորովին հակառակ է, սակայն որքան պատշաճ է տեսնելու թէ՝ այն քարը, որուն ձևին ու նմանութեանը հետևելով ամբողջ շէնքը պիտի կառուցուի, ամենէն առաջ զետեղուած է: Եւ ո՛րքան արժանավայել է նոյնպէս, երբ կը գտնենք թէ՝ մեր հիմը* դէպի վեր *դրուած է և ո՛չ թէ* դէպի վար. *և թէ՝ մենք ալ որպէս կենդանի քարեր՝ «Իր մէջ* կը շինուինք *ամեն բաներով»: Հազարամեայ Դարու տևողութեանը, այս գործունէութիւնը պիտի յառաջդիմէ միևնոյն կարգովն ու կանոնաւորութեամբը, մինչև որ երկնից մէջ ու երկրի վրայ բոլոր արարածները ի վիճակի ըլլան փառաբանելու և ծառայելու Աստուծոյ, կատարեալ հնազանդութեան կանոններուն համակերպելով անթերիօրէն: Այն ատեն ամբողջ տիեզերքը մաքրագործուած պիտի ըլլայ բոլոր ապականութիւններէն. ինչու որ այն օրուան մասին կը կարդանք՝ «Եւ պիտի ըլլայ թէ ամեն ով որ ան Մարգարէին մտիկ չընէ, ժողովուրդին մէջէն պիտի կորսուի»—երկրորդ մահուամբ.—Գործ. Գ. 22, 23:*

## ԱՆԱՊԱՏԻՆ ՏԱՂԱՒԱՐԸ

*Այն միևնոյն դասը զոր կ՚ստանանք Դարերու Քարտէսէն, հոս ալ՝ Աստուծմէ կարգադրուած այս այլաբանութեան մէջ ալ արտայայտուած է, զոր աւելի ընդարձակօրէն պիտի ուսումնասիրենք ուրիշ ատեն: Ասիկա քարտէսին մէկ անկիւնը զետեղած ենք, որովհետև պատշաճ կը նկատենք ներկայիս՝ որպէսզի տարբեր մակարդակները, կամ այն քայլերը որոնք Սրբութիւն Սրբութեանցը կ՚առաջնորդեն, ուշադրութեան առնուին և ծանօթացուին. որոնք կը համապատասխանեն այն միևնոյն քայլերուն, զորս*

արդէն ուսումնասիրութեան առարկայ ըրինք աւելի մանրամասնօրէն։ Տաղաւարին գաւիթէն դուրս կը մնայ ամբողջ մարդկային մեղաւոր աշխարհը՝ Ղ անկեալ մակարդակին վրայ։ «Մուտք»էն անցնելով՝ երբ «գաւիթ»ը կը մտնենք, այլեւս հաւատացեալներու կամ արդարացած անհատներու կը վերածուինք, Ծ մակարդակին վրայ։ Իսկ անոնք որ աւելի յառաջդիմելով՝ կը նուիրուին, տաղաւարին դրան կը մերձենան, եւ ներս մտնելով՝ քահանաներ կ՚ըլլան (Խ մակարդակին վրայ)։ Անոնք հոն կ՚աճին ու կը զօրանան «առաջաւորութեան հաց»ովը, կը լուսաւորուին «աշտանակ»ին լոյսովը, ու այսպէս՝ ի վիճակի կ՚ըլլան Աստուծոյ ընդունելի խունկ մատուցանելու «Ոսկի Սեղան»ին վրայ՝ Քրիստոսի միջոցաւ։ Եւ ի վերջոյ, առաջին յարութեամբ, կատարեալ հոգեղէն վիճակին կամ «Սրբութիւն Սըրբութեանց»ին մէջ կը մտնեն, եւ ուր Թագաւորութեան փառացը մէջ Քրիստոսի կ՚ընկերակցին, Ի մակարդակին վրայ։



# ԳԼՈՒԽ ԺԳ.

## ԱՅՍ ԱՇԽԱՐՀԻ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

**Առաջին Տիրապետութիւնը.—Անոր Կորուստը.—Անոր Փրկումը և Վերականգնումը.—Աստուծոյ Խորհրդարանական Թագաւորութիւնը.—Յափշտակիչը.—Գոյութիւն Ունեցող Իշխանութիւնները Աստուծմէ Կարգուած.—Անոնց Նկատմամբ Նաբուգոդոնոսորի Տեսութիւնը.—Դանիէլի Տեսութիւնը և Մեկնաբանութիւնը.—Այս Աշխարհի Թագաւորութիւնները Ուրիշ Տեսակէտէ մը Դիտուած.—Եկեղեցիին Ներկայ Կառավարութեանց Հանդէպ Ունեցած Պատշաճ Վերաբերմունքը.—Թագաւորաց Աստուածային Իրաւասութիւնը Համառօտակի Քննուած.—Քրիստոնէութեան Սնոտի Յաւակնութիւնները.—Լաւագոյն Յոյս մը Հինգերորդ Համաշխարհային Կայսրութեան մէջ:**

ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ *Յայտնութեան առաջին գլխուն մէջ, Աստուած Իր աշխարհային ստեղծագործութեան և անոր կառավարութեան նկատմամբ կը յայտնէ Իր նպատակը. «Եւ ըսաւ Աստուած. Մեր պատկերին ու մեր նմանութեանը պէս մարդ ընենք, ու երկրին թռչուններուն, և անասուններուն, ու բոլոր սողուններուն թող իշխէ: Եւ Աստուած Իր պատկերովը ստեղծեց մարդը, Աստուծոյ պատկերովը ստեղծեց զանիկա, արու և էգ ստեղծեց զանոնք. Ու Աստուած օրհնեց զանոնք, և Աստուած անոնց ըսաւ. Աճեցէ՛ք ու բազմացէ՛ք, ու Երկիրը լեցուցէ՛ք, և*

անոր տիրեցէ՛ք ու ծովի ձուկերուն, ու Երկինքի թռչուններուն, և Երկրի վրայ սողացող ամեն կենդանիներուն իշխեցէ՛ք»։

Այսպէս, երկրին իշխանութիւնը, Ադամով ներկայացուած մարդկային սերունդին ձեռքը յանձնուած էր։ Ադամ կատարեալ էր. ու հետևաբար խիստ յարմարագոյն մէկը՝ երկրին տէրը, կառավարիչը կամ թագաւորը ըլլալու։ Բազմանալու, լեցընելու, իշխելու և երկրին տիրելու այս պաշտօնը միմիայն Ադամին տրուած չէր, հապա՝ բոլոր մարդկութեան։ «Երկիրը լեցուցէ՛ք, և անոր տիրեցէ՛ք» են.։ Եթէ մարդկութիւնը կատարեալ և անմեղ մընար, երբե՛ք պիտի չկորսնցնէր այս տիրապետութիւնը։

Նշմարելու արժանի կէտ մ'է՝ թէ այս պաշտօնին մէջ, ո՛և է մարդու իր ընկերոջը վրայ տիրապետելու կամ իշխանութիւն ունենալու իրաւունք չէր տըրուած, հապա՝ ամբողջ մարդկութեան Երկրի վրայ տիրապետելու իրաւունք տրուած էր, որպէսզի մըշակեն զայն և անոր արտադրութիւնները հասարակաց օգտին համար գործածեն։ Ո՛չ միայն անոր բուսական և հանքային հարստութիւնը այսպէս մարդուն տեսչութեան (իրաւասութեան) ներքև դրուած էր, հապա նաև անոր զանազան անասնական կեանքն ալ իր տրամադրութեան տակ դրուած էր, իր ծառայութեանը համար։ Եթէ մարդկութիւնը կատարեալ մնար, ու Արարչին այս սկզբնական ծրագիրը գլուխ հանէր, և երբ սկսէին բազմանալ՝ անոնք պէտքը պիտի զգային իրարու հետ խորհրդակցելու, կանոնաւորելու համար իրենց ջանքերը, և հասարակաց օրհնութեանց ճիշտ և իմաստուն բաշխմանը համար ճամբաներ և միջոցներ հնարել։ Ու երբ ժամանակի ընթացքին, իրենց հսկայ թուին

*պատճառաւ այլեւս անկարելի ըլլար իրարու քով գալ ու միասին խորհրդածել, մարդոց այլեւայլ դասակարգերուն համար կարեւոր պիտի ըլլար իրենց շարքերէն զիրենք ներկայացնող անհատներ ընտրել, արտայայտելու համար իրենց հանրային զգացումները, ու իրենց համար գործելու։ Ու եթէ ամէն մարդ ֆիզիքապէս, մտաւորապէս և բարոյապէս կատարեալ ըլլար, եթէ ամէն մարդ զԱստուած և Անոր կանոնները գերազանցապէս սիրէր, ու իր դրացին ալ իր անձին պէս՝ այն ժամանակ այս օրինակ կարգադրութեանց մէջ ո՛եւէ բախում տեղի պիտի չունենար։*

*Այս տեսութեամբ, Արարչին՝ Երկրի կառավարութեան նկատմամբ ունեցած սկզբնական ծրագիրը Հասարակապետական ձեւ մ'էր, կառավարութիւն մը՝ որուն մէջ ամէն անհատ բաժին պիտի ունենար, ուր ամէն մարդ վեհապետ մը պիտի ըլլար, ու խիստ յարմար մէկը՝ իր պաշտօնին պարտականութիւնները իրենց ամէն մանրամասնութիւններովը գործադրելու թէ՛ իր և թէ՛ ընդհանուրին օգտին համար։*

*Մարդուն շնորհուած երկրի այս տիրապետութիւնը սակայն պարագայ մ'ունէր, որմէ կախում ունէր անոր յաւիտենական յարատեւութիւնը. այսինքն՝ թէ այս Աստուածանուէր իշխանութիւնը շարունակ տիեզերքի Գերագոյն Կառավարչին կամացը համաձայն պէտք էր գործածուէր, Որուն գլխաւոր Օրէնքը մէկ խօսքով Սէրն է։ «Սէրը օրէնքին լրումն է»։ «Քու Տէր Աստուածդ սիրես քու բոլոր սրտովդ և քու բոլոր անձովդ ու քու բոլոր մտքովդ. և քու ընկերդ սիրես քու անձիդ պէս»։—Հռովմ. ԺԳ. 10։ Մատթ. ԻԲ. 37—40։*

*Մարդուն տրուած այս մեծ շնորհին նկատմամբ՝ Դաւիթ փառաբանեց զԱստուած ըսելով, «Քիչ մը*

վար ըրիր զանիկա հրեշտակներէն, փառքով ու պատուով պսակեցիր զանիկա. Քու ձեռացդ գործքերուն վրայ իշխան ըրիր զանիկա»։ (Սաղմ. Ը. 5, 6)։ Ադամով ներկայացուած մարդկութեան տըրուած այս տիրապետութիւնը երկրի վրայ Աստուծոյ Թագաւորութեան առաջին հաստատումն էր։ Այսպէս, մարդը որպէս Աստուծոյ ներկայացուցիչը՝ իշխանութիւն գործածեց։ Սակայն Գերագոյն Կառավարչին հանդէպ մարդուն անհնազանդութիւնը ո՛չ միայն իր կենացը կորստեան պատճառ եղաւ, հապա նաև իր բոլոր իրաւունքներուն և պատեհութիւններուն՝ որպէս Աստուծոյ՝ երկրի ներկայացուցիչ կառավարիչը։ Անկէ սկսեալ, նա ապստամբ մը դարձաւ, գահընկէց ու մահուան դատապարտուած։ Հոն՝ Աստուծոյ երկրի Թագաւորութիւնը արագօրէն դադրեցաւ, որը մինչև ցարդ դեռ չէ վերահաստատուած, բացի Իսրայէլի մէջ կարճ ժամանակուայ մը համար, խորհրդաբանական տեսակէտը։ Թէև Եդեմի մէջ մարդը կորսնցուց իր կենաց իրաւունքն ու տիրապետութիւնը, սակայն անոնցմէ ո՛չ մէկը իրմէ անմիջապէս առնուեցաւ. որով դատապարտուած կենաց տևողութեան՝ մարդը իր գաղափարներուն և կարողութեան համեմատ թոյլատրուած է տիրապետելու երկիրը, մինչև Աստուծոյ որոշեալ ժամանակը՝ երբ Քրիստոս, Որուն Իրաւունքն է, պիտի առնէ տիրապետութիւնը զոր Իր արեամբը գնեց։

Մեր Տիրոջ մահը ո՛չ միայն մարդը փրկեց կամ գնեց, հապա նաև անոր բոլոր սկզբնական ժառանգութիւնները՝ երկրի տիրապետութեամբ միասին։ Զայն գնած ըլլալով՝ իրաւունքը ներկայիս Իրեն կը պատկանի. Նա է ներկայիս օրինաւոր ժառանգը, ու որոշեալ ատենին, ի մօտոյ, Նա տէր պիտի դառնայ Իր գնած ստացուածքին։ (Եփես. Ա. 14)։ Բայց քա-

*նի որ Նա մարդը որպէս Իր գերին պահելու համար չգնեց, հապա զայն իր նախնի վիճակին բարձրացնելու համար՝ նոյնպէս ալ նաև երկրի տիրապետութիւնը. Նա մարդը ու իր բոլոր սկզբնական օրհնութիւնները գնեց անոր վերադարձնելու համար, երբ նա կրկին ի վիճակի եղած է զանոնք Աստուծոյ կամացը համաձայն գործածելու։ Ուրեմն Մեսիային երկրի վրայ ունենալիք իշխանութիւնը յաւիտենական պիտի չըլլայ։ Անիկա ա՛յնքան մը պիտի տևէ, մինչև որ Իր երկաթէ զօրաւոր գաւազանովը նուաճէ ամեն ապստամբութիւն և անկարգապահութիւն, ու ինկած մարդկութիւնը սկզբնական կատարելութեան բարձրացնէ, երբ որ անոնք լիուլի կարող պիտի ըլլան ուղիղ կերպով գործածելու երկրի տիրապետութիւնը ինչպէս որ սկիզբէն ծրագրուած էր։ Երբ ան այսպէս վերականգնուի, դարձեալ Աստուծոյ Թագաւորութիւնը պիտի ըլլայ երկրի վրայ, Աստուծոյ սահմանած ներկայացուցիչին, մարդուն ներքև։*

*Հրէական Դարու տևողութեան, Աստուած Մովսէսի և դատաւորաց ներքև կազմակերպեց Իսրայէլի ժողովուրդը որպէս Իր Թագաւորութիւնը—տեսակ մը հասարակապետութիւն—որը սակայն այլաբանական էր միայն։ Իսկ վերջէն, մասնաւորապէս Դաւիթի ու Սողոմոնի ներքև հիմնուած միահեծան իշխանութիւնը, կարգ մը տեսակէտներով, խոստացուած Թագաւորութեան խորհրդապատկերն էր։ Շրջակայ ազգերէն տարբեր՝ Իսրայէլացւոց Թագաւորը Եհովան էր. իսկ իրենց իշխանները Անոր ներքև կը ծառայէին, ինչպէս որ կը տեսնենք Սաղմ. ՀԸ 70, 71ին մէջ։ Ասիկա բաւական որոշ կերպով արտայայտուած է Բ. Մնաց. ԺԳ. 8 և Ա. Մնաց. ԻԹ. 23ին մէջ, ուր Իսրայէլ «Տիրոջը Թագաւորու-*

վար ըրիր զանիկա հրեշտակ՝ [illegible] «Սողոմոն իր
պատուով պսակեցիր զանիկ[illegible] ԴԱՒԻԹԻՆ վրայ թա-
ջերուն վրայ իշխան ըր[illegible] որը առաջին թա-
5, 6)։ Աղամով ներկ[illegible] նախապէս քառասուն
ուած այս տիրապե[illegible] ցեղերուն [illegible] նոյն գահին վրայ։
թագաւորութեան [illegible] Տիրոջը հանդէպ մե-
պէս, մարդը ու [illegible] ներ պատժեց զանոնք՝ մին-
խանութիւն, [illegible] թագաւորութիւնը բոլորովին
վարչին հա [illegible] ազգատոհմին վերջին թագա-
միայն իր [illegible] օրերուն մէջ արքայական զօ-
նաև իր [illegible] վերցուեցաւ։ Հոն ահա Աստուծոյ
րուն՝ [illegible] թագաւորութիւնը կործանեցաւ։
ուա՛ [illegible] Այս խնդրոյն շուրջ Աստուծոյ որոշումը հետևեալ
բառերով յայտնուած է՝ «Եւ դուն՝ ո՛վ պիղծ ու ամ-
բարիշտ իշխան Իսրայէլի, որ քու օրդ հասեր է, քու
անօրէնութեանդ ժամանակին վախճանը, Տէր Եհո-
վան այսպէս կ՚ըսէ. զանիկա տակնուվրայ, տակնու-
վրայ, տակնուվրայ պիտի ընեմ. Ու Ա՛Լ պիտի չըլ-
լայ, մինչև որ գայ Անիկա՝ որուն իրաւունքն է, ու
Անոր պիտի տամ»։ (Եզեկ. ԻԱ. 25—27)։ Այս մար-
գարէութեան կատարմանը համար Բաբելոնի թա-
գաւորը Իսրայէլի վրայ եկաւ, անոնց թագաւորը
գահընկէց ըրաւ, իսկ ժողովուրդն ալ գերի վարեց
Բաբելոն։ Թէև վերջէն Պարսից Կիւրոս թագաւորին
շնորհիւ ազգային գոյութեան մէջ վերահաստատուե-
ցան, սակայն շարունակ հպատակ և հարկատու էին
Մարաց ու Պարսից, Յունական և Հռովմէական յա-
ջորդական կայսրութեանց, մինչև իրենց ազգու-
թեան վերջնական կործանումը Ք. Թ. 70ին, և անկէ
ի վեր բոլոր ազգաց մէջ ցրուըուած են։

Մարդուն անկումէն ի վեր՝ Իսրայէլի թագաւո-
րութիւնն էր միայն զոր Աստուած Իր կառավարու-
թեան, օրինաց և ն.ի ներկայացուցիչը ճանչցաւ։ Ա-

սանցինէն առաջ ուրիշ շատ մը ազգեր կային, սակայն ո՛չ ոք կրնար օրինաւորապէս զԱստուած անոր հիմնադիրը ընդունիլ, կամ թէ անոր կառավարիչները՝ Աստուծոյ ներկայացուցիչները։ Երբոր Սեդեկիայէն մականը առնուեցաւ, ու Իսրայէլի Թագաւորութիւնը կործանեցաւ, այնպէս վճռուեցաւ թէ անիկա կործանուած պիտի մնայ, մինչև որ Քրիստոս, աշխարհին օրինաւոր ժառանգը գայ զայն ուզելու։ Այս եզրակացութեամբ ուրեմն, մինչև Աստուծոյ Թագաւորութեան վերահաստատումը, միւս բոլոր Թագաւորութիւնները «այս աշխարհին Թագաւորութիւններ»ը անուամբ կը կոչուին, որոնք «այս աշխարհի իշխան»ին ներքև են. հետևաբար, անոնցմէ ո՛և է մէկուն կողմանէ Աստուծոյ Թագաւորութիւնը ըլլալու յայտարարութիւնը կեղծ է։ Ո՛չ ալ Աստուծոյ այս Թագաւորութիւնը Քրիստոսի առաջին գալստեան ժամանակ ՀԱՍՏԱՏՈՒԵՑԱՒ։ (Ղուկ. ԺԹ. 12)։ Այն ատեն, ու անկէ ի վեր, Աստուած աշխարհէն կ՚ընտրէ ամէն անոնք, որոնք արժանի պիտի համարուին Քրիստոսի հետ որպէս ժառանգակիցներ թագաւորելու։ Երկրորդ Գալստեանը ժամանակ է միայն որ Քրիստոս պիտի առնէ Թագաւորութիւնը, զօրութիւնը և փառքը ու թագաւորէ որպէս Բոլորին Տէրը։

Իսրայէլի Թագաւորութենէն ի զատ, միւս բոլորը ըստ Ս. Գրոց Հեթանոս կամ Ազգերու Թագաւորութիւններ կոչուած են—«այս աշխարհիս Թագաւորութիւններ»ը, «այս աշխարհիս իշխանին» Սատանային ներքև։ Սեդեկիայի օրերուն, և Աստուծոյ Թագաւորութեան վերնալովը՝ աշխարհը առանց Աստուածահաճոյ կառավարութեան մնաց, այսինքն՝ չկար կառավարութիւն մը, որուն օրէնքներուն ու գործերուն Նա մասնաւորապէս հսկեց։Աստուած ան-

թիւնը կոչուած է, և ըսուած է թէ՝ «Սողոմոն իր հօրը Դաւիթին տեղը ՏԻՐՈՋԸ ԱԹՈՌԻՆ վրայ թագաւոր նստաւ», Դաւիթին տեղը՝ որը առաջին թագաւոր Սաւուղին յաջորդելով՝ նախապէս քառասուն տարի նստաւ կամ իշխեց միևնոյն գահին վրայ։

Երբ Իսրայէլի ժողովուրդը Տիրոջը հանդէպ մեղանչեց, Նա շատ անգամներ պատժեց զանոնք՝ մինչև որ ի վերջոյ անոնց թագաւորութիւնը բոլորովին վերջացուց։ Դաւիթի ազգատոհմին վերջին թագաւորին, Սեդեկիային օրերուն մէջ արքայական զօրութեան մականը վերցուեցաւ։ Հոն ահա Աստուծոյ այլաբանական Թագաւորութիւնը կործանեցաւ։

Այս խնդրոյն շուրջ Աստուծոյ որոշումը հետևեալ խօսքերով յայտնուած է՝ «Եւ դուն՝ ո՛վ պիղծ ու ամբարիշտ իշխան Իսրայէլի, որ քու օրդ հասեր է, քու անօրէնութեանդ ժամանակին վախճանը, Տէր Եհովան այսպէս կ'ըսէ. զանիկա տակնուվրայ, տակնուվրայ, տակնուվրայ պիտի ընեմ. ՈՒ Ա'Լ պիտի ՀԸԼլայ, մինչև որ գայ Անիկա՝ որուն իրաւունքն է, ու Անոր պիտի տամ»։ (Եզեկ. ԻԱ. 25—27)։ Այս մարգարէութեան կատարմանը համար Բաբելոնի թագաւորը Իսրայէլի վրայ եկաւ, անոնց թագաւորը գահընկէց ըրաւ, իսկ ժողովուրդն ալ գերի վարեց Բաբելոն։ Թէև վերջէն Պարսից Կիւրոս թագաւորին շնորհիւ ազգային գոյութեան մէջ վերահաստատուեցան, սակայն շարունակ հպատակ և հարկատու էին Մարաց ու Պարսից, Յունական և Հռովմէական յաջորդական կայսրութեանց, մինչև իրենց ազգութեան վերջնական կործանումը Ք. Թ. 70ին, և անկէ ի վեր բոլոր ազգաց մէջ ցրուըուած են։

Մարդուն անկումէն ի վեր՝ Իսրայէլի թագաւորութիւնն էր միայն զոր Աստուած Իր կառավարութեան, օրինաց ևն.ի ներկայացուցիչը ճանչցաւ։ Ա-

սանցինէն առաջ ուրիշ շատ մը ազգեր կային, սակայն ո՛չ ոք կրնար օրինաւորապէս զԱստուած անոր հիմնադիրը ընդունիլ, կամ թէ անոր կառավարիչները՝ Աստուծոյ ներկայացուցիչները։ Երբոր Սեդեկիայէն մականը առնուեցաւ, ու Իսրայէլի Թագաւորութիւնը կործանեցաւ, այնպէս վճռուեցաւ թէ անիկա կործանուած պիտի մնայ, մինչև որ Քրիստոս, աշխարհին օրինաւոր ժառանգը գայ զայն ուզելու։ Այս եզրակացութեամբ ուրեմն, մինչև Աստուծոյ Թագաւորութեան վերահաստատումը, միւս բոլոր թագաւորութիւնները «այս աշխարհին թագաւորութիւններ»ը անուամբ կը կոչուին, որոնք «այս աշխարհի իշխան»ին ներքև են. հետևաբար, անոնցմէ ո՛և է մէկուն կողմանէ Աստուծոյ թագաւորութիւնը ըլլալու յաւակնութիւնը կեղծ է։ Ո՛չ ալ Աստուծոյ այս Թագաւորութիւնը Քրիստոսի առաջին գալստեան ժամանակ ՀԱՍՏԱՏՈՒԵՑԱՒ։ (Ղուկ. ԺԹ. 12)։ Այն ատեն, ու անկէ ի վեր, Աստուած աշխարհէն կ՚ընտրէ ամեն անոնք, որոնք արժանի պիտի համարուին Քրիստոսի հետ որպէս ժառանգակիցներ թագաւորելու։ Երկրորդ Գալստեանը ժամանակ է միայն որ Քրիստոս պիտի առնէ Թագաւորութիւնը, զօրութիւնը և փառքը ու թագաւորէ որպէս Բոլորին Տէրը։

Իսրայէլի թագաւորութենէն ի զատ, միւս բոլորը ըստ Ս. Գրոց Հեթանոս կամ Ազգերու Թագաւորութիւններ կոչուած են—«այս աշխարհիս Թագաւորութիւններ»ը, «այս աշխարհիս իշխանին» Սատանային ներքև։ Սեդեկիայի օրերուն, և Աստուծոյ Թագաւորութեան վերնալովը՝ աշխարհը առանց Աստուածահաճոյ կառավարութեան մնաց, այսինքն՝ չկար կառավարութիւն մը, որուն օրէնքներուն ու գործերուն Նա մասնաւորապէս հսկեց ։Աստուած ան-

ուղղակի կերպով միայն ճանչցաւ Հեթանոս կառավարութիւնները, երբ Նա հրապարակաւ յայտնեց Իր վճիռը (Ղուկ. ԻԱ. 24)՝ թէ գահընդմիջութեան տեւողութեան Երուսաղէմի և աշխարհի տիրապետութիւնը Հեթանոս կառավարութիւններու կողմէ տեղի պիտի ունենայ։

Այս գահընդմիջութիւնը, և կամ Աստուծոյ մականին ու կառավարութեան հեռացման, և Քրիստոսի միջոցաւ մեծ զօրութեամբ ու փառքով վերականգնումի միջանկեալ ժամանակը ըստ Աստուածաշունչին՝ «Հեթանոսաց ժամանակները» կամ տարիները կոչուած է։ Ու այս «ժամանակներ»ը կամ տարիները՝ որոնց տեւողութեան «Այս աշխարհիս թագաւորութիւնները» թոյլատրուած են իշխելու, որոշուած և սահմանուած են, ինչպէս որ Մեսիային ներքև Աստուծոյ Թագաւորութեան վերահաստատման ժամանակը հաւասարապէս որոշուած և նշանակուած է Ս. Գրոց մէջ։

Թէև այս Հեթանոս կառավարութիւնները չար եղած են, սակայն թոյլատրուած կամ «Աստուծմէ կարգուած են» իմաստուն նպատակի մը համար։ (Հռովմ. ԺԳ. 1)։ Անոնց անկատարութիւնը ու յոռի վարչութիւնը մեղաց խիստ մեղսալիութեան ընդհանուր դասին մէկ մասն է, որը ինկած մարդկութեան նոյնիսկ իրեն գոհացում տալու աստիճան ինքնավարութեան անկարողութիւնը կ'ապացուցանէ։ Ընդհանուր առմամբ, Աստուած կը թոյլատրէ զանոնք իրենց կրցած չափովը իրագործելու իրենց նպատակները, որոնք Ինք կը հովանաւորէ այն ատեն միայն՝ երբ անոնք Իր Ծրագիրներուն միջամուխ կ'ըլլան։ Նա ծրագրած է թէ ամեն բան բարիի գործակից պիտի ըլլայ, և թէ՝ ի վերջոյ նոյնիսկ «մարդուն Բարկութիւնը Զինքը պիտի գովէ։ Իսկ

*մնացեալը—որ ո՛ևէ բարիք պիտի չմատուցանէ, ո՛ևէ նպատակի պիտի չծառայէ կամ ո՛ևէ դաս պիտի չսորվեցնէ—«Նա կը զայէ»։—Սաղմ. ՀԶ. 10։*

*Մարդուն՝ կատարեալ կառավարութիւն մը չկարենալ հաստատելը իր ինկած ու ստորին վիճակին մէջ ունեցած տկարութեանց վերագրելի է։ Այս տկարութիւնները, որոնք ինքնին ի դերև կը հանեն մարդկութեան կատարեալ կառավարութիւն մը հաստատելու ջանքերը, պատեհ առիթներ համարուած են Սատանայէն, որը ամենէն առաջ նենգեց մարդը իր Գերագոյն Կառավարչին անհնազանդ ըլլալու։ Սատանան չարունակ մարդուն տկարութիւններէն օգուտ քաղած է, նա բարին որպէս չար, ու չարը որպէս բարի ցոյց տուած է, նա Աստուծոյ Նկարագիրը ու Ծրագիրները սխալ ներկայացուած է ու մարդկութիւնը կուրացուցած է հանդէպ ճշմարտութեան։ Ապստամբութեան որդւոցը ներսի դին այս կերպով գործելով (Եփես. Բ. 2)՝ նա զանոնք իր կամքին գերի ըրած է, ու ինքզինքը՝ ինչպէս որ մեր Տէրը և Առաքեալները կոչեցին զինքը—այս աշխարհիս իշխանը կամ կառավարիչը ըրած է։ (Յովհ. ԺԴ. 30։ ԺԲ. 31)։ Նա ըստ օրինի, այս աշխարհի իշխանը չէ, հապա յափշտակութեամբ, խարդախութեամբ, խաբէութեամբ ու անկեալ մարդոց տիրելով։ Յափշտակիչ մը ըլլալուն համար է որ վերջնականապէս պաշտօնանկ պիտի ըլլայ։ Եթէ անոր «այս աշխարհիս իշխանը» տիտղոսը իրական ըլլար, իր հանդէպ այսպէս պիտի չվարուըուէր։*

*Այսպէս, ահա՛ կը տեսնուի որ Երկրի տիրապետութիւնը, ինչպէս որ ներկայիս կը գործադրուի, թէ՛ տեսանելի և թէ՛ անտեսանելի կազմ մ'ունեցած է։ Առաջինը՝ հոգեղէն, իսկ վերջինը՝ մարդկային կազմն է—աշխարհային տեսանելի թագաւորու-*

*թիւնները, որոնք խղճալիօրէն հոգեղէն իշխանին, Սատանային տիրապետութեան ներքև են։ Սատանան այսպիսի տիրապետութիւն մ'ունենալուն համար էր որ կրնար մեր Տիրոջ առաջարկել իր առաջնորդութեան ներքև Երկրի Գերագոյն տեսանելի վեհապետութիւնը։ (Մատթ. Դ. 9)։ Երբոր հեթանոսաց ժամանակները լրանան, ներկայ տիրապետութեան երկու կողմերն ալ վերջ պիտի գտնեն։ Սատանան պիտի կապուի, ու այս աշխարհի թագաւորութիւնները պիտի կործանին։*

*Անկեալ՝ և կուրացուած, հառաչող մարդկութիւնը ամբողջ դարեր անդուլ անդադար տքնած է իր տաղտկալի ճամբուն մէջ, ամեն քայլափոխի պարտուած, ու նո՛յնիսկ իր ամենալաւ ջանքերը անպտուղ եղած են, միշտ յուսալով սակայն՝ թէ իր փիլիսոփաներէն երազուած ոսկեդարը խիստ մօտ է։ Նա չի՛ գիտեր թէ իր յուսացած ու հառաչած ազատագրութենէն աւելի մեծագոյնը պիտի իրականացուի նախատուած Նազովրեցիին ու Անոր հետևորդներուն միջոցաւ, որոնք որպէս Աստուծոյ Որդիները ի մօտոյ թագաւորական զօրութեամբ պիտի յայտնուին իր ազատագրութեանը համար։—Հռովմ. Ը.* 22, 19։

*Որպէսզի Աստուծոյ որդիքը ներկայ չար կառավարութեանց Երկնաւոր Հօր կողմէ թոյլատրուելուն ու Անոր վերջնական ծրագրին համեմատ լաւագոյն կառավարութեան մը հաստատման նկատմամբ խաւարի մէջ չգտնուին, որը տեղի պիտի ունենայ երբոր այս թագաւորութիւնները Իր նախախնամական հովանաւորութեան ներքև ծառայած են այն նպատակին որուն համար որ թոյլատրուեցան, Նա Իր մարգարէներուն միջոցաւ մեզի «այս աշխարհիս թագաւորութիւններ»ուն նկատմամբ զանազան ընտիր*

և իմաստալից խորհրդապատկերներ տուած է, որոնց իւրաքանչիւրին մէջ ալ մեր խրախուսմանը համար ցոյց տրուած է անոնց կործանումը Իր արդար և յաւիտենական Թագաւորութեան հաստատման ժամանակ, որը տեղի պիտի ունենայ Մեսիային, Խաղաղութեան Իշխանին միջոցաւ։

Մարդուն՝ ներկայիս տիրապետութիւն ունենալու ջանքերը ո՛չ թէ Եհովային կամաց և զօրութեան դէմ յաջող պայքար մ'է, այլ Անոր թոյլատրութեամբն է, որը ցոյց տրուած է Աստուծոյ Նաբուգոդոնոսորի տուած պատգամին մէջ, ուր որ Աստուած իշխելու թոյլտուութիւն կուտայ Բաբելոնի, Մարաց և Պարսից, Յոյն և Հռովմէական չորս մեծ կայսրութեանց մինչև Քրիստոսի Թագաւորութեան հաստատման ժամանակը։ (Դան. Բ. 37—43)։ Անիկա ցոյց կուտայ տիրապետութեան պայմանաժամին որ ատեն լրանալը։

Երբ այժմ հարևանցի ակնարկ մը կը նետենք այս մարգարէութեանց տեսութիւններուն վրայ, պէտք է յիշենք թէ անոնք Բաբելոնով սկսան՝ Իսրայէլի Թագաւորութեան, Տիրոջը այլաբանական Թագաւորութեան կործանման ժամանակ։

## ՆԱԲՈՒԳՈԴՈՆՈՍՈՐԻ ԵՐԿՐԱՑԻՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆՑ ՏԵՍԻԼՔԸ

Անցելոյն մէջ մեզի խրատական ըլլալու համար գրուած բաներուն մէջ (որպէսզի մենք որ գոյութիւն ունեցող իշխանութեանց հնազանդ ըլլալ հրամայուած ենք, «համբերութեամբ ու գիրքերու մխիթարանքովը յոյս ունենանք» Հռովմ. ԺԵ. 4։ ԺԳ. 1) կը գտնուի Նաբուգոդոնոսորի Երազը ու Մարգարէին միջոցաւ անոր Աստուածային մեկնաբանութիւնը։—Դան. Բ. 31—45։

Դանիէլ բացատրեց երազը ըսելով, «Դուն՝ ո՛վ Թագաւոր՝ կը տեսնէիր որ ահա՛ մէկ մեծ արձան մը կար․ աս մեծ ու խիստ պայծառ արձանը քու դիմացդ կայներ էր, և անոր երևոյթը ահաւոր էր։ Այս արձանին գլուխը զուտ ոսկիէ, անոր կուրծքը ու թեւերը՝ արծաթէ, մէջքը ու ազդրերը՝ պղնձէ, սրունքները՝ երկաթէ, ու ոտքերուն մէկ մասը՝ երկաթէ, ու մէկ մասը կաւէ էր։ Դուն կը տեսնէիր, մինչև որ մէկ քար մը կտրուեցաւ առանց ձեռքի, ու ան արձանին երկաթէ ու կաւէ ոտքերուն զարկաւ ու զանոնք փշրեց։

«Ան ատենը երկաթը, կաւը, պղինձը, արծաթը ու ոսկին մէկտեղ փշրուեցան և ամառուան կալերուն մղեղին պէս եղան․ ու հովը զանոնք տարաւ, ու ամենևին անոնց տեղ մը չգտնուեցաւ․ բայց արձանը զարնող քարը մեծ լեռ մը եղաւ, ու բոլոր երկիրը լեցուց։

«Երազը այս է, ու թագաւորին առջևը անոր մեկնութիւնը ըսենք։ Ո՛վ թագաւոր՝ դուն թագաւորաց թագաւոր ես, վասնզի Երկնից Աստուածը քեզի թագաւորութիւն, կարողութիւն, զօրութիւն ու պատիւ տուեր է։ (Հոն գոյութիւն ունեցող Հեթանոս թագաւորութիւնները կամ զօրութիւնները Աստուծմէ կարգուեցան)։ Եւ մարդոց որդիներուն բոլոր բնակած տեղերուն մէջ՝ դաշտի գազանները ու երկինքի թռչունները քու ձեռքդ տուեր է, և անոնց ամենուն վրայ քեզ իշխան ըրեր է․ ան ոսկի գլուխը դուն ես։

«Ու քեզմէ ետքը մէկ ուրիշ թագաւորութիւն մը պիտի ելլէ, քեզմէ ցած (արծաթ) ու պղնձէ մէկ ուրիշ երրորդ թագաւորութիւն մը՝ որ բոլոր երկրի վրայ պիտի տիրէ։ Եւ չորրորդ թագաւորու-

*թիւնը երկաթի պէս ամուր պիտի ըլլայ, ու ինչպէս որ երկաթը ամէն բան կը փշրէ ու կը մանրէ, անիկա ալ աս ամէն բաները կոտրտող երկաթին պէս փշրելով պիտի կոտրէ։ Եւ ոտքերուն մատները՝ մէկ մասը բրուտի կաւէ ու մէկ մասը երկաթէ ըլլալը աս է որ ան թագաւորութեանը մէկ մասը ամուր, ու մէկ մասը դիւրաբեկ պիտի ըլլայ»։*

*Պատմութիւն ուսումնասիրողները՝ աշխարհի շատ մը պզտիկ կայսրութեանց մէջէն կրնան իսկոյն գտնել վերոյիշեալ չորսը որոնք Դանիէլէն նկարագրուեցան։ Ասոնք ԱՇԽԱՐՀԱԿԱԼ ԿԱՅՍՐՈՒԹԻՒՆՆԵՐ կոչուած են—Առաջինը՝ Բաբելոն, ոսկի գլուխը (Համար 38)· երկրորդը՝ Մարք և Պարսիկք, արծաթ կուրծքը ու թեւերը, Բաբելոնին յաղթողը· երրորդը՝ պղնձէ մէջքը, Յունաստան, Մարաց և Պարսից յաղթողը· իսկ չորրորդը՝ Հռովմ, երկաթէ սրունքները և կաւով խառնուած ոտքերու հզօր թագաւորութիւնը։Այս կայսրութեանց երեքը անցած էին, իսկ չորրորդը՝ Հռովմը՝ մեր Տիրոջ Ծննդեան ժամանակ աշխարհակալօրէն կը տիրէր, ինչպէս որ կը կարդանք· «Եւ եղաւ որ ան օրերը Օգոստոս կայսրէն հրաման ելաւ՝ որ* բոլոր աշխարհի գրուի»։ *Ղուկ· Բ· 1։*

*Հռովմ՝ երկաթի կայսրութիւնը՝ հզօրագոյնն էր, և իր նախորդներէն աւելի երկար կեանք մը ունեցաւ։ Իրականութեան մէջ՝ Հռովմէական Կայսրութիւնը դեռ կը շարունակուի, Եւրոպայի ազգերով ներկայացուած։ Այս բաժանումը արձանին ոտքի տասը մատներովը ներկայացուած է։ Կաւը՝ որ ոտքի մասին մէջ երկաթին հետ շաղախուած էր, կը ներկայացնէ Եկեղեցական և կառավարական խառնուրդը։ Այս խառնուրդը Ս· Գրոց մէջ «Բաբելոն»—խառնակութիւն կոչուած է։ Ինչպէս որ ներկայիւս*

պէտք տեսնենք՝ քարը Աստուծոյ ճշմարիտ Թագա-
ւորութեան խորհրդապատկերն է, իսկ Բաբելոնը
քարին մէկ կողմ տեսակն է—կաւ—որը (երկաթին)
Հռովմէական կայսրութեան մնացեալ մասերուն հետ
միացած է։ Ու այս խառնուրդ կազմը—Եկեղեցի և
կառավարութիւն—այս աշխարհի թագաւորութեանց
հետ ամուսնացած Անուանական Եկեղեցին, զոր Տէ-
րը Բաբելոն, խառնակութիւն կ՚անուանէ, կը յան-
դըգնի ինքզինքը Քրիստոնէութիւն—Քրիստոսի Թա-
գաւորութիւն կոչել։ Դանիէլ կը բացատրէ—«տըղ-
մուտ կաւին հետ երկաթը խառնուած տեսնելդ սա
է որ անոնք մարդոց սերունդին հետ պիտի խառն-
ուին(Եկեղեցիի և աշխարհի խառնուրդ—Բաբելոն),
բայց անոնք իրարու հետ պիտի չփակչին,՝ինչպէս
որ երկաթը կաւին հետ չխառնուիր»։ Անոնք չեն
կրնար բոլորովին բաղադրուիլ։ «Ու այս թագաւո-
րութիւններուն օրերը (ոտքի մատերովը ներկայաց-
ուած թագաւորութիւնները, որոնք անարժանաբար
«Քրիստոնեայ Թագաւորութիւններ» կամ «Քրիստո-
նէութիւն» կոչուած են), Երկնից Աստուածը մէկ
թագաւորութիւն մը պիտի հանէ, որ անիկա յաւիտ-
եան պիտի չաւրի, և այս թագաւորութիւնը ուրիշ
ժողովուրդի պիտի չթողուի. անիկա այս բոլոր թա-
գաւորութիւնները պիտի փշրէ ու պիտի հատցնէ ու
ինքը յաւիտեան պիտի մնայ»։—Դան. Բ. 43, 44։

Դանիէլ հոս չյիշեր այս Հեթանոս Թագաւորու-
թեանց վերջին ժամանակը. ատիկա ուրիշ տեղ կը
գտնենք. բայց գուշակուած ամէն պարագայ ցոյց
կուտայ թէ ներկայիս վախճանը խիստ մօտ է, նոյն-
իսկ դռներուն քով։ Պապական կազմը երկար ատենէ
ի վեր ըսած է թէ ինքն է այն թագաւորութիւնը զոր
Երկնից Աստուածը հոս խոստացած է հաստատել,
և թէ՝ որպէս կատարում այս մարգարէութեան,

*ինքը կոտրեց և ոչնչացուց միւս բոլոր Թագաւորութիւնները։ Սակայն ճշմարտութիւնը այս է՝ թէ անուանական Եկեղեցին պարզապէս աշխարհային կայսրութեանց հետ միացաւ, որպէս կաւ՝ երկաթին, և թէ՝ Պապականութիւնը երբե՛ք Աստուծոյ ճշմարիտ Թագաւորութիւնը չէր, հապա՝ միմիայն անոր մէկ կեղծիքը։ Ամենալաւ փաստերէն մին՝ թէ Պապականութիւնը չկործանեց և չոչնչացուց այս աշխարհային Թագաւորութիւնները, է՝ թէ անոնք դեռ գոյութիւն ունին։ Եւ ներկայիս երբ տղմուտ կաւը չորցեր է ու «դիւրաբեկ» է, սկսած է իր մածուծիկ զօրութիւնը կորսնցնել. որով թէ՛ երկաթը և թէ՛ կաւը քայքայման նշաններ ցոյց կուտան, և որոնք դիւրութեամբ պիտի փշրուին «քար»էն, Ճշմարիտ Թագաւորութենէն, ի մօտոյ, երբ անոնց զարնուի։*

*Դանիէլ իր մեկնաբանութիւնը շարունակելով՝ կ՚ըսէ, «Որովհետև դուն առանց ձեռքի լեռնէն կըտրուած քար մը տեսար, և անիկա երկաթը, պղինձը, կաւը, արծաթը ու ոսկին փշրեց, մեծ Աստուածը ասկէ ետքը ինչ ըլլալիքը Թագաւորին գիտցուց. ու երազը ճշմարիտ է, և անոր մեկնութիւնը հաւատարիմ»։—Համար 45։*

*Լեռնէն առանց ձեռքի կտրուած քարը՝ որը զարկաւ ու տարտղնեց Հեթանոս զօրութիւնները, կը ներկայացնէ Ճշմարիտ Եկեղեցին, Աստուծոյ Թագաւորութիւնը։ Աւետարանական Դարու տեւողութեանն է որ այս «քար»ի Թագաւորութիւնը կը կազմուի, կը կտրուի, կը տաշուի և կը ձեւակերպուի իր ապագայ դիրքին և մեծութեանը համար—ո՛չ թէ մարդկային ձեռքերով՝ հապա Հոգիին ու Ճշմարտութեան զօրութեամբը, որը Եհովային աներևոյթ զօրութիւնն է։ Երբոր ամբողջանայ, բոլորովին կտրուի, պիտի զարնէ ու կործանէ այս աշխարհի*

թագաւորութիւնները։ Արձանով ո՛չ թէ ժողովուրդը պատկերացուած է, այլ կառավարութիւնները․ ու ասոնք պէտք կործանին, որովհետեւ ժողովուրդը ազատելու անոնց ծանր ու անտանելի լուծէն։ Մեր Տէր Յիսուսը չեկաւ մարդոց կեանքերը կործանելու՝ այլ զանոնք փրկելու։—Յովհ․ Գ․ 17։

Քարը՝ իր պատրաստութեան ժամանակ, երբ դեռ իր կտրուելու շրջանին մէջ է, իր ապագայ վիճակը նկատի ունենալով՝ կարելի է զայն սաղմնային լեռ կոչել․ այսպէս ալ Եկեղեցին՝ կրնայ ու երբեմն ալ արդէն կոչուած է Աստուծոյ Թագաւորութիւնը։ Իրականութեան մէջ սակայն՝ քարը Լերան չվերածուիր, մինչեւ որ արձանը չխորտակէ․ ու այսպէս ալ Եկեղեցին, բառին բովանդակ նշանակութեամբը ամբողջ աշխարհը լեցնող Թագաւորութիւնը պիտի ըլլայ, երբոր «Տիրոջը Օրը», ազգերու վրայ «բարկութեան օրը» կամ «նեղութեան ժամանակը» վերջացեր է, երբ անիկա պիտի հաստատուի ու մնացեալ բոլոր տիրապետութիւնները անոր հպատակները պիտի ըլլան։

Արդ՝ մտադրեցէ՛ք մեր Տիրոջմէն Քրիստոնէական Եկեղեցւոյ ուղղուած խոստումները։ «Ան որ կը յաղթէ, Իմ հետս Իմ աթոռս նստիլ պիտի տամ անոր»—«Եւ ան որ կը յաղթէ ու Իմ գործքերս մինչեւ վերջը կը պահէ, անոր իշխանութիւն պիտի տամ ազգերուն վրայ, և պիտի հովուէ զանոնք երկաթէ գաւազանով․ անոնք բրուտի ամաններու պէս պիտի փշրուին․ ինչպէս որ Ես ալ Իմ Հօրմէս առի»։ (Յայտ․ Գ․ 21։ Բ․ 26, 27։ Սաղմ․ Բ․ 8—12)։ Երբոր երկաթէ գաւազանը իր կործանումի գործը կատարած է, այն ատեն զանոնք ջախջախող ձեռքը պիտի դառնայ զանոնք բժշկելու, ու ժողովուրդը Տիրոջը

պիտի դառնայ, ու Նա պիտի բժշկէ զանոնք (Եսա. ԺԹ. 22։ Երեմ. Գ. 22, 23։ Ովս. Զ. 1, ԺԴ. 4։ Եսա. Բ. 3), ու անոնց մոխիրի տեղ՝ փառք, սուգի տեղ՝ ուրախութեան իւղ, և կոտրած հոգիի տեղ գովութեան պատմուճան պիտի տայ։

## ԴԱՆԻԵԼԻ ԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆՑ ՏԵՍԻԼՔԸ

Նաբուգոդոնոսորի տեսիլքին մէջ տեսանք աշխարհի կայսրութիւնները, որոնք աշխարհային տեսակէտէ դիտուած էին, և որոնք մարդկային փառաց, վսեմութեան և զօրութեան ցուցադրութիւն մ՚էին. Թէպէտև անոր մէջ կը տեսնենք նաև անոնց քայքայման ու վերջնական կործանման մէկ ակնարկութիւնը, ինչպէս որ ոսկիէն երկաթի և կաւի վատթարացմամբ արտայայտուած է։

Քար դասակարգը, ճշմարիտ Եկեղեցին, իր ընտրութեան կամ լեռնէն կտրուիլ հանուելու ժամանակամիջոցին աշխարհին կողմանէ անարժէք բան մը նկատուած է։ Ան՝ մարդոցմէ նախատուած ու մերժուած է։ Անոնք անոր մէջ գեղեցկութիւն չեն տեսներ որպէսզի անոր բաղձան։ Աշխարհը՝ այս մեծ արձանով ներկայացուած իշխաններն ու կառավարութիւնները կը սիրէ, կը հիանայ անոնց վրայ, կը գովաբանէ ու կը պաշտպանէ զանոնք, թէև ան՝ անոնցմէ շարունակ յուսախաբուած, նենգուած, վիրաւորուած և ճնշուած է։ Աշխարհը արձակ և ոտանաւոր դրութիւններով կը բարձրացնէ այս արձանին մեծ ու ճարտար գործակատարները, անոր Աղէքսանդրները, Կեսարները, Պոնաբարդները և ուրիշներ, որոնց մեծութիւնը իրենց ընկեր արարածներու մեծաքանակ կոտորմանը մէջ կը կայանայ, և ո-

*որոնք՝ իրենց զօրութեան տիրանալու տենչանքին մէջ՝ միլիոնաւոր որբեր և որբևայրիներու պատճառ եղան։ Ու այս ոգին է որ դեռ գոյութիւն ունի արձանին «տասը մատեր»ուն մէջ, որը այսօր ցուցադրուած կը տեսնենք իրենց տասներկու միլիոնէ աւելի դասաւորուած ու մարզուած հսկայ բանակներուն մէջ, որոնք ներկայի խորագիտութեան արտադրած ամենավերջին գործիքներով զինուած՝ կ'սպասեն զիրար խողխողել իրենց Քրիստոնեայ(?) վեհապետներու հրամանովը։*

*Ներկայիս հպարտներո՛ւն երանի՛ կը տրուի, ու ամբարշտութիւն ընողնե՛րը զօրութեան գլուխ կը դրուին։* (*Մաղաք.* Գ. 15)։ *Ուրեմն չե՞նք կրնար տեսնել՝ թէ քարին հարուածովը այս մեծ արձանին կործանումը ու Աստուծոյ Թագաւորութեան հաստատումը, ճնշուածներուն ազատագրումը կը նշանակէ, ու ամէնուն օրհնութիւնը։ Թէև փոփոխութիւնը ժամանակուայ մը համար աղէտի ու տառապանաց պատճառ պիտի ըլլայ, սակայն ի վերջոյ արդարութեան խաղաղարար պտուղներ յառաջ պիտի բերէ։*

*Բայց յիշելով տեսակէտի տարբերութիւնը, ուրեմն աշխարհի միևնոյն չորս աշխարհակալ կայսրութիւնները սկսինք Աստուծոյ և Անոր հետ համաձայն եղողներուն տեսակէտէն դիտել, որը սիրեցեալ Դանիէլ Մարգարէին տեսիլքին մէջ պատկերացուած է։ Ինչպէս որ այս Թագաւորութիւնները մեզի անփառունակ ու գազանային կը թուին, նոյնպէս ալ անոր, այս չորս աշխարհակալ կայսրութիւնները որպէս չորս մեծ ու գիշատիչ վայրենի գազաններ ցոյց տրուած էին։ Ու անոր տեսութեան մէջ Աստուծոյ գալիք Թագաւորութիւնը (քարը), համեմատաբար, աւելի վսեմ էր քան Նաբուգոդոնոսորէ տեսնուածը։ Դանիէլ կ'ըսէ. «Գիշերը տեսիլքիս*

մէջ տեսայ որ ահա՛ երկինքին չորս հովերը մեծ ծովուն վրայ կը յարձակէին։ Ու ծովէն չորս մեծ գազաններ ելան, որոնք իրարմէ տարբեր էին։ Առաջինը՝ առիւծի պէս էր, ու արծիւի թեւեր ունէր....... և ահա՛ մէկ ուրիշ երկրորդ գազան մը արջու նման.. ...... ու ահա ընձու նման մէկ ուրիշ մ'ալ։.... Անկէ ետքը գիշերուան տեսիլքներուս մէջ կը տեսնէի, և ահա՛ մէկ չորրորդ գազան մը. անիկա ահեղ՝ սոսկալի ու խիստ զօրաւոր էր. և անիկա մեծ երկաթէ ակռաներ ունէր, անիկա կ'ուտէր ու կը փշրէր ու մնացածը ոտքերովը կը կոխէր, ու իրմէ առաջ եղող ամեն գազաններէն տարբեր էր, և տասը եղջիւր ունէր»։—Դան. է. 2—7։

Առաջին երեք գազաններուն (Բաբելոն՝ առիւծը, Մարք և Պարսիկք՝ արջը, ու Յոյները՝ ինձը) վերաբերող մանրամասնութիւնները՝ իրենց գլուխներով, ոտքերով, թեւերով եւայլնով՝ որոնց ամենն ալ խորհրդաբանական են, զանց կ'ընենք մեր ներկայ քննութեան մէջ, աւելի կարեւոր համարելով չորրորդ գազանին, Հռովմի մանրամասնութիւնները։

Չորրորդ Գազանին՝ Հռովմի համար Դանիէլ կ'ըսէ. «Անկէ ետքը գիշերուան տեսիլքներուս մէջ կը տեսնէի, և ահա՛ մէկ չորրորդ գազան մը. անիկա ահեղ՝ սոսկալի ու խիստ զօրաւոր էր.... և տասը եղջիւր ունէր։ Երբոր ես ան եղջիւրները կը դիտէի, ահա՛ անոնց մէջը մէկ ուրիշ պզտիկ եղջիւր մը ելաւ, ու անոր առջեւէն առջի եղջիւրներուն երեքը խլուեցան. և ահա՛ աս եղջիւրին վրայ մարդու աչքերու պէս աչքեր, ու մեծ բաներ խօսող բերան կար»։ Դան. է. 7, 8։

Ահա՛ հոս ցուցագրուած է Հռովմէական Կայսրութիւնը. ու անոր զօրութեան բաժանումները տասը եղջիւրներովը ցոյց տրուած են. եղջիւրը զօրու-

թեան խորհրդանիշ մ՚է։ Պզտիկ եղջիւրը որ տասանց մէջէն ելաւ՝ և որոնց երեքին զօրութիւնը իրեն յատկացուց՝ ու միւսներուն հետ իշխեց, կը ներկայացնէ Հռովմի Եկեղեցւոյն Պապական զօրութեան կամ եղջիւրին պզտիկ սկզբնաւորութիւնը ու աստիճանաբար զօրութեան բարձրացումը։ Ու երբ ան՝ ազդեցութեամբ բարձրացաւ, Հռովմէական կայսրութեան երեք բաժանումները, եղջիւրները կամ զօրութիւնները (Հերուլի, Արևելեան Մարզպանութիւն և Օստրոկոթները) անոր առջևէն փրցուեցան, անոր որպէս քաղաքական զօրութիւն կամ եղջիւր հաստատմանը համար տեղ բանալու համար։ Այս վերջին մասնաւորապէս նկատելու արժանի եղջիւրը, Պապականութիւնը, նշանաւոր է իր աչքերուն համար, որոնք իմաստութիւն կը ներկայացնեն, ու իր բերանին—իր ըսածներուն, յայտարարութիւններուն, ևայլնի համար։

Այս չորրորդ գազանին՝ որը Հռովմը կը ներկայացընէ, Դանիէլ նկարագրական անուն չի տար։ Մինչդեռ միւսները առիւծանման, արջանման և ընձանըման նկարագրուած են. չորրորդը ա՛յնքան արիւնախանձ և ժանտատեսիլ էր, որ երկրի ո՛չ մէկ գազանը կրնար անոր հետ բաղդատուիլ։ Յայտնութիւնը գրող Յովհաննէսն ալ, տեսիլքին մէջ տեսնելով միևնոյն այլաբանական գազանը (կառավարութիւնը), չէր կրնար գտնել անուն մը որով կարենար նկարագրել զայն, ու վերջապէս զանազան անուններ կուտար, ու ի միջի այլոց, զայն «Սատանայ» կ՚անուանէր։ (Յայտ. ԺԲ. 9)։ Նա անտարակոյս յարմար անուն մ՚ընտրեց. որովհետև երբ Հռովմը իր արիւնալի հալածանքներու լոյսովը կը դիտենք, արդարև, երկրի բոլոր կառավարութեանց ամենասատանայականը կը գտնենք։ Նո՛յնիսկ անոր կռապաշտ Հռով-

*մէն Պապական Հռովմի փոխուիլը, ներկայացուց Սատանային գլխաւոր յատկանիշներէն մին. «որովհետեւ նա ալ ինքզինքը կը կերպարանափոխէ* որպէս *լուսեղէն հրեշտակ երեւնալով»* (*Բ. Կորնթ. ԺԱ.* 14), *ինչպէս որ Հռովմը ինքզինքը Հեթանոսութենէ կերպարանափոխեց ու Քրիստոնեայ—Քրիստոսի Թագաւորութիւնը** *անուանեց։ Այս վերջին կամ Հռովմէական գազանին՝ ու մասնաւորապէս անոր տարօրինակ կամ Պապական եղջիւրի նկատմամբ մի քիչ մանրամասնութիւններ տալէն վերջն է որ Մարգարէն կը յայտնէ այն դատաստանը, զոր այս եղջիւրին հակառակ պիտի տրուի, և որը պիտի սկսի կորսնցնել իր տիրապետութիւնը ու աստիճանաբար պիտի* սպառի, *մինչև որ* գազանը *ոչնչանայ։*

*Այս Հռովմէական Կայսրութեան Գազանը դեռ գոյութիւն ունի իր եղջիւրներովը կամ բաժանումներովը, և որը Տիրոջը օրուանը մէջ ժողովուրդի զանգուածներուն ոտքի ելլելովը և կառավարութեանց կործանումովը պիտի սպաննուի, երբ նախապատրաստութիւն Երկնային իշխանութեան ճանչցուելուն։ Առիկա որոշ կերպով ցոյց տրուած է ուրիշ Ս. Գրութիւններով, որոնք դեռ պիտի քննենք։ Սակայն և այնպէս, նախ Պապական եղջիւրի* սպառումը *տեղի պիտի ունենայ։ Անոր զօրութիւնն*

*Հռովմի «Սատանայ» կոչուիլը և ո՛չ մէկ կերպով կը ժխտէ *անհատական* սատանայի մը գոյութիւնը. ընդհակառակը կը հաստատէ զայն։ Նկարագրական ճանչցուած յատկութիւններով առիւծներ, արջեր և ինձեր կենալուն համար է որ կառավարութիւնները անոնց նմանցուած էին. նոյնպէս ալ որովհետեւ նկարագրական որոշ յատկութիւններով Սատանայ մը կայ, որ չորրորդ կայսրութիւնը անոր նմանցուած է։

ու ազդեցութիւնը սպառիլ սկսաւ, երբոր Նաբոլէոն՝ Պապը որպէս բանտարկեալ Ֆրանսա տարաւ։ Ու երբ ո՛չ պապերուն բանադրանքները և ո՛չ ալ անոնց աղօթքները կրցին ազատել զանոնք Պոնաբարդի զօրութենէն, որոշ կերպով յայտնի եղաւ ազգերուն թէ՝ Պապականութեան կողմանէ քարոզուած իշխանութիւնն ու զօրութիւնը անհիմն էր։ Անկէ յետոյ՝ Պապականութեան քաղաքական զօրութիւնը արագաբար սկսաւ թօշնիլ, մինչև որ 1870ի Սեպտեմբերին, Վիքթոր Էմմանուէլ Բ.ի առջև կորսնցուց իր քաղաքական զօրութեան վերջին կռուանը—Հռոմը։

Այսու ամենայնիւ, իր «սպառման» ժամանակաշրջանի ամբողջ տևողութեան, նա շարունակեց արտասանել իր հայհոյանքի մեծ ու փքուռոյց խօսքերը. անոր վերջին մեծ արտասանութիւնը 1870ին էր. երբ՝ իր տապալումէն մի քանի ամիս առաջ, յայտարարեց պապերու անսխալական ըլլալը։ Այս բոլորը յիշուած է մարգարէութեան մէջ. «Ան ատենը (այսինքն այս «եղջիւրին» դէմ վճիռը արձակուելէն վերջը, անոր սպառումը սկսելէն վերջը) կը նայէի ան եղջիւրին խօսած ՄԵԾ ԽՕՍՔԵՐՈՒՆ ձայնին համար»։—Դան. է. 11։

Այսպէս, պատմութիւնը մինչև մեր օրերը կը հասնի, ուր ցոյց տրուած է մեզ կատարուելիք անցքերը, որոնք երկրի կայսրութեանց նկատմամբ անոնց բոլորովին կործանումը կը զուժեն։ Անոր հետևելիք քայլը հետևեալ խօսքերով նկարագրուած է, «ու նայեցայ մինչև որ ան գազանը սպաննուեցաւ, և անոր մարմինը կորսուեցաւ ու կրակի բոցերու տրուեցաւ»։ Սպաննելը ու այրելը խորհրդաբանական են, ինչպէս նաև գազանը, և որը կը նշանակէ բացարձակ ու ամբողջ կործանումը ներկայ կազմակերպուած կառավարութեան։ 12րդ. համարին մէջ,

Մարգարէն տարբերութիւն մը կը նշմարէ այս չորրորդ գազանին ու իր նախորդներուն վերջանալուն միջև։ Ասոնց երեքն ալ, յաջորդաբար (Բաբելոն. Պարսկաստան և Յունաստան) կորսնցուցին իրենց տիրապետութիւնը. անոնք դադրեցան իրենց ձեռքին մէջ ունենալէ երկիրը կառավարող զօրութիւնը. սակայն իրենց կեանքերը որպէս ազգ անմիջապէս չվերջացան։ Յունաստան և Պարսկաստան դեռ մի քիչ կեանք ունին, թէև երկար դարերէ ի վեր իրենց ձեռքէն ելած է աշխարհակալ տիրապետութիւնը։ Սակայն այսպէս պիտի չըլլայ Հռովմէական Կայսրութեան, չորրորդ և վերջին գազանին։ Ան՝ տիրապետութիւնը ու կեանքը միասին պիտի կորսնցնէ ու բոլորովին կործանի, ու անոր հետ նաև միւսներն ալ։—Դան. Բ. 35։

Հոգ չէ թէ ինչ պիտի ըլլան գործածուած միջոցները կամ գործիքները, բայց այս կործանումի պատճառը Երկրի Հինգերորդ Աշխարհակալ Կայսրութիւնը՝ Աստուծոյ Թագաւորութիւնը պիտի ըլլայ Քրիստոսի ներքև, Որուն իրաւունքն է ստանձնել տիրապետութիւնը։ Չորրորդ գազանին Թագաւորութեան (որ «Աստուծմէ կարգուած» էր որոշ ժամանակի մը համար), նախասահմանուած ժամանակին Մեսիայի Հինգերորդ Թագաւորութեան փոխանցըւիլը, Մարգարէին հետևեալ խօսքերովը նկարագըրուած է. «Եւ ահա՛ երկինքի ամպերով Մարդոյ Որդւոյն նման մէկը կուգար, ու մինչև Հինաւուրցը եկաւ, և զԱնիկա Անոր առջևը մօտեցուցին։ Ու Անոր (Քրիստոսը—Գլուխը և Մարմինը ամբողջացած) իշխանութիւն, պատիւ ու Թագաւորութիւն տրուեցաւ, որ ամէն ժողովուրդները, ազգերն ու լեզուները Անոր ծառայութիւն ընեն. Անոր իշխանութիւնը յաւիտենական իշխանութիւն է որ չանցնիր

ու ազդեցութիւնը սպառիլ սկսաւ, երբոր Նաբոլէոն՝ Պապը որպէս բանտարկեալ Ֆրանսա տարաւ։ Ու երբ ո՛չ պապերուն բանադրանքները և ո՛չ ալ անոնց աղօթքները կրցին ազատել զանոնք Պոնաբարդի զօրութենէն, որոշ կերպով յայտնի եղաւ ազգերուն թէ՝ Պապականութեան կողմանէ քարոզուած իշխանութիւնն ու զօրութիւնը անհիմն էր։ Անկէ յետոյ՝ Պապականութեան քաղաքական զօրութիւնը արագաբար սկսաւ թօշնիլ, մինչև որ 1870ի Սեպտեմբերին, Վիքթօր Էմմանուէլ Բ.ի առջև կորսնցուց իր քաղաքական զօրութեան վերջին կռուանը—Հռովմը։

Այսու ամենայնիւ, իր «սպառման» ժամանակաշրջանի ամբողջ տևողութեան, նա չարունակեց արտասանել իր հայհոյանքի մեծ ու փքուռոյց խօսքերը. անոր վերջին մեծ արտասանութիւնը 1870ին էր. երբ՝ իր տապալումէն մի քանի ամիս առաջ, յայտարարեց պապերու անսխալական ըլլալը։ Այս բոլորը յիշուած է մարգարէութեան մէջ. «Ան ատենը (այսինքն այս «եղջիւրին» դէմ վճիռը արձակուելէն վերջը, անոր սպառումը սկսելէն վերջը) կը նայէի ան եղջիւրին խօսած ՄԵԾ ԽՕՍՔԵՐՈՒՆ ձայնին համար»։—Դան. է. 11։

Այսպէս, պատմութիւնը մինչև մեր օրերը կը հասնի, ուր ցոյց տրուած է մեզ կատարուելիք անցքերը, որոնք երկրի կայսրութեանց նկատմամբ անոնց բոլորովին կործանումը կը գուժեն։ Ասոր հետևելիք քայլը հետևեալ խօսքերով նկարագրուած է, «ու նայեցայ մինչև որ ան գազանը սպաննուեցաւ, և անոր մարմինը կորսուեցաւ ու կրակի բոցերու տրուեցաւ»։ Սպաննելը ու այրելը խորհրդաբանական են, ինչպէս նաև գազանը, և որը կը նշանակէ բովանդակ ու անյոյս կործանումը ներկայ կազմակերպուած կառավարութեան։ 12րդ. համարին մէջ,

Մարգարէն տարբերութիւն մը կը նշմարէ այս չորրորդ գազանին ու իր նախորդներուն վերջանալուն միջեւ։ Անոնց երեքն ալ, յաջորդաբար (Բաբելոն. Պարսկաստան և Յունաստան) կորսնցուցին իրենց տիրապետութիւնը. անոնք դադրեցան իրենց ձեռքին մէջ ունենալէ երկիրը կառավարող զօրութիւնը. սակայն իրենց կեանքերը որպէս ազգ անմիջապէս չվերջացան։ Յունաստան և Պարսկաստան դեռ մի քիչ կեանք ունէին, թէև երկար դարերէ ի վեր իրենց ձեռքէն ելած է աշխարհակալ տիրապետութիւնը։ Սակայն այսպէս պիտի չըլլայ Հռովմէական Կայսրութեան, չորրորդ և վերջին գազանին։ Ան՝ տիրապետութիւնը ու կեանքը միասին պիտի կորսնցնէ ու բոլորովին կործանի, ու անոր հետ նաև միւսներն ալ։—Դան. Բ. 35։

Հոգ չէ թէ ինչ պիտի ըլլան գործածուած միջոցները կամ գործիքները, բայց այս կործանումի պատճառը Երկրի Հինգերորդ Աշխարհակալ Կայսրութիւնը՝ Աստուծոյ Թագաւորութիւնը պիտի ըլլայ Քրիստոսի ներքև, Որուն իրաւունքն է ստանձնել տիրապետութիւնը։ Չորրորդ գազանին Թագաւորութեան (որ «Աստուծմէ կարգուած» էր որոշ ժամանակի մը համար), նախասահմանուած ժամանակին Մեսիայի Հինգերորդ Թագաւորութեան փոխանցըուիլը, Մարգարէին հետևեալ խօսքերովը նկարագըրուած է. «Եւ ահա՛ երկինքի ամպերով Մարդոյ Որդւոյն նման մէկը կուգար, ու մինչև Հինաւուրցը եկաւ, և զԱնիկա Անոր առջևը մօտեցուցին։ Ու Անոր (Քրիստոսը—Գլուխը և Մարմինը ամբողջացած) իշխանութիւն, պատիւ ու Թագաւորութիւն տրուեցաւ, որ ամէն ժողովուրդները, ազգերն ու լեզուները Անոր ծառայութիւն ընեն. Անոր իշխանութիւնը յաւիտենական իշխանութիւն է որ չանցնիր

*ու թագաւորութիւնը չաւրուիր»։ Հրեշտակը աւելի մեկնաբանեց, ըսելով թէ՝ «Թագաւորութիւնը ու իշխանութիւնը, ու բոլոր երկինքին տակը եղող թագաւորութեանց մեծութիւնը Բարձրելոյն սուրբերուն ժողովուրդին պիտի տրուի. Անոր Թագաւորութիւնը յաւիտենական թագաւորութիւն է, ու բոլոր իշխանները Անոր պիտի ծառայեն ու պիտի հնազանդին»։ —Դան. Է. 13, 14, 27։*

*Ուրեմն կը տեսնենք թէ երկրի տիրապետութիւնը Եհովային, Հինաւուրցին ձեռքովը Քրիստոսի պիտի տրուի, Որը «ամեն բան Իր ոտքերուն տակը պիտի դնէ»։ (Ա. Կորնթ. ԺԵ. 27)։ Այսպէս, զահակալած Աստուծոյ Թագաւորութեան վրայ՝ Նա պիտի իշխէ, մինչև որ Եհովային կամաց և օրինաց հակառակ ամեն իշխանութիւն և զօրութիւն խափանէ։ Այս մեծ առաջելութեան կատարմանը համար, նախ կարևոր է այս հեթանոս կառավարութեանց կործանումը. որովհետև «այս աշխարհիս թագաւորութիւնները», «այս աշխարհիս իշխան»ին նման խաղաղութեամբ անձնատուր պիտի չըլլան, որով պէտք է կապուին ու բռնի ուժով կաշկանդուին։ Ու այսպէս ալ դրուած է, «Որ անոնց թագաւորները շղթաներով կապեն, ու անոնց ազնուականները երկաթէ կապանքներով, որ գրուած դատաստանը անոնց վրայ կատարեն. աս Անոր բոլոր սուրբերուն փառքն է»։—Սաղմ. ՃԽԹ. 8, 9։ Մատթ. ԺԹ. 27, 28։*

*Երբ այսպէս, մեր Տիրոջ և Դանիէլ Մարգարէի տեսակէտով կը դիտենք ներկայ կառավարութիւնները, ու կ՚ըմբռնենք անոնց արիւնարբու, քանդիչ, զազանային և չահախնդիր նկարագիրը, մեր սրտերը ակնկառոյց կ՚սպասեն Հեթանոս կառավարութեանց վերջացմանը, ու բերկրանօք յառաջ կը նայինք դէ-*

պի այն երանաւէտ ժամանակը, երբ ներկայ դարու յաղթողները իրենց Գլուխին (Յիսուսի) հետ պիտի դահակալեն՝ իշխելու, օրհնելու և վերականգնելու համար հառաչող մարդկութիւնը։ Արդարև, Աստուծոյ բոլոր որդիները կրնան իրենց Տիրոջը հետ սրտաբուղխ կերպով աղօթել—«ՔՈՒ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆԴ ԹՈՂ ԳԱՅ, թող Քու կամքդ ըլլայ Երկրիս վրայ, ինչպէս որ եղած է Երկնից մէջ»։

Ինչպէս որ արձանով ու գազաններով ներկայացուած այս իւրաքանչիւր կառավարութիւնները աշխարհական կայսրութիւններ ըլլալէ առաջ գոյութիւն ունէին, նոյնպէս ալ Աստուծոյ ճշմարիտ Թագաւորութիւնը. ան երկար ատեն գոյութիւն ունեցած է աշխարհէն բոլորովին անջատ, ո՛չ թէ փորձելով իշխանութեան գլուխ անցնիլ, հապա իր ժամանակին սպասելով—Հինաւուրցէն սահմանուած ժամանակին։ Եւ միւսներուն նման, իրմէ առջի գազանը կամ թագաւորութիւնը իր զօրութեամբը զարնելէ ու սպաննելէ առաջ, նախ պարտ է պաշտօնի և իշխանութեան գլուխ անցնիլ։ Որով հետևեալ խօսքերը խիստ պատշաճ են, «ան թագաւորներուն օրերը (երբ անոնք դեռ զօրութեան տէր են) Երկնից Աստուածը. մէկ Թագաւորութիւն մը պիտի հանէ (հաստատէ՝ զօրութեամբ և իշխանութեամբ)»։ Ու անոր հաստատուելէն վերջը, «անիկա աս բոլոր թագաւորութիւնները պիտի փշրէ ու պիտի հատցնէ, ու ինքը յաւիտեան պիտի մնայ»։ (Դան. Բ. 44)։ Որով՝ ինչ կերպով ալ որ անոր սպասենք, պարտինք այս աշխարհի թագաւորութեանց կործանումէն առաջ ակնկալել Աստուծոյ թագաւորութեան սկսումը, որուն զօրութիւնը և հարուածումը յառաջ պիտի բերէ անոնց կործանումը։

## ՆԵՐԿԱՅ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՈՒՐԻՇ ՏԵՍԱԿԷՏԷ ՄԸ

*Աշխարհը կառավարելու գերագոյն իրաւունքը և իշխանութիւնը Արարչին՝ Եհովային կը պատկանին ու միշտ պիտի պատկանին, հոգ չէ թէ որո՛ւն կը թոյլատրէ կամ իրաւունք կուտայ ստորադաս իշխանութիւն ունենալու: Ադամին՝ Թագաւորաց Թագաւորին հանդէպ ունեցած անհնազանդութենէն յառաջ եկած անկատարութեանց և տկարութեանց պատճառաւ, նա շուտով տկարացաւ ու անօգնական եղաւ: Որպէս ինքնակալ՝ նա սկսաւ կորսնցնել այն զօրութիւնը, որու միջոցաւ կանխաւ նա կը հրամայէր ու իր կամաց ուժովը հնազանդ կը պահէր ըստորին դասի անասունները: Նա նոյնպէս կորսնցուց ինքզինքը կառավարելու զօրութիւնը, որով երբ կուզէր բարիք ընել՝ իր տկարութիւնները արգելք կ՚ըլլային, և ահա՛ չարը կը գործէր· ու նոյնիսկ բարին որ կուզէր ընել՝ չըրաւ, ու չարը զոր չէր ուզէր ընել՝ գործեց:*

*Որով, թէև չենք փորձեր արդարացնել մեր ապստամբ ցեղը, սակայն կը համակրինք անոր ինքզինքը կառավարելու և իր վիճակը բարւոքելու համար թափած ունայն ջանքերէն: Ու այս ուղղութեամբ կարելի է աշխարհի յաջողութեան նկատմամբ բան մը ըսել· որովհետև, թէև կը ճանչնանք այս զազանային կառավարութեանց իսկական նկարագիրը, որոնք թէև ապականած են, սակայն բնաւ չըլլալէն աւելի լաւ եղած են—շատ աւելի լաւ քան անօրինութիւնը և անիշխանականութիւնը: Թերևս անիշխանականութիւնը «այս աշխարհիս իշխան»ին համար բաւական հաճելի ըլլար, սակայն ոչ այնպէս իր հպատակներուն համար· իր զօրութիւնը*

*բացարձակ չէ. անիկա մարդկութեան միջոցաւ գործելու իր կարողութեան չափին մէջ սահմանափակուած է, ու իր քաղաքականութիւնը մեծ համեմատութեամբ պէտք է համակերպի մարդոց գաղափարականներուն, կիրքերուն և նախապաշարումներուն: Մարդուն գաղափարականը Աստուծմէ անկախ կառավարութիւն մ'է. ու երբ Աստուած թոյլատրեց անոր փորձելու զայն, Սատանան պատեհութենէն օգուտ քաղեց, ընդարձակելու իր ազդեցութիւնը և տիրապետութիւնը: Այսպէս, զԱստուած մոռնալու՛ բաղձանքն էր (Հռովմ. Ա. 28) որ մարդը ինքզինքը ենթարկեց այս խորամանկ և զօրաւոր, թէպէտև անտես թշնամիին ազդեցութեանը. որով անկէ ի վեր, ստիպուած է Սատանային մեքենայութիւններուն դէմ պայքարիլ, միևնոյն ժամանակ նաև իր տկարութեանց դէմ:*

*Քանի որ այս է իրականութիւնը, ուրեմն դարձեալ աչքէ անցնենք այս աշխարհի թագաւորութիւնները. բայց այս անգամ դիտենք զանոնք այնպէս, ինչպէս որ ինկած մարդկութիւնը կը ջանայ կառավարել ինքզինքը՝ Աստուծմէ անկախ: Թէև անհատական ապականութիւնը և շահախնդրութիւնը մէկդի դարձուցած են արդարութեան ուղղութիւնը՝ որով այս աշխարհի թագաւորութեանց ներքև կատարեալ արդարութիւնը շատ քիչ անգամ գործադրուած է, սակայն մարդոց մէջ հինուց ի վեր կազմակերպուած բոլոր կառավարութեանց որոշ նպատակը եղած է արդարութիւն գործադրել և բոլոր ժողովուրդին լաւութեանը համար աշխատիլ:*

*Թէ ի՛նչ համեմատութեամբ այդ նպատակը կըրցած են իրագործել՝ ուրիշ հարց մ'է. բայց այս է եղած նաև զանոնք վեր բռնող ու հլու հնազանդութեամբ կառավարուող ժողովուրդին նպատակը: Եւ*

ուր որ արդարութիւնը մեծապէս անտեսուած է՝ կա՛մ բազմութիւնները կուրացուած ու խաբուած են անոնց նկատմամբ, և կա՛մ թէ պատերազմներ, վրդովումներ և յեղափոխութիւններ յառաջ եկած են։

Զազիր բռնակալներու նախ գործքերը՝ որոնք աշխարհի կառավարութեանց մէջ դիրքի և զօրութեան տիրացան, չներկայացուցին այս կառավարութեանց օրէնքները և հաստատութիւնները, այլ իշխանութիւն յափշտակելով ու զայն զազիր նպատակներու ծառայեցնելով՝ այս կառավարութեանց տուին իրենց գազանային նկարագիրը։ Ամէն կառավարութիւն շատ մը իմաստուն, արդար և լաւ օրէնքներ ունեցած է—օրէնքներ՝ կենաց և ստացուածքի, առևտրական շահերու և ոճիրներու պատժումի համար են։ Անոնք նաև վիճելի խնդիրներու համար դատարաններ ունին, ուր որ արդարութիւնը չափով մը կը գործադրուի դոնէ, և որքան ալ որ անոր պաշտօնեաները անկատար ըլլան, այսու հանդերձ, այս կարգի հաստատութեանց պահանջը և առաւելութիւնը ակներև է։ Որքան ալ որ այս կառավարութիւնները խեղճ եղած են, սակայն առանց անոնց, մարդկային ընկերութեան ստորնագոյն տարրը շնորհիւ թուական զօրութեան, պիտի յաղթահարէր արդարագոյն և լաւագոյն տարրը։

Մինչդեռ կը ճանչնանք այս կառավարութեանց գազանային նկարագիրը, որը Սատանային էնթրիկներուն և խաբէութեանց, նոյնպէս և մարդոց տկարութեանց, ինկած ախորժակներու և գաղափարականներու միջոցաւ զօրութեան տիրացած անարդար իշխաններու մեծամասնութեան պատճառաւն էր, սակայն և այնպէս մենք զանոնք ինքզինքը կառավարել ջանացող խեղճ ու անկեալ մարդկութեան լաւագոյն ջանքերը կը նկատենք։ Ամբողջ դարեր, Աստ-

*ուած թոյլատրած է անոնց ի գործ դնելու իրենց լաւագոյն ջանքերը, ու ապա դիտելու արդիւնքները։ Բայց փորձի երկար դարերէ վերջ, արդիւնքները այսօր այնքան հեռու են գոհացուցիչ ըլլալէ որքան աշխարհի պատմութեան ո՛և է շրջանին։ Իրապէս, այսօր դժգոհութիւնը աւելի հասարակ և ընդարձակ է քան երբեք. ո՛չ թէ ներկայիս անցեալէն աւելի կեղեքում և անարդարութիւն կայ, այլ որովհետև, Աստուծոյ կարգադրութեան ներքև գիտութեան ծաղկելովը, բացուած են նաև մարդոց աչքերը։*

*Ժամանակէ ժամանակ հաստատուած այլևայլ կառավարութիւնները, իրենցմով ներկայացուած ժողովուրդին ինքնավարութեան* միջին կարողութիւնը *ցուցադրած են։ Նոյնիսկ գոյութիւն ունեցած ինքնակալ կառավարութեանց իրենց ժողովուրդէն թոյլատրուիլը, ինքնին կ՚ապացուցանէ թէ անոնց տիրապետութեան ներքև գտնուող ժողովուրդը անոնցմէ աւելի լաւ կառավարութիւն մը ո՛չ կրնար հաստատել և ո՛չ ալ անոր նեցուկ ըլլալ. թէև անտարակոյս, շատ մը անհատներ շարունակ սովորական աստիճանէն շատ աւելի յառաջացած են։*

*Այսօր, երբ կը բաղդատենք աշխարհի վիճակը իր անցեալի ո՛և է վիճակին հետ, մենք ժողովրդային զանգուածներու զգացումներուն մէջ որոշ տարբերութիւն մը կը տեսնենք։ Անկախութեան հոգին ներկայիս լայնածաւալ է, ու մարդիկ այնքան ալ դիւրաւ չեն կուրացուիր, խաբուիր ու կառավարիչներէն և քաղաքագէտներէն առաջնորդուիր, որով այլևս պիտի չհնազանդին անցեալի լուծերուն։ Հասարակութեան զգացման այս փոփոխութիւնը աստիճանաբար չէ եղած, այն նախնական ժամանակէն սկսեալ, երբ նա ջանաց կառավարել ինքզինքը, հա-*

*պա աչքառու կերպով կ'սկսի ԺԶրդ. Դարէն. ու անոր յառաջդիմութիւնը խիստ արագ եղած է մանաւորապէս վերջին յիսուն տարիներուն մէջ: Ուրեմն այս փոփոխութիւնը անցեալ դարերու փորձառութեան արդիւնքը չէ, այլ վերջերս մարդկային զանգուածներու մէջ գիտութեան ծաղկման և ընդհանուր ծաւալման բնական արդիւնքն է: Գիտութեան այս ընդհանուր ծաւալման պատրաստութիւնը Ք. Թ. 1440ին ատենները սկսաւ տպագրութեան գիւտով և անոր հետևանքը եղող գրքերու և պարբերաթերթերու բազմապատկումովը: Ընդհանուր հասարակութեան լուսաւորման այս գիւտին ազդեցութիւնը ԺԶրդ. դարու ժամանակները զգալի եղաւ. ու ան ժամանակէն ի վեր առնուած յառաջդիմական բոլոր քայլերը ծանօթ են: Մարդկային զանգուածներու հասարակ զարգացումը ընդհանրացած է, իսկ ամեն կարգի գիւտերը պատահարներ դարձած են: Մարդոց մէջ գիտութեան ծաղկման այս պարագան՝ որը Աստուծոյ սահմանութեամբն է, և որը Իր որոշեալ ատենին տեղի կ'ունենայ, զօրաւոր ազդեցութիւններէն մէկն է, որոնք ներկայիս «Պատրաստութեան Օր»ուանը մէջ կը գործեն, կապելու համար Սատանան—կրճատելով իր ազդեցութիւնը և սահմանափակելով իր զօրութիւնը Աստուծոյ Թագաւորութիւնը երկրի վրայ հաստատելու համար:*

*Ամեն ուղղութեամբ ծաղկող գիտութիւնը մարդոց մէջ կ'արթնցնէ անձնասիրութեան զգացումը, ու գիտակցութիւն մը իրենց բնական և անձեռնմխելի իրաւունքներուն, որոնք այլևս պիտի չթոյլատրեն որ անտեսուին և անարգուին. ընդհակառակը, անոնք հակառակ ծայրայեղութեան պիտի դիմեն: Ե'տ նայեցէք անցեալ դարերուն վրայ ու տեսէք՝ թէ ի'նչպէս ազգերը արիւնով գրած են իրենց դժգո-*

Հութեան պատմութիւնը։ Իսկ Մարգարէները կը յայտնեն թէ գիտութեան շատնալուն պատճառաւ՝ աւելի շատ և ընդհանուր ու լայնածաւալ դժգոհութիւն մը ի վերջոյ դուրս պիտի պոռթկայ աշխարհածաւալ յեղափոխութեամբ, որը տակնուվրայ պիտի ընէ ամէն օրէնք և կարգ, և որուն իբր արդիւնք՝ ամէն դասակարգի վրայ անիշխանականութիւն և տառապանք պիտի տիրէ. սակայն այս խառնաշփոթութեան մէջտեղ Երկնից Աստուածը Իր Թագաւորութիւնը պիտի ՀԱՍՏԱՏԷ, որը ամէն ազգաց ըղձանքները պիտի գոհացնէ։ Իրենց անյաջողութիւններէն ձանձրացած ու սրտաբեկուած՝ ու իրենց վերջին ու ամենամեծ ջանքերուն անիշխանականութեան յանգիլը տեսնելով՝ մարդիկ հետզհետէ սիրով պիտի ընդունին և խոնարհին Երկնային իշխանութեան առջև, և ճանչնան Անոր զօրաւոր ու արդար կառավարութիւնը։ Այսպէս, ահա՛ մարդուն յուսահատութիւնը Աստուծոյ պատեհութիւնը պիտի ըլլայ, ու «ամէն ազգաց ցանկալի բաները պիտի գան»— Աստուծոյ Թագաւորութիւնը՝ զօրութեամբ և մեծ փառքով։—Անգ. Բ. 7։

Գիտնալով թէ ասիկա է Աստուծոյ նպատակը՝ ո՛չ Յիսուս և ո՛չ ալ Առաքեալները ո՛և է կերպով միջամտեցին երկրի կառավարիչները. ընդհակառակը, անոնք Եկեղեցիին պատուիրեցին հնազանդիլ այս տէրութիւններուն, եթէ նոյնիսկ անոնք յաճախ տառապին անոնց զօրութեան չարաչար գործածման պարագաներուն։ Անոնք պատուիրեցին Եկեղեցիին հնազանդիլ օրէնքներուն, ու իրենց պաշտօնին համար ակնածիլ անոնցմէ որոնք որ իշխանութեան գլլուխն են՝ եթէ նոյնիսկ անոնք անհատապէս յարգանքի անարժան են, ու վճարել իրենց սահմանուած տուրքը, և հաստատուած ո՛և է օրէնքի չհա-

կառակիլ՝ բացի, երբ անոնք կը հակասեն Աստուծոյ օրէնքներուն։ (Գործ. Դ. 19։ Ե. 29։ Հռովմ. ԺԳ. 1—7։ Մատթ. ԻԲ. 21)։ Տէր Յիսուսը, Առաքեալները և Նախնի Եկեղեցին, բոլորն ալ օրինաց հնազանդ էին, թէև անոնք այս աշխարհի կառավարութիւններէն անջատուած էին և անոնց մէջ ո՛և է մասնակցութիւն չունէին։

Թէև աշխարհի մէջ գոյութիւն ունեցող կառավարութիւնները Աստուծմէ կարգուած կամ կարգադրուած էին, որպէսզի մարդկութիւնը անոնց ներքև պէտք եղած փորձառութիւնները ստանայ, սակայն Եկեղեցին, ուխտուածները, որոնք Աստուծոյ գալիք Թագաւորութեան պաշտօնին կը տենչան՝ ո՛չ այս աշխարհի պատիւներուն և պաշտօնի տարեթոշակներուն պէտք է ցանկան, ո՛չ ալ այս զօրութեանց հակառակին։ Անոնք Երկնային Թագաւորութեան համաքաղաքացիներն ու ժառանգակիցներն են (Եփես. Բ. 19), որով այս աշխարհի թագաւորութեանց ներքև միայն այն կարգի իրաւունքներ և պատեհութիւններ պահանջելու են, որոնք պանդուխտներու կը պատշաճին։ Անոնց առաքելութիւնը չէ աշխարհին օգնել՝ բարուօքելու համար անոր ներկայ վիճակը, ո՛չ ալ ներկայիս անոր գործերուն հետ առընչութիւն ունենալ։ Աւելի փորձելը ջանքի վատնում մը պիտի ըլլայ, որովհետև աշխարհի ընթացքը և անոր վերջաւորութիւնը որոշ կերպով պարզուած են Ս. Գրոց մէջ, ու բոլորովին Անոր տիրապետութեան ներքև են՝ Որը Իր յարմար ժամանակին մեզի պիտի տայ Թագաւորութիւնը։ Ճշմարիտ Եկեղեցիին ազդեցութիւնը թէ՛ ներկայիս և թէ՛ միշտ պզտիկ եղած է—ա՛յնքան պզտիկ, որ գրեթէ քաղաքական տեսակէտէ ոչինչ կը համարուի. բայց որքան որ ալ մեծ թուի այն՝ պարտինք մեր Տիրոջ և Առա-

քերլոց օրինակներուն և պատուէրներուն հետևիլ, գիտնալով որ Աստուծոյ նպատակն է Թողուլ աշխարհը, որպէսզի ան լիուլի փորձէ ինքզինքը կառավարելու իր կարողութիւնը: Ուրեմն ճշմարիտ Եկեղեցին պէտք չէ աշխարհէն ըլլայ, թէև անոր մէջն է: Սուրբերը Թերևս ազդեն աշխարհին վրայ, բայց միայն իրենց անկէ անջատ մնալովը, ու Թող տալով որ իրենց լոյսը փայլի. ու այսպէս, իրենց կենաց միջոցաւ ճշմարտութեան հոգին պիտի յանդիմանէ աշխարհը: Այսպէս որպէս Խաղաղասէր, կանոնապահ հնազանդողներ և ամէն արդար օրէնքները ջատագովողներ՝ անկարգութիւնը և մեղքը յանդիմանողներ՝ պարտինք քարոզել Աստուծոյ խոստացած ապագայ Թագաւորութիւնը ու անոր միջոցաւ ակընկալելիք օրհնութիւնները, և ո՛չ Թէ անուանական քրիստոնէութեան կողմէ որդեգրուած մեթոտին նըման՝ քաղաքականութեանց խառնուինք, ու աշխարհին հետ այլևայլ մեքենայութիւններով՝ զօրութեան տիրանալ ցանկանք, և այսպէս պատերազմներու ու մեղքերու և ընդհանուր ստորնացման գոգը քշուինք —Խաղաղութեան Իշխանին ապագայ Հարսը, իր փառաւոր կուսութեան մէջ, պէտք է բարիի զօրութիւն մ'ըլլայ աշխարհի մէջ, որպէս իր Տիրոջը ներկայացուցիչը:

Աստուծոյ Եկեղեցին պարտէ իր բոլոր ուշադրութիւնը և ջանքերը Աստուծոյ Թագաւորութեան շահերուն յառաջացմանը յատկացնել, Ս. Գրոց մէջ ցոյց տրուած Ծրագրին համաձայն: Եթէ ասիկա հաւատարմօրէն կատարուի, այլևս ներկայ կառավարութեանց քաղաքականութեանց մէջ մխրճուելու ժամանակ կամ միտում պիտի չըլլայ: Տէրը ասոնց համար ժամանակ չունէր. ո՛չ ալ Առաքեալները. և ո՛չ

ալ սուրբերէն ո՛և է մէկը՝ որ անոնց քայլերուն կը հետևի։

Նախկին Եկեղեցին՝ Առաքելոց մահէն քիչ վերջը այս փորձութեան մէկ որսը եղաւ։ Աստուծոյ գալիք Թագաւորութեան քարոզութիւնը՝ որը պիտի կործանէր Երկրի բոլոր Թագաւորութիւնները, նոյնպէս և խաչեցեալ Քրիստոսի քարոզութիւնը, որպէս ժառանգ այդ Թագաւորութեան՝ այլևս անժողովրդական դարձած էր, որը իր քարոզիչներուն վրայ հալածանք, արհամարհանք և նախատինք կը բերէր։ Սակայն ոմանք խորհեցան կատարելագործել Աստուծոյ Ծրագիրը, որպէսզի փոխանակ տառապանաց՝ Եկեղեցին աշխարհին առջև շնորհաց դիրք մ'ունենայ. ու անոնք կրցան իրենց ծրագիրը յաջողցնել՝ պարզապէս աշխարհային զօրութեանց հետ միաբանելով։ Ասոր իբր արդիւնք՝ Պապականութիւնը յառաջ եկաւ. ու ժամանակի ընթացքին՝ ազգաց տիրուհին ու Թագուհին եղաւ։—Յայտ. ԺԷ. 3—5։ ԺԸ. 7։

Շնորհիւ այս քաղաքականութեան՝ ամեն բան փոխուեցաւ. փոխանակ տառապանաց՝ պատիւ եկաւ. փոխանակ խոնարհութեան՝ դոռոզութիւն. փոխանակ հալածուելու՝ նա դարձաւ հալածիչը ամեն անոնց, որոնք դատապարտեցին իր նոր և ապօրէն պատիւները։ Շուտով նա սկսաւ նոր վարդապետութիւններ և սոփեստութիւններ հնարել՝ արդարացընելու համար իր ընթացքը. նախ ինքզինքը խաբելով՝ և ապա ազգերը, այն հաւատալիքին նկատմամբ՝ թէ Քրիստոսի խոստացած Հազարամեայ Թագաւորութիւնը ԵԿԱԾ ԷՐ, և թէ՝ Քրիստոս, Թագաւորը, իր պապերովը ներկայացուած էր, որոնք երկրի Թագաւորներուն վրայ տիրապետեցին իբր Անոր փոխանորդները։ Իր յայտարարութիւնները յա-

*ջողութեամբ պսակուեցան, խաբելով ամբողջ աշխարհը։ «Երկրի բնակիչները* գինովցուց» *իր մոլորեցուցիչ վարդապետութիւններովը* (*Յայտ.* 17։ 2), *ու ահաբեկեց զանոնք այն ուսուցմամբ՝ թէ իր յայտարարութիւններուն ու իրաւունքներուն հակառակողներուն կ'սպասէ յաւիտենական տանջանքը։ Շուտով, Եւրոպայի թագաւորները սկսան իր հրովարտակովը ու իր ենթադրական իշխանութեամբը թագաւորել և կամ թագադրկուիլ։*

*Ասոր իբր արդիւնք, այսօր Եւրոպայի թագաւորութիւնները Քրիստոնեայ թագաւորութիւններ ըլլալ կը հաւատան, ու կը յայտարարեն թէ իրենց վեհապետները «Աստուծոյ շնորհքովը» կը թագաւորեն, այսինքն՝ կամ Պապականութեան և կամ ո՛և է Բողոքական յարանուանութեանց որոշումովը։ Թէև Բարեկարգիչները Պապականութեան կրօնական իրաւասութեան Ն.ի շատ մը յայտարարութիւնները թողուցին, բայց այս պատիւին կառչած մնացին, որը Երկրի թագաւորները Քրիստոնէութեան կը միացընէր։ Ու այսպէս, Բարեկարգիչներն ալ միևնոյն մոլորութեան մէջ ինկան և վեհապետաց իշխանութիւն գործածեցին, կառավարութիւններ և թագաւորներ նշանակելով և նուիրագործելով, ու զանոնք «Քրիստոնեայ Թագաւորութիւններ» անուանելով։ Որով այսօր մենք շատ կը լսենք այս տարօրինակ առեղծուածը,* «Քրիստոնեայ Աշխարհը»—*այլանդակ առեղծուած մը, երբ որ Աւետարանի ճշմարիտ սկզբունքներու լոյսովը կը քննենք։ Մեր Տէրը Իր աշակերտներուն համար ըսաւ. «Անոնք աշխարհէն չեն, ինչպէս որ Ես ալ աշխարհէն չեմ»։ Իսկ Ս. Պօղոս կը յորդորէ մեզ, ըսելով՝ «Այս աշխարհին մի՛ կերպարանիք»։—Յովհ. ԺԷ.* 16։ *Հռովմ. ԺԲ.* 2։

*Աստուած երբե՛ք չէ հաւանած այս թագաւորու-*

թիւնները Քրիստոսի անուամբ կոչուելուն։ Անուանական Եկեղեցիէն խաբուած՝ այս ազգերը կեղծ գոյներով կը ներկայացնեն ինքզինքնին, կը յայտարարեն ըլլալ այն՝ ինչ որ չեն։ Անոնց միակ իրաւունքը, բացի ժողովուրդին քուէէն՝ է, Աստուծոյ սահմանափակ շնորհը, որը Նաբուգոդոնոսորին յայտնուեցաւ—մինչև որ գայ Այն՝ Որուն իրաւունքն է տիրապետութիւնը։

Այն յայտարարութիւնը՝ թէ այս անկատար թագաւորութիւնները իրենց անկատար օրէնքներովը ու յաճախ շահախնդիր ու անառակ իշխաններովը «մեր Տիրոջ ու Իր Օծեալին Թագաւորութիւններ»ն են՝ սոսկալի պարսաւանք մ'է Քրիստոսի ճշմարիտ Թագաւորութեան հանդէպ, որուն առջև սակայն ի մօտոյ պարտին իյնալ, ու անոր «Արդարութեան Իշխանին» և արդար դատաւորներուն ապաւինիլ։— Ես. ԼԲ. 1։

Այս մոլորութեան մէկ ուրիշ լուրջ վնասը այն է՝ որ Աստուծոյ որդւոցը ուշադրութիւնը ասոր պատճառով շեղած է խոստացեալ Երկնային Թագաւորութենէն. որով անոնք առաջնորդուած են աշխարհիկ թագաւորութեանց հետ անպատեհ մտերմութեան մը ու դրեթէ անպտուղ փորձերու, ջանալով այս վայրի, աշխարհիկ բունին վրայ պատուաստել Քրիստոնէութեան շնորհները և բարոյականները, անտեսելով սակայն ճշմարիտ, Թագաւորութեան Աւետարանը և անոր մէջ կեդրոնացած յոյսերը։ Այս խաբէութեան ներքև, ներկայիս ոմանք խիստ նախանձաւոր են Միացեալ Նահանգաց Սահմանադրութեան միացնելու Աստուծոյ անունը, որպէսզի անով այս ալ Քրիստոնեայ ազգ մ'ըլլայ։ Բարեփոխուած Երիցականները տարիներէ ի վեր մերժած են քուէարկել կամ պաշտօն վարել այս կառավարութեան ներքև,

որովհետև ատիկա Քրիստոսի Թագաւորութիւնը չէ։ Այսպէսով, անոնք կ՚ընդունին Քրիստոնէից ուրիշ ո՛և է կառավարութեան մասնակցելու անպատշաճութիւնը։ Մեծապէս կը համակրինք տածուած այս զգացումէն, բայց ո՛չ անոր եզրակացութենէն՝ թէ եթէ Աստուծոյ անունը Սահմանադրութեան մէջ յիշուի, այդ պարագան այս կառավարութիւնը աշխարհի թագաւորութենէ Քրիստոսի Թագաւորութեան պիտի վերածէ ու իրենց ալ ազատութիւն պիտի տայ քուէարկելու ու պաշտօնավարելու։ Ո՜հ, ո՛րքան տխմարութիւն։ Ո՛րքան մեծ է այն խաբէութիւնը, որուն միջոցաւ «պոռնիկներուն մայրը» բոլոր ազգերը գինովցուցեր է (Յայտ. ԺԷ. 2)․ որովհետև միևնոյն կերպով նաև ըմբռնուած է թէ Եւրոպայի թագաւորութիւնները Սատանայէն Քրիստոսի փոխանցուեցան և «Քրիստոնեայ ազգեր» եղան։

Պէտք է որոշ գիտնանք թէ աշխարհի թէ՛ ամենալաւ և թէ՛ ամենավատ ազգերը «այս աշխարհիս թագաւորութիւններ»ն են, որոնց Աստուծմէ տրուած տիրապետելու պայմանաժամը լրանալու մօտ է, որով պարտին տեղի տալ իրենց տեղը կարգուած յաջորդին, Մեսիայի Թագաւորութեան, Երկրի Հինգերորդ Աշխարհակալ Կայսրութեան (Դան. Բ. 44։ Է. 14, 17, 27)—որը ճշմարտութիւնը և արդարութիւնը պիտի հաստատէ և չարիքը կործանէ։

Սակայն ինչպէս որ արդէն է, այս նկատմամբ Պապականութեան գործքերը, որոնք նուիրագործուեցան Բողոքական Բարեկարգիչներէն, Քրիստոնեաներէն չհարցաքննուիր։ Եւ քանի որ անոնք՝ պարտին վեր բռնել Քրիստոսի Թագաւորութիւնը, ստիպուած կ՚զգան մարտնչիլ ի սէր ներկայիս տապալուող Թագաւորութեանց՝ որոնք անունով Քրիստոնեայ կը կոչուին և որոնց տիրապետելու ժամանակը շուտով

*կը լրանայ. ու այսպէս, իրենց համակրութիւնները յաճախ զիրենք հարստահարողներուն կողմը կը մղէ, փոխանակ ուղղութեան և ազատութեան—այս աշխարհի թագաւորութեանց ու այս աշխարհի իշխանին կողմը, փոխան Քրիստոսի Գալիք Ճշմարիտ Թագաւորութեան։—Յայտ. ԺԷ. 14։ ԺԹ. 11—19։*

*Աշխարհը արագ կերպով այն գիտակցութեան կուգայ թէ «այս աշխարհիս թագաւորութիւնները» Քրիստոսանման չեն, և թէ՝ անոնց Քրիստոսի կողմէ որոշուած ըլլալնուն պնդումները բաւական կասկածելի են։ Մարդիկ սկսած են այս ու այս նման հարցերու շուրջ գործածել իրենց տրամաբանութեան կարողութիւնները. ու անոնք իրենց համոզումները շատ աւելի բուռն կերպով պիտի գործադրեն, երբ որ ըմբռնեն թէ Արդարութեան Աստուծոյն և Խաղաղութեան Իշխանին անուամբը իրենք խաբուած են իրենց «հոգևոր հովիւներ»էն։ Իրապէս, շատեր հակամէտ են եզրակացնելու թէ՝ Քրիստոնէութիւնը ինքնին խաբէութիւն մ'է, առանց ո՛և է հիման, և թէ՝ միաբանած քաղաքական իշխաններու հետ, անոր նպատակը պարզապէս հասարակութեան ազատութիւնները զսպել է։*

*Երանի՜ թէ մարդիկ իմաստուն ըլլային, ու բանային իրենց սրտերը, ըմբռնելու համար Տիրոջը գործն ու Ծրագիրը։ Այն ժամանակ ներկայ թագաւորութիւնները հետզհետէ պիտի լուծուէին—Բարեփոխութիւնը արագօրէն պիտի յաջորդէր ուրիշ բարեփոխութեանց, ու ազատութիւնը՝ ուրիշ ազատութեանց, և արդարութիւնն ու ճշմարտութիւնը պիտի պայքարէին՝ մինչև որ Երկրի մէջ իրաւունք հաստատուէր։ Սակայն անոնք պիտի չընեն ասիկա, ո՛չ ալ կրնան ընել իրենց ներկայ ինկած վիճակին մէջ. որով շահախնդրութեամբ զինուած՝ ամեն ոք*

*գերակշռութեան համար պիտի պայքարի, ու այս աշխարհի թագաւորութիւնները մեծ տառապանքի շրջանով մը պիտի ոչնչանան, որուն նմանը ազգ ըլլալէ ի վեր եղած չէր։ Անոնք որ ի զուր տեղը պիտի ջանան վեր բռնել այն տիրապետութիւնը, որը անցած է ու տրուած է Անոր՝ որուն որ իրաւունքն է, Տէրը անոնց ակնարկելով կ'ըսէ՝ թէ անոնք Իր դէմ է որ կը պայքարին—պայքար մը՝ որուն մէջ անշուշտ պիտի կորսնցնեն։ Նա կ'ըսէ.—*

*«Ինչո՞ւ հեթանոսները կը խռովին, ու ժողովուրդները պարապ բան կը մտածեն։ Երկրի թագաւորները ինքզինքնին կը հաստատեն, ու իշխանները մէկտեղ խորհուրդ կ'ընեն Տիրոջը դէմ ու Անոր Օծեալին դէմ, ըսելով, կտրենք անոնց կապերը, ու մեզմէ ձգենք անոնց լուծը։ Երկինքը բնակողը անոնց վրայ պիտի ծիծաղի. Տէրը ծաղր պիտի ընէ զանոնք։ Ան ատենը Իր բարկութեամբը պիտի խօսի անոնց, ու Իր սրտմտութեամբը պիտի խռովեցնէ զանոնք, ըսելով, Ես օծեցի Իմ Թագաւորս Իմ սուրբ Լերանս՝ Սիօնին վրայ։... Ուստի հիմա՝ ո՛վ թագաւորներ, միտքերնիդ առէ՛ք, երկրի դատաւորներ, խրատուեցէ՛ք։ Երկիւղով Տիրոջը ծառայեցէ՛ք, ու դողալով անկէ վախցէ՛ք։ Որդին (Աստուծոյ Օծեալը) համբուրեցէ՛ք (բարեկամացէք Անոր հետ), որ չբարկանայ, ու ճամբուն մէջ չկորսուիք, երբոր Անոր բարկութիւնը քիչ մը բորբոքի։ Երանի՜ այն ամենուն որ Անոր կը յուսան»—Սաղմ. Բ.* 1—6, 10—12։

## ՅԻՍՈՒՍ՝ ՀԱՍՏԱՏ ՀԻՄԸ

*Ո՛րքան հաստատուն է հիմն ձեր հաւատքին՝*
*Դըրուած Աստուծոյ խօսքին մէջ սրբազան.*
*Անսուտ են Անոր խոստումներն թանկագին,*
*Ձեզի՝ որ ընտրած էք Յիսուսն ապաստան:*

*«Երբեք մի՛ վախնար, բնաւ մի՛ վըհատիր,*
*Քանզի ես Աստուածդ եմ, պատրաստ քեզ նեցուկ.*
*Միշտ հետդ կ՚ըլլամ, խոստումներս չեն պատիր,*
*Ասպար, զօրավիգ է հզօր Իմ բազուկ:*

*«Հոգին, որ կ՚ընտրէ Զիս իրեն ապաւէն,*
*Բընաւ չեմ մատներ ձեռքը իր ոսոխին.*
*Եթէ յարձակի խաւարն ալ համօրէն,*
*Բընաւ, ո՛հ, բընաւ չեմ լըքեր այն հոգին»:*



# ԳԼՈՒԽ ԺԴ.

## ԱՍՏՈՒԾՈՑ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

Նիւթին Կարևորութիւնը.—Թագաւորութեան Բնոյթը.—Թագաւորութիւնը Աւետարանական Դարու Տևողութեան.—Սխալ Տեսութիւնները Պօղոսէն Ուղղուած.—Աստուծոյ Թագաւորութեան Երկու Մասերը.—Հոգեղէն Մասը ու Անոր Գործը.—Աշխարհային Մասը ու Անոր Գործը.—Ուխտին Արմատը՝ Որմէ կը Զարգանան Այս Ճիւղերը.—Թագաւորութեան Աշխարհային Մասը Իսրայէլական.—Կորսուած Ցեղերը.—Երկնային Երուսաղէմը.—Իսրայէլի Կորուստը և Վերականգնումը.—Թագաւորութեան Ժառանգները.—Երկաթէ Իշխանութիւնը.—Թագաւորութիւնը Հօրը Յանձնուած.—Աստուծոյ Սկզբնական Ծրագիրը Լիուլի Գործադրուած։

*ԱՅՆ որ Համաբարբառը ու Աստուածաշունչը ի ձեռին ուշադրութեամբ չէ ուսումնասիրած այս նիւթը, պիտի զարմանայ՝ երբ այսպիսի սիստէմաթիք պրպտումով մը, տեսնէ Ս. Գրոց մէջ այս նիւթին ունեցած կարևոր դիրքը։ Հին կտակարանը լեցուն է խոստումներով և մարգարէութիւններով, որոնց մէջ Ած.ոյ Թագաւորութիւնը և անոր Թագաւորը՝ Մեսիան, անոր կեդրոնական դէմքը կը կազմեն։ Ամէն Իսրայէլացիի յոյսն էր (Ղուկ. Գ. 15)՝ թէ որպէս ժողովուրդ, Աստուած Մեսիային ներքև*

պիտի բարձրացնէ իրենց ազգը. և թէ՝ երկար ժամանակէ ի վեր խոստացուած աշխարհի վրայ Հաստատելիք Աստուծոյ Թագաւորութեանը համար էր որ Տէրը՝ որպէս Թագաւոր՝ իրենց այցելեց։

Յովհաննէս՝ մեր Տիրոջ, Յիսուսի կարապետը և մունետիկը, իր առաքելութիւնը հետևեալ յայտարարութեամբ սկսաւ. «Ապաշխարեցէ՛ք. ինչու որ Երկնից Թագաւորութիւնը մօտեցած է»։ (Մատթ. Գ. 2)։ Տէրն ալ Իր առաքելութիւնը ճիշդ միևնոյն յայտարարութեամբը սկսաւ (Մատթ. Դ. 17). նոյնպէս ալ՝ Առաքեալները ղրկուած էին միևնոյն պատգամը քարոզելու։ (Մատթ. Ժ. 7։ Ղուկ. Թ. 2)։ Ո՛չ միայն Թագաւորութիւնը, հապա՝ անիկա իրապէս, Իր քարոզութեանց Գլխաւոր նիւթն էր (Ղուկ. Ը. 1։ Դ. 43։ ԺԹ. 11). իսկ ուրիշ նիւթերը, պարզապէս անոր հետ կապ ունենալնուն և կամ այս միակ նիւթին բացատրութեանը համար յիշուած էին։ Իր առակներուն մեծամասնութիւնը կա՛մ Թագաւորութեան նկարագրութիւններն էին տարբեր տեսակէտներէ ու տարբեր հանգամանքներով, և կա՛մ թէ ցոյց կուտային առ Աստուած ընելու բովանդակ նուիրման մեծ կարևորութիւնը, այն Թագաւորութեանը մէջ բաժին ունենալու համար. այս կերպով ուղղելով Հրէից սխալ ըմբռնումը՝ որոնք Թագաւորութեանը նկատմամբ ապահով էին, որովհետև Աբրահամի բնական որդիներն էին, որով խոստումներուն բնական ժառանդները։

Մեր Տէրը Յիսուս՝ Իր հետևորդներուն հետ ունեցած խօսակցութիւններովը, կը զօրացնէր ու կը քաջալերէր անոնց գալիք Թագաւորութեան ակնկալութիւնները, ըսելով՝ «Ես ձեզի Թագաւորութիւն մը ուխտ կ՚ընեմ, ինչպէս որ Իմ Հայրս Ինծի Թագաւորութիւն մը ուխտ ըրաւ, որ դուք Իմ սեղանէս ու-

*տէք ու խմէք Իմ Թագաւորութեանս մէջ, և աթոռներու վրայ նստիք՝ Իսրայէլի տասներկու ցեղերը դատելու (կառավարելու)»:* (Ղուկ. ԻԲ. 29, 30): *Դարձեալ, «մի՛ վախնար՝ փոքրիկ հօտ, ինչու որ ձեր Հայրը հաճեցաւ որ Թագաւորութիւնը ձեզի տալ»:* (Ղուկ. ԺԲ. 32): *Եւ երբ՝ փոխանակ Թագաւորուելու ու գահ բարձրանալու, իրենց ճանչցած Թագաւորը խաչուեցաւ, Անոր աշակերտները դառնապէս յուսախաբուեցան. ինչպէս որ անոնցմէ երկուքը Անոր յարութենէն յետոյ Էմմաւուսի ճամբուն վրայ յայտնեցին ենթադրուած օտարականին, ըսելով՝ «մենք* կը յուսայինք *թէ Անիկա էր որ Իսրայէլը պիտի ազատէր»—փրկելով զիրենք Հռովմէական լուծէն, ու Իսրայէլով կազմէր Աստուծոյ Թագաւորութիւնը, զօրութեամբ և փառքով: Սակայն, անոնք դառնապէս յուսախաբուած էին մի քանի օր առաջուայ փոփոխութիւններովը: Այն ատեն Յիսուս բացաւ անոնց հասկացողութիւնը, Աստուածաշունչէն ցոյց տալով անոնց՝ թէ Թագաւորութեան հաստատուելէն առաջ կարևոր էր Իր զոհաբերութիւնը:* —Ղուկ. ԻԴ. 21, 25—27:

*Աստուած կրնար Յիսուսի տալ երկրի տիրապետութիւնը առանց մարդը փրկելու. որովհետև «Մարդոց Թագաւորութեանը վրայ Բարձրեալը կը տիրէ, ու զանիկա Իր ուզածին կուտայ»:* (Դան. Դ. 32): *Սակայն Աստուած աւելի վսեմ Ծրագիր մ'ունէր, որը այսպիսի ծրագրով մը չէր կրնար իրականացնել: Այս կարգի Թագաւորութիւն մը կրնար օրհնութիւններ ընծայել, որոնք որքան ալ որ ընտիր ըլլային՝ միմիայն անցաւոր բնոյթ մը պիտի ունենային, քանի որ ամբողջ մարդկութիւնը մահուայ դատապարտութեան տակ էր: Որպէսզի Իր Թագաւորութեան օրհնութիւնները յաւիտենական և կատար-*

եալ ըլլային, մարդկութիւնը նախ պէտք էր փրկըուէր մահուընէ, ու այսպէս, ըստ օրէնի, ազատուէր այն դատապարտութենէն՝ որը Ադամով բոլորին վըրայ տարածուեցաւ։

Յիսուս՝ մարգարէութիւնները բացատրած ժամանակ, աշակերտներուն Գալիք Թագաւորութեան յոյսը արծարծած ըլլալը այն իրողութենէն կը տեսնուի՝ թէ երբ անոնց կուտար Իր վերջին հրաժեշտը, անոնք հարցուցին, «Տէ՛ր՝ Իսրայէլի Թագաւորութիւնը այս ժամանակի՞ս մէջ նորէն պիտի հաստատես»։ Իր պատասխանը՝ թէև ո՛չ բացայայտ, սակայն չժխտեց անոնց յոյսերը· Նա ըսաւ· «Ձեզի չվերաբերիր ժամերը ու ժամանակները գիտնալը, որն որ Հայրը Իր իշխանութեանը մէջ դրաւ»։—Գործ· Ա· 6, 7։

Արդարև, աշակերտները նախ առհասարակ, ընդհանուր Հրէից ազգին հետ Աստուծոյ Թագաւորութեան նկատմամբ անկատար գաղափար մ՚ունէին, ենթադրելով՝ թէ անիկա միմիայն աշխարհային Թագաւորութիւն մը պիտի ըլլայ· ինչպէս որ շատեր այսօր հակառակ ուղղութեամբ կը սխալին, ենթադրելով՝ թէ անիկա միմիայն Երկնային Թագաւորութիւն մը պիտի ըլլայ։ Մեր Տէր Յիսուսին շատ մը առակները ու մութ ասացուածքները, որոշեալ ատենին այս սխալ ըմբռնումները ուղղելու դիտաւորութեամբ տրուած էին։ Սակայն Նա շարունակ Թագաւորութեան մը, կառավարութեան մը գաղափարը կարտայայտէր, որը երկրիս վրայ պիտի հաստատուէր ու մարդոց մէջ տիրապետէր։ Ու Նա ո՛չ միայն անոնց մէջ ներշնչեց այդ Թագաւորութեան մէջ բաժին մը ունենալու յոյսը, հապա նաև պատուիրեց անոնց անոր հաստատմանը համար աղօթել—«Քու Թագաւորութիւնդ թող գայ· թող Քու կամքդ ըլլայ,

*ինչպէս երկնից մէջ՝ ՆՈՅՆՊԷՍ ԱԼ ԵՐԿՐԻՍ ՎՐԱՅ»։*

*Հրէից մէջ գտնուած աշխարհիկ իմաստուններուն համար, մեր Տէրը խաբեբայ մը ու մոլեռանդ մը թըւեցաւ. իսկ Անոր աշակերտները պարզապէս ապուշներ նկատուեցան։ Անոր իմաստութիւնը, սրադատութիւնը եւ հրաշքները, անոնք այնքան ալ չէին կրնար ուրանալ, ո՛չ ալ անոնց նկատմամբ տրամաբանական լուծում մը տալ. սակայն, անոնց անհաւատութեան տեսակէտէն, Անոր հաւաստումը թէ Ինքը աշխարհին ժառանգն էր, ու պիտի հաստատէր խոստացեալ Թագաւորութիւնը որը պիտի կառավարէր աշխարհը՝ եւ թէ՝ Իր հետեւորդները, որոնց բոլորն ալ խոնարհագոյն դասակարգէն էին, Իրեն հետ ժառանգակիցներ պիտի ըլլային այս Թագաւորութեանը մէջ՝ նկատի առնելու համար խիստ անհեթեթ կը թուէր։ Հռովմը՝ իր կրթուած մարտիկներովը, իր կարող հրամանատարներովն ու վիթխարի հարստութեամբը, աշխարհին տէրն էր, ու օրէ օր աւելի կը զօրանար։ Ո՞վ էր ուրեմն սա Նազովրեցին, եւ ովքե՞ր էին այս ձկնորսները, առանց դրամի կամ ազդեցութեան, եւ հասարակ ժողովուրդին միայն վտիտ հետեւողութեամբ մը։ Ովքե՞ր էին ասոնք, որոնք կը համարձակէին խօսելու երկար ժամանակէ ի վեր խոստացուած Թագաւորութեանը հաստատմանը մասին, որը երկրի ամենավսեմը ու ամենազօրաւորը պիտի ըլլար։*

*Փարիսեցիները՝ յուսալով ցոյց տալ մեր Տիրոջ ենթադրական հաւաստումներուն տկարութիւնը, ու անով բանալ Անոր խաբուած հետեւորդներուն աչքերը, պահանջեցին Անկէ—Ե՞րբ Քու այս քարոզած Թագաւորութիւնդ պիտի սկսի ինքզինքը արտայայտել—ե՞րբ պիտի հասնին Քու զինուորներդ—Ե՞րբ պիտի յայտնուի Աստուծոյ այս Թագաւորութիւնը։*

*(Ղուկ. ժէ. 20—30)։ Մեր Տիրոջ պատասխանը անոնց նոր մտածում մը պիտի տար՝ թէ անոնք նախապաշարուած չըլլային Անոր հանդէպ, ու կուրացած չըլլային իրենց ենթադրական Գիտութեամբը։ Նա պատասխանեց թէ Իր Թագաւորութիւնը իրենց ակնկալած կերպովը երբեք պիտի չյայտնուի։ Այն Թագաւորութիւնը որ Նա քարոզեց, և որուն հրաւիրեց Իր հետևորդները ժառանգակից ըլլալու՝ աներևոյթ Թագաւորութիւն մ՚էր, որով անոնք պէտք չէ ակնկալէին զայն տեսնելու։ Նա «պատասխան տալով ըսաւ. Աստուծոյ Թագաւորութիւնը* դրսէն երև*ցած* բաներով չի գար. ու պիտի չըսեն թէ ահա՛ հոս է կամ ահա՛ հոն, ինչու որ Աստուծոյ Թագաւորութիւնը ձեր ներսիդին է (պիտի ըլլայ*))»։ Մէկ խօսքով՝ Նա ցոյց տուաւ թէ երբ որ Իր Թագաւորութիւնը գայ, անիկա ամեն տեղ ներկայ պիտի ըլլայ, ու ամենուրեք պիտի զգացուի անոր զօրութիւնը, սակայն ո՛չ մէկ տեղ տեսանելի պիտի ըլլայ։*

*Այսպէս, Նա անոնց գաղափար մը տուաւ Իր ՚քարոզած հողեղէն Թագաւորութեանը նկատմամբ. սա-*

---

*Wilson*ի* Diaglott*ը* *և* Rotherham*ի* թարգմանութիւնը ասիկա «Among You», իսկ Անգլիերէնի հասարակ թարգմանութիւնը «in your midst» թարգմանած են, որոնց երկուքն ալ «ձեր մէջ» կը նշանակեն։ Ասիկա անտարակոյս պիտի չհամաձայնի այն տեսութեան հետ՝ թէ այն Թագաւորութիւնը զոր Յիսուս կը հաւաստէր թէ հաստատուելու մօտ է, Փարիսեցիներուն ներսի դին էր, անոնց սըրտերուն մէջ, քանի որ Նա զանոնք կեղծաւորներ և ծեփած գերեզմաններ կը կոչէր։ Այս Թագաւորութիւնը՝ երբ որ հաստատուի, ամեն դասակարգներուն միջև պիտի ըլլայ, կառավարելով զանոնք։

կային անոնք անպատրաստ էին, որով չընդունեցին զայն։ Խոստացուած Թագաւորութեան նկատմամբ Հրէից ակնկալութիւնը իր մէջ մաս մը ճշմարտութիւն կը պարունակէր որը որոշեալ ատենին պիտի իրականանայ, ինչպէս որ ցոյց պիտի տանք. սակայն մեր Տիրոջ հոս ըրած ակնարկութիւնը Թագաւորութեան հոգեղէն մասին նկատմամբ էր, որը աներեւոյթ պիտի ըլլայ։ Եւ որովհետև Թագաւորութեան այս մասը Նախ պիտի հաստատուի, անոր ներկայութիւնը աներևոյթ պիտի ըլլայ, ու ժամանակ մը պիտի չճանչցուի։ Աստուծոյ Թագաւորութեան այս հոգեղէն մասին ժառանգութեան պատեհութիւնը այն ատեն եղած միակ առաջարկն էր, և որը մեր վերին կոչման միակ յոյսն է եղած ներկայ Աւետարանական Դարու տևողութեանը։ Որով Յիսուս միմիայն անոր ակնարկեց։ (Ղուկ. ԺԶ. 16)։ Ասիկա աւելի որոշ կերպով պիտի տեսնուի երբ աւելի յառաջանանք նիւթին մէջ։

Թերևս, մասնաւորապէս Փարիսեցւոց մէջ տիրող հասարակաց այս հակառակ զգացման համար էր որ Նիկոդեմոս գիշերանց Յիսուսին կուգար, լուծելու համար այն խորհուրդը՝ որուն մասին անհանգիստ էր, և սակայն, ըստ երևոյթին կ՚ամչնար հրապարակաւ ընդունելու թէ այս բաները իր մտքին մէջ ուէ արժէք ունէին։ Յովհաննու Գ. Գլուխին մէջ արձանագրուած Տիրոջ և Նիկոդեմոսի միջև տեղի ունեցած խօսակցութիւնը թէև մասամբ միայն յիշուած է՝ սակայն Աստուծոյ Թագաւորութեան բնոյթին շուրջ մեզի աւելի հեռաւոր տեսութիւն մը կուտայ։ Անտարակոյս, խօսակցութեան գլխաւոր կէտերը դիտմամբ յիշուած են, որպէսզի ասոնցմէ իսկոյն կարենանք ամբողջովին նպատակը ըմբռնել, որը տրամաբանօրէն կրնանք հետևեալ կերպով մեկնաբանել։

Նիկոդեմոս.—«Ռա՛բբի, գիտենք որ Դուն Աստուծմէ ղրկուած ուսուցիչ մ՚ես. որովհետեւ մէկը չի կրնար ընել այդ հրաշքները որ Դուն կընես, թէ որ Աստուած իր հետը չըլլայ». սակայն Քու խօսքերէդ ոմանք ինծի խիստ անըմբռնելի կը թուին, որոնց նկատմամբ լուսաբանութիւն մը խնդրելու համար եկած եմ։ Զոր օրինակ՝ Դու և աշակերտներդ հոս հոն կը պտըտիք, քարոզելով՝ «Երկնից Թագաւորութիւնը մօտեցած է». սակայն Դուք ո՛չ բանակ ունիք, ո՛չ հարստութիւն և ո՛չ ալ ազդեցութիւն, ու ըստ բոլոր երեւոյթներուն՝ այս հաւաստումը ճշմարիտ չէ. ու այս կէտին մէջ այնպէս կը թուի թէ Դուք կը խաբէք ժողովուրդը։ Փարիսեցիները ընդհանրապէս Քեզ խաբեբայ մը կը նկատեն, բայց ես վստահ եմ որ Քու ուսուցումներուդ մէջ ճշմարտութիւն կենալու է, «ինչու որ մէկը չի կրնար ընել այս հրաշքները որ Դուն կ՚ընես, թէ որ Աստուած իր հետը չըլլայ»։ Իմ այցելութեանս նպատակն է հարցնել՝ թէ ի՞նչ տեսակ, ե՞րբ և ո՞ւսկից է այս Թագաւորութիւնը որ Դուն կը քարոզես, և թէ՝ ե՞րբ և ի՞նչպէս պիտի հաստատուի։

Յիսուս.—«Քու՝ Երկնից Թագաւորութեան նկատմամբ կատարեալ հասկացողութիւն մը ունենալու խնդրանքդ քեզ գոհացնելու աստիճան չէ կարելի ներկայիս պատասխանել. ո՛չ թէ Ես անոր մասին կատարեալ գիտութիւն մը չունիմ, հապա՝ թէ դուն ներկայ վիճակիդ մէջ չես կրնար ըմբռնել կամ գնահատել զայն, եթէ նոյնիսկ լիուլի բացատրեմ զայն քեզի։ «Թէ որ մարդ մը նորէն չծնանի*, չի կրնար

*Յունարէն *ծէննաօ* բառը և իր ածանցումները, երբեմն *յղանալ* և երբեմն ալ *ծնիլ* թարգմանուած են, որը իրապէս երկու գաղափարներն ալ կը պա-

*Աստուծոյ Թագաւորութիւնը* տեսնել, (*Յունարէն* Իիտօն**, *գիտնալ կամ ճանօթանալ*)»։

*Նոյնիսկ իմ աշակերտներս դեռ խիստ անորոշ պա-*

---

րունակէ, ու այս երկու Հայերէն բառերէն ո՛և է մէկովը կարելի է թարգմանել, միայն թէ նախադասութեան իմաստին համեմատ։ Երկու գաղափարներն ալ՝ յղանալ և ծնիլ, շարունակ բառին մէջ են. որով երբ մէկը յիշուած է, միւսը շարունակ ակնարկուած է, ինչպէս որ ծնունդը յղացման բնական արդիւնքն է, ու յղացումը ծնունդին բնական նախընթացն է։ Երբոր դերակատարը՝ որուն ընկերացած է *ճէննաօն* այր մէկն է՝ *յղացած* պէտք է թարգմանուի. իսկ երբ իգական է՝ ծնած։ Որով Ա. Յովհ. Բ. 29։ Գ. 9։ Դ. 7։ Ե. 1, 18ին մէջ *ճէննաօն յղացած* պէտք է թարգմանուի, որովհետև դերակատարը Աստուած (արական) է։

Սակայն, երբեմն թարգմանութիւնը գործին բնոյթէն կախում ունի, հոգ չէ թէ արական կամ իգական ըլլայ։ Որով երբ Յունարէն *էք* ի հետ գործածուած է, որը *էն* կը նշանակէ, ծնած պէտք է թարգմանուի։ Ուրեմն Յովհ. Գ. 5, 6ին մէջ ճէննաօն ծընած պէտք է թարգմանուի—«ջուր *էն*», «մարմին '*էն*», «հոգի *էն*»։

**Այս միևնոյն Յունարէն բառը Գործ. ԺԵ. 6ին մէջ *խորհելու* թարգմանուած է։ «Առաքեալները և երէցները հաւաքուեցան այս բանիս վրայ *խորհելու* (գիտնալու կամ հասկնալու)»։ Միևնոյն բառը Հըռովմ. ԺԱ. 22ին մէջ *տես* թարգմանուած է, «Ուստի *տես* (նկատէ, ըմբռնէ) Աստուծոյ քաղցրութիւնը և խստութիւնը»։ Նոյնպէս ալ Ա. Յովհ. Գ. 1— «*Տեսէք* (նկատեցէք, գիտցէք, հասկցէք)՝ Հայրը ի՛նչպիսի սէր շնորհեց մեզի»։

ղափարներ ունին իրենց քարոզած Թագաւորութեանը բնոյթին նկատմամբ։ Ես չեմ կրնար պատմել անոնց, այն միևնոյն պատճառաւ որ քեզի չեմ կրնար պատմել, որովհետև պիտի չըմբռնեն։ Սակայն, Նիկողեմոս՝ Աստուծոյ վարուելակերպին մէկ առանձնայատկութիւնն է, որ աւելի լոյս տալէ առաջ, նախապէս ստացուած լոյսին հանդէպ հնազանդութիւն կը պահանջէ. իսկ Թագաւորութեանը մէջ բաժին ունենալու արժանի համարուողներուն ընտրութեանը մէջ, հաւատքի արտայայտութիւն մը կը պահանջուի։ Անոնք այնպիսի անձնաւորութիւններ պէտք է ըլլան, որոնք յանձն կառնեն քայլ առ քայլ Աստուծոյ առաջնորդութեանը հետևելու, շատ անգամներ յառաջացման միայն մէկ քայլ որոշ կերպով տեսնելով։ Անոնք հաւատքով կը քալեն և ո՛չ թէ տեսողութեամբ։

Նիկողեմոս.—Բայց ես Ձեզ չեմ հասկնար։ Ի՞նչ ըսել կ՚ուզէք։ «Ի՞նչպէս կրնայ մարդ մը յղանալ որ ծերացած է. հնարաւո՞ր բան է որ նորէն իր մօրը որովայնը մտնէ ու ծնանի»։ Կամ թէ՝ մի՞թէ ըսել կուզէք թէ «Յովհաննէս Մկրտիչ»էն քարոզուած ապաշխարութիւնը, ու զայն Ջրի մկրտութեամբ ցուցադրելը, կերպով մը այլաբանական ծնունդ մ՚է։ Ես նշմարած եմ որ Ձեր աշակերտներն ալ միևնոյն կերպով կը քարոզեն ու կը մկրտեն։ Ա՞յս է արդեօք նոր ծնունդը, որը Թագաւորութիւնը տեսնողներուն ու մտնողներուն համար կարևոր է։

Յիսուս.—Մեր ազգը նուիրուած ազգ մ՚է, ուխտի ժողովուրդ մը։ Անոնք բոլորն ալ Մովսէսի մկրտուեցան ամպին ու ծովին մէջ, Եգիպտոսէն ելած ժամանակ։ Աստուած Մովսէսով ընդունեց զանոնք, որը անոնց Սինայ Լերան վրայ տրուած ուխտին միջնորդն էր. բայց՝ անոնք մոռցած են իրենց

ուխտը. ոմանք բացէ ի բաց մաքսաւորներու և մեղաւորներու պէս կ'ապրին, իսկ ուրիշ շատեր ալ ինքն—արդար կեղծաւորներ են. որով Յովհաննէսին ու աշակերտներուս քարոզութիւնը Աստուծոյ վերադառնալու և հաստատուած ուխտը ճանչնալու ապաշխարութիւն մ'է. իսկ Յովհաննէսին մկրտութիւնը սրտի ու կենաց այս ապաշխարութիւնը և բարեկարգութիւնը կը նշանակէ, և ո՛չ թէ նոր ծնունդը: Բայց եթէ ասկէ աւելին չունենաս՝ երբեք պիտի չտեսնես Թագաւորութիւնը: Եթէ Յովհաննէսի մկրտութեամբ պատկերացուած սրտի բարեկարգութենէն ի զատ Հոգւոյ յղացում մը և ծնունդ մը չընդունիս՝ դուն չես կրնար տեսնել Իմ Թագաւորութիւնս: Ապաշխարութիւնը քեզ արդարացած վիճակի մը պիտի վերադարձնէ. այդ վիճակիդ մէջ՝ դուն անմիջապէս կարող պիտի ըլլաս զԻս իբր Մեսիայ, Մովսէսին հակապատկերը ճանչնալ. ու այսպէս, Ինծի նուիրուելով՝ դուն Հօրմէն Նոր Կենաց և Աստուածային Բնութեան պիտի յղանաս, որը եթէ զարգանայ ու կենդանանայ՝ պիտի ապահովէ քեզ Առաջին Յարութեան մէջ իբր նոր արարած, հոգեղէն էակ ծնանելու. ու որպէս նոր արարած՝ դուն ո՛չ միայն պիտի տեսնես, այլ նաև պիտի ժառանգես Թագաւորութիւնը:

Հոգւոյ այս նոր ծնունդի միջոցաւ գործուած փոփոխութիւնը արդարև հիանալի է, Նիկոդեմոս. որովհետև այն որ մարմինէն ծնած է մարմին է, բայց այն որ Հոգիէն ծնած է Հոգի է: Ուրեմն, Իմ առաջուայ Խօսքիս վրայ մի զարմանար՝ թէ դուն պէտք է վերէն յղանաս որպէսզի կարենաս հասկնալ, գիտնալ ու գնահատել այն բաները որոնց մասին կը հարցնես: «Մի զարմանար որ քեզի ըսի, պէտք է ձեզի նորէն ծնանիլ»: Քու մարմինէ ծնած ներկայ

վիճակիդ, ու Հոգիէն ծնածներու—վիճակին մէջ գտնուած տարբերութիւնը, որոնք Իմ քարոզած Թագաւորութիւնս պիտի մտնեն կամ զայն կազմեն—խիստ մեծ է։ Թող որ քեզի օրինակ մը տամ, որով դուն գաղափար մը պիտի կազմես այն էակներուն մասին, որոնք Հոգիէն ծնանելով՝ պիտի կազմեն այս Թագաւորութիւնը. — «Հովը ուր որ ուզէ՝ կը փչէ, և անոր ձայնը կը լսես, բայց չես գիտեր ո՛ւրկէ կուգայ կամ ո՛ւր կերթայ. այնպէս ալ է այն ամենը որ Հոգիէն կը ծնանի»։ Հովը հոս հոն կը փչէ, բայց զինքը չես տեսներ, թէև ան իր ազդեցութիւնը ըզգալի ընել կուտայ քու չուրջդ. ոչ ալ գիտես թէ ո՛ւրկէ կուգայ և ո՛ւր կե՛րթայ։ Ասիկա իմ ամենալաւ օրինակս է որ կրնամ քեզի տալ յարութեան ժամանակ Հոգիէն ծնանողներուն նկատմամբ, անոնք որ «ներս պիտի մտնեն» կամ կազմեն Թագաւորութիւնը զոր ներկայիս կը քարոզեմ։ Անոնք բոլորն ալ Հովի նման աներևոյթ պիտի ըլլան. ու մարդիկ՝ որոնք Հոգիէն չեն ծնած, ո՛չ անոնց ուրկէ գալը պիտի գիտնան, ո՛չ ալ ուր երթալնին։

Նիկոդեմոս.—Ի՞նչպէս կրնայ ասիկա ըլլալ—աներևո՛յթ էակներ։

Յիսուս.—«Դուն Իսրայէլի մէջ վարդապետ մ'ես, և այս բաները չե՞ս գիտեր»—թէ Հոգեղէն էակներ կրնան ներկայ ըլլալ՝ բայց անտեսանելի։ Դու որ կը փորձես ուրիշներուն սորվեցնել, միթէ բնաւ չե՞ս կարդացեր Եղիսէին ու անոր ծառային՝ և կամ Բաղաամին մասին, նոյնպէս Ս. Գրոց տուած ուրիշ շատ մը օրինակներու մասին, որոնք կը նկարագըրեն այս սկզբունքը, թէ Հոգեղէն էակները կրնան ներկայ ըլլալ մարդոց մէջ՝ առանց սակայն անոնցմէ տեսնուելու։ Դարձեալ, դուն Փարիսեցւոց դասին կը վերաբերիս, որոնք Հրապարակաւ կը հաւատան

*հրեշտակներու գոյութեանը որպէս հողեղէն էակներ։ Բայց ասիկա կը պատկերացնէ այն՝ որը սկիզբէն ըսի քեզի, թէ եթէ մէկը վերէն չծնանի, չի կրնար տեսնել (գիտնալ, ծանօթանալ կամ տրամաբանականօրէն ըմբռնել) Աստուծոյ Թագաւորութիւնը ու անոր յարակից այլևայլ բաները։*

*Եթէ կուզես ներս գալ ու Ինձ հետ ժառանգակից մը ըլլալ այս Թագաւորութեանը զոր Ես կ՚աւետեմ, պարտիս քայլ առ քայլ լոյսին հետևիլ։ Ու երբ կ՚ընես զայս, աւելի լոյս պիտի ստանաս, ու ասիկա տեղի պիտի ունենայ այնքան արագ, որքան որ դու զայն ընդունելու պատրաստ ըլլաս։ Ես քարոզած եմ այս բաները որոնց յարմար ժամանակն է ներկայիս, և որոնք կրնաս ըմբռնել, նոյնպէս ալ կատարած հրաշքներս. ու դուն թէև զիս Աստուծմէ ղրկուած ուսուցիչ մը կ՚ընդունիս, սակայն քու հաւատքդ հրապարակաւ չես արտայայտած՝ բացէ ի բաց Իմ աշակերտս ու հետևորդս ըլլալով։ Դուն պէտք չէ աւելի լոյս տեսնել ակնկալես, մինչև որ տեսածներուդ համաձայն չքալես. որ ամէն Աստուած քեզի աւելի լոյս և ապացոյց պիտի տայ յաջորդ քայլին համար. «Ճշմարիտ ճշմարիտ կ՚ըսեմ քեզի, թէ ինչ որ* գիտենք՝ *կը խօսինք, և ինչ որ տեսանք՝ կը վկայենք, ու դուք (Փարիսեցիներդ) մեր վկայութիւնը չէք ընդունիր։ Եթէ երկրաւոր բաները ձեզի զրուցեցի ու չէք հաւատար, ի՞նչպէս պիտի հաւատաք՝ եթէ երկնաւոր բաները ձեզի զրուցեմ»։ Անպէտ բան մը պիտի ըլլայ Ինծի, փորձել ձեզի երկնային բաներ պատմելու. որովհետև դուք պիտի չհամոզուիք, ու Իմ քարոզութիւնս ձեզի աւելի յիմարական պիտի թուի։ Եթէ Իմ սորվեցուցածս, որը աշխարհային բնոյթ ունի և կամ աշխարհային բաներով ներկայացուած է, որը թէև դուն կ՚ըմբռնես՝ բայց քու*

*մտքիդ չէ տուած պէտք եղած ապացոյցը, առաջնորդելու քեզ հրապարակաւ Իմ աշակերտս ու հետեւորդս ըլլալու՝ ուրեմն աւելի համոզական պիտի չըլլայ, եթէ երկնային բաներ պատմեմ քեզի, որոնց մասին ոչինչ գիտես. որովհետեւ ո՛չ մէկ մարդ երբեք երկինք ելած է, որով ո՛չ ոք կրնայ հաստատել Իմ վկայութիւնս: Ե՛ս միայն կ՚ըմբռնեմ երկնային բաները, որ երկինքէն իջայ: «Եւ մէ՛կը երկինք չելաւ, բայց անիկա միայն որ երկինքէն իջաւ, Որդին Մարդոյ*»: Երկնային բաներու գիտութիւնը Հոգիէն յղանալէն վերջը միայն կարելի է ընդունիլ. իսկ բուն երկնային բաները՝ Հոգիէն ծնած ժամանակ, որպէս հողեղէն էակներ:*

*Որով, Տէրը համբերութիւն գործածելու էր, Թագաւորութեան բնոյթը քարոզելու համար այնպիսիներու, որոնց նախապաշարումները և ուսումը արգելք կը հանդիսանային իրենց, անոր երկրային մակարդակի խեղաթիւրեալ տեսակէտներէն զատ ուրիշ բան տեսնելու: Սակայն և այնպէս, Մեսիական Թագաւորութեան մէջ բաժին ունեցող մասնաւոր դասին ընտրութիւնը յառաջացաւ, թէպէտեւ Իսրայէլէն միայն մի քանիներ ընտրուած էին, և որը ամբողջ եօթը տարի միմիայն անոնց տրուած էր: Ինչպէս որ Աստուած կանխատեսած էր, անոնց՝ անոր համար անպատրաստ ըլլալը, ու որպէս ժողովուրդ իրենց ներկայացուած պարագաները չ՚ըմբռնելը և անոնց չհետեւիլը պատճառ եղան Մեսիական Թագաւորութեան մէջ բաժին ունենալու պատեհութեան կորըստեանը, որոնցմէ միայն մնացորդ մը ստացաւ*

**Որ երկինքն է* խօսքերը (համար 13) ամենահին և ամենաարժանահաւատ բնագիրներուն մէջ չեն գտնուիր:

*զայն, իսկ այդ պատեհութիւնը Հեթանոսաց եկաւ, անոնցմէ ալ «Իր անուանը ժողովուրդ մը առնելու»։ Ասոնց մէջ ալ միայն մնացորդ մը, «փոքրիկ հօտ» մը կը գնահատէ պատեհութիւնը և արժանի կը համարուի Անոր Թագաւորութեանը և փառացը ժառանգակից ըլլալու։*

*Սուղի արժած է այն մոլորութիւնը որ ներածուած է անուանական Քրիստոնեայ Եկեղեցիին մէջ, որը սխալ կը ներկայացնէ խոստացուած այս Թագաւորութիւնը· ըսելով թէ անիկա միմիայն անուանական Եկեղեցին կը նշանակէ իր ներկայ վիճակին մէջ, և որուն գործը միայն շնորհաց գործ մ'է հաւատացեալներուն սրտերուն մէջ· ու այս մոլորութիւնը ա՛յնչափ խոր արմատ դրած է, որ անուանական Եկեղեցւոյ՝ աշխարհին հետ ունեցած պիղծ դաշնակցութիւնը և իշխանութիւնը շատերէն որպէս Աստուծոյ Թագաւորութիւնը ընդունուած է որ կը տիրէ աշխարհիս վրայ։ Արդարև, տեսակէտով մը, Եկեղեցին ներկայիս Աստուծոյ Թագաւորութիւնն է, ու հաւատացելոց սրտերուն մէջ շնորհաց գործ մը տեղի կ'ունենայ· սակայն խորհիլ թէ անիկա է ամենը, և ուրանալ Աստուծոյ ապագայ ճշմարիտ Թագաւորութիւնը որը բոլոր երկնից տակը պիտի հաստատուի, ուր Աստուծոյ կամքը պիտի գործադրուի ինչպէս որ Երկնքի մէջ՝ առ ոչինչ գրել ու իմաստէ զրկել կը նշանակէ Աստուածաշունչի այն.ամենազօրաւոր և խիստ ակներև խոստումները, որոնք արձանագրուած են մեր Տիրոջմէն, Առաքեալներէն և Մարգարէներէն, մեզ խրախուսելու և յոյս ներշնչելու համար աշխարհը յաղթելու դժուար գործին մէջ։*

*Մեր Տիրոջ առակներուն մէջ, Եկեղեցին յաճախ Թագաւորութիւնը կոչուած է· իսկ Առաքեալը անոր*

մասին կը խօսի որպէս այն Թագաւորութիւնը, որուն վրայ ներկայիս Քրիստոս կը թագաւորէ, ըսելով թէ Աստուած մեզ խաւարի թագաւորութենէն Իր սիրելի Որդւոյն Թագաւորութեանը փոխանցած է։ Մենք որ ներկայիս ընդունած ենք Քրիստոսը՝ կը ճանչնանք Իր գնած տիրապետութեան իրաւունքը, ու Իրեն երախտագիտական և կամաւոր հնազանդութիւն կը մատուցանենք Իր բռնի ուժով զայն աշխարհի վրայ հաստատելէն առաջ։ Մենք կ'ըմբռնենք այն տարբերութիւնը, որը գոյութիւն ունի արդարութեան օրէնքներուն՝ զորս Նա պիտի բռնադատէ, և չափըչտակիչէն պահպանուած խաւարի թագաւորութեան միջև, որը ներկայիս այս աշխարհիս իշխանն է։ Այսպէս, Աստուծոյ խոստումներուն մէջ ունեցած մեր հաւատքը կը փոխէ մեր հաւատարմութիւնը, ու մենք զմեզ նոր Իշխանին հպատակ կը համարենք, և Իր շնորհիւը, Իրեն հետ ժառանգակիցներ՝ այն Թագաւորութեանը մէջ, որը զօրութեամբ և մեծ փառքով պիտի հաստատուի։

Այս իրողութիւնը ո՛չ մէկ կերպով կը ջնջէ այն խոստումը՝ թէ ի վերջոյ Քրիստոսի Թագաւորութիւնը «ծովէն մինչև ծովը պիտի տիրէ, ու գետէն մինչև երկրի ծայրերը» (Սաղմ. ՀԲ. 8). թէ՝ ամեն ազգերը պիտի ծառայեն ու հնազանդին Անոր. և թէ՝ Անոր առջև ամեն ծունկ պիտի ծռի, երկնաւորներուն և երկրաւորներուն մէջ։ (Դան. Է. 27։ Փիլիպ. Բ. 10)։ Մինչդեռ, ընդհակառակը, «փոքրիկ հօտ»ին ներկայիս ընտրութիւնը կը հաստատէ այս խոստումները։

Երբ մեր Տիրոջ առակները ուշադրութեամբ քըննուին՝ պիտի տեսնուի որ անոնք որոշ կերպով կ'ուսուցանեն թէ Աստուծոյ Թագաւորութեան զօրու-

Թեամբ գալը կամ հաստատուիլը ապագային է. և անշուշտ այն ժամանակ միայն՝ երբ որ Թագաւորը գայ։ Այսպէս, երիտասարդ ազնուականին Թագաւորութիւն մը ստանալու համար հեռաւոր երկիր մը երթալու և վերադառնալու առակը (Ղուկ. ԺԹ. 11—15), Թագաւորութեան հաստատուիլը որոշ կերպով Քրիստոսի վերադարձի ժամանակին կը զետեղէ։ Իսկ երկար տարիներ վերջը, Տիրոջմէն Եկեղեցիին ղրկուած պատգամն էր, «Մինչև ի մահ հաւատարիմ եղիր, և Ես քեզի պիտի տամ կենաց պսակը»։ (Յայտ. Բ. 10)։ Ասկէ որոշ կերպով կը տեսնուի որ, Անոր հետ իշխող Թագաւորները այս կեանքի տեւողութեանը մէջ պիտի չթագաւորուին, և ո՛չ ալ իշխեն։

Ուրեմն, ներկայիս Եկեղեցին Աստուածային զօրութեամբ և փառօք հաստատուած Թագաւորութիւնը չի ներկայացներ, այլ անոր դեռափթիթ ու սաղմնային վիճակը։ Արդարև, Նոր Կտակարանի բոլոր արտայայտութիւնները անոր նկատմամբ այսպէս կ'ուսուցանեն։ Աստուծոյ Թագաւորութիւնը ներկայիս աշխարհէն կը բռնաբարուի. անոր Թագաւորը խոշտանգուեցաւ և խաչուեցաւ, և ով որ Անոր քայլերուն հետևի, միևնոյն կերպով պիտի հալածուի ու խոշտանգուի։ Սակայն նկատի առնելու է որ ասիկա միայն իրական Եկեղեցիին փորձառութիւնն է, և ո՛չ թէ անուանականին։ Բայց ներկայիս մեզի (Եկեղեցիին, սաղմնային Թագաւորութեան) տրուած խոստումն է թէ՝ եթէ Քրիստոսի հետ չարչարուինք, որոշեալ ատենին, երբ որ Նա ստանայ Իր մեծ զօրութիւնը և Թագաւորէ, մենք ալ պիտի փառաւորուինք և Անոր հետ Թագաւորենք։

Յակոբոսի (Բ. 5)ը, մեր Տիրոջ ուսուցման համաձայն կ'ըսէ մեզ թէ Աստուած ըստ այս աշխարհի ըմ-

բռնումին, խեղճերը ու անարգները ընտրած է, ո՛չ թէ ներկայիս թագաւորելու, այլ «Իր խոստացած Թագաւորութեան ժառանգները» ըլլալու ապագային։ Տէրը կ՚ըսէ. «ո՜րչափ դժուար է անոնց որ հարստութիւն ունին, Աստուծոյ թագաւորութիւնը մտնել» (Մարկ. Ժ. 23)։ Որոշ է թէ Տէրը հոս անուանական Եկեղեցին ըսել չ՚ուզեր, որը ներկայիս կը տիրէ աշխարհին հետ. և որուն մէջ խռնուած են հարուստները։ Պետրոս՝ Թագաւորութեան ժառանգներուն կը խրատէ համբերող, յարատեւող, գօրաւոր և հաւատացող ըլլալ, ըսելով՝ «Ասոր համար, եղբայրներ, աւելի ջանք ըրէք որ ձեր կոչումը ու ընտրութիւնը հաստատէք, վասնզի զայս ընելով՝ բնաւ պիտի չվրիպիք. քանզի այսպէս ձեզի առատօրէն պիտի շնորհուի մեր Տէր ու Փրկիչ Յիսուս Քըրիստոսի յաւիտենական Թագաւորութիւնը մտնել»։ —Բ. Պետ. Ա. 10, 11։

Պօղոսի Հռովմ. ԺԴ. 17ին մէջ ըսած խօսքերը ոմանցմէ ենթադրուած է թէ այլաբանական թագաւորութիւն մը կը մատնանշէ. բայց երբ որ ան իր յարակից համարներուն լոյսովը կը քննենք, կը տեսնենք որ անիկա պարզապէս հետեւեալը կը նշանակէ. Մենք եղբայրներ, ներկայիս Աստուծոյ սիրելի Որդւոյն Թագաւորութեանը փոխադրուած ըլլալով՝ մեր կերակուրներուն եւայլնի նկատմամբ որոշ ազատութիւններ ունինք, որոնք մեզի՝ Հրէաներուս չէին պատկանէր Օրէնքին ներքև (համար 14). սակայն աւելի լաւ է որ չգործածենք այս ազատութիւնը՝ եթէ ան հոգեւորապէս տկար եղբայրներուն գայթակղութիւն պիտի պատճառէ, ու բռնաբարէ անոնց խիղճերը։ Ուրեմն, մեր կերակուրի ազատութեամբը չգայթակղեցնենք մեր եղբայրները որոնց համար Քրիստոս մեռաւ. հապա պէտք է յիշենք թէ Թագաւո

րութեան պատեհութիւնները թէ՛ ներկայիս և թէ՛ ապագային, կերակուրի ազատութենէն խիստ աւելի մեծ օրհնութիւններէ կը բաղկանան. այսինքն՝ ուղիղը գործելուն մէջ մեր ազատութիւնը, Քրիստոսի միջոցաւ Աստուծոյ հանդէպ ունեցած մեր խաղաղութիւնը, և Աստուծոյ Ս. Հոգիին մէջ բաժին ունենալու մեր ուրախութիւնը: Թագաւորութեանը այս ազատութիւնները (ներկայիս և միշտ) ո՛րքան մեծ են որ, փոքրագոյն ազատութիւնները, ինչպէս կերակուրի՝ լաւ է զոհել ներկայիս, մեր եղբօր լաւութեանը համար:

Որով, հոգ չէ թէ Ս. Գրոց որ տեսակէտէն կը դիտենք, հակասական կը գտնենք այն գաղափարը՝ թէ Թագաւորութեան խոստումները առասպելական խաբէութիւններ են, կամ՝ թէ մեր ներկայ վիճակները կը լրացնեն այս խոստումները:

Վաղեմի Եկեղեցիին համար՝ Թագաւորութեան պատւոյ և Տիրոջը հետ ժառանգակից ըլլալու խոստումները, այն ատենուայ փորձութեանց և հալածանաց մէջ հաւատարիմ մնալու զօրաւոր շարժառիթներ էին. հալածանքներ՝ որոնց մասին իրենք կանխազգուշացուած էին. և Յայտնութեան մէջ եօթը Եկեղեցիներուն համար տրուած մխիթարանքի և խրախուսական խօսքերուն ո՛չ մէկը այնքան որոշ և զօրաւոր կերպով աչքի կը զարնէ, քան անոնք, որ կը յայտարարեն, «Այն որ կը յաղթէ, Ինծի հետ Իմ աթոռս նստիլ պիտի տամ անոր, ինչպէս որ Ես ալ յաղթեցի ու Իմ Հօրս հետ Անոր աթոռը նստայ». Նոյնպէս, «Այն որ կը յաղթէ, անոր իշխանութիւն պիտի տամ ազգերուն վրայ»:

Ասոնք այն տեսակ խոստումներ են, որոնք չէ կարելի տրամաբանօրէն սխալ թարգմանելով՝ ներկայիս սրտի մէջ տեղի ունեցող շնորհաց գործին վե-

րագրել, ո՛չ ալ ներկայ կեանքի տեւողութեան ազդաց վրայ տիրապետութեան մը՝ քանի որ եթէ անոնք պիտի յաղթեն, պարտին ծառայութեան մէջ իրենց մահուամբը տանիլ յաղթանակը, ու այսպէս շահիլ Թագաւորութեան պատիւները։—Յայտ. Ի. 6։

Սակայն մարդկային բնութիւնը կը ջանայ խուսափիլ տառապանքէ, ու շարունակ պատրաստ է ամուր բռնելու պատիւն ու զօրութիւնը. որով կը տեսնենք թէ նոյնիսկ Առաքելոց ժամանակ, Եկեղեցիին մէջ գտնուողներէն ոմանք հակամէտ էին ապագայ պատիւի և զօրութեան խոստումները ներկայ կենաց վերագրել, ու սկսած էին այնպէս շարժիլ (գործել), իբր թէ կը խորհէին որ ժամանակը արդէն եկած էր աշխարհին համար՝ պատուելու և նոյնիսկ հնազանդելու Եկեղեցիին։ Պօղոս Առաքեալ կը գրէ, ուղղելով այս սխալը. քաջ գիտնալով որ այս տեսակ գաղափարները վնասակար ազդեցութիւն մը պիտի ունենան Եկեղեցիին վրայ, գոռոզութիւն մշակելով ու զոհաբերութենէ հեռացնելով։ Նա հեգնօրէն կ'ըսէ անոնց, «Արդէն կշտացած էք, արդէն հարստացաք, առանց մեզի թագաւորեցիք»։ Ու ապա՝ նա լրջօրէն կ'աւելցնէ, «Երանի՛ թէ թագաւորէիք, որպէսզի մենք (հալածուած Առաքեալներս) ալ ձեզի հետ թագաւորէինք»։ (Ա. Կորնթ. Դ. 8)։ Անոնք կը վայելէին իրենց Քրիստոնէութիւնը ջանալով անկէ դուրս ելլել, անոր հետ կարելի եղածին չափ պատիւ ստանալով։ Առաքեալը քաջ գիտէր թէ՝ եթէ անոնք Տիրոջը հաւատարիմ հետեւորդները ըլլային, այս վիճակին մէջ պիտի չգտնուէին. որով նա կը յիշեցնէ անոնց թէ՝ եթէ արդարև ակնկառոյց սպասուած թագաւորութիւնը սկսած է, ինքն ալ իրենց չափ պէտք էր թագաւորէր. սակայն, այն իրականութիւ-

նը թէ ինքը հաւատարիմ ըլլալով հանդերձ կը տառապէր ճշմարտութեան սիրոյն համար՝ ապացոյց մ'էր թէ անոնց թագաւորելը կանխահաս էր, ու որոգայթ մը՝ փոխան փառաց: Ապա՝ հեգնութեան չեշտով մը, նա կ'աւելցնէ, Մենք (Առաքեալներս ու հաւատարիմ ծառաներս) յիմարներ ենք Քրիստոսի համար, և դուք իմաստուններ Քրիստոսով. մենք տկար՝ և դուք զօրաւոր. դուք փառաւորեալ՝ ու մենք անարգեալ»: Ես ասիկա միմիայն ձեզ ամչցնելու համար չեմ գրեր. եւ լաւագոյն և ազնիւ նպատակ մ'ունիմ—Ձեզ Զգուշացնել. որովհետև ներկայ պատուի շաւիղը գալիք փառաց չ'առաջնորդեր, հապա՝ ներկայ տառապանքը և անձնուրացութիւնը կը կազմեն փառաց, պատւոյ, անմահութեան և Թագաւորութեան մէջ ժառանգակիցներ ըլլալու ճանապարհը: Որով կը խնդրեմ, ինծի հետևողներ եղիք: Ներկայիս տառապեցէք, անարգուեցէք ու հալածուեցէք, որպէսզի ինծի հետ կարենաք ժառանգել կենաց պսակը, զոր Տէրը, արդար Դատաւորը, ինծի պիտի տայ այն օրը. և ո՛չ թէ միայն ինծի, հապա այն ամենուն ալ՝ որ կը սիրեն Անոր յայտնուիլը:—Ա. Կորնթ. Դ. 10—17: Բ. Տիմ. Դ. 8:

Սակայն, վաղեմի Եկեղեցին մեծ համեմատութեամբ հալածանաց հաւատարմօրէն համբերելէ վերջ, սկսաւ մոլորեցուցիչ վարդապետութիւններ տարածուիլ՝ թէ Եկեղեցիին առաքելութիւնն էր նըուաճել աշխարհը, Երկնից Թագաւորութիւնը երկրի վրայ հաստատել, ու Տիրոջը Երկրորդ Գալուստէն առաջ իշխել ազգերուն վրայ: Ասիկա հիմը դրաւ աշխարհային մեքենայութեան, պերճութեան, գոռոզութեան, Եկեղեցւոյ ցուցամոլ հանդէսներու և արարողութիւններու, որոնք աշխարհը տպաւորելու, գերելու և ահաբեկելու համար ծրագրուած

էին, և որոնք քայլ առ քայլ առաջնորդեցին Պապականութեան մեծ յայտարարութիւններուն՝ թէ ինք որպէս Աստուծոյ Թագաւորութիւնը, աշխարհի վրայ իրաւունք ունէր հրամայելու ամեն ցեղի, ազգի և ժողովուրդի, ակնածելու և հնազանդելու իր օրէնքներուն և պաշտօնեաներուն։ Այս կեղծ յայտարարութիւններուն ներքև (ու անոնք ըստ երևոյթին թէ՛ ինքզինքնին և թէ՛ ուրիշները խաբեցին), Պապականութիւնը ժամանակ մը թագաւորեց և գահազրկեց Եւրոպայի թագաւորները, ու դեռ իրեն կը վերագրէ միևնոյն իշխանութիւնը որը սակայն ներկայիս չի կրնար գործադրել։

Հայ Լուսաւորչական Եկեղեցին ալ՝ թէև իր ծիսապաշտական արարողութիւններովը, ու մասնաւորապէս իր կղերականի այլևայլ աստիճաններովը, և անոնց շռայլուած մեծ ածականներովն ու պաշտօններովը, զոր օրինակ՝ «Առաքելոց յաջորդ ու անոնց հետ հաւասարապատիւ», «Հոգևոր Հայր», «Աստուծոյ ու մարդոց միջև միջնորդ ու բարեխօս» ևն•, կղերականի ազդեցութեան ու անոր տիրապետութեան զօրացման խիստ նպաստաւոր հող մը պատրաստած է, սակայն շնորհիւ Հայ քաղաքական զօրութեան աննշանութեանը, ինքն ալ ճղճիմ վիճակի մը մէջ մնացած է։ Այսու հանդերձ, երբ Հայ պատմութեան վրայ ակնարկ մը ձգենք, որոշ կերպով կարող պիտի ըլլանք նշմարել Հայ կղերականութեան շատ մը մեքենայութիւնները՝ փառքի, պատուի և ազդեցութեան տիրանալու համար։

Այս բոլոր չարեաց պատճառը առաքելական յաջորդութեան անհիմն վարդապետութիւնն է, թէ ինչպէս որ Առաքեալները իշխանութիւն ունէին կապելու և արձակելու—այլևայլ օրէնքներ ու կանոն-

ներ հաստատելու, և ճշմարտութեան ոգւոյն հակառակ ուրիշ կարգ ու սարքեր բեկանելու—նոյնպէս ալ Լուսաւորչական Եկեղեցւոյ հայրերը իրաւունք ունէին օրէնքներ և հազար ու մէկ տեսակ ծէսեր հաստատելու և ուրիշներ բեկանելու։ Ահա՛ այսպէս, կղերականութիւնը գինովցած իրեն վերագրուած այս հոգևոր իշխանութենէն, սկսաւ կրօնական մեծ ժողովներ կազմել, որոնց մէջ նշանաւոր են Դուինի և Շիրակաւանայ ժողովները, ուր շատ մը օրէնքներ անցուցին ամուսնութեան ևայլնի շուրջ, որը երբե՛ք կղերականութեան գործը չէր. և անոնք այս օրէնքները ստիպողական ընել տուին ժողովուրդին նոյնիսկ բռնի ուժով, որը ինքնին առիթ տուաւ կրօնական զօրութեան կառավարութեան հետ միաբանելուն, որը սակայն Յայտնութեան ԺԷ.րդ. գլխուն մէջ պոռնկութիւն կոչուած է. որովհետև իրենց երկնային Տէրը ձգելով՝ աշխարհային տէրերու ետևէ գացին։

Աստուածաշունչը որոշ կերպով ցոյց կուտայ մեզ թէ միայն տասներկու Առաքեալներ կան, տասներկու հիմնաքարեր Նոր Երուսաղէմին մէջ, ու տասներկու աստղերէ հիւսուած պսակ մը Եկեղեցիին գլխուն վրայ։ (Յայտ. ԻԱ. 14։ ԺԲ. 1)։ Իսկ անոնք որ կ՚ըսեն թէ առաքեալներ են՝ կը ստեն։ (Յայտ. Բ. 2)։ Մենք Նոր առաքեալներու պէտքը չենք զգար, որովհետև մենք մեր հետ ունինք դեռ հին Առաքեալները իրենց թղթերուն միջոցաւ։

Միևնոյն գաղափարը Պապականութեան միջոցաւ Բողոքականութեան եկած է, որով անոնք ալ կ՚ընդունին, թէև աւելի անորոշ կերպով՝ թէ՛ կերպով մը Քրիստոսի Թագաւորութիւնը իր յառաջդիմութեանը մէջ է, և Կորնթացւոց նման կը հաւատայ թէ «կուշտ» և «հարուստ» է, և «Թագաւորի նման» կ՚իշ-

լսէ, ինչպէս որ նկարագրապէս ցոյց տրուած է մեր Տիրոջմէն։ (Յայտ. Գ. 17, 18)։ Արդիւնքը այն եղած է որ Եկեղեցւոյն պարզապէս անուանական անդամները—անոնք որ իրապէս դարձի եկած չեն, իրական ցորեն չեն, այլ որոմ, ցորենին միայն կեղծը—թիւով խիստ կը գերազանցեն Քրիստոսի ճշմարիտ աշակերտները։ Ասոնք խիստ կը հակառակին իրական ամեն զոհաբերութեան և անձնուրացութեան, արդարութեան (ճշմարտութեան) համար չեն հալածուիր, ու ասոնց փոխարէն առ առաւելն ծոմապահութեանց օրէնք և այլն կը պահեն։ Ասոնք իրապէս, աշխարհին հետ կը Թագաւորեն, և իրական Թագաւորութեան պատրաստուելու ճամբուն մէջ չեն, որը մեր Տիրոջ երկրորդ ներկայութեանը ժամանակ պիտի հաստատուի։

Ուէ ուշադիր դիտողի համար, այս տեսակէտին և Յիսուսի ու Առաքեալներուն ուսուցմանը մէջ ակներև անհամաձայնութիւն մը կայ։ Անոնք խորհեցան թէ Թագաւորին գալէն առաջ Թագաւորութիւն չի կրնար դոյութիւն ունենալ։ (Յայտ. Ի. 6։ Գ. 21։ Բ. Տիմ. Բ. 12)։ Հետևաբար, մինչև անոր փառքով ու զօրութեամբ հաստատուիլը, Երկնից Թագաւորութիւնը բռնութեան ներքև պիտի տառապի։

## ԱՍՏՈՒԾՈՑ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԵՐԿՈՒ ՄԱՍԵՐԸ

Թէև ճշմարիտ է, ինչպէս որ մեր Տիրոջմէն ալ ըսուեցաւ թէ Աստուծոյ Թագաւորութիւնը դուրսէն երևցած բաներով չի գար—չ՚ըներ իր առաջին երևումը—սակայն որոշեալ ժամանակին բոլորին ալ՝ արտաքին, տեսանելի և անսխալ նշաններով պիտի յայտնուի։ Երբոր Աստուծոյ Թագաւորութիւնը կատարելապէս հաստատուի՝ երկու մասերէ պիտի

բաղկանայ, Հոգեղէն կամ երկնային՝ և աշխարհային կամ մարդկային մասերէ։ Հոգեղէնը՝ չարունակ մարդոց անտեսանելի պիտի ըլլայ, ինչու որ զայն կազմողները Աստուածային, Հոգեղէն բնութիւն պիտի ունենան, որը ո՛չ մէկ մարդ տեսած է կամ կրնայ տեսնել (Ա. Տիմ. Զ. 16։ Յովհ. Ա. 18)․ սակայն անոր ներկայութիւնը հզօր կերպով պիտի արտայայտուի, գլխաւորապէս իր մարդկային ներկայացուցիչներու միջոցաւ, որոնք Աստուծոյ Թագաւորութեան աշխարհային մասը պիտի կազմեն։

Թագաւորութեան Հոգեղէն մասը կազմողները Աւետարանական Դարու յաղթող սուրբերն են—Եկեղեցին, Գլուխը և Մարմինը—փառաւորուած։ Անոնց յարութիւնը և զօրութեան բարձրանալը կը կանխէ միւս բոլորը, որովհետև այս դասին միջոցաւ է որ պիտի օրհնուին բոլոր մնացեալները։ (Եբր. ԺԱ. 39, 40)։ Անոնցինը առաջին Յարութիւնն է։ (Յայտ. Ի. 5)*։ Այս փառաւոր օծուած դասին—Եկեղեցիին—առջև գտնուած հսկայ գործը հարկադրելի կընէ անոնց Աստուածային բնութեան բարձրանալը․ բացի Աստուածայինէն՝ ուրիշ ո՛չ մէկ զօրութիւն կրնայ կատարել զայն։ Գլուխ հանելիք մեծ գործ մը կայ որը միայն աշխարհին չի վերաբերիր, հապա Երկինքի մէջ և երկրի վրայ գտնուած բոլոր բաներուն—հոգեղէններուն՝ ինչպէս նաև մարդկային էակաց մէջ։—Մատթ. ԻԸ. 18։ Կող. Ա. 20։ Եփես. Ա. 10։ Փիլ. Բ. 10։ Ա. Կորնթ. Զ. 3։

---

*Այս համարին մէջ «Եւ ուրիշ մեռելները չապրեցան մինչև որ հազար տարին կատարուեցաւ» բառերը անհարազատ են։ Անոնք ամենահին և ամենավստահելի Յունարէն Բնագիրներէն՝ Սինայականէն, Վատիկանի թիւ 1209 և 1160էն, և Սիւրիականէն կը

*Աստուծոյ Թագաւորութեան աշխարհային բաժնի գործը այս աշխարհին և մարդկութեան պիտի վերաբերի։ Ու մարդոցմէ անոր մէջ բաժին ունենալու մեծ պատիւը անոնք պիտի ունենան միայն, որոնք Աստուծմէ խիստ բարձրացուած և պատուըուած են։ Անոնք այն դասակարգն են, որոնց ակնարկուած է Ը Գլխուն մէջ, որոնց դատաստանի օրը Աւետարանական Դարէն առաջ էր։ Անոնք փորձուած և հաւատարիմ գտնուելով՝ մահուան քունէն արթնցած ժամանակ դարձեալ դատուելու համար վեր պիտի չբերուին, հապա՝ անմիջապէս պիտի ստանան իրենց հա-*

---

պակսին։ Պարտինք յիշել թէ արդի օրինակներուն մէջ գտնուած շատ մը համարներ *յաւելուածներ* են, որոնք պատշաճօրէն Աստուածաշունչին չեն պատկանիր։ Քանի որ պատուիրուած չենք Աստուծոյ խօսքին վրայ յաւելումներ ընել, մեր պարտականութիւնն է մերժել այս յաւելուածները, երբ ապացուցուած է անոնց անհարազատ ըլլալը։ Մատնանշուած խօսքերը թերևս պատահմամբ մուտք գտան այս համարին մէջ հինգերորդ դարուն․ որովհետև անկէ առաջուայ Բնագիրները, (ըլլան անոնք Յունարէն կամ Սուրիական) չեն պարունակեր այս պարբերութիւնը։ Թերևս առաջին անգամ ընթերցողին կողմանէ յաւելուած պարզ լուսանցքի ծանօթագրութիւն մ'էր, որը կ'արտայայտէր բնաբանին նկատմամբ իր կարծիքը, և որը յետագայ ընդօրինակողի մը կողմանէ բնագրին մէջ առնուեցաւ, որը թերացած էր զանազանել Բնագրին և ծանօթագրութեան տարբերութիւնը։

Սակայն այս հատորին մէջ արտայայտուած «Ծրագրին» համար կարևոր չէ այս պարբերութեան մերժումը․ որովհետև մնացեալ մեռելները—ընդհանուր

*ւատարմութեան վարձատրութիւնը* — մարդկային *կատարելութեան վայրկենական յարութիւն մը։ (Ասոնցմէ և Հոգեղէն դասէն ի զատ, միւսները* հետըզհետէ *կատարելութեան պիտի բարձրացուին Հազարամեայ Դարուն)։ Այսպէս, ահա այս դասակարգը որպէս Քրիստոսի աշխարհային գործակատարները՝ անմիջապէս պատրաստ պիտի ըլլայ մնացեալ մարդկութիւնը վերականգնելու և օրհնելու այս հսկայ գործին։ Ինչպէս որ Քրիստոսի գործին կատարմանը համար կարևոր է հոգեղէն բնութիւնը, նոյնպէս ալ*

---

աշխարհը—բառին բովանդակ նշանակութեամբը նորէն պիտի *չապրին* այն կատարեալ կերպովը, որով Ադամ *ապրեցաւ* իր մեղանչելէն ու «*մեռնելով պիտի մեռնիս*»ի դատավճռին տակ իյնալէն առաջ, *մինչև* որ հազար տարին լրանայ։ Կատարեալ կեանքը առանց տկարութեան կամ մեռնելու, միակ վիճակն է որով Աստուած կը ճանչնայ *կեանք* բառը։ Իր տեսակէտէ՝ բոլոր աշխարհը արդէն կորսնցուցած է կեանքը ու կը մեռնի, և թերևս ներկայիս աւելի պատեհաւորէն կրնանք զայն *մեռած* նկարագրել քան թէ *կենդանի*։—Բ. Կորնթ. Ե. 14։ Մատթ. Ը. 22։

*Յարութիւն* բառը (Յունարէն՝ անասթասիա) *վեր բարձրանալ* կը նշանակէ։ Մարդուն նկատմամբ, ան կը նշանակէ մարդը *վեր բարձրացնել* այն վիճակին՝ ուրկէ ան ինկաւ—մարդկային լեցուն կատարելութեան—այն բանին՝ որ Ադամով կորսուեցաւ։ Այն կատարելութիւնը ուրկէ ինկաւ մեր ցեղը՝ է այն կատարելութիւնը, *որուն* աստիճանաբար պիտի բարձրանան վերահաստատութեան կամ յարութեան վերականգնումի Հազարամեայ Դարուն։ Հազարամեայ Դարը միայն Փորձի Դարը չէ, հապա նաև Օրհ-

*կարեւոր է մարդկային կատարեալ բնութիւնը, մարդոց մէջ կատարուելիք ապագայ գործին համար։ Անոնք մարդոց մէջ պիտի ծառայեն, անոնցմէ տեսանելի, մինչդեռ իրենց կատարելութեան փառքը յարատեւ օրինակ մը եւ մղիչ շարժառիթ մը պիտի ըլլայ ուրիշ մարդոց, որպէսզի անոնք ալ ճգնին միեւնոյն կատարելութեան տիրանալ։ Այս Հին Արժանաւորներուն՝ Թագաւորութեան աշխարհային բաժնին մէջ ըլլալը ու մարդոցմէ տեսնուիլը լիուլի ապացուցուած է Յիսուսի խօսքերովը՝ զոր զինքը մերժող ան-*

---

նութեան Դարը. եւ այն բոլորը որ կորսուած էր, կենաց յարութեան կամ վերահաստատութեան միջոցաւ պիտի վերականգնուի ամեն անոնց, որոնք երբ գիտակցութեան եկած են ու պատեհութիւն ունին՝ ուրախութեամբ կը հնազանդին։ Յարութեան ընթացքը աստիճանաբար պիտի ըլլայ, որը կատարելապէս գլուխ հանելու համար ամբողջ դարը պիտի պահանջուի. թէեւ կեանքի եւ զգայնութեան չափաւոր պարզ զարթնումը՝ որը ներկայիս կը վայելենք, անշուշտ վայրկենական գործ մը պիտի ըլլայ։ Հետեւաբար Հազար տարիներու լրանալէն վերջն է որ մարդկութիւնը կատարեալ չափով տիրացած պիտի ըլլայ այն կենաց՝ զոր Ադամով կորսնցուց։ Եւ քանի որ կենաց կատարելութենէ ո'եւէ չափով թերութիւն մասնակի մահուան վիճակ մ'է, ուրեմն կը հետեւի որ՝ թէեւ վերոյիշեալ խօսքերը ներշնչեալ արձանագրութեան մաս չեն կազմեր, սակայն բոլորովին ուղիղ պիտի ըլլայ ըսել թէ ուրիշ *մեռելներ չապրեցան*, (չվերստացան կորսուած կենաց լիութիւնը), մինչեւ որ վերահաստատութեան եւ օրհնութեան հազար տարին կատարուեցաւ։

հաւատ Հրէից ուղղեց, ըսելով՝ «Դուք պիտի տեսնէք Աբրահամը, Իսահակը և Յակոբը ու բոլոր Մարգարէները Աստուծոյ Թագաւորութեանը մէջ» (Ղուկ. ԺԳ. 28)։ Նկատելու է սակայն թէ Տէրը չի յիշեր թէ Ինքը կամ առաքեալները Աբրահամի հետ տեսանելի պիտի ըլլան։ Իրականութիւն է որ մարդիկ Թագաւորութեան աշխարհային բաժինը թէ՛ պիտի տեսնեն և թէ՛ անոնց հետ պիտի միանան, բայց ո՛չ հոգեղէնին հետ. և ոմանք անտարակոյս խիստ պիտի զայրանան, տեսնելով թէ իրենք մերժեցին այսքան մեծ պատիւ մը։

Երկնային Թագաւորութեան այս երկու բաժիններուն ներդաշնակօրէն գործելու ճշգրիտ եղանակին նկատմամբ որոշ տեղեկութիւն չէ տրուած մեզ. բայց մենք եղանակի օրինակ մ'ունինք որով թերևս անոնք գործեն, որը Աստուծոյ՝ Իսրայէլի ներկայացուցիչներուն, Մովսէսի, Ահարոնի, Յեսուի, և Մարգարէներուն միջոցաւ անոնց հետ ունեցած գործառնութիւնն է—թէև Գալիք Աստուածային զօրութեան արտայայտութիւնները պիտի գերազանցեն այս այլաբանական Դարու գործառնութիւնները. որովհետև գալիք Դարու գործը կը բովանդակէ բոլոր նինջեցելոց զարթնումը, ու հնազանդներուն կատարելութեան մէջ վերականգնումը։ Այս գործը ընտիպողական պիտի ընէ մարդոց մէջ կատարեալ կառավարութեան մը հաստատումը, որուն ղեկը կատարեալ մարդոց ձեռքը պիտի ըլլայ, որպէսզի անոնք կարենան ճշգրտօրէն կարգադրել կառավարութեան գործերը։ Ամէն կարգի պատշաճ դաստիարակչական դիւրութեանց պէտքը պիտի զգացուի, ինչպէս նաև այլևայլ տեսակ մարդասիրական ձեռնարկներու։ Ու այսպէս (միևնոյն Թագաւորութեան անտեսանելի անդամներուն հովանաւորութեան ներ-

քև), մարդկութեան անյողդողդ ու յարատև քայլերով բարձրացման այս ազնիւ գործը այն բարձր պատիւն է՝ որուն համար սահմանուած են Հին Արժանաւորները, և որուն համար պատրաստուած դուրս պիտի գան այս աշխարհի Թագաւորութեան վերջնականապէս կործանումէն՝ ու Սատանային, անոնց Իշխանին կաշկանդումէն անմիջապէս վերջը։ Եւ որպէս երկնային Թագաւորութեան ներկայացուցիչները՝ ամեն մարդու յարգանքը ու համագործակցութիւնը պիտի վայելեն։

Աստուծոյ աշխարհային Թագաւորութեան մէջ դիրք մը շահիլը, պիտի նշանակէ մարդկային կատարեալ սրտի ամեն ըղձանաց ու փառասիրութեան գոհացում ստանալ։ Անիկա փառաւոր և գոհացուցիչ ժառանգութիւն մը պիտի ըլլայ անոր մուտքէն սկսեալ, և սակայն ժամանակի և օրհնեալ գործին յառաջացումովը՝ փառքն ալ պիտի բազմապատկուի։ Եւ երբ Հազարամեայի վերջաւորութեան, վերահաստատումի մեծ գործը Քրիստոսի միջոցաւ ամբողջացած է (մեծ մասամբ այս մարդկային գործակիցներու գործակատարութեան միջոցաւ), երբ որ ամբողջ մարդկային ցեղը (բացի անուղղաներէն—Մատթ. ԻԵ. 46։ Յայտ. Ի. 9) ընդունելի վիճակի մը մէջ կայնին Եհովայի ներկայութեանը՝ անարատ, առանց խորշոմի և կամ այս նման ոևէ բանի, այն ատեն՝ ասոնք որ իբր գործակատարներ գործածուած էին այս վսեմ գործին մէջ, իրենց նման մարդոց ու Աստուծոյ, Քրիստոսի և հրեշտակաց առջև «աստղերու պէս պիտի փայլին յաւիտեանս յաւիտենից»։ (Դան. ԺԲ. 3)։ Իրենց սիրոյ գործն ու աշխատանքը երբեք պիտի չմոռցուի իրենց ընկեր արարածներէն։ Անոնց յիշատակը յաւիտեան վառ պիտի մնայ։—Սաղմ. ՃԺԲ. 6։

*Թէև մեծ պիտի ըլլայ այս կատարեալ մարդոց փառքը, որոնք պիտի կազմեն Թագաւորութեան աշխարհային մասը՝ սակայն Երկնայիններուն փառքը աւելի գերազանց պիտի ըլլայ։ Մինչդեռ առաջինները որպէս աստղեր յաւիտեանս պիտի փայլին, վերջինները երկինքի հաստատութեան—արևին պէս պիտի փայլին։ (Դան. ԺԲ. 3։ Մատթ. ԺԳ. 43)։ Երկինքի, նոյնպէս և երկրի պատիւները՝ Քրիստոսի ոտից ներքև պիտի դրուին։ Մարդկային միտքը կրնայ մօտենալ՝ բայց չի կրնար պայծառ կերպով ըմբռնել այն փառքը, որ Քրիստոսին մէջ պիտի յատնուի յաւիտենականութեան անհատնում դարերու տևողութեանը։—Հռով. Ը. 18։ Եփես. Բ. 7—12։*

*Թագաւորութեան այս երկու մասերուն միջոցաւ է որ Աբրահամի տրուած խոստումը պիտի իրականանայ—«Քեզմով ու քու Սերունդովդ պիտի օրհնուին աշխարհի բոլոր ազգեր»ը։ «Քու Սերունդդ* Երկնքի աստղերուն, *ու* ծովեզերքը եղող աւազին *պէս խիստ պիտի շատցնեմ»—Երկնային և աշխարհային սերունդ մը, երկուքն ալ աշխարհի օրհնութեան համար Աստուծոյ գործիքներն են։ Խոստումին երկու մասերն ալ որոշ կերպով տեսնուած և մտադրուած էին սկիզբէն, սակայն Աբրահամէն միմիայն աշխարհայինը տեսնուած էր։ Աստուած բնական սերունդէն ընտրեց հոգեղէն դասին գլխաւորները (Առաքեալները և ուրիշներ), և այդ ազգի բոլորին ընծայեց գլխաւոր հոգեղէն օրհնութիւնը, որոնք այս երկնային կոչման յարմար ժամանակին մէջ կ'ապրէին. և սակայն բացառութիւն կը կազմէր այն օրհնութիւններէն՝ զորոնք Աբրահամ տեսաւ ուխտին մէջ—շնորհ շնորհի վրայ։*

*Պօղոս՝ (Հռովմ. ԺԱ. 17)ին մէջ Աբրահամական Ուխտը արմատի մը կը նմանցնէ, որմէ բնականապէս*

դուրս ելաւ մարմնեղէն Իսրայէլը. բայց բնական ճիւղերը անհաւատութեան պատճառաւ կտրուած ժամանակ, անոնց տեղը պատուաստուեցան Հեթանոս հաւատացեալները։ Ասիկա կ'ապացուցանէ երկու սերունդներուն զարգացման խոստումին կրկնակի կատարումը, աշխարհային (մարդկային) և երկնային (հոգեղէն), որոնք պիտի կազմեն Թագաւորութեան երկու մասերը։ Այս Արմատ—Ուխտը կը կրէ այս երկու տարբեր տեսակ ճիւղերը, որոնցմէ իւրաքանչիւրը յարութեան ժամանակ պիտի կրէ իր կատարեալ պտղաբերութեան որոշ տեսակը—մարդկային և հոգեղէն դասերը Թագաւորութեան զօրութեամբ։ Աճումի կարգին մէջ նախ՝ բնականն (աշխարհայինն) էր, իսկ վերջէն ալ՝ երկնային կառավարիչները. բայց դիրքի վսեմութեան և պաշտօնի գլուխ անցնելու ժամանակուայ տեսակէտէ, առաջինը՝ հոգեղէնը պիտի ըլլայ, ու վերջը՝ մարմնեղէնը. որով շատ առաջիններ պիտի ըլլան յետին, և յետիններ՝ առաջին։—Մատթ. ԺԹ. 30։ Ղուկ. ԺԶ. 16։

Աբրահամի տրուած խոստումը՝ որուն կ'ակնարկէ Ստեփաննոս նախավկան (Գործ. է. 5ին մէջ), և որուն յուսաց Իսրայէլ՝ աշխարհային էր. ան՝ Երկրին կը վերաբերէր։ Ստեփաննոս կ'ըսէ թէ Աստուած «խոստացաւ որ ասիկա (Քանանու Երկիրը) իրեն տայ իբրև կալուածք»։ Ու Աստուած ըսաւ Աբրահամին, «Հիմա աչքերդ վերցուր, ու քու եղած տեղէդ դէպի հիւսիս ու հարաւ, և դէպի արևելք ու արևմուտք նայէ. ինչու որ այդ բոլոր Երկիրը որ կը տեսնես, քեզի ու քու սերունդիդ պիտի տամ յաւիտեան։ Եւ քու սերունդդ երկրի փոշիին պէս անթիւ պիտի ընեմ. այնպէս որ եթէ մէկը երկրի փոշին կրնայ համրել, քու սերունդդ ալ համրուի։ Ելի՛ր,

ու երկիրը պատէ՛. քանզի անիկա քեզի պիտի տամ»։ (Ծննդոց ԺԳ. 14—17)։ Ստեփաննոս ցոյց կուտայ թէ այս խոստումը դեռ պէտք է կատարուի. որովհետեւ Նա կը յայտնէ թէ Աստուած Աբրահամի «հոս մէջ (երկրին մէջ) ժառանգութիւն չտուաւ, ո՛չ ալ ոտքի քայլ մը տեղ»։

Առաքեալը՝ գրելով Հին Արժանաւորներու այս միեւնոյն դասին նկատմամբ—Աբրահամ ալ անոնց հետ—կը համաձայնի Ստեփաննոսի ըսածին հետ թէ՝ Աբրահամի տրուած խոստումը դեռ չէ կատարուած. ու Նա աւելի առաջ կերթայ ու ցոյց կուտայ թէ այս աշխարհային խոստումները չեն կրնար կատարուիլ եւ պիտի չիրականանան, մինչեւ որ Քրիստոսի (Գլուխին եւ Մարմնոյն) նկատմամբ աւելի բարձր երկնային խոստումները չկատարուին։ Նա անոնց նկատմամբ կ'ըսէ, «Ասոնք ամենն ալ հաւատքով մեռան՝ խոստումները չառած (առանց ընդունելու անոնց կատարումը), քանզի Աստուած մեզի (Եկեղեցիին) համար աւելի լաւ բան մը նախապատրաստեց, որպէսզի անոնք առանց մեզի կատարեալ չ'ըլլան»։ (Եբր. ԺԱ. 13, 39, 40)։ Այսպէս՝ դարձեալ ցոյց տրուած է որ Փրկիչը ու Վերականգնիչը հոգեւոր է, Որը Իր մարդկային բնութիւնը բոլորին տեղը փրկագին տուաւ, եւ թէ՝ այս խիստ բարձրացած հոգեղէն դասէն պէտք է յառաջանայ ամէն օրհնութիւն, հոգ չէ թէ այդ օրհնութիւնները ուրիշներու բաշխելու պատիւը ունեցող միջոցները կամ գործակատարները որոնք պիտի ըլլան։

Այսպէս՝ կը տեսնուի որ Թագաւորութեան աշխարհային բաժինը Իսրայէլական պիտի ըլլայ. եւ անոր շուրջը կը խմբուին շատ մը մարգարէութիւններ, որոնք կը պատմեն Աստուծոյ աշխարհի ապագայ

*օրհնութեան Ծրագրին մէջ այս ազգին ունեցած առաջնակարգ դիրքը, երբ որ անոնց խորանը, որը այսքան դարեր կործանած մնացած է՝ պիտի՛ վերականգնուի, ու Երուսաղէմը ամբողջ աշխարհի մէջ գովութիւն մը պիտի ըլլայ։ Մենք ապացուածքներ կը գտնենք թէ՛ Մարգարէներէն և թէ՛ Առաքեալներէն, որոնք որոշ կերպով կը յայտնեն թէ՝ Վերահաստատութեան Ժամանակները, Իսրայէլը որպէս ազգ՝ ազգերուն մէջ առաջինը պիտի ըլլայ որ պիտի համաձայնի իրերու նոր կարգ ու սարքին հետ. թէ՝ աշխարհային Երուսաղէմը պիտի վերաշինուի իր հին աւերակներուն վրայ. և թէ՝ անոնց աշխարհավարութիւնը պիտի վերահաստատուի առաջուայ նման իշխաններու կամ դատաւորներու ներքև։ (Ես. Ա. 26։ Սաղմ. ԽԵ. 16։ Երեմ. Լ. 18)։ Եւ ի՞նչ բան աւելի տրամաբանօրէն կարելի է ակնկալել, քան այն՝ թէ Իսրայէլ բոլորէն առաջ պիտի հրճուի ճանչնալով Մարգարէներն ու Նահապետները, և թէ՝ անոնց օրէնքի ներքև ստացած երկար կրթութիւնը զանոնք դիւրանասացութեան և հնազանդութեան պատրաստած պիտի ըլլայ Թագաւորութեան տիրապետութեան ներքև։ Ու թէև Իսրայէլ ազգերուն առաջինը պիտի ըլլայ Աստուծմէ ճանչցուելու և օրհնուելու, սակայն Իսրայէլի մասին նաև գրուած է թէ՝ «Տէրը* Նախ *Յուդայի վրանները պիտի փրկէ»։*

*Մենք կարևոր չենք նկատեր վիճելու՝ թէ ո՞ւր արդեօք կրնանք գտնել Իսրայէլի «կորսուած ցեղերը»։ Կրնայ ճշմարիտ ըլլալ կամ ոչ ոմանց այն հաւաստումը թէ՝ այս «կորսուած ցեղեր»ուն հետքերը կարելի է գտնել ներկայի զարգացած ազգաց ոմանց մէջ։ Թէև թելադրուած ապացոյցներէն ոմանք անտրամաբանական չեն, սակայն, ընդհան-*

րապէս, մեծ մասամբ եզրակացութիւն և կարծիք է։ Բայց դեռ, եթէ նոյնիսկ որոշ կերպով ցոյց տրուի թէ քաղաքակրթուած ազգերէն ոմանք կորսուած ցեղերուն շառաւիղն են, անոնց ո՛չ մէկ առաւելութիւն պիտի ըլլայ Ներկայ «Երկնային» «վերին կոչ»ման ներքև, որը, անոնց ազգային մերժումէն ի վեր ոևէ տարբերութիւն չճանչնար Հրէից և Յունաց միջև։ Եթէ այս հարցին իրականութիւն ըլլալը օր մը ապացուցուի (որը դեռ չէ եղած), բոլորովին համաձայն պիտի ըլլայ մարգարէութեանց և խոստումներուն հետ՝ որոնք այն ազգին կը վերաբերին, և որոնք դեռ իրականանալու կ՚սպասեն Թագաւորութեան աշխարհային մասին ներքև ու միջոցաւ։

Բնական միութեան կապը, նոյնպէս և հինուց ի վեր տրուած բայց չիրականացած խոստումներուն նկատմամբ անոնց մէջ դեռ պլպլացող վստահութեան մէկ կայծը, ու անոնց բոլոր բնական նախապաշարումները, Իսրայէլի համար նպաստաւոր պիտի ըլլան ընդհանուր կերպով ու արագօրէն ընդունելու նոր իշխանները· նոյնպէս և անոնց օրէնքին նկատմամբ ունեցած չափաւոր հնազանդութեան սովորութիւնն ալ նպաստաւոր պիտի ըլլայ իրենց շուտով համաձայնելու նոր կառավարութեան սկզբունքներուն հետ։

Ինչպէս որ Երուսաղէմը Աստուծոյ այլաբանական Թագաւորութեան ժամանակ կայսրութեան մայրաքաղաքն էր, անիկա դարձեալ պիտի գրաւէ միևնոյն դիրքը, ու դառնայ «Մեծ Թագաւորին քաղաքը»։ (Սաղմ· ԽԸ· 2։ Մատթ· Ե· 35)։ Քաղաք մը՝ Թագաւորութեան կամ տիրապետութեան խորհրդանիշ մ՚է, որով Աստուծոյ Թագաւորութիւնը Նոր Երուսաղէմով պատկերացուածէ, Նոր տիրապետութիւնը՝ որը երկինքէն կիջնէ երկրիս վրայ։ Նախ և ա-

ռաջ ան միայն հողեղէն դասէն պիտի բաղկանայ, Քրիստոսի Հարսէն, որը ինչպէս որ Յովհաննէսէն տեսնուեցաւ՝ հետզհետէ երկրի վրայ պիտի իջնէ, այսինքն՝ աստիճանաբար պիտի զօրանայ, երբ միւս կողմէն Տիրոջը Օրուայ տեւողութեան ընթացքին ներկայ կայսրութիւնները կը կործանին։ Յարմար ատենին սակայն, այս քաղաքին կամ կառավարութեան աշխարհային մասն ալ պիտի հաստատուի, որուն մասերը կամ անդամները հին արժանաւորները պիտի ըլլան։ Երկու քաղաքներ (կառավարութիւններ) պիտի չըլլան, այլ մէկ քաղաք մը, մէկ հատ երկնային կառավարութիւն, անիկա՝ որուն համար Աբրահամ սպասեց, «հիմերով հաստատուած քաղաքին»—արդարութեամբ հաստատուած կառավարութեան մը, որը Քրիստոսի, Փրկչին արդարութեան անսասան ապառաժ հիման,. Անոր՝ մարդուն փրկութեան համար տուած արժէքին վրայ կառուցուած պիտի ըլլայ, Աստուածային անչեղլի արդարութեան վրայ, որը այլեւս չի կրնար դատապարտել փրկուածները, ինչպէս որ առաջ չէր կրնար ներել մեղաւորին։—Հռովմ. Ը. 31—34։ Ա. Կորնթ. Գ. 11։

Խաղաղութեան Փառաւո՛ր Քաղաք, որուն պարիսպները փրկութիւն, պաշտպանութիւն և օրհնութիւն կը նշանակենանկէ ներս մտնողներուն համար, որուն արդարութեամբ դրուած հիմը երբեք չի կրնար խախտիլ, և որուն ճարտարապետը ու արարիչը Աստուած է։ Աստուծոյ այս փառաւոր քաղաքէն (թագաւորութենէն) ցոլացող լոյսին մէջ է որ ազգերը (ժողովուրդները) արդարութեան պողոտայէն պիտի քալեն ու դէմէն կատարելութեան և

Աստուծոյ հետ լիուլի համաձայնութեան։—Յայտ. ԻԱ. 24*։

Երբոր մարդկութիւնը կատարելութեան հասնի Հազարամեայ Դարու վերջաւորութեան, ինչպէս որ արդէն ցոյց տրուած է, անոնք Աստուծոյ Թագաւորութեան մէջ իբր անդամներ պիտի ընդունուին, և անոնց պիտի տրուի ամբողջ երկրին տիրապետութիւնը. կանխորոշման համաձայն—իւրաքանչիւր մարդ ինքնակալ մը, թագաւոր մը պիտի ըլլայ։ Ասիկա որոշ կերպով ցոյց տրուած է Յովհաննու այլաբանական մարգարէութեանը մէջ (Յայտ. ԻԱ. 24—26). որովհետև տեսիլքին մէջ ո՛չ միայն տեսաւ ժողովուրդին անոր լոյսին մէջ քալելը, հապա նաև տեսաւ թագաւորներուն փառքով հոն մտնելը. սակայն ո՛չ ոք կրնայ մտնել հոն որ պիտի պղծէ զայն։ Ո՛չ ոք կրնայ այդ քաղաքին (Թագաւորութեան) հետ միանալ, որ նախ բոլորովին չէ փորձուած. ո՛չ ոք՝ որ պիտի գործէ կամ սիրէ գործել, նենգութիւն և անարդարութիւն. այլ միայն անոնք՝ որոնք Գառնուկը արժանի պիտի համարէ յաւիտենական կենաց, և որոնց պիտի ըսէ, «Եկէ՛ք, Իմ Հօրս օրհնածները, ժառանգեցէ՛ք աշխարհի սկիզբէն ձեզի համար պատրաստուած Թագաւորութիւնը»։

Ուրեմն պէտք է յիշուի թէ՝ թէև անկասկածօրէն, իրական Երուսաղէմ քաղաքը պիտի վերաշինուի, ու թերևս բոլոր աշխարհի մայրաքաղաքը պիտի ըլլայ, սակայն շատ մը մարգարէութիւններ, որոնք կը յիշեն Երուսաղէմը ու անոր ապագայ փառքը, ասիկա

---

*Այս համարին հետևեալ խօսքերը զանց առնուած են ամենավստահելի և հին բնագիրներէն, այսինքն՝ «*փրկուած*», նաև «*ու պատիւը*»։ Վերջին խօսքերը 26րդ համարէն ալ կը պակսին։

*որպէս այլաբանութիւն կը գործածեն՝ մատնանշելու համար Աստուծոյ Թագաւորութեանը, որը մեծ շքեղութեամբ պիտի հաստատուի բոլոր Երկնից տակը:*

*Երուսաղէմով ներկայացուած Թագաւորութեան աշխարհային մասին ապագայ փառաց նկատմամբ Մարգարէն եռանդուն ոճերով կը խօսի, ըսելով՝ «Ո՛վ Երուսաղէմի աւերակներ՝ ցնծութեան ձայնով մէկտեղ աղաղակեցէ՛ք. քանզի Տէրը Իր ժողովուրդը մխիթարեց, ու Երուսաղէմը փրկեց»: «Ահա՛ Ես Երուսաղէմը ցնծութեան համար կ՚ստեղծեմ»: «Երուսաղէմին հետ ուրախացէ՛ք, ու անոր հետ ցնծացէ՛ք... վասնզի դուք պիտի դիէք, և անոր փառքին առատութեամբը զուարճանաք. քանզի Տէրը այսպէս կ՚ըսէ. Ահա Ես անոր վրայ խաղաղութիւնը գետի պէս, ու ազգերուն փառքը յորդահոս հեղեղի պէս պիտի տարածեմ»: «Ան ատենը Երուսաղէմը Տիրոջը աթոռը պիտի անուանեն, և ամէն ազգերը հոն, Տիրոջը անուանը համար Երուսաղէմ պիտի ժողուըուին»: «Եւ շատ ժողովուրդներ պիտի երթան ու ըսեն, եկէ՛ք Եհովային լեռը (Թագաւորութիւն)՝ Յակոբին Աստուծոյն տունը ելլենք, որ մեզի Իր ճամբաները սորվեցնէ, ու Անոր շաւիղներուն մէջ քալենք. ինչու որ օրէնքը Սիօնէն (հոգեղէն բաժինէն), ու Տիրոջը Խօսքը Երուսաղէմէն պիտի ելլէ»—աշխարհային բաժինը:—Ես. ԾԲ. 9: ԿԵ. 18: ԿԶ. 10—12: Երեմ. Գ. 17: Ես. Բ. 3:*

*Իսրայէլի տրուած ապագայ օրհնութեանց բազմաթիւ թանկագին խոստումները նկատի առած ժամանակ, երբ կ՚ակնկալենք այս ժողովուրդին նկատմամբ անոնց իրական կատարումը, պատշաճ է մեզ յիշել՝ թէ անոնք ինչպէս իրական, նոյնպէս ալ այլաբանական ժողովուրդ մ՚էին: Տեսակէտով մը՝ անոնք ընդհանուր աշխարհի մարդկութեան խորհրդա*

պատկերներն են. անոնց հնազանդութեան և կենաց Օրէնքի Ուխտը՝ Նոր Ուխտին խորհրդապատկերն էր, որը Հազարամեային ու ապագայ Դարերուն պիտի հաստատուի բոլոր աշխարհին հետ։

Անոնց այլաբանական Ուխտին քաւութեան արիւնը, և զայն այս ազգին համար գործածող քահանայական կազմը, պատկերացուց Նոր Ուխտին արիւնը և Արքայական Քահանայութիւնը, որոնց շնորհիւ, Հազարամեային, պիտի մաքրուի և օրհնուի ընդհանուր աշխարհը։ Այսպէս ահա՛, անոնց քահանայութիւնը պատկերացուց Քրիստոսը, իսկ այն ազգը՝ ամբողջ մարդկութիւնը, որոնց համար մատուցուած էր իրական զոհը, և որոնց պիտի գայ իրական օրհնութիւնները—«ամեն մարդու», «ամբողջ աշխարհին»։

Ուրեմն յիշելու ենք թէ՝ թէև ապագայ օրհնութիւնները, անցեալին նման, նախ՝ Հրէից պիտի ըլլան, ու ապա՝ Հեթանոսաց, սակայն միմիայն ժամանակի նկատմամբ է որ Հրէաները պիտի ունենան Աստուածային շնորհաց նախապատուութիւնը. ու մենք ցոյց տուինք՝ թէ ասիկա անոնց Օրէնքին ներքև ունեցած կրթութեան բնական հետևանքը պիտի ըլլայ, որը յարմար ատենին իր նպատակին պիտի ծառայէ, զանոնք Քրիստոսի բերելով։ Թէև առաջին գալստեան անոնցմէ միայն մնացորդ մը պատրաստ էր, սակայն երկրորդ գալստեան, անոնք որպէս ժողովուրդ, զԱյն ընդունելու պատրաստուած պիտի ըլլան։ Ի վերջոյ, Իսրայէլի խոստացուած ամեն օրհնութիւն, բացի անոնցմէ որոնք շնորհուած դասերուն կը վերաբերին, ո՛չ միայն իրականապէս այս ժողովուրդին մէջ պիտի գործադրուին, հապա նաև աշխարհի բոլոր ընտանիքներուն վրայ ալ պիտի կատարուին, որպէս Իսրայէլի հակապատկերը։ Այդ

կառավարութեան ներքև, «Աստուած ամեն մարդու իր գործին համեմատ պիտի հատուցանէ—փառք, պատիւ և խաղաղութիւն այն ամենուն՝ որ բարի կը գործեն, առաջ Հրէային ու ետքը Յոյնին. վասնզի Աստուծոյ քով անհատներու աչառութիւն չկայ»։—Հռովմ. Բ. 6, 10, 11։

Պօղոս Առաքեալ մեր ուշադրութիւնը մասնաւորապէս կը հրաւիրէ Աստուծոյ Իսրայէլի տուած խոստումներուն ստուգութեանը, ու ցոյց կուտայ՝ թէ ի՛նչ շնորհ էր որ կորսնցուցին անհաւատութեան պատճառաւ, և թէ՝ դեռ խոստումները անխափանելի են։ Նա կ'ըսէ թէ հպարտութեան, սրտի կարծրութեան և անհաւատութեան համար էր որ Իսրայէլ, որպէս ժողովուրդ, չստացաւ այն, զոր կը փնտռէր—Աստուածային շնորհի և ծառայութեան գլխաւոր աստիճանը։ Ս. Պօղոս հոս Իսրայէլի բոլոր ազգատոհմերուն չէ որ կ'ակնարկէ Աբրահամէն ըսկսեալ, այլ այն ազգատոհմերուն, որոնք առաջին գալստեան ժամանակ կ'ապրէին. իր խօսքերը վերագրելի են նաև անոնց բոլոր ազգատոհմերուն ալ, որոնք ապրած են Աւետարանական Դարու տևողութեանը, այն դարը՝ որուն տևողութեանը տրուած է գլխաւոր շնորհը—Աստուածային բնութեան և Յիսուսի հետ ժառանգակից ըլլալու վերին կոչը։ Իսրայէլ՝ որպէս ժողովուրդ, թերացած է ճանչնալու և ամուր բռնելու այս շնորհը։ Ու թէև Աստուած Հեթանոսաց այցելեց և Աւետարանին միջոցաւ անոնցմէ շատեր կանչեց, սակայն անոնք ալ մարմնեղէն Իսրայէլի նման՝ պիտի թերանան ստանալու երկնային կոչը։ Սակայն և այնպէս, բոլոր կանչուածներուն մէջէն դաս մը, մնացորդ մը, փոքրիկ հօտ մը ականջ կը դնէ կոչին, և, հնազանդութեամբ ու անձնազոհութեամբ՝ կ'ապահովէ կոչումն և ընտրութիւ-

նը։ Այսպէս, այն բանը՝ զոր Իսրայէլ որպէս ժողովուրդ թերացաւ տիրանալու, և որուն մէջ անուանական Քրիստոնեայ Եկեղեցին ալ կը թերանայ, ընտրուած դասակարգին տրուած է, հաւատարիմ «փոքրիկ հօտ»ին—ընտրուած (Հօր Աստուծոյ կանխագիտութեանը համեմատ)՝ Հոգիին սրբացնելովը և ճշմարտութեան հաւատալովը։—Բ. Թեսաղ. Բ. 13։ Ա. Պետ. Ա. 2։

Թէև Մեսիային մերժումովը Իսրայէլ կորսնցուց այս մասնաւոր շնորհը, սակայն Պօղոս ցոյց կուտայ՝ թէ ասիկա ըսել չ՚ուզեր թէ անոնք շնորհէ իսպառ զրկուեցան. որովհետև անոնք դեռ ունէին Քրիստոսի մէջ պատուաստուելու և Հոգեղէն շնորհներու միևնոյն պատեհութիւնը, զոր կը վայելէր մնացեալ մարդկութիւնը, եթէ, կոչին ունողութեանը, անոնք ընդունէին զայն հաւատքով. որովհետև, Պօղոս կը պատճառաբանէ թէ՝ ինչպէս որ Աստուած վայրի ճիւղերը պատուաստեց, կրնայ նաև զանոնք դարձեալ պատուաստել. ու Նա պատրաստ է այդ բանը ընելու, եթէ անոնք չշարունակեն անհաւատութեան մէջ։—Հռովմ. ԺԱ. 23, 24։

Ասկէ ի զատ, Պօղոս կը փաստէ թէ՝ թէև Իսրայէլ կորսնցուց գլխաւոր օրհնութիւնը, Աստուծոյ Թագաւորութեան գլխաւոր պատիւը, «զոր նա կը փընտռէր», սակայն այդ ժողովուրդին՝ ապագային իրականանալիք դեռ մեծ խոստումներ կը մնան. որովհետև, Նա կը տրամաբանէ թէ Աստուծոյ պարգևները, կոչերը, ուխտերը և խոստումները առանց կատարուելու մէկդի պիտի չդրուին։ Աստուած վախճանը սկիզբէն գիտէր. Նա գիտէր թէ Իսրայէլ պիտի մերժէր Մեսիան. ու հակառակ Իր այս կանխագիտութեան, անոնց տուած հաստատ խոստումները մեզի վստահութիւն կը ներշնչեն՝ թէ Իսրայէլ

որպէս Տիրոջը գործակատարը, դեռ Անկէ պիտի գործածուի աշխարհը օրհնելու գործին մէջ, թէեւ «Իսրայէլ չհասաւ այն բանին, գլխաւոր շնորհին զոր կը փնտռէր»։ Որով, Պօղոս Առաքեալ կյառաջանայ ցոյց տալու թէ Աստուծոյ՝ Իսրայէլի տուած ուխտի խոստումները այն տեսակ բնոյթ մը ունէին, որ բաց և անորոշ կը թողէին՝ թէ արդեօք անոնք որպէս ժողովուրդ, երկնայի՛ն սերունդը պիտի ըլլան թէ ոչ աշխարհայինը. թէ արդեօք անոնք խոստումներուն մէջ մատնանշուած բարձրագո՛յն ծառայութիւնը՝ թէ ոչ խոնարհագոյնը պիտի ժառանգեն ու կատարեն։ Աստուած՝ մինչեւ յարմար ժամանակուայ հասնիլը՝ բարձրագոյն, հոգեղէն շնորհները գաղտնի պահեց. ու անոնց տրուած խոստումները միմիայն աշխարհային շնորհը մատնանշեցին, թէեւ Նա զանոնք պատուեց, հոգեղէն շնորհները առաջին անգամ անոնց առաջարկելով. ու այսպէս, անոնց Իր խոստացածէն ալ աւելին առաջարկեց։ Մէկ խօսքով, երկնային խոստումները երկրայիններուն մէջ թաքնուած էին։ Պօղոս Առաքեալ կ՚ըսէ թէ այս խոստումները չեն կրնար վրիպիլ. իսկ նախ՝ թաքնուած շնորհին առաջարկուիլը, ու Իսրայէլի զայն կուրօրէն մերժելը, ո՛չ մէկ կերպով կը տկարացնեն կամ կը ջնջեն խոստումին միւս հանգամանքը։ Որով Նա կը յայտնէ թէ՝ թէեւ Իսրայէլ որպէս ազգ, Քրիստոսի Հարսին Հրէաներէն և Հեթանոսներէն ընտրուած ժամանակաշրջանի տեւողութեանը շնորհէ զրկուած է, սակայն պիտի գայ ժամանակը, որ երբ Ազատիչը (Քրիստոս, Գլուխը և Մարմինը) ամբողջացած է, Աստուածային շնորհը մարմնեղէն Իսրայէլին պիտի վերադառնայ, ու փառաւոր Ազատիչը Յակոբէն*

---

*Հոգեւոր Իսրայէլը բնաւ «Յակոբ» չէ կոչուած։

*մէկդի պիտի դարձնէ ամբարշտութիւնը, և բոլոր Իսրայէլ պիտի փրկուի (սթափի հանդէպ շնորհին), ինչպէս որ մարգարէէն գրուած է: Առաքեալին խօսքերը հետևեալներն են —*

*«Եղբայրներ, չեմ ուզեր որ չգիտնաք այս խորհուրդը, (որպէսզի ինքզինքնիդ իմաստուն չսեպէք),* *որ ըստ մասին կուրութիւն եղաւ Իսրայէլին,* մինչև որ *Հեթանոսաց լրութիւնը մտնէ (մինչև որ Հեթանոսներէն ընտրուած թիւը ամբողջութեամբ լրացած է)․ և այսպէս բոլոր Իսրայէլ պիտի փրկուի․ ինչպէս որ գրուած է, Սիօնէն պիտի գայ Փրկիչը (Ազատարարը), ու Յակոբէն ամբարշտութիւնը մէկդի պիտի դարձնէ: Եւ այս է Իմ ուխտս անոնց, երբ անոնց մեղքերը վերցնեմ: ԱՒԵՏԱՐԱՆԻՆ նայելով՝ անոնք թշնամի են ձեր սիրոյն համար․ բայց ընտրութեան նայելով՝ (դեռ) սիրելի են իրենց հայրերուն սիրոյն համար: Վասնզի Աստուծոյ պարգևները առանց զղջանալու են: Ինչու որ ինչպէս դուք (Հեթանոսներդ) ալ ատեն մը Աստուծոյ չէիք հաւատար, ու հիմա ողորմութիւն գտաք անոնց անհաւատութեամբը, նոյնպէս ալ անոնք հիմա անհաւատ եղան, որպէսզի ձեր ողորմութիւն գտնելովը անոնք ալ ողորմութիւն գտնեն (փառաւորուած Եկեղեցիին ձեռքէն): Վասնզի Աստուած ամենն ալ անհաւատութեան մէջ արգիլեց, որպէսզի ամենուն ալ ողորմի: (Բաղդատէ Հռովմ․ Ե․* 17—19)*: Ո՜հ Աստուծոյ մեծութեան ու իմաստութեան և գիտութեան խորունկութիւնը»:—Հռովմ․ ԺԱ․* 25—33:

## ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԺԱՌԱՆԳՆԵՐԸ

*«Ո՞վ պիտի ելլէ Տիրոջը լեռը (Թագաւորութեան խորհրդանշան)․ կամ ո՞վ պիտի կենայ Անոր սուրբ*

տեղը (Տաճարը)։ Ձեռքերով սուրբը և սրտով մաքուրը»։ —Սաղմ. ԻԴ. 3, 4։

Երուսաղէմ քաղաքը երկու գագաթներով լերան մը վրայ շինուած էր որոնք իրարմէ Տիւրոպէոնի հովիտովը կը բաժնուէին։ Սակայն մէկ քաղաք մ'էր, մէկ պարսպով շրջապատուած, ու կամուրջներով իրարու կապուած էին այս երկու բաժանումները։ Այս լերան գագաթներէն մէկուն վրայ կառուցուած էր Տաճարը։ Ասիկա թերևս կը պատկերացնէ փառաւորուած Եկեղեցիին մէջ միաւորուած Թագաւորական և քահանայական յատկութիւնները, և կամ, Աստուծոյ մէկ Թագաւորութիւնը, իր երկու մասերովը—հոգևոր Տաճարը՝ որը աշխարհային ծագում չէ, այլ Նոր, երկնային կամ հոգևոր բնութեան մը (Եբր. Թ. 11)՝ անկէ բաժնուած, բայց միևնոյն ժամանակ միացած, աշխարհային մասին հետ։

Այնպէս կը թուի թէ Դաւիթ այս երկու տեղերուն ալ կ'ակնարկէ։ Պատիւ մը կը համարուէր այս քաղաքէն ըլլալը, ու աւելի մեծ պատիւ մը՝ Տաճարը ելլելը, դէպի սուրբ սրահները, ուր միայն քահանաները թոյլատրուած էին մտնելու։ Դաւիթ ցոյց կուտայ թէ կենաց մաքրութիւնը և սրտի անկեղծութիւնը կարևոր են ամեն անոնց, որոնք պիտի տիրանան այս պատիւներէն ոևէ մէկուն։ Անոնք որ պիտի կազմեն Արքայական Քահանայութիւնը, յորդորուած են մաքուր ըլլալ, ինչպէս որ իրենց հաւատքի Քահանայապետը մաքուր է, եթէ կ'ուզեն արժանի համարուիլ Անոր հետ ժառանգակից ըլլալու։ «Ամեն ով որ այս յոյսը Անոր վրայ ունի, ինքզինքը կը մաքրէ ինչպէս որ Անիկա մաքուր է»։ Ասիկա ինչպէս որ ցոյց տրուած է, մտքի մաքրութիւն մ'է, որը մեզի իբր բոլորովին կամ իրական մաքրութիւն հաշուըուած է. որովհետև Քրիստոսի մեզի

Հաշուած մաքրութիւնը կը ծածկէ մեր անխուսափելի տկարութիւնները, քանի որ մենք հոգեորապէս կը քալենք և ո՛չ թէ մարմնաւորապէս։

Սակայն պէտք չէ մոռցուի թէ մաքրութիւնը, անկեղծութիւնը և Աստուծոյ մատուցուած բովանդակ նուիրումը կենսական են ամեն անոնց, որոնք պիտի մտնեն Աստուծոյ Թագաւորութեան ոևէ մէկ մասը։ Ասիկա էր հին արժանաւորներուն սրտի վիճակը, որոնք Քրիստոսի ներքև պիտի ժառանգեն Աստուծոյ Թագաւորութեան աշխարհային մասը։ Անոնք արդարութիւնը սիրեցին ու անօրինութիւնը ատեցին. ու ի սրտէ կը վշտանային ու կը զղջային, երբոր յանցանքով մը կը բռնուէին, և կամ տկարութեան մը կամ մեղաց պաշարումի մը պատճառաւ կը սայթաքէին։ Այսպէս նաև եղած է Աւետարանական Դարու Հաւատարիմ սուրբերուն վիճակը. նոյնպէս ալ պիտի ըլլայ ամենուն վիճակը Հազարամեայ Դարուն, երբոր Աստուծոյ Հոգին, Ճշմարտութեան Հոգին ամեն մարմնոյ վրայ պիտի թափուի։ Այն Դարու յաղթողներն ալ պէտքը պիտի զգան պայքարելու սրտի ու կեանքի մաքրութեան համար, եթէ պիտի ուզեն Աստուծոյ կարգադրութեան ներքև իրաւունք ստանալ քաղաքը մտնելու—Թագաւորութիւնը՝ որ անոնց համար պատրաստուած է աշխարհի սկիզբէն ի վեր—սկզբնական տիրապետութիւնը վերականգնած։

## ԵՐԿԱԹԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ

Շատեր սխալմամբ կ'ենթադրեն թէ՝ երբոր Քրիստոսի Հազարամեայ Թագաւորութիւնը հաստատուի, ամեն մարդ պիտի ախորժի անոր իշխանութենէն։ Բայց ո՛չ։ Անոր կանոնները շատ աւելի խստապահանջ պիտի ըլլան քան անցեալի ո՛և է կառավա-

*րութեանը՝ և ժողովուրդին ազատութիւնները այն աստիճան պիտի սանձուին, որ շատերուն արդարև դառնացուցիչ պիտի ըլլայ, որոնք ներկայիս աւելի ազատութեան համար կ'աղաղակեն: Խաբելու, սխալ ներկայացնելու, չորթելու և ուրիշները անիրաւելու ազատութիւնը բոլորովին պիտի վերջանայ: Ինքզինքը կամ ուրիշները կերուխումի մէջ չարաչար գործածելը, և կամ բարի վարքերն ու սովորութիւնները ապականելը ամենուն ալ բոլորովին պիտի գլացուի: Ո՛և է տեսակ սխալ գործելու ազատութիւն կամ թոյլտուութիւն պիտի չտրուի և ո՛չ մէկուն: Միակ ազատութիւնը որ բոլորին ալ պիտի շնորհուի՝ Աստուծոյ Որդւոցը ճշմարիտ և փառաւոր ազատութիւնն է—ազատութիւն՝ բարին գործելու թէ՛ իրենց և թէ՛ ուրիշներուն, ո՛և է կամ ամեն կերպով. սակայն վնասող կամ ապականող ո՛և է բան պիտի չթոյլատրուի այդ բոլոր Ս. Թագաւորութեանը մէջ: (Ես. ԺԱ. 9: ԿԵ. 25: Հռովմ. Ը. 21): Հետևաբար, շատերուն համար այս իշխանութիւնը խիստ պիտի թուի, որը վերջ պիտի դնէ իրենց անցեալի սովորութիւններուն և ունակութիւններուն. Նոյնպէս նաև վերի վայր շրջելով ներկայ հաստատութիւնները, որոնք ազատութեան այս կեղծ սովորութեանց և կեղծ գաղափարներուն վրայ հաստատուած են: Իր հաստատուն և զօրաւոր ըլլալուն համար, այլաբանօրէն, երկաթի իշխանութիւն կոչուած է—«Նա պիտի հովուէ (Անգլիերէն՝ իշխէ) զանոնք երկաթէ գաւազանով»: (Բաղդատէ Յայտ. Բ. 26, 27: Սաղմ. Բ. 8—12 և ԽԹ. 14): Այսպէս, ահա իրականացած պիտի ըլլայ այն ասացուածքը՝ թէ «Դատաստանը լարին՝ ու արդարութիւնը կշիռին համեմատ պիտի դնեմ. և ստութեան պատսպարանը կարկուտը (արդար դատաստանը) պիտի տանի. ու պա՛հելու տեղը*

ջուրերը (ճշմարտութիւնը) պիտի կոխեն», և ամեն ծածուկ բաները պիտի յայտնուին։—Եզ. ԻԸ. 17։ Մատթ. Ժ. 26։

Շատերը ապստամբել պիտի ուզեն այս կատարեալ և անաչառ իշխանութենէն, որովհետև անցեալին մէջ վարժուած էին ներկայ իշխանին (Սատանային) տիրապետութեան ներքև տիրելու իրենց ընկեր մահականացուներուն վրայ, և բոլորովին ուրիշներու ծախսովը ապրելու որպէս պորտաբոյծներ, առանց փոխարէնը համապատասխան ծառայութիւն մատուցանելու։ Եւ բազմաթիւ ու խիստ պիտի ըլլան այն պատիժները, որոնք ներկայիս կրքերու անձնատուր և ինքնահաճ կեանք մը իր վրայ պիտի հրաւիրէ բնականաբար. և որոնց պիտի ենթարկուի այսպիսի մէկը, մինչև որ սորվի Թագաւորութեան դասերը—հաւասարութիւն, իրաւունք և արդարութիւն։ (Սաղմ. ՁԹ. 32։ Ղուկ. ԺԲ. 47, 48)։ Այս դասերը նախ ապրող ազգատոհմերուն վրայ պիտի գան, որը խիստ մօտ է։—Ցակոբոս Ե.

Բայց, երանաւէ՛տ մտածում՝ թէ երբ Կենաց Իշխանը հաւասարութեան և արդարութեան օրէնքները գործադրութեան դրած է Իր երկաթէ իշխանութեամբը, մարդկային զանգուածները պիտի սորվին՝ թէ «Արդարութիւնը ազգը կը բարձրացնէ. բայց մեղքը ժողովուրդներուն անարգանք է»։ (Առակ. Դ. 34)։ Անոնք պիտի սորվին՝ թէ Աստուծոյ Ծրագիրը և Օրէնքները բոլոր հետաքրքրուողներուն լաւութեանը գործակից պիտի ըլլան ի վերջոյ, երբ անոնք պիտի սորվին սիրել արդարութիւնը և ատել անօրինութիւնը։ (Սաղմ. ԽԵ. 7։ Եբր. Ա. 9)։ Իսկ ամեն անոնք որ այս իշխանութեան ներքև չսորվին սիրել արդարութիւնը, անարժան պիտի համարուին տևական կենաց, ու ժողովուրդին մէջէն պիտի

կորսուին։ *Տե՛ս Անգլիերէնի Թարգմանութիւնը։ Գործ. Գ. 23։ Յայտ. Ի. 9։ Սաղմ. ԺԱ. 5—7։*

## ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ ՅԱՒԻՏԵՆԱԿԱՆ

*«Եհովան բոլոր երկրին վրայ Թագաւոր պիտի ըլլայ այն օրը»։ (Զաքար. ԺԴ. 9)։ Այն Թագաւորութիւնը, զոր Եհովան Հազարամեային Քրիստոսի ձեռքովը պիտի հաստատէ՝ Եհովային Թագաւորութիւնը պիտի ըլլայ. սակայն անիկա ուղղակի Քրիստոսի տիրապետութեան ներքեւ պիտի ըլլայ, որպէս Անոր Փոխանորդը. խիստ նման կառավարական այն ձեւին, որուն մէջ կը գտնուէին Միացեալ Նահանգաց Հարաւային Նահանգները Միացեալ Նահանգաց դէմ Ապստամբելէն վերջը։ Ժամանակ մը, Հարաւային Նահանգները թոյլատրուած չէին իրենց պաշտօնեաները ընտրել ու ինքզինքնին կառավարել՝ որպէսզի չըլլայ թէ Միութեան Սահմանադրական օրէնքներուն չանսան. հապա լիազօր կառավարիչներ նշանակուած էին իշխանութեան գլուխը, որպէսզի վերակազմեն անոնց նահանգային կառավարութիւնները, ու զանոնք ետ բերեն ու լիովին հաշտեցնեն կեդրոնական կառավարութեան հետ։ Այսպէս ալ նաեւ, երկրի գործերուն վրայ Քրիստոսի ունենալիք մասնաւոր իշխանութիւնը սահմանուած ժամանակուայ մը ու մասնաւոր նպատակի մը համար է, եւ որը այս նպատակին կատարումովը պիտի վերջանայ։ Մարդը, իր ապստամբութեան պատճառաւ, կորսնցուց Աստուածատուր իրաւունքը—ի միջի այլոց՝ ինքնիշխանութիւնը, Եհովային օրինաց համաձայն։ Աստուած՝ Քրիստոսի միջոցաւ, փրկեց այս բոլոր իրաւունքները. ու մարդուն համար ապահովեց ո՛չ միայն անհատապէս իր նախկին վի-*

ճակին վերադառնալը՝ հապա նաև վեր-ստանալու իր նախկին պաշտօնը, երկրի Թագաւորութիւնը։

Սակայն, որպէսզի Աստուծոյ Ծրագիրներուն համեմատ մարդը ետ բերուի, այնպիսի ճամբով մը, որը ամէնէն յարմարագոյնը ըլլայ անոր վրայ դրոշմելու ներկայ փորձառութեանց Թանկագին դասերը —այսինքն, պահանջել անկէ իր ազատագրմանը համար Ջանք ի գործ դնել—զօրաւոր ու կատարեալ կառավարութիւն մը պիտի պահանջուէր։ Ու մարդուն ազատագրումը ամբողջացնելու այս պատիւը Քրիստոսի տրուած է, Որը մեռաւ՝ ապահովելու համար այս իրաւունքը. ու «Նա պէտք է Թագաւորէ՝ մինչև որ բոլոր Թշնամիները Իր ոտքերուն տակը դնէ»— մինչև որ մէկ հոգի չէ մնացած որ չճանչնար և պատուէր զԱյն ու հնազանդէր Անոր։ Այն ատեն, մարդկութեան վերակազմութեան կամ վերահաստատութեան առաջելութիւնը ամբողջացած ըլլալով՝ Թագաւորութիւնը Աստուծոյ, Հօրը պիտի տայ. ու մարդկութիւնը, սկզբի նման, ուղղակի յարաբերութեան պիտի մտնէ Եհովային հետ. որովհետև Յիսուս Քրիստոսի՝ մարդուն համար կատարած միջնորդութիւնը լիակատար կերպով գլուխ հանած պիտի ըլլայ հաշտութեան գործը։—Ա. Կորնթ. ԺԵ. 25—28։

Թագաւորութիւնը Հօրը յանձնուած ժամանակ, դեռ ան Աստուծոյ Թագաւորութիւնը պիտի ըլլայ, ու օրէնքները միշտ միևնոյնը պիտի ըլլան։ Բոլոր մարդկութիւնը, կատարելապէս վերականգնած ըլլալով՝ կարող պիտի ըլլան կատարեալ հնազանդութիւն մատուցանել Թէ՛ գրով և Թէ՛ հոգւով. մինչդեռ ներկայիս, հնազանդութեան հոգին, և կամ Աստուծոյ օրէնքները պահելու ջանքն է միակ բանը զոր մարդիկ կարող են ընել։ Այդ կատարեալ օրէն-

քին անթերի դիրը զանոնք անմիջապէս մահուան պիտի դատապարտէ։ (Բ. Կորնթ. Գ. 6)։ Մեր ներկայիս ընդունելի ըլլալը միմիայն Քրիստոսի փրկագինովն է։

Իրապէս կատարեալ ըլլալէ առաջ՝ «Սարսափելի բան է կենդանի Աստուծոյ ձեռքը իյնալը»։ (Եբր. Ժ. 31)։ Թէ՛ ներկայիս և թէ՛ մինչև իրապէս կատարեալ ըլլալը, ո՛չ ոք կրնայ ճշգրիտ արդարութեան առջև կայնիլ. բոլորն ալ պէտքը կ՚զգան ողորմութեան՝ որը ձրիաբար հայթայթուած է Քրիստոսի արժանիքովը ու զոհաբերութեամբը։ Բայց երբ Քրիստոս Թագաւորութիւնը Հօրը կը յանձնէ, Նա զանոնք անարատ պիտի ներկայացնէ Անոր առջև, յարմար և կարող յաւիտենական օրհնութիւն ու կեանք վայելելու Եհովային կատարեալ Օրէնքին ներքև. բոլոր վախկոտութիւնները աներևութացած պիտի ըլլան այն ատեն. ու Եհովան և Իր վերականգնած արարածները կատարեալ ներդաշնակութեան մէջ պիտի ըլլան իրարու հետ, սկիզբի նման։

Հազարամեայի Դարավերջին, երբոր Քրիստոս երկրին տիրապետութիւնը Հօրը կը յանձնէ, Նա ասիկա կ՚ընէ, Թագաւորութիւնը մարդկութեան տալով՝ որպէս Հօրը ներկայացուցիչները, որոնք արդէն սկիզբէն կանխորոշուած էին վայելելու այս պատիւը։ (Ա. Կորնթ. ԺԵ. 24։ Մատթ. ԻԵ. 34)։ Այսպէս, ահա՛ Աստուծոյ Թագաւորութիւնը յաւիտեան պիտի տևէ։ Ու այսպէս ալ կը կարդանք մեր Տիրոջ Խօսքերուն մէջ. «Այն ատեն Թագաւորը Իր աջ կողմը եղողներուն պիտի ըսէ (անոնք որ Հազարամեայի իշխանութեան տևողութեանը համաձայնութեամբ և հնազանդութեամբ տիրացած պիտի ըլլան շնորհաց դիրքին) եկէ՛ք, Իմ Հօրս օրհնածները (դուք՝ որոնց համար Հայրս ծրագրած է այս կերպով

*օրհնել), ժառանգեցէ՛ք այն Թագաւորութիւնը, որ աշխարհի սկիզբէն* ՁԵԶ ՀԱՄԱՐ պատրաստուած է»:

*Այս Թագաւորութիւնը և պատիւը զոր պատրաստուած է մարդոց համար, պէտք չէ շփոթել այն բարձրագոյն Թագաւորութեանը և պատուին հետ՝ որը Քրիստոսին համար պատրաստուած է. «զոր աշխարհէն* առաջ *սահմանեց Աստուած* մեր *փառքին համար»* (*Ա. Կորնթ. Բ.* 7), *և որուն համար մենք ալ Քրիստոսով ընտրուած էինք «աշխարհի սկիզբէն* առաջ»: *Ու թէև Քրիստոսի՝ աշխարհին վրայ ունեցած* մասնաւոր *միջամտութիւնը և տիրապետութիւնը պիտի վերջանայ, ինչպէս որ կանխաւ ցոյց տրուած է, մենք պէտք չէ եզրակացնենք թէ Քրիստոսի փառքը, տիրապետութիւնը և զօրութիւնը հոն պիտի վերջանան: Ո՛չ. Քրիստոս՝ Եհովայի շնորհաց աջ կողմը, յաւիտեանս յաւիտենից ընկերացած պիտի ըլլայ Աստուածային բոլոր փառաց և զօրութեան. իսկ Իր Հարսը և ժառանգակիցը՝ յաւիտեանս պիտի մասնակցի Իր յարաճուն փառաց: Մենք հոս պիտի չփորձենք երևակայել՝ թէ ի՛նչ զարմանալի գործեր կ՚սպասեն արդեօք Եհովային այս խիստ մեծարուած գործակատարին միւս միլիոնաւոր աշխարհներուն մէջ. միայն թէ՝ կ՚ուզենք թելադրել Աստուածային զօրութեան անսպառութիւնը, և գործունէութիւնը, ու տիեզերքին անսահմանութիւնը:*

*Արդարև, հոգ չէ թէ Թագաւորութեան ո՛ր մասին վրայ կեդրոնանայ մեր հետաքրքրութիւնը, անիկա «բոլոր ազգաց ցանկալի բաներն էր. որովհետև անոր ներքև բոլորն ալ պիտի օրհնուին: Ուրեմն ամեն ոք կրնայ ակնկառոյց սպասել այդ ժամանակուայ համար. ու բոլորն ալ կրնան արդարև աղօթել, «Քու Թագաւորութիւնդ թող գայ, թող քու կամքդ ըլլայ, ինչպէս երկնից մէջ,* նոյնպէս ալ երկրիս վը-

բայ»։ *Ասոր համար է որ ամբողջ սահղծուածները ողլխորէն երկար ատեն հառաչած են ու սպասած— սպասած՝ Աստուծոյ Որդւոցը յայտնուելուն, այն Թագաւորութեանը՝ որ պիտի ջախջախէ չարիքը, և օրհնէ ու բժշկէ բոլոր ազգերը։—Հռովմ. Ը. 19։* *Ժջ.* 20։ *Եա.* *ԻԵ.* 6—9։ *ԿԱ.* 11։



# ԳԼՈՒԽ ԺԵ.

## «ԵՀՈՎԱՅԻՆ ՕՐԸ»

## «ՎՐԷԺԽՆԴՐՈՒԹԵԱՆ ՕՐԸ»—«ԲԱՐԿՈՒԹԵԱՆ ՕՐԸ»

**Մեծ Նեղութեան ժամանակ մը.—Անոր Պատճառը.—Անոր Մասին Ս. Գրոց Տուած Ծանօթութիւնը.—Անոր Կրակին, Փոթորկին, Ցնցման և Լուծման Այլաբանական Ըլլալը Ցուցադրուած.—Դաւթի վկայութիւնը. Յայտնիչին վկայութիւնը.—Ներկայ Կացութիւնը և Ապագայի Նախատեսութիւնը, Դիտուած Երկու Հակամարտ Ոյժերէ՝ Դրամատէրներէ և Գործաւորներէ.—Դարման մը՝ որ չպիտի Յաջողի.—Ճիշդ Իր Յարմար Ժամանակին Քօղը Վերցուած և Լոյսը Թոյլատրուած.—Ասոր Ապացոյցը.—Նեղութեան Ժամանակամիջոցին Սուրբերուն Վիճակը և Իրենց Պատշաճ Վերաբերմունքը Հանդէպ Անոր:**

*“ԵՀՈՎԱՅԻՆ ՕՐ»ը այն ժամանակաշրջանին անունն է, որուն տեւողութեան, Քրիստոսի միջոցաւ Աստուծոյ Թագաւորութիւնը աստիճանաբար պիտի «Հաստատուի» երկրի վրայ, մինչդեռ այս աշխարհի թագաւորութիւնները իրենց անհետացման ընթացքին մէջն են, և մարդոց վրայ Սատանային ունեցած իշխանութիւնն և ազդեցութիւնը սկսած են կաշկանդուիլ: Ասիկա Ս. Գրոց մէջ ամէն տեղ նկարագըր-*

ուած է իբրև մարդոց գլխուն գալիք սաստիկ տառապանաց և տագնապանաց ու շփոթութեանց խաւար օր մը. և մի՞թէ զարմանալի է, որ այս կարգի յեղափոխութիւն մը ու այսօրինակ հսկայ փոփոխութեանց պահանջը, նեղութեանց և տառապանաց պատճառ պիտի ըլլայ։ Փոքրիկ յեղափոխութիւններ նեղութիւններ պատճառած են ամեն Դարու մէջ. սակայն այս՝ նախընթաց յեղափոխութիւններէն անհամեմատօրէն մեծ՝ այնպիսի նեղութեան ժամանակ մը պիտի ստեղծէ, որու նմանը աշխարհի սկիզբէն մինչև հիմա եղած չէ, և ո՛չ ալ պիտի ըլլայ։—Դան. ԺԲ. 1։ Մատթ. ԻԴ. 21, 22։

Անիկա «Եհովային Օր»ը կոչուած է անոր համար որ, թէև Քրիստոս արքայական տիտղոսով ու զօրութեամբ ներկայ պիտի ըլլայ իբրև Եհովային Ներկայացուցիչը, ստանձնած ըլլալով այս Նեղութեան Օրուայ բոլոր գործերը, սակայն Նա որպէս Եհովայի Սպարապետը պիտի գործէ, նուաճելով ամեն բան, և վերջն ալ իբրև Խաղաղութեան Իշխան՝ պիտի օրհնէ բոլորը։ Միևնոյն ատեն, երբ մոլար ու թերի տեսութիւններ ու դրութիւններ կը կործանին, նոր Թագաւորին դրօշը պիտի բարձրանայ, և Որը ի վերջոյ բոլորէն ալ իբրև Թագաւոր Թագաւորաց պիտի ճանչցուի և ընդունուի։ Այսպէս, Քրիստոսի իշխանութեան հաստատուիլը իբրև Եհովային գործը ներկայացուած է մարգարէներէն. «Հեթանոսները Քեզի ժառանգութիւն պիտի տամ ու երկրին ծայրերը Քեզի ստացուածք» (Սաղմ. Բ. 8)։ «Այս թագաւորներուն օրերը երկնից Աստուածը մէկ Թագաւորութիւն մը պիտի հաստատէ»։ (Դան. Բ. 44)։ «Հինաւուրցը (Եհովայ Աստուածը) նստաւ ու Անոր առջև մօտեցուցին Մարդու Որդւոյ նման մէկը, ու Անոր իշխանութիւն տրուեցաւ, որպէսզի ամեն ազգերը

Անոր Հնազանդին ու ծառայութիւն ընեն»։ (Դան. Է. 9, 13, 14, 22, 27)։ Իսկ Պօղոս Առաքեալ կ'ամբողջացնէ այս մարգարէութիւնը, ըսելով՝ թէ երբ Քրիստոս Իր տիրապետութեան նպատակը իրականացուցած է, «այն ատեն Որդին Ինքն ալ պիտի Հըպազանդի Անոր (Հօրը)՝ որ ԻՐԵՆ ՀՆԱԶԱՆԴԵՑՈՒՑ ԱՄԵՆԸ»։—Ա. Կորնթ. ԺԵ. 28։

Ներկայ ժամանակաշրջանը կոչուած է «Մեր Աստուծոյ Վրէժխնդրութեան Օր»ը և կամ «Բարկութեան Օր»ը։ (Եսա. ԿԱ. 2։ ԿԴ. 1—4։ Սաղմ. ԾԺ. 5)։ Եւ սակայն, ամեն անոնք որոնք միմիայն Աստուածային ցասման գաղափարը կ'ստանան, և կամ չարարարութիւն կ'ենթադրեն, չարաչար կը սխալին։ Աստուած որոշ օրէնքներ հաստատած է որոնց համաձայն կը գործէ. և ամեն անոնք որ ո'և է պատճառաւ ընդհարման կուգան անոնց հետ՝ իրենց ընթացքին արժանի պատիժը կամ բարկութիւնը կ'ընդունեն։ Աստուծոյ պատուէրները մարդոց մեծամասնութենէն մերժուած են չարումակաբար. և ինչպէս որ ցուցադրեցինք, Նա թողուց որ անոնք իրենց ուզած ճամբէն երթան, ու զինքը ու Իր խրատները իրենց սրտերէն վանեն։ (Հռովմ. Ա. 28)։ Ցետոյ Իր մասնաւոր հոգատարութեան առարկայ ըրաւ Աբրահամը և իր սերունդը, որոնք Անոր ճամբաներուն ու ծառայութեանը փափաք ցոյց տուին։ Հրէայ ժողովուրդին ցուցադրած խստասրտութիւնը և Աստուծոյ նկատմամբ տածած սրտի կեղծաւորութիւնը, երբ բնական հետևանք, ո'չ միայն Մեսիան ընդունելէն արգիլեցին զիրենք, հապա նաև՝ նոյնքան բնականօրէն զիրենք պատրաստեցին ու առաջնորդեցին այն փոթորկին մէջ, որը վերջացուց իրենց ազգային գոյութիւնը։

Այսպէս ալ՝ այն լոյսը զոր Աւետարանական Դարու

մէջ Եկեղեցին (այն դասակարգին պատկանողները որոնց անունները երկինքը գրուած են) քաղաքակիրթ աշխարհին առջև բարձրացուցած է, վկայութիւն մ'եղած է բարիին ու չարին միջև եղած տարբերութեանը, և նաև ապագայ այն օրուան՝ ուր մին պիտի վարձատրուի և միւսը պատժուի (Յովհ. ԺԶ. 8—11 ։ Գործ. ԻԴ. 25) ։ Այս վկայութիւնը մեծ ազդեցութիւն մը պիտի ընէր աշխարհի մարդոց վրայ, եթէ Տիրոջը խրատներուն ուշադրութիւն ընծայէին. սակայն, կամակոր ինչպէս միշտ, Ս. Գրոց մատուցած խրատներէն շատ քիչ օգտուած են. և իբր հետևանք այդ անհոգութեան՝ Տիրոջը Օրուան տառապանքը պիտի հասնի իրենց վրայ ։ Նոյնպէս, անիկա Աստուծոյ բարկութիւնը կրնայ կոչուիլ, քանի որ ան Իր պատուէրներուն անտեսուելուն պատճառաւը պիտի գայ, իբր հատուցում անօրինութեան ։ Սակայն և այնպէս, ուրիշ հայեցակէտով մ'ալ, այն տառապանքը որ պիտի հասնի աշխարհի վրայ՝ մեղքին բընական և կամ օրինական հետևանքը պիտի ըլլայ զոր Աստուած նախատեսեց, և որուն դէմ Իր խրատները պիտի պաշտպանէին զիրենք, եթէ անոնց ուշադրութիւն ըրած ու հետևած ըլլային ։

Մինչդեռ Եկեղեցիին ուղղուած Աստուծոյ պատգամը եղած է՝ «Ձեր մարմինները ընծայեցէք կենդանի զոհ մը» (Հռովմ. ԺԲ. 1), սակայն աշխարհի համար Իր պատգամը եղած է՝ «Քու լեզուդ չարութենէ պահէ՛, ու շրթունքներդ նենգութիւն խօսելէն. չարութենէ հեռացի՛ր ու բարութի՛ւն ըրէ, խաղաղութիւն փնտռէ ո անո՛ր ետևէն գնա» ։ (Սաղմ. ԼԴ. 13, 14) ։ Այս երկու պատգամներն ալ քիչերէն միայն ուշադրութեան առարկայ եղած են ։ Փոքրիկ է այն հօտը որ կը զոհաբերէ. իսկ աշխարհը, թէև «Առաջինութիւնը ամենալաւ քաղաքագիտութիւնն

է» նշանաբանը վեր բռնած է, սակայն անոր գործադըրութեանը մէջ անհոգ գտնուած է։ Անիկա աւելի ագահութեան ձայնին մտիկ ըրած է՝ որ կ՚ըսէ, Այս աշխարհի հարստութիւններէն, փառքերէն ու իշխանութիւններէն որքան որ կրնաս ձեռք ձգէ, առանց նկատելու զանոնք շահելու կերպերը, առանց նկատելու թէ քու շահելովդ ով է որ կը վնասէ։

Մէկ խօսքով՝ Տիրոջը այս Օրուան նեղութիւնը չը պիտի գար, և չպիտի կրնար ալ գալ, եթէ նկատելի չափով մը Աստուծոյ Օրինաց սկզբունքները գործադըրուէին։ Օրէնքը իր ամփոփ վիճակին մէջ կ՚ըսէ, —Քու Տէր Աստուածդ ամբողջ սրտովդ պիտի սիրես, ու դրացիդ ալ՝ քու անձիդ պէս։ (Մատթ. ԻԲ. 37—39)։ Եւ որովհետև ստորնացած կամ մարմնեղէն միտքը Աստուծոյ այս Օրէնքին հակառակ է, ու ապստամբած անոր դէմ՝ ատոր իբր արդիւնք, իբր հնձաքաղ սերմնացանէն յետոյ, տառապանքն ու նեղութիւնը վրայ պիտի հասնին։

Մարմնեղէն կամ ստորնացած միտքը՝ որ խիստ հեռու կը գտնուի դրացին իր անձին պէս սիրելէ, միշտ եսախնդիր և ընչաքաղց եղած է—որը յաճախ մինչև իսկ բռնաբարութեան և մարդասպանութեան մղած է, իւրացնելու համար այլոց ստացուածքները։ Ինչ կերպերով ալ որ ի գործ դրուի՝ եսախնդիր սկզբունքը միշտ նոյնը կը մնայ, ի բաց առեալ ծնունդի, դաստիարակութեան և միջավայրի պարագաներու ազդեցութիւնը։ Նա՝ աշխարհի ամեն մէկ դարուն մէջ անփոփոխ մնացած է, ու անփոփոխ պիտի մնայ մինչև այն ատեն՝ երբ Մեսիայի երկաթէ իշխանութեան ոյժովը, սէրը՝ (ո՛չ թէ բռնութիւնն ու անյագութիւնը) պիտի վճռէ ու հարկադրէ ԻՐԱՒՈՒՆՔԸ, մինչև որ բոլորն ալ պատեհութիւնը ունենան արդարութեան ու սիրոյ օրէնքին գիտակցութեան

*գալու՝ երբ հարկադրութիւն չահախնդրութեան և բռնութեան. մինչև որ ճշմարտութեան և արդարութեան ճառագայթներուն ազդեցութեան ներքև, մարդուն եսախնդիր ու քարացած սիրտը մարմնեղէն սրտի մը վերածուի, վերադառնալով այն վիճակին՝ երբ Աստուած «խիստ բարի» կոչած էր։—Եզեկ. ԼԶ. 26։*

*Երբ յետադարձ ակնարկ մը կը նետենք, առանց դժուարութեան կրնանք տեսնել՝ թէ ի՛նչպէս մարդուն Աստուածանման սէրն ու բարեսրտութիւնը անդութ չահախնդրութեան փոխուեցան։ Երբ մարդը անհնազանդութեան պատճառաւ կորսնցուց Աստուածային շնորհը, և աքսորուեցաւ իր Եդեմական բնակավայրէն, ուր իր ամեն պէտքերը առատօրէն հայթայթուած էին, այն ատեն անմիջապէս իր առջև ելան չահախնդրութեան հրահրումի հակամէտ միջավայրերը։ Ու երբ մեր դատապարտուած ծնողքը կեանքի պայքարը ձեռք առած՝ առաջ անցաւ ու ջանաց իր գոյութիւնը երկարել կարելի եղածին չափ, շուտով փուշերու և տատասկներու, մացառներու և անբարեբեր երկրին դէմ յանդիման եկաւ. ու ասոնց դէմ պայքարելու համար թափած ճիգերն ու ջանքերը Ֆիզիքական յոգնութիւն և ճակտի քրտինք արտադրեցին, ինչպէս որ Տէրը յայտարարած էր։ Մըտաւորական և բարոյական յատկութիւնները սկսան հետզհետէ նսեմանալ անգործութեան պատճառաւ. իսկ միւս կողմէն ալ՝ ստորնագոյն յատկութիւնները սկսան մեծագոյն տեղ դրաւել իրենց յաճախակի գործածութեամբը։ Ապրուստը՝ կեանքի գլխաւոր հոգը և նպատակը դարձաւ, ու աշխատանքի մէջ կենսունակութեան վատնումը չափանիշ մը եղաւ, որուն համեմատ միւս բոլոր չահերը գնահատուեցան, իսկ Մամոնան՝ մարդուն աստուածը դարձաւ։*

*Մի՞թէ զարմանալի է երբ այսպիսի պարագաներու ներքեւ մարդկութիւնը շահախնդրութեան, անյագութեան եւ յափշտակութեան դիմեց. իւրաքանչիւրը ջանալով նախ եւ առաջ իր կեանքի անհրաժեշտութիւնները ձեռք ձգել, ու վերջն ալ՝ Մամոնայի ընծայած պատիւներն ու զեղխութիւնները: Այս է բնական ձգտումը, որմէ Սատանան մեծապէս օգտուած է:*

*Խաւար դարերու մէջ, այլեւայլ ազդեցութեանց ներքեւ (որոնցմէ են տգիտութիւն, ցեղային նախապաշարում ու ազգային փառասիրութիւն), աշխարհի մեծագոյն հարստութիւնը ընդհանրապէս փոքրամասնութեան մը—իշխանութեան տէր անհատներու—ձեռքին մէջ կեդրոնացած էր, որոնց՝ իբրեւ իրենց ազգային ներկայացուցիչները՝ ամբոխները ստրկային հնազանդութիւն կ՚ընծայէին, ու անոնց հարստութեանը մէջ կը փնտռէին իրենց փառքն ու գոհունակութիւնը: Բայց, երբ այլեւս մօտեցաւ այն ժամանակը, ուր ըստ Եհովայի Ծրագրին աշխարհը վերահաստատութեամբ պիտի օրհնուէր Քրիստոսի շնորհիւ, ներկայ դիւրութեանց ու գիւտերու միջոցաւ, Տէրը սկսաւ տգիտութեան ու նախապաշարմանց քօղը վերցնել. ասոր հետ զուգընթացօրէն յառաջացաւ նաեւ ժողովուրդին ընդհանուր բարձրացումը ու երկրային իշխաններու զօրութեան անկումը: Աշխարհի հարստութիւնը այլեւս իր թագաւորներու ձեռքին մէջ չգտնուիր, այլ՝ գլխաւորապէս ժողովուրդին:*

*Թէեւ հարստութիւնը շատ մը չարիքներ կ՚ընծայէ, բայց կարգ մը բարիքներ ալ կը բերէ իր հետ. հարուստները աւելի լաւ դաստիարակութիւն մը կ՚ըստանան—սակայն, ասով անոնք աղքատագոյն ժողովուրդէն աւելի բարձր վիճակի մը հասած ըլլա-*

լով՝ կ՚սկսին քիչ թէ շատ արքայականութեան հետ
ընկերանալ։ Որով ազնուապետութիւն մը գոյութիւն
առած է, որը իր կանգնումին նպաստող թէ՛ դրամ
և թէ՛ դաստիարակութիւն ունի, որոնցմով կրնայ
առաջ տանիլ իր ընչաքաղց պայքարը, իւրացնել ա-
մէն ինչ որ կրնայ, ու ամէն գնով իր անձը առաջ
քշել։

Բայց երբ դաստիարակութեան ներկայի այսքան
առատ դիւրութիւններէն ժողովուրդը կը նպաստա-
ւորուի, մտաւորական ուշիմութիւնը լայն ծաւալ մը
կ՚առանայ, ու մարդիկ կ՚սկսին իրենք իրենց համար
խորհիլ․ ու կէս ուսումի—որը յաճախ վտանգաւոր
բան մ՚է—իրենց մէջ արտադրած ինքնահաւանու-
թեան ու եսասիրութեան շնորհիւ, կը խորհին թէ
իրենք կը տեսնեն ա՛յնպիսի ճամբաներ ու միջոցներ,
որոնցմով բոլորին և մասնաւորապէս իրենց շահերն
ու վիճակները պիտի կրնան պաշտպանել, ի գին
փոքրամասնութեան մը՝ որուն ձեռքին մէջ է ներ-
կայիս հարստութիւնը։ Անկասկածելիօրէն, ասոնց-
մէ շատեր անկեղծօրէն կը հաւատան թէ՝ Մամոնա-
յի խնկարկուներուն (իրենք մէկ կողմը և հարուստը
միւս կողմը) հակամարտ շահերը դիւրութեամբ ու
գոհացուցիչ կերպով կարելի է կարգադրել․ ու ան-
տարակուսելիօրէն, անոնք կը խորհին թէ՝ եթէ ի-
րենք ըլլային հարուստներուն տեղը, խիստ բարեսէր
պիտի ըլլային ու յօժարութեամբ իրենց դրացին ի-
րենց անձին պէս պիտի սիրէին։ Սակայն, պարզա-
պէս իրենք զիրենք կը խաբեն․ ինչու որ իրերու ներ-
կայ պայմաններուն մէջ՝ ստուգիւ քիչերն են որ այդ-
պիսի ազնիւ ոգի մը կը յայտնեն․ և այն որ իր ունե-
ցած աշխարհային բարիքներու քիչին գործածու-
թեանը մէջ անհաւատարիմ է, բնականաբար աւելի
հաւատարիմ պիտի չըլլայ՝ եթէ մեծագոյն հարստու-

*թեանց տէր դառնալ։ Արդարև, դէպքերը կը հաստատեն այս խօսքերուն ճշմարտութիւնը․ ինչու որ հարուստներուն մէջ գտնուած ամենախստասիրտ ու եսասէր անձերէն ոմանք, կեանքի խոնարհագոյն խաւերէն յանկարծակի բարձրացողներ եղած են։*

*Երբ ո՛ևէ կերպով չենք կրնար արդարացնել, այլ պախարակել բոլոր դասակարգերու մէջ բոյն դրած դրամապաշտութիւնն ու ընչաքաղց եսասիրութիւնը, սակայն միևնոյն ատեն, պարտաւոր ենք ուշադրութեան առնել թէ՝ հարուստէն աւելի աղքատ դասակարգին պատկանող հիւանդներուն, անօգնականներուն ու չքաւորներուն համար հայթայթուած յիմարանոցները, հիւանդանոցները, աղքատանոցները, ժողովրդային գրադարանները, դպրոցներն ու այլևայլ ձեռնարկութիւններն ու հիմնարկութիւնները, գլխաւորապէս հարուստին տուրքերովն ու նուէրներովը կանգուն կը մնան։ Այս հաստատութիւնները իրենց գոյութիւնը դրեթէ միշտ բարեսիրտ ու բարեգործ հարուստներու կը պարտին․ ու ասոնք այնպիսի բաներ են, որոնց յաջողակ գործադրութեանը համար աղքատագոյն դասակարգը ո՛չ ժամանակը և ո՛չ ալ մասնաւորապէս պէտք եղած դաստիարակութիւնն ու հետաքրքրութիւնը ունի։*

*Այսու ամենայնիւ, ներկան ականատեսը կը հանդիսանայ հարուստ ու գործաւոր դասակարգերուն միջև գոյութիւն ունեցող թշնամութեան մը—յարաճուն դառնութեան մը գործաւորին կողմէն, նոյնպէս ալ յարաճուն համոզման մը հարուստին կողմէն՝ թէ ո՛չ այլ ինչ, բայց միայն օրէնքի զօրաւոր բազուկը պիտի կրնայ պաշտպանել իր կարծեցեալ* իրաւունքները*։ Այսպէս, հարուստը, աւելի ու աւելի կը մերձենայ կառավարութեանց․ իսկ վարձկան դասակարգը, սկսելով խորհիլ թէ օրէնքն ու*

կառավարութիւնները մտադրած են հարուստին օգնել ու աղքատը ճնշել, դէպի Հասարակապետութեան ու Անիշխանականութեան կը դիմէ, այն մըտածումով՝ թէ այդ կերպով իր շահերը աւելի լաւ պիտի կրնան պաշտպանուիլ, առանց ըմբռնելու թէ՝ ամենավատթար ու ամենամեծածախս կառավարութիւնն իսկ շատ աւելի լաւ է քան անիշխանականութիւնը։

Ս. Գրոց շատ մը համարները որոշապէս կը ցուցադրեն՝ թէ ասիկա պիտի ըլլայ բնոյթը այն նեղութեան, որուն մէջ ներկայի քաղաքական, ընկերական ու կրօնական դրութիւնները պիտի քայքայուին ու անհետանան. մարդուն մտաւորական, բարոյական ու ֆիզիքական թերութիւններուն պատճառաւ, ազատութեան ու գիտութեան աճումը այս վախճանին պիտի յանգի։ Յարմար պարագային պիտի մատնանշենք Ս. Գրոց այս համարները. բայց հոս այս շատ մը համարներէն մաս մը բան միայն կրնանք մէջ բերել, միևնոյն ատեն տեղեկացնելով մեր ընթերցողներուն՝ թէ Հին Կտակարանի շատ մը մարգարէութեանց մէջ Եգիպտոսի, Բաբելոնի և Իսրայէլի նկատմամբ եղած այնքան աչքառու պատկերացումները ո՛չ միայն բառական գործադրութեան մը համար էին, հապա նաև երկրորդական ու աւելի մեծագոյնի մը։ Այսպէս, օրինակի համար՝ Բաբելոնի անկումի մասին եղած գուշակութիւնները չափէն աւելի շռայլ ու անհեթեթ պիտի թուէին մեզի, եթէ բառական ու բնական Բաբելոնին հետ մէկտեղ անոր խորհրդաբանականն ու հակատիպը չը ճանչնայինք։

Յայտնութեան Գիրքը այնպիսի մարգարէութիւններ կը պարունակէ, որոնք բառական կամ բնական Բաբելոնի աւերումէն երկար ժամանակներ վերջը ար-

ճանաչրուած են, որով միմիայն խորհրդաբանական Բաբելոնին կը վերաբերին. սակայն, այն մօտիկ նըմանութիւնը որ կը նշմարուի մարգարէներուն խօսքերուն մէջ, որոնք ըստ երևոյթին ուղղակի բնական Բաբելոնին ուղղուած են, կը տեսնենք որ աւելի մասնաւոր նշանակութեամբ մը խորհրդաբանական Բաբելոնին կը նմանին: Ակնարկուած աւելի լայն առումով, Եգիպտոսը՝ աշխարհը կը ներկայացնէ. Բաբելոնը կը ներկայացնէ անուանական (ոչ թէ իրական) Եկեղեցին, որ Քրիստոնէութիւն կոչուած է. իսկ Իսրայէլը՝ ինչպէս որ ցուցադրեցինք, յաճախ ամբողջ ապագայ աշխարհը կը ներկայացնէ իր արդարացած մակարդակին վրայ—իր հրաշափառ Թագաւորական Քահանայութիւնով, իր սուրբ Ղևտացիներով և իր հաւատացող ու երկրպագող ժողովրդով, Քաւութեան զոհովը արդարացած ու Աստուծոյ հետ հաշտուած: Իսրայէլին՝ օրհնութիւններ խոստացուած են. Եգիպտոսին՝ պատուհասներ, իսկ զօրաւոր Բաբելոնին ալ՝ զարմանալի, կատարեալ ու յաւիտենական կործանում մը, «աղօրիքի մեծ քարի մը նման ծովը նետուած», ուրկէ բնաւ պիտի չելլէ, ընդհակառակը մշտատև դարշանաց ենթակայ պիտի ըլլայ:—Յայտ. ԺԸ. 21:

Յակոբոս Առաքեալ ալ այս Նեղութեան Օրը կը մատնանշէ, ու կ՚ըսէ թէ անիկա հետևանքը պիտի ըլլայ այն դժտութեան, որը գոյութիւն ունի դրամատէրերին ու գործաւորին միջև: Իր խօսքերն են, «Աղէ՛ հիմա, հարուստնե՛ր, լացէք ու ողբացէք այն թշուառութիւններուն համար, որոնք ձեր վրայ պիտի գան: Ձեր հարստութիւնը ապականած (իր արժէքը կորսնցուցած) է, ու ձեր հանդերձները ցեցի կերակուր եղած: Ձեր ոսկին ու արծաթը ժանգոտած են, և անոնց ժանգը ձեզի դէմ վկայ պիտի ըլ-

լայ, ու ձեր մարմինը պիտի ուտէ կրակի պէս։ Վերջին օրերուն համար գանձ դիզեցիք։ Ահա՛ ձեր արտերը հնձող բանւորներուն վարձքը զոր ետ պահեցիք (ձեզի դրամ դիզելու համար), կ'աղաղակէ, ու հնձողներուն բողոքը զօրութեանց Տիրոջը ականջներուն հասաւ»։ (Յակ. Ե. 1—4)։ Յակոբոս կ'աւելցընէ թէ նեղութեան ենթարկուող դասակարգը ինքզինքը շուայլութեան տուած է, զոր ձեռք ձգած է ի գին ուրիշներուն, որոնցմէ են կարգ մը արդարներ. և որովհետև անոնք չեն դիմադրեր՝ բուն իսկ կեանքերնին ճզմուած է։ Առաքեալը կը թախանձէ «եղբայրներ»ուն որ համբերութեամբ տանին իրենց տառապանքի բաժինը, ապագան դիտելով՝ ու Տիրոջ շնորհիւ գալիք ազատութեանը սպասելով։ Իրերու այս ողբալի վիճակին մերձեցումը կրնայ որոշապէս տեսնուիլ ներկայիս. ու ամէն անոնք որոնք զգաստ ու արթուն են, իրենց «սրտերը կը նուաղին վախէն և աշխարհի վրայ գալու բաներուն սպասելէն»։—Ղուկ. ԻԱ. 26։

Բոլորին ալ ծանօթ է թէ՝ ներկայ ժամանակուայ յարաճուն ջանքն ու ձգտումն է գործաւորին նուազ օրավարձ տալ, բացի այն պարագաներէն, ուր գիները արուեստականօրէն ապահովուած են, և կամ գործաւորական կազմակերպութիւններու, գործադուլներու, և այլնի շնորհիւ բարձրացած։ Երբ ամբոխին ներկայ զգացումները նկատի կ'առնուին, բոլորն ալ կրնան տեսնել՝ թէ միմիայն ժամանակի խնդիր մ'է, երբ համբերութիւնը իր գագաթնակէտին պիտի հասնի ու յեղափոխութիւն մը պիտի պայթի անխուսափելիօրէն։ Ասիկա թունդ պիտի հանէ դրամատէրներուն սրտերը, որոնք ետ պիտի քաշեն իրենց դրամագլուխները վաճառականական և ճար-

տարարուեստի ապարէզէն, և նկուղներու ու զանձարաններու մէջ պիտի դիզեն, որպէսզի ի մեծ վիշտ սեփականատէրերուն՝ անգործածութեամբ պահպանումի նախատինքովը ժանգոտին։ Ասիկա իր կարգին սնանկութեան, դրամական տագնապի և վաճառականութեան փլուզումի մը պիտի առաջնորդէ անկասկածօրէն. ինչու որ բոլոր հսկայ և աչքառու վաճառականութիւնները, ներկայիս ապառիկով է որ իրենց գոյութիւնը կը շարունակեն պահել։

Այս բոլորին հետևանքը պիտի ըլլայ տասնեակ հազարներով գործաւորներու անգործութիւնը, որոնց աւուր հացը իրենց օրավարձերէն կախում ունի. ու աշխարհը պիտի լեցուի այնպիսի թափառաշրջիկներով ու անգործներով, որոնք իրենց անհըրաժեշտ պէտքերուն գոհացում տալու համար պիտի ոտնակոխեն ամեն օրէնք։ Ու այն ատեն երևան պիտի գայ Մարգարէին (Եզեկ. է. 10—19) նկարագրածը, ուր գնողը ուրախանալու պատճառ պիտի չունենայ և ո՛չ ալ ծախողը ողբալու, ինչու որ բովանդակ ամբոխը տառապանաց մատնուած պիտի ըլլայ և ստացուածքները՝ անպաշտպանութեան։ Այն ժամանակ ամեն բազուկ անճարակ և ուժաթափ պիտի ըլլայ նեղութենէն կարենալ խուսափելու համար։ Իրենց արծաթը փողոցները պիտի նետեն ու ոսկին իր արժէքը պիտի կորսնցնէ։ Անոնց արծաթն ու ոսկին Տիրոջը բարկութեան օրը զանոնք ազատելու կարող պիտի չըլլան։

Պէտք չէ մոռնանք թէ՝ թէև Իսրայէլացիներու ազգային գոյութեան վերջին քառասուն տարիները Նեղութեան ու «Վրէժխնդրութեան Օր» մ'էին այդ ժողովուրդին համար, որը իրենց ազգութեան կատարեալ կործանումովը վերջացաւ, սակայն, անոնց բարկութեան օրը պարզապէս շուքը կամ գաղափա-

րականն էր այն մեծագոյն ու ընդարձակագոյն նեղութեան՝ որուն պիտի ենթարկուի անուանական Քրիստոնէութիւնը, ինչպէս որ անոնց իբր ժողովուրդ չնորհի Դարուն մէջ ունեցած պատմութիւնը, Աւետարանական Դարու գաղափարականն էր, որը պիտի ցուցադրենք ի վերջոյ։ Ուրեմն բոլորն ալ պիտի կարենան տեսնել՝ թէ ինչո՞ւ համար Տիրոջը Օրուայ նկատմամբ եղած մարգարէութիւնները աւելի կամ նուազ, ուղղակիօրէն Իսրայէլի ու Երուսաղէմի պէտք է որ ուղղուին և ուղղուած են, թէև կապակցութիւնները կը յայտնեն թէ անոնց կատարեալ գործադրութեանը մէջ պարփակուած է նաև ամբողջ մարդկութիւնը։

Ահաւասիկ մարգարէական ուրիշ վկայութիւն մը ևս։ (Սոփոնիայ Ա· 7—9, 14—18)։ «Տէրը կոտորած մը պատրաստած է, Իր կոչնականները հրաւիրած է (Բաղդատէ Յայտ· ԺԹ· 17)։ Եւ պիտի ըլլայ որ Տիրոջը կոտորածին օրը իշխաններն ու թագաւորին տղաքները ու բոլոր օտար զգեստ հագնողները պիտի պատժեմ։ Եւ (նոյնպէս), այն օրը սեմին վրայէն բոլոր ցատկողները (աւազակները), իրենց տիրոջը տունը զրկանքով ու նենգութեամբ լեցնողները պիտի պատժեմ։ (Ասիկա կը ցուցնէ թէ՝ այս տառապանաց օրուանը մէջ ո՛չ միայն հարստութեան և իշխանութեան մեծ կործանում մը պիտի ըլլայ, հապա նաև՝ բոլոր անոնք որոնք ներկայ դրութեանց քայքայմանը մէջ երկնից պատահական գործիքները եղած են, անոնք ալ պիտի պատուհասուին իրենց նոյնչափ անիրաւ ու անօրէն ընթացքին համար· ինչու որ գալու նեղութիւնը բոլոր դասակարգերուն համար պիտի ըլլայ, ու ամբողջն ալ տագնապանաց պիտի մատնէ)»։

«Տիրոջը մեծ Օրը մօտ է, մօտ է· Տիրոջը Օրուան

ժխորը աւելի մօտէն ու բարձրաձայն կը լսուի. զօրաւորը հոն դառնապէս պիտի աղաղակէ։ Այն օրը բարկութեան օր է. նեղութեան ու տառապանաց օր, կործանման ու աւերման օր, խաւարի ու մէգի օր (անստուգութեան ու վտանգի նախազգացման, ինչպէս նաև ներկայ տագնապի), ամպի (տառապանաց) ու մառախուղի օր է. պարսպաւոր քաղաքներու և բարձր աշտարակներու (զօրաւոր ու լաւ մը ամրացուած կառավարութեանց խռովայոյզ ու մարտահրաւէր սպառնալիքներու) դէմ փողի ու աղաղակի օր է. (ասիկա այլաբանական եօթներորդ փողն է, որը այս նեղութեան օրուան ամբողջ տևողութեանը կը հնչէ—որը նոյնպէս Աստուծոյ փողը կոչուած է, Տիրոջը այս Օրուան անցքերուն հետ ունեցած կապակցութեանը համար)։

«Ու մարդիկները նեղութեան մէջ պիտի ձգեմ, և կոյրերու պէս պիտի պտըտին (անստուգութեան մէջ պիտի դեգերին, շուարած իրենց բռնելիք ճամբուն նկատմամբ), քանզի Տիրոջը դէմ մեղք գործեցին։ Ու անոնց արիւնը փոշիի ու մարմինները աղբի պէս պիտի թափուին։ Տիրոջը բարկութեան օրը անոնց արծաթն ու ոսկին անգամ զանոնք ազատելու կարող պիտի չըլլան (թէև նախապէս հարստութիւնը կարող էր ամեն դիւրութիւն ու շռայլութիւն հայթայթել), հապա՝ բոլոր երկիրը Անոր Նախանձին ԿՐԱԿՈՎԸ պիտի սպառի. քանզի անիկա խիստ շուտով երկրիս բոլոր (հարուստ) բնակիչները պիտի հատցընէ»։ Այս կործանումը պիտի ոչնչացնէ հարուստներէն շատերը այն իմաստով՝ թէ անոնք հարուստ ըլլալէ պիտի դադրին. թէև՝ անկասկածօրէն՝ բոլոր դասակարգերէն շատ մը կեանքեր պիտի իյնան։

Այս նեղութեան օրուայ մասին մարգարէներէն ընծայուած մանրամասնութեանց այլևայլ կէտերուն

մեկնաբանութեանցը մէջ չպիտի ջանանք մտնել, այլ համառօտակի պիտի հետեւինք Սոփոնիայի վերոյիշեալ խօսքերուն՝ թէ ամբողջ երկիրը Աստուծոյ նախանձին ԿՐԱԿովը պիտի սպառի։ Այս Մարգարէն միեւնոյն կրակին, ևն., մասին է որ կ՚ակնարկէ դարձեալ, երբ կ՚ըսէ (Սոփ. Գ. 8, 9). «Ուրեմն Ինծի սպասեցէք, կ՚ըսէ Եհովան, մինչև այն օրը որ որսի համար ոտք ելլեմ. քանզի Իմ վճիռս ազգերը գումարել է, որ անոնց (թագաւորութեանց) վրայ Իմ սրտմտութիւնս՝ Իմ բոլոր սաստիկ բարկութիւնս թափեմ։ (Ամեն ազգաց բոլոր ժողովուրդներուն հասարակաց միեւնոյն շահերուն պաշտպանման համար համախմբուիլը ընդդէմ ներկայ կառավարութեանց՝ իր յառաջացման մէջ է. որը իր կարգին թագաւորութեանց միութեան պիտի առաջնորդէ, ինքնապաշտպանութեան բնազդէն մղուած. այսպէս, տառապանքը բոլոր թագաւորութեանց վրայ ալ պիտի գայ, ու բոլորն ալ պիտի կործանին)։ Քանզի բոլոր երկիրը իմ նախանձիս կրակովը պիտի սպառի։ Վասնզի (երբ թագաւորութեանց այս կործանումը իրականացած է, երբ նեղութեան կրակին մէջ ներկայ ընկերական կարգն ու սարքը ջնջուած է) այն ժամանակ ժողովուրդներուն շրթունքները մաքուր շրթունքի մը պիտի դարձնեմ (մարդկային աւանդութիւններով զեղծանուած անարատ Խօսքին միջոցաւ), որ ամենքը Տիրոջը անունը կանչեն ու մէկ սրտով Անոր ծառայութիւն ընեն»։

Աստուծոյ նախանձին այս կրակը այլաբանական է ու զօրաւոր իմաստ մը ունի, և կը ներկայացնէ նեղութեան ու կործանումի այն սաստկութիւնը՝ որը ամբողջ երկիրը պիտի պատէ։ Թէ՝ ասիկա բառական իմաստով գործածուած կրակ չէ, ինչպէս որ ոմանք կ՚ենթադրեն՝ յայտնի է այն իրողութենէն՝

*թէ անկէ յետոյ ժողովուրդը կը մնայ ու կ՚օրհնուի։ Եւ նոյնպէս, թէ այդ մնացող ժողովուրդին պատկանողները սուրբեր չեն, թէև ոմանք կրնան թելադրել թէ են, որուն սխալ ըլլալը որոշ կերպով կը տեսնուի պատմութենէն՝ թէ անոնք անկէ վերջն է որ Աստուծոյ ծառայութեան* կը դառնան, *մինչդեռ սուրբերը անկէ առաջ արդէն իսկ դարձի եկած՝ (հաւատափոխ եղած) են**։

---

*Ասիկա կը յիշենք իբր պատասխան ամեն անոնց պատճառաբանութեանց, որոնք կրակը բառական իմաստով կը գործածեն, ու կը յայտարարեն թէ բնական երկիրն է որ պիտի այրի, եւն.։ Անոնք, որպէսզի կարենան իրենց տեսութիւնը պաշտպանել, կ՚ըսեն թէ հոս յիշուած «*ժողովուրդներուն*» բառը սուրբերուն համար գործածուած է, որոնք երկրի այրելէն ու պաղելէն վերջը պիտի վերադառնան, տուներ պիտի շինեն ու բնակին, այգիներ պիտի տնկեն ու պտուղը ճաշակեն, և իրենց ձեռաց աշխատանքը երկար ժամանակ պիտի վայելեն։ Անոնք՝ ներկան հրահանգումի և պատրաստութեան շրջան մը կը նկատեն, սակայն միւս կողմէն կը մոռնան՝ թէ ըստ իրենց տեսութեան, եթէ երկրին պաղելուն համար մէկ հազար կամ աւելի տարիներ սպասեն՝ այդ երկար ժամանակուայ շրջանին օդին մէջ իրենց ունեցած փորձառութիւնները, նախկինները մոռացման պիտի ենթարկեն։ Այսպէսով ծանր սխալի մը կը մատնեն իրենք զիրենք, որը մեր Տիրոջ, Առաքեալներուն ու Մարգարէներուն ընծայած պատկերները, առակները, խորհրդանշաններն ու մթին ասացուածքները խիստ բառականօրէն մեկնաբանելէն յառաջ կուգայ։ Ու իրենց մոլորութեանց մէջ յառաջդիմելով՝ կը յայտարարեն թէ այս կրակէն յետոյ ա՛լ

Ս. Գրոց մէկ ծայրէն միւսը, երբ **Երկիրը** խորհրդարանական իմաստով գործածուած է, մարդկային ընկերական կազմը կը ներկայացնէ. **լեռները**՝ կը ներկայացնեն թագաւորութիւնները. **երկինքը**՝ իշխող հոգեղէն զօրութիւնները. **ծովը**՝ մարդկային աշխարհի անհանդարտ, աղմկայոյզ, դժգոհ զանգուածները։ **Կրակը**՝ բնաջնջումը կը ներկայացնէ բոլոր այրուած բաներու—ըլլայ այն որոմ, աղտեղութիւն, երկիր (ընկերային կազմ), ևն.։ Ու երբ այլաբանական լեզուով գործածուած **կրակին** վրայ **ծծումբ** աւելցուած է, ջնջումի իմաստը ա՛լ աւելի կը սաստկացնէ. ինչու որ ո՛և է տեսակ կեանքի համար չկայ այնքան մահացու բան մը որքան ծծումբին ծուխը։

Այս բացատրութիւնները աչքի առջև ունենալէ վերջ, երբ ուշադրութեան կ'առնենք Բարկութեան Օրուայ մասին Պետրոսի ընծայած այլաբանական մարգարէութիւնը, կը տեսնենք որ մարգարէներուն վերոյիշեալ վկայութեանց հետ կատարելապէս կը համաձայնին։ Նա կ'ըսէ. «Հին աշխարհը Ջրհեղեղով ողողուած կորսուեցաւ. (այն ատեն ո՛չ թէ բնական երկիրն ու երկինքն էին որ վախճանի մը եկան, այլ Ջրհեղեղէն առաջ գոյութիւն ունեցած վարչութիւնը կամ կարգադրութիւնները)։ Եւ հիմակուան երկինքն ու երկիրը (ներկայ վարչութիւնը) նոյն Խօսքովը (Աստուածային իշխանութեան) պահպանուած են, մինչև դատաստանին ու ամբարիշտ մարդոց կորստեան օրը, կրակի համար պահուած»։ Այն իրողութիւնը՝ թէ Ջրհեղեղը բնական ջուրէ էր, կ'առաջնորդէ ոմանք հաւատալու՝ թէ պէտք է որ կը-

---

լեռ ու ծով պիտի չըլլայ, զանց առնելով ասոնց ու կրակին խորհրդանշաններ ըլլալը։

րակն ալ բնական ըլլալ, որը սակայն անհիմն է։ Այն իրողութիւնը՝ թէ ժամանակ մը Աստուծոյ տաճարը բնական քարէ էր, ապացոյց մը չէ թէ Եկեղեցին՝ որ իրական Տաճարն է, հոգեղէն շինութիւն մը պիտի չըլլայ, Սուրբ Տաճար մը՝ առանց երկրային նիւթերու։ Նոյն տապանն ալ նիւթական էր, բայց նա իբր գաղափարական ծառայեց Քրիստոսի և Անոր զօրութեանը, որով մարդկային ընկերութիւնը պիտի շինէ ու վերակազմէ։

«Տիրոջը Օրը գիշերուան գողի պէս պիտի գայ (աննշմարելիօրէն), որ ատեն երկինքը (ներկայ մթնոլորտի իշխանութիւնները, որոնց գլուխը կամ իշխանը Սատանան է), սաստիկ շառաչիւնով պիտի անցնի, ու տարերքները բռնկած պիտի լուծուին. երկիրն ալ (մարդկային կազմակերպութիւնը), ու ինչ գործեր (գոռոզութիւն, պատուաստիճան, ազնուապետութիւն, արքայականութիւն) որ անոր մէջ կը գտնուին պիտի այրուին։ Երկինքը կրակով այրուած պիտի լուծուի, ու տարերքները բռնկած պիտի հալին։ Սակայն, Իր խոստմունքին համեմատ, կ՚սպասենք նոր երկինքի (հոգեղէն նոր զօրութեան —Քրիստոսի Թագաւորութեան), ու նոր երկրի մը» (ոյժէ ու բռնակալութենէ աւելի Սիրոյ և Արդարութեան նոր հիման վրայ հաստատուած մարդկային ընկերութեան մը)։—Բ. Պետ. Գ. 6, 7, 10—13։

Պէտք չէ մոռնանք թէ Առաքեալներէն ոմանք մարգարէներ ալ էին—գլխաւորապէս Պետրոս, Յովհաննէս և Պօղոս։ Երբ իբրև Առաքեալներ Աստուծոյ թարգմաններն էին Եկեղեցիին օգտին համար նախորդ Մարգարէներու խօսքերը մեկնաբանելու՝ անոնք միևնոյն ատեն Աստուծմէ իբրև Մարգարէներ գործածուեցան գուշակելու համար գալիք բաները, որոնց կատարուելու ժամանակը երբ մօտենար, ա-

րոնք Հաւատքի ընտանիքին ժամանակաւորմամբ սընունդ պիտի հայթայթէին՝ այն ատեն Աստուած կարող ծառաներ կամ մեկնիչներ պիտի յարուցանէր։ (Տե՛ս այս խնդրոյն նկատմամբ մեր Տիրոջ ըրած յայտարարութիւնները—Մատթ. ԻԴ. 45, 46)։

Առաքեալները որպէս Մարգարէներ՝ ներշնչումցան գրելու այնպիսի բաներ, որոնց գործադրութեան ժամանակը հեռու ըլլալով, Հին Կտակարանի Մարգարէներուն նման թերի կերպով միայն կարող էին գնահատել զանոնք. թէև անոնց պէս իրենց խօսքերն ալ մասնաւորապէս հովանաւորուած ու առաջնորդուած ըլլալով՝ իմաստի խորութիւն մ'ունէին, որուն չէին կրնար թափանցել իրենց ծառայութեան ժամանակ։ Այսպէս, որոշապէս կը տեսնուի թէ՝ Եկեղեցին միշտ Աստուծմէ առաջնորդուած ու կերակըրուած է, հոգ չէ թէ ով է եղած Իր ներկայացուցիչը կամ հաղորդակցութեան միջոցը։ Այս ճշմարտութեան հաւողումը պէտք է որ մեզ Աստուծոյ առաջնորդէ, առանց նկատի առնելու Իր թարգմաններէն ոմանց անկատարութիւնները։

Մաղաքիայ Մարգարէ (Դ. 1) Տիրոջը վերջիշեալ Օրուան մասին է որ կը խօսի համանման խորհրդապատկերներով։ Նա կ'ըսէ. «Ահա՛ օրը կուգայ, որ փուռի պէս պիտի վառի, ու բոլոր հպարտները և բոլոր ամբարշտութիւն ընողները յարդի պէս պիտի ըլլան, ու գալու օրը զանոնք պիտի այրէ... այնպէս որ արմատ կամ ոստ պիտի չթողու»։ Հպարտութիւնը, և այն ամեն պատճառները, որոնցմէ գոռոզութիւն և բռնապետութիւն կրնան ծագիլ՝ բոլորովին պիտի ջնջուին Տիրոջը Օրուան մեծ նեղութեամբը, և յետագայ Հազարամեայ Դարու դասերովը—որոնց ամենավերջինը պատկերացուած է Յայտ. Ի. 9ին մէջ։

*Սակայն, երբ կ'ըսուի թէ Հպարտութիւնը (իր բոլոր մեղսալից ու զարշելի երեւոյթներովը) վերջնականապէս պիտի արմատախլուի, ու բոլոր հըպարտներն ու ամբարիշտները անդառնալիօրէն պիտի ջնջուին, չի նշանակեր թէ այդ դասակարգին պատկանողներուն համար բարեփոխուելու յոյս չկայ։ Ո՛չ. շնորհակալութիւն Աստուծոյ. երբ Աստուծոյ արդար բարկութեան կրակը բոցավառի, Դատաւորը պատեհութիւն պիտի շնորհէ* ոմանք լափող կրակէն ազատելու համար (*Յուդայ* 23)։ *Ու միմիայն անոնք, որոնք իրենց ընծայուած աջակցութիւնը կը մերժեն, իրենց գոռոզութեամբը պիտի սատակին ու բնաջնջուին. ինչու որ անոնք այդ ախտը իրենց նկարագրէն անբաժանելի ըրած են ու չեն ուզեր ուղղուիլ։*

*Միեւնոյն Մարգարէն այս օրուան նկատմամբ ուրիշ նկարագրութիւն մ'ալ կուտայ (Մաղ. Գ.* 1—3), *որուն մէջ դարձեալ, կրակի խորհրդապատկերով կը ցուցնէ՝ թէ ի՛նչպէս* Աստուծոյ զաւակները *պիտի մաքրուին եւ օրհնուին ու Անոր մօտ պիտի բերուին, իրենց մոլորութեան աղտեղութիւններու* ջնջուելովը —«*Ուխտին Դեսպանը, որուն կը հաւնիք, ահա՛ կուգայ կ'ըսէ զօրաց Տէրը։ Բայց Անոր գալստեան օրը ո՞վ կրնայ դիմանալ, եւ Անոր երեւնալու ատենը ո՞վ կրնայ* կայնիլ (*փորձին առջեւ*)*. քանզի Անիկա հալեցնողին կրակին պէս... եւ Անիկա արծաթ հալեցնողի ու մաքրողի պէս պիտի նստի, ու Ղեւիի որդիները (որոնք կը պատկերացնեն հաւատացեալները, եւ որոնց գլխաւոր դասակարգը Թագաւորական (Քահանայութիւնն է) պիտի մաքրէ, եւ զանոնք ոսկիի ու արծաթի պէս պիտի զտէ, որպէսզի անոնք Տիրոջը արդարութեամբ ընծայ մատուցանողներ ըլլան*»։

*Ս. Պօղոս այս միեւնոյն կրակին ու զտումի գործին է որ կ'ակնարկէ, որուն պիտի ենթարկուին Հաւատացեալները Տիրոջը Օրուանը մէջ (Ա. Կորնթ. Գ. 12—15), ու այնպիսի ազդու կերպով մը՝ որ ո՛և է կասկածի տեղ չթողուր՝ թէ խորհրդաբանական կրակը ամեն մոլորութիւն պիտի ջնջէ ու այսպէսով նպաստէ Հաւատքի մաքրագործմանը: Յայտնելէ վերջ թէ ինք միմիայն անոնց կ'ակնարկէ, որոնք իրենց Հաւատքը միակ ընդունելի հիման՝ Յիսուս Քրիստոսի կատարած փրկագործութեանը վրայ կը շինեն, կ'ըսէ. «Եթէ մէկը* այս *հիման վրայ կը շինէ ոսկի, արծաթ, պատուական քարեր (Աստուածային ճշմարտութիւններ և անոնց համապատասխան նկարագիր, կամ) փայտ, խոտ, եղէգ (աւանդական մոլորութիւններ և անոնց համապատասխան ցեղցեղուկ նկարագիրներ), ամեն մէկուն գործը յայտնի պիտի ըլլայ. քանզի ՕՐԸ երևան պիտի հանէ, վասնզի ԿՐԱԿով պիտի յայտնուի. և ամեն մէկուն գործին (Բ. Պետ. Ա. 5—11) ինչ տեսակ ըլլալը կրակը պիտի յայտնէ»:*

*Անտարակոյս, ամենանախապաշարեալ միտքն իսկ պիտի կրնայ գիջանիլ և ընդունիլ թէ՝ այն կրակը որ Հոգեղէն գործ մը կ'այրէ, բնական կրակ չի կրնար ըլլալ. փայտով, յարդով ու եղէգով ներկայացուած դրութեանց վերջնական ջնջումը պատկերացնելու համար, կրակը խիստ յարմար խորհրդանշան մ'է: Կրակը անզօր պիտի ըլլայ կարենալ ջնջելու համար Քրիստոսի Փրկող զոհագործութեան վէմին վրայ հաստատուած, ու Աստուածային ճշմարտութեան ոսկիով, արծաթով ու թանկագին քարերով կառուցուած Հաւատքի ու նկարագրի շէնքը:*

*Առաքեալը ցոյց կուտայ ասիկա ըսելով՝ «Եթէ մէկուն (Քրիստոսի վրայ) շինած գործը մնալու ըլ-*

լայ, ինք վարձք պիտի առնէ։ (Իր վարձքը կառուցումի գործին ճշմարիտ նկարագրի զարգացման մէջ, ճշմարտութեան գործածութեան և Աստուծոյ ամբողջ գրահը հագնելուն մէջ ցուցադրած հաւատարմութեան համեմատ պիտի ըլլայ)։ Եթէ մէկուն շինածը այրելու ըլլայ, անիկա վնաս պիտի քաշէ (վարձատրութեան վնաս, անհաւատարմութեան պատճառաւ). բայց ինք պիտի ազատի այնպէս՝ իբր թէ կրակի մէջէ»—խարկուած, խանձուած ու սարսափահար։ (Ա. Կորնթ. Գ. 14, 15)։ Բոլոր անոնք որ Քրիստոսի Փրկագործութեան քարէ հիման վրայ կը կառուցանեն՝ անվտանգ ու ապահով պիտի ըլլան. Անոր արդարութեան ծածկոյթին ներքև ապաւինողներէն և ո՛չ մէկը վերջնական ամօթի առարկայ պիտի ըլլայ։ Բայց ամեն անոնք, որոնք զԱնիկա ու Անոր դործը կամաւորապէս կը մերժեն, յատակ ու կատարեալ գիտութիւն մը ստանալէ յետոյ, «երկրորդ մահ»ուան պատժին պիտի ենթարկուին։—Եբր. Զ. 4—8։ Ժ. 26—31։

Տիրոջը Օրուան այս նեղութիւնը ուրիշ խորհրդաբանական ձևով մ'ալ նկարագրուած է։ Առաքեալը կը ցուցնէ թէ՝ Սինա Լերան վրայ Օրէնքի Ուխտին բացումը զաղափարականն էր Հազարամեայ Դարու կամ Քրիստոսի Թագաւորութեան տիրապետութեան սկզբին աշխարհի համար ներածուելիք Նոր Ուխտին։ Նա կ'ըսէ թէ՝ այն ատեն Աստուծոյ ձայնը բնական երկիրը շարժեց, «և հիմա խոստացեր է ու կ'ըսէ՝ Նորէն պիտի շարժեմ (վերջին անգամը ըլլալով), ո՛չ միայն երկիրը՝ հապա նաև երկինքը»։—Եբր. ԺԲ. 26—29։ Առաքեալը կը բացատրէ ասոնք ըսելով, «Այն նորէն խօսքը կը ցուցնէ շարժուած բաներուն յեղափոխութիւնը, շինուած (կեղծ, խաբէական, անճիշդ) բաներու պէս, որպէսզի անշարժ (ու-

ղի՛ղ, արդար) բաները հաստատուն մնան։ Ուստի անշարժ Թագաւորութիւնը առած ըլլալով՝ ամուր բռնենք այն շնորհքը, որով զԱստուած պաշտենք հաճոյական կերպով, ակնածութեամբ և բարեպաշտութեամբ, վասնզի (ինչպէս որ գրուած է), Մեր Աստուածը մաշող կրակ է»։ Այսպէս, կը տեսնենք թէ Առաքեալը հոս փոթորիկը կը գործածէ, պատկերացնելու համար Տիրոջը Օրուայ նեղութիւնը, մինչդեռ ինքն և ուրիշներ տարբեր տեղեր կրակի խորհրդանշանը կը գործածեն։ Հոս ալ կրակի խորհրդանշանով պատկերացուած անցքերուն է որ կ'ակնարկուին. այսինքն՝ այն մաքրագործութեանց, որոնց պիտի ենթարկուին հաւատացեալներն ու անհաւատները—սխալ ըմբռնումներ հանդէպ Աստուծոյ Ծրագրին, Նկարագրին և Խօսքին, նոյնպէս սխալ ըմբռնումներ աշխարհի ընկերական ու քաղաքական խնդիրներու նկատմամբ։

Ստուգիւ, այս բոլոր կեղծ ու պատիր գործերէն ազատագրումը բոլորին համար ալ օրհնութիւն մը պիտի ըլլայ, որոնք մարդուն գլխուն եկան մասնաւորապէս իր ստորնացած ցանկութիւններուն ու Սատանային՝ արդարութեան խորամանկ թշնամիին վարպետորդի. խաբեբայութիւններուն պատճառաւ։ Եւ սակայն, այդ դասակարգին պատկանողներուն համար բոլոր աղտեղութիւններէն մաքրուիլը խիստ սուղի պիտի նստի։ Անոնք մէջէն պիտի անցնին այն ահռելիօրէն տաք կրակէն՝ այն սարսափելի փոթորկին ու տառապանաց խաւար գիշերին՝ որը պիտի կանխէ Արդարութեան անխախտ Թագաւորութեան փառաւոր պայծառութիւնը. ասիկա այն Հազարամեայ Օրն է, ուր Արդարութեան Արեգակը իր շքեղութեամբն ու զօրութեամբը պիտի ճառագայթէ, օրհնելով ու բժշկելով հիւանդ ու մեռնող բայց փըր-

կուած աշխարհը։—Բաղդատէ Սաղ. Դ. 2 և Մատթ. ԺԴ. 43։

Դաւիթ Մարգարէն՝ որուն Սաղմոսներուն միջոցաւ Աստուած հաճած էր այնքան կանխաչայտութիւններ ընել մեր Տիրոջ առաջին գալստեան նկատմամբ, այս Նեղութեան Օրուան մասին ալ՝ որով Անոր փառաւոր տիրապետութիւնը պիտի սկսի՝ կենդանի նկարագրութիւններ կուտայ, և փոխաբերօրէն կը գործածէ այլազան պատկերներ—կրակ, փոթորիկ և խաւար։

Օրինակի համար՝ նա կ'ըսէ. «Մեր Աստուածը պիտի գայ ու պիտի չլռէ. Անոր առջին մաշող կրակ, ու բոլորտիքը սաստիկ փոթորիկ պիտի ըլլայ»։ (Սաղմ. Ծ. 3)։ «Անոր բոլորտիքը ամպ և մառախուղ կայ, արդարութիւնն ու իրաւունքը Անոր աթոռին հիմերն են։ Անոր առջևէն կրակ կ'երթայ, ու Անոր բոլորտիքը եղած թշնամիները կ'այրէ։ Անոր փայլակները աշխարհը կը լուսաւորեն. երկիրը կը տեսնէ ու կը դողայ։ Լեռները մոմի պէս կը հալին Եհովային երեսէն, բոլոր երկրին Տիրոջը երեսէն։ (Նոր) երկինքը (այն ժամանակ) կը պատմէ Անոր արդարութիւնը, ու բոլոր ժողովուրդները կը տեսնեն Անոր փառքը»։ (Սաղմ. ՂԷ. 2—6)։ «Հեթանոսները կը խռովին, թագաւորութիւնները կը շարժին, Բարձրեալը Իր ձայնը կուտայ, երկիրը կը հալի»։ (Սաղմ. ԽԶ. 6)։ «Քու թշնամիներուդ մէջտեղը Դուն տիրէ։... Տէրը Քու աջ կողմդ է. Անիկա հեթանոսներուն մէջ դատաստան պիտի ընէ—մեռելներով պիտի լեցնէ, շատ երկիրներու վրայ գլուխ (իշխան) եղողները պիտի ջարդէ»։ (Սաղմ. ԾԺ. 2—6)։ Դարձեալ, «Աստուած մեր ապաւէնն ու զօրութիւնն է.... անոր համար մենք պիտի չվախնանք, թէև երկիրը (մարդկային ընկերային կազմը)

փոխուի, ու լեռները (թագաւորութիւնները) ծովուն մէջտեղը ձգուին (խռովայոյզ խուժաններէն կլլուին)։ Թէև անոր ջուրերը գոռան, պղտորին (կատղին)։... Աստուած անոր (Հարսին, Հաւատարիմ «փոքրիկ հօտ»ին) պիտի օգնէ առտուան կանուխ» (Սաղմ. ԽԶ. 1—5)։ Միևնոյն Սաղմոսին 6—10 համարներուն մէջ, միևնոյն պատմութիւնը տարբեր այլաբանութեամբ վերյիշուած է—«Հեթանոսները կը խռովին, թագաւորութիւնները կը շարժին. Բարձրեալը Իր ձայնը կու տայ, երկիրը (ընկերական կազմը) կը հալի»։

Նեղութեան ժամանակին անցնելէն յետոյ, անոր թողած նախճիրները դիտելով՝ Սաղմոսերգուն կը շարունակէ (ԽԶ. 8, 10), «Եկէ՛ք ու տեսէք Տիրոջը գործերը, Որ աւերումներ ըրաւ երկրի մէջ։ Հրաժարեցէք (ձեր նախկին ճամբաներէն, ով ժողովուրդներ) և ճանչցէք (գիտակցութեան եկէք) որ Ես եմ Աստուած։ Հեթանոսներուն մէջ՝ պիտի բարձրանամ, երկրի վրայ պիտի բարձրանամ»։ «Նոր երկիր»ը, կամ մարդկային վերակազմեալ կարգերն ու կարգադրութիւնները, պիտի բարձրացնեն զԱստուած ու Անոր Օրէնքը, որոնք բոլորին վրայ ալ պիտի տիրեն ու իշխեն։

Ուրիշ վկայութիւն մ'ևս՝ որը կ'ապացուցանէ թէ Տիրոջը Օրը ամէն կերպ անօրինութեանց, կործանումի և բնաջնջումի օր մը պիտի ըլլայ (և ո՛չ թէ բնական երկրադունդին հրկիզման ժամանակ մը), տրուած է Ս. Գրոց ամենավերջին խորհրդաբանական մարգարէութեանը մէջ։ Ակնարկելով այս ժամանակին՝ երբ Տէրը Իր մեծ զօրութիւնը պիտի գործածէ տիրապետելու համար, փոթորիկն ու կըրակը հետևեալ կերպով նկարագրուած են—«Եւ ազգերը բարկացան, ու Քու բարկութիւնդ եկաւ»։

*(Յայտ. ԺԱ. 17, 18)։ Նոյնպէս՝ «Եւ Անոր բերնէն երկսայրի հատու սուր մը կ՚ելլէր, որ անով ազգերը զարնէ, ու Ինքը երկաթէ գաւազանով պիտի հովուէ զանոնք. ու Ամենակարող Աստուծոյ սաստիկ բարկութեանը գինիին հնձանը Ինք պիտի կոխէ։.... Եւ տեսայ (խորհրդաբանական) գազանը ու երկրի թագաւորները և անոնց զօրքերը մէկտեղ ժողովուած պատերազմ ըրին Անոր հետ, որ ձիուն վրայ հեծեր էր, ու Անոր զօրքերուն հետ։ Ու գազանը բռնուեցաւ և անոր հետ սուտ մարգարէն.... Երկո՛ւքն ալ ողջ ողջ ծծումբով վառած կրակի լիճը ձգուեցան»։— Յայտ. ԺԹ. 15, 19։*

*Մենք հոս չենք կրնար մեր նիւթէն շեղիլ՝ ուսումնասիրելու համար այս խորհրդանշանները—«գազան», «սուտ մարգարէ», «պատկեր», «կրակի լիճ», «ձի», ևն. ևն., որոնք ուրիշ հատորի մը մէջ պիտի վերլուծուին։ Բան մը՝ որ ներկայիս կ՚ուզենք ձեր ուշադրութեանը յանձնել, սա է՝ թէ այն մեծ ՊԱՏԵՐԱԶՄԸ, և ներկայ Դարու վախճանին տեղի ունենալիք երկրի խաղողին հունձքը, ինչպէս որ վերը նկարագրուած է, տարբեր տեսակ խորհրդապատկերներ են, որոնք կրակով, փոթորկով, ցնցումով ևն., ներկայացուած անցքերուն կը համապատասխանեն։ Նկատի առէք Յովել. Բ. 9—16ի և Ես. ԺԳ. 1—11 ի՝ Յայտնութեան պատերազմի և գինիի հնձանի պատկերներուն հետ ունեցած ներդաշնակութիւնը, որոնք միևնոյն անցքերն է որ կը նկարագրեն համանման պատկերներով։ Գործածուած խորհրդաբանական պատկերներն ու այլաբանութիւնները կ՚օգնեն մեզի, Տիրոջը այս մեծ ու նշանակելի Օրուան անցքերուն աւելի լաւ կերպով ծանօթանալու։*

## ՆԵՐԿԱՅ ԿԱՑՈՒԹԻՒՆԸ

Մենք Հոս մէկ կողմ կը թողունք այն օրուան նկատմամբ տրուած մարգարէական խօսքերը, նկատի առնելու Համար մասնաւորապէս աշխարհի գործերուն ներկայ երևոյթները, որոնք իրենց զարգացմանը մէջ են, ու արագօրէն մօտեցող բաղխումը կը պատրաստեն—բաղխում մը՝ որ երբ իր աՀռելի գագաթնակէտին Հասած է. անտարակոյս, կարճատև պէտք է ըլլայ, եթէ ոչ ցեղին բնաջնջմանը պիտի առաջնորդէ անխուսափելիօրէն։ Այդ պատերազմին երկու թշնամի ույժերը արդէն իսկ կը տեսնուին։ Հարստութիւնը, գոռոզութիւնն ու Հպարտութիւնը մէկ կողմ, իսկ մեծապէս աճող թշուառութիւնը, տգիտութիւնն ու սնապաշտութիւնը, և գործադրուած անարդարութեան տակ Համառութիւնը միւս կողմ։ Երկուստեք եսասիրական զգացումներէ մղուած՝ իրենց շարքերը կը կազմակերպեն ամբողջ քաղաքակիրթ աշխարհին մէջ։ Երբ մեր աչքերը ճշմարտութեամբ օծուած են՝ ուր որ ալ նայինք, կրնանք այժմէն իսկ տեսնել՝ թէ ծովն ու ալիքները կը մռնչեն ու կը փրփրին լեռներուն Հանդէպ, և կը Հարուածեն զանոնք. որոնք կը պատկերացնեն անիշխանականներու և դժգոհներու սպառնալիքներն ու ջանքերը, որոնց թիւը օրըստօրէ կ՚աճի։ Կրնանք նոյնպէս տեսնել՝ թէ մարդկային ընկերութեան այլազան տարրերու միջև տեղի ունեցած շփումը արագօրէն այն կէտին կը դիմէ, որը մարգարէներէն նկարագրուած է. երբ երկիրը (մարդկային ընկերութեան կազմը) պիտի բռնկի, ու յառաջ եկած անխուսափելի Հրատապութենէն տարրերը պիտի Հալին ու քայքայուին։

Արդարև, ժողովուրդին Համար դժուար է իր շաՀերուն ու դասակարգութեան Հակառակը տեսնել,

Հոգ չէ թէ հակամարտ ուժերուն որ շուրջին կը պատ-
կանի։ Հարուստը կ՚զգայ թէ ինք իրաւունք ունի հա-
համեստական բաժնէն ալ աւելին ստանալու այս աշ-
խարհի բարիքներէն. իրաւունք մը՝ ամէն աշխա-
տանք ու ապրանք կարելի եղածին չափ աժան գնե-
լու. իրաւունք մը՝ իր ջանքերուն արդիւնքին. և ի-
րաւունք մը՝ իր միտքը այնպէս մը գործածելու և
գործը այնպէս մը կարգադրելու, որ իրեն աւելի շահ
բերէ և հարստութեանց դէզերը աւելի խոշորցնէ,
Հոգ չէ թէ այդ բանը գլուխ հանելու համար քանի՛
քանիներ պարագաներու ստիպողականութենէն մըղ-
ուած՝ ափ մը բարիքներով միայն քարշ պիտի տան
իրենց կեանքերը. հոգ չէ թէ քանի՛ քանիներ կեանքի
ամենապարզ ու ամենաէական պէտքերէն իսկ պիտի
զրկուին։

Նա սապէս կը տրամաբանէ. ճար չկայ, հայթայ-
թումի և պահանջի օրէնքը պէտք է որ տիրէ. աշ-
խարհի մէջ հարուստն ու աղքատը միշտ գոյութիւն
ունեցած են. և եթէ առաւօտուն հարստութիւնը հա-
ւասարապէս բաժնուէր, ոմանք անառակութեան
կամ անխոհեմութեան պատճառաւ, գիշերը հա-
նելէ առաջ պիտի աղքատանային. մինչդեռ ուրիշ-
ներ, աւելի զգոյշ ու խոհեմ ըլլալով՝ պիտի հարըս-
տանային։ Նոյնպէս, Հարուստը զօրաւոր կերպով
պիտի առարկէ թէ՝ Միթէ կարելի՞ է երևակայել
ուղեղի մեծագոյն կարողութեան տէր մարդ մը, որ
ահագին ձեռնարկութեան միջամուխ ըլլայ, հազա-
րաւոր գործաւորներ բանեցնէ, և խոշոր վնասներ
ընելու կարելիութիւնը աչք առնէ, եթէ շահի և
առաւելութեան յոյսը չունենայ։

Միւս կողմէն ալ արհեստաւորն ու աշխատաւորը
պիտի ըսեն. Թէև կը տեսնենք որ աշխատանքը աշ-

սոր ո՛և է ժամանակէ աւելի առաւելութիւնները կը վայելէ, աւելի լաւ վճարուած է, և որուն շնորհիւ կրնանք մեծագոյն հանգստութիւններ ու հաճոյքներ ձեռք բերել, սակայն ասոնք բոլորն ալ մեր իրաւունքն են, որոնցմէ երկար ատեն չափով մը զըրկուած մնացինք։ Եւ մեր իրաւունքն է որպէսզի մեր ժամանակակից հնարադիտութեանց, գիւտերու, յառաճուն գիտութեան, ևն. բարիքներէն մեր ալ բաժինը ստանանք։ Մենք կ'ընդունինք թէ աշխատանքը պատուաւոր բան մ'է. ու երբ անոր կ'ընկերանան լաւ դատողութիւն, դաստիարակութիւն, առաքինութիւն և սկզբունք, անիկա նո՛յնքան պատուաւոր է և նո՛յնքան իրաւանց տէր՝ որքան ո՛և է պաշտօն։ Միևնոյն ժամանակ, ո՛և է մարդու համար, կեանքի մէջ իր ունեցած կարողութիւնը կամ դիրքը ինչ որ ալ եղած ըլլայ, ծուլութիւնը անպատուաբեր ու դատապարտելի բան մ'է։ Բոլորն ալ, որպէսզի ըստ արժանւոյն գնահատուին ու յարգուին, պէտք է որ ուրիշներուն օգտակար ըլլան կերպով մը։ Եւ սակայն, երբ ներկայ մտաւորական, ընկերական և ելևմտական բարեփոխութիւններն ու յառաջդիմութիւնները նկատի կ'առնենք, կ'ընդունինք թէ անոնք աւելի պարագաներու արդիւնք են, քան մեր կամ մեր գործատէրներուն խելքին։ Մենք կը տեսնենք որ մեր ու բոլոր մարդոց բարեփոխեալ վիճակը արդիւնքն է մասնաւորապէս անցեալ յիսուն տարուայ ընթացքին երևան եկած ուշիմութեան, գիւտերու ծաղկումին, ևն.։

Ասոնք ա՛յնքան արագօրէն երևան եկան որ, հասանքին խոշոր ալիքը թէ՛ աշխատաւորը և թէ՛ դրամատէրը բարձրագոյն աստիճանի մը հասուց. եթէ ապագան մեզի յոյս ներշնչէր՝ թէ այս մակընթացութիւնը պիտի շարունակէ բոլորին օգտին համար.

բարձրանալ, մենք գոհ պիտի մնայինք. բայց մենք մտահողութեան և անհանգստութեան մատնուած ենք ներկայիս, ինչու որ կը տեսնենք թէ իրողութիւնները այնպիսի տպաւորութիւն մը ներշնչելէ հեռի են, որովհետև մակընթացութիւնը իր նախկին վիճակին կը վերադառնայ. ու թէև շատեր ինքզինքնին ամրօրէն հաստատեցին հանգստութեան, պերճանքի և փարթամութեան ափերուն վրայ, անդին սակայն, ժողովուրդները այնպէս հաստատուած ու ապահով չեն, ու ներկայ տեղատուութեան ներքնահոսանքին պատճառաւ, առաջուընէ աւելի ցած իջնալու վտանգին մէջ են։ Ասոր համար է որ կը ջանանք կռուան մը ձեռք ձգել, մեր ներկայ վիճակը և ապագայ յառաջխաղացումը ապահովելու համար, երբ դեռ բոլորովին ուշ չէ։

Ուրիշ խօսքով՝ մենք (արհեստաւորներս ու գործաւորներս) կը տեսնենք թէ՝ թէև ամբողջ մարդկութիւնը ժամանակակից օրհնութիւններէն խոշոր բաժին մը ստացած է, սակայն անոնք որոնք առևտրական մեծագոյն կարողութեան, ժառանգութեան և կամ խարդախութեան միջոցաւ տէր եղած են տասնեակ հազարներով ու միլիոններով տալէրներու, ո՛չ միայն բոլորին վրայ այս առաւելութիւնները ունին, հապա նաև մեքենաներու գիւտերէն նպաստաւորուելով՝ իրենց հարստութեան աճումին քանակը բազմապատկելու դիրքին մէջ են, երբ միւս կողմէն նոյն համեմատութեամբ ալ վարձկան աշխատաւորներուն թոշակները կը պակսին։ Մենք կտեսնենք թէ՝ եթէ աշխատութիւն խնայող մեքենաներու ևն., շահագործող մենավաճառութեան յարաճուն զօրութեան դէմ արհեստաւորներու բազմապատկըուած թիւը պաշտպանելու համար միջոցներու չը դիմենք՝ հայթայթումի և պահանջքի սառնարիւն օրէն-

քը մեզ բոլորս ալ ամբողջութեամբ պիտի կլլէ։ Ներկայ պարագաներէն աւելի, այս վերահաս աղէտները դիմագրաւելու համար է որ կը կազմակերպուինք և պաշտպանողական միջոցներու կը դիմենք։ Ամեն օր մեր շարքերը կը խտանան թէ՛ բնական պատճառներով և թէ՛ գաղթականութեամբ. և միւս կողմէն ալ աշխատանք խնայող մեքենաները կը շատնան։ Որով՝ ամեն օր գործ փնտռողներուն թիւը կ'աւելնայ, իսկ իրենց ծառայութեան պահանջը կը նուազի ու կը սահմանափակուի։ Ուրեմն, եթէ հայթայթումի և պահանջի բնական օրէնքը անընդհատօրէն յառաջ երթայ, շուտով աշխատաւորին վիճակը պիտի հասնի հոն, ուր որ էր հարիւր տարի առաջ, ու օրուան բոլոր առաւելութիւնները դրամատէրներուն ձեռքը պիտի անցնին։ Ահա՛ այս է որ կը ջանանք արգիլել։

Շատ տարիներ առաջ արդէն նախատեսուած էր՝ թէ քանի որ մարդը իմաստուն և արդար օրէնքներու կաշկանդումէն զուրկ է, շատ մը իրական օրհնութիւններն իսկ աղետաբեր պիտի ըլլան իրեն։ Սակայն, այն արագութիւնը որով մէկ գիւտը յաջորդած է միւսին, և ասոր իբր արդիւնք՝ աշխատութիւն խնայող մեքենաներ հայթայթելու համար տեղի ունեցած գործաւորական պահանջը ա՛յնքան մեծ եղած է որ՝ վերջնական արդիւնքը յետաձգուած է, և անոր փոխարէն աշխարհը ընդհանուր ոգևորութիւն մը ունեցած է—փքացում մը արժէքներու և թոշակներու, հարստութեանց, ապառիկներու (պարտքերու) և գաղափարներու—որոնք սկսած են յետաշրջութեան դիմել աստիճանաբար։

Վերջին մի քանի տարիներուն մէջ երկրագործական ամեն կերպ գործիքներու ահագին արտադրութիւն մը տեղի ունեցած է, որոնց շնորհիւ մէկ մար-

*դը առաջուան հինգին չափ գործ կրնայ արտադրել։ Ասկէ առաջ եկած են երկու տեսակ արդիւնքներ․ նախ՝ առաջուանին երեք անգամը աւելի հող մշակուած է, հինգի տեղ երեք հոգիի գործ հայթայթելով, և թողելով որ միւս երկուքը ուրիշ տեղ մը ճարեն իրենց համար․ երկրորդ՝ այն միւս երեքը որ իրենց գործին վրայ մնացին, մեքենայի գործածութեամբ, կրնան նահապետական մեթոտով գործող տասնևհինգ մշակներու չափ բերք արտադրել։*

*Համանման դիւրութեանց շնորհիւ, ասոր չափ ու ասկէ աւելի հսկայ փոփոխութիւններ տեղի ունեցած են գործի ուրիշ բաժիններուն մէջ ալ․ զոր օրինակ՝ երկաթի ու պողպատի գործը․ որոնց աճումը ա՛յնքան վիթխարի եղած է որ՝ չնայած թէ մեքենայի միջոցաւ այսօր մարդ մը նախկին տասներկուքին չափ գործ կրնայ արտադրել, սակայն և այնպէս, աշխատող գործաւորներու թիւը մեծապէս աւելցած է։ Ասոր հետևանքներէն մին այն պիտի ըլլայ՝ որ մօտ ապագային, այս ընդարձակ գործերը ներկայ հսկայ պահանջներէն ա՛լ աւելի պիտի արտադրեն․ ու այս պահանջները փոխանակ հետզհետէ աճելու, հաւանօրէն պիտի նուազին․ ինչու որ աշխարհը շուտով իրեն համար պէտք եղածէն ա՛լ աւելի երկաթուղիներով կ՚օժտուի, և տարեկան նորոգութեանց համար պէտք եղածն ալ, ներկայ գործարաններուն կէսն իսկ առատօրէն կրնայ հայթայթել։*

*Այսպէս, չափէ աւելի արտադրութեան տարօրինակ կացութեան դէմ յանդիման կը գտնենք ինքզինքնիս, որը թէ՛ գործատէրն ու գործաւորը ժամանակէ ժամանակ անգործութեան կը դատապարտէ․ իսկ վարձկան գործաւորները անկարող ըլլալով իրենց պէտքերն ու կեանքի այլևայլ վայելքները ձեռք ձգելու, մեծ արտադրութիւնները անսպառ կը*

մնան։ Եւ պէտք եղածէն աւելի արտադրութիւնները, նոյնպէս և անգործութիւնը, իրենց աճումին մէջ են, ու անմիջական դարմանի մը պէտքը կը շեշտեն, որուն հայթայթումին հետամուտ են մարդկային ընկերութեան բժիշկները, թէև հիւանդը չպիտի ջանայ օգտուիլ անկէ։

Ուրեմն (կը շարունակէ վարձկան գործաւորը), մենք կը տեսնենք որ երբ արտադրութիւնը պահանջը կը գերազանցէ, յառաջ եկած մրցակցութիւնը մեծապէս կը կտրէ գործատիրոջ և մեքենաներու շահը, և իրենց շահերուն կրճատումը աշխարհի ամեն կողմերը հարուստները տագնապի կը մատնէ, և կարգ մը պարագաներու մէջ շահի փոխան վնասի կ՚առաջնորդէ. սակայն և այնպէս, մենք կը հաւատանք թէ այն դասակարգը որ ամենէն աւելի նպաստաւորուեցաւ ընդհանուր ոգևորութեան փքացման պատճառաւ, պէտք է որ նոյնպէս այդ յեղաշրջութեան մէջ ժողովուրդէն աւելի տուժէ ու նեղը իյնայ։ Այս նպատակին ու խնդրոյն իրականացման համար, վարձուորներս կ՚աշխատինք հետևեալ արդիւնքները ձեռք ձգել—օրենսդրութեամբ՝ եթէ կարելի է. եթէ ո՛չ բռնի և անօրինութեամբ, այն երկիրներուն մէջ, ուր որ ո՛և է նկատումով ժողովուրդին ձայնը չլսուիր ու շահերը չպաշտպանուիր.—

Մեր առաջարկն է, որպէսզի գործին նրբութեանը կամ ծանրութեանը համեմատ աշխատութեան ժամերն ալ կարճնան, որպէսզի այս կերպով կարելի ըլլայ աւելի մեծ բազմութեան մը առանց նուազեցնելու օրավարձերը և աւելցնելու արտադրութիւնները գործ հայթայթել. այսպէսով, սպառողներու թիւը շատցընելով, պիտի կրնանք հակակշռել չափէն աւելի արտադրութիւնը։ Մեր առաջարկն է, որպէսզի դրամական տոկոսի քանակը ներկայինէն շատ տ-

ւելի պակաս վճարուի, ու այսպէսով փոխատուները փոխառուներուն կամ աւելի աղքատ անհատներուն հանդէպ մեղմութեան սորվել. եթէ ո՛չ, թողուլ որ իրենց դրամագլուխը անգործութենէն ժանգոտի: Մեր առաջարկն է որ՝ կ՚ամ երկաթուղիները ժողովուրդին ստացուածքը ըլլան ու ժողովուրդին ծառաներէն՝ կառավարական պաշտօնեաներէն կառավարուին, և կա՛մ անոնց ազատութիւններն ու գիները, ևն. սահմանափակուին օրէնսդրութեան միջոցաւ, և բռնադատուին անոնց գործածութիւնը ա՛յնպէս մը յառաջ տանիլ, որ կարենայ ժողովուրդին աւելի բարւոք ծառայութիւն մը մատուցանել:

Ինչպէս որ յայտնի է, երկաթուղիները գիներու սուղ շրջանին մէջ շինուած ըլլալով, փոխանակ անոնց դրամագլուխը կրճատելու և առևտուրի ուրիշ բաժիններու կրած գիներու ընդհանուր անկումին հետևելու, ընդհակառակը իրենց սկզբնական խոշոր դրամագլխի բաժնեթղթերը երկու կամ երեք անգամ բազմապատկած են (որուն հասարակ լեզուով բաժնեթղթի ոռոգում անունը կուտան), առանց սակայն իսկական արժէքին վրայ բան մը աւելցնելու: Այս է պատճառը, որ երկաթուղիի մեծ ընկերութիւնները կը ջանան տոկոս և շահաբաժին վճարել պարտամուրհակներու և բաժնեթղթերու համար, որոնք միջին հաշուով երկաթուղիներու ներկայ իրական արժէքին չորս անգամին հաւասար են: Արդիւնքը այն է՝ որ ժողովուրդը կը տուժէ: Երկրագործները ըստիպուած են ծանր գին վճարել իրենց ապրանքներուն փոխադրութեան համար, որոնք երբեմն իրենց արմտիքները փայտի տեղ վառելը աւելի շահաւոր կը գտնեն. ու այսպէս ժողովուրդին համար ուտեստի գինը կը բարձրանայ, առանց երկրագործին օգուտ մը ըլլալու: Մեր առաջարկն է այս վիճակին

*դարման մը գտնել, որպէսզի երկաթուղիները իրենց իսկական արժէքէն գրեթէ հարիւրին չորս վճարեն իրենց բաժնետէրերուն, և ո՛չ թէ ներկայի երեք կամ չորս անգամ մեծցուած արժէքին հարիւրին չորսէն մինչև ութը վճարեն, ինչպէս որ անոնցմէ շատերը կ՚ընեն ներկայիս, դրամախաղի դրութիւններով մրցակցութիւնը խափանելով։*

## ԹՐԸՍԹՆԵՐԸ ՄԵԾՆ ԲՐԻՏԱՆԻՈՅ ԼՈՐՏԵՐՈՒՆ ՆՄԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ԿԸ ՇԱՀԱԳՈՐԾԵՆ

*Մենք լաւ գիտենք, կ՚ըսէ արհեստաւորը, թէ ամեն անոնք որոնք երկաթուղիի և այլնի վերաբերեալ ուռուցուած բաժնեթղթեր ունին իրենց ձեռքին մէջ, անոնց աչքին սոսկալի բան մը պիտի թուի իրենց յատկացուցած դրամագլխի շահաբերութեանց բեկանումը, իրենց բերնէն ակռայ քաշել հանելուն պէս պիտի զգան, ու իրենց այնպէս պիտի թուի թէ՝ ժողովուրդէն շնորհուած արտօնութեանց գործածութեան* իրաւունքը (?), *կեղծ ու արուեստական գիներու միջոցաւ անոնցմէ ահագին գումարներ խլելը չարաչար կերպով բռնաբարուած է, որով ամեն կերպով պիտի դիմադրեն։ Բայց մենք կը խորհինք թէ անոնք պէտք է փառք տան, որ ժողովուրդը այսքան մեղմ է, որ անոնցմէ չի պահանջեր որպէսզի անիրաւութեամբ յափշտակուած միլիոնաւոր տալէրները վերադարձնեն։ Մենք կ՚զգանք թէ այլևս եկած է ժամանակը, երբ ժողովուրդին խաւերն ալ այս օրուան օրհնութիւններէն հաւասար բաժին պէտք է ստանան. և այս բանին համար անհրաժեշտ է որ օրէնք մը անցուի, որպէսզի ժողովուրդէն խըլուած դրամով և զօրութեամբ պարարտացած այս բոլոր անյագ Ընկերութիւնները (Թրըսթները), այդ*

օրէնքին ուժովը կաշկանդուին, և բռնադատութիւն ժողովուրդին աւելի պատշաճ գիներով ծառայելու։ Ուրիշ ո՛չ մէկ կերպով կարելի է Նախախնամական այս օրհնութիւնները ժողովուրդին տրամադրութեան ու հասողութեան ներքև բերել։ Իրաւ է թէ դրամագլխի տէր մեծ Ընկերութիւնները մեծաւ մասամբ օրհնութիւն և բարիք մ'են, բայց մենք օրըստօրէ ականատեսը կ'ըլլանք այն իրողութեան՝ թէ անոնց օգտակար ըլլալու շրջանը այլևս անցած է, և անոնք սկսեր են ժողովուրդին տէրերը դառնալ. և եթէ չսանձահարուին՝ շուտով վարձուորները չքաւորութեան և ստրկութեան պիտի առաջնորդեն։ Այս ընկերութիւնները, որոնք աւելի կամ նուազ հարուստ անհատներէ կազմուած են, Ամերիկեան ընդհանուր ժողովուրդին նկատմամբ այն միևնոյն դիրքը սկսած են գրաւել, ինչ որ Լորտերը ունին Մեծն Բրիտանիոյ ու Եւրոպայի ժողովուրդներուն նկատմամբ. այն տարբերութեամբ միայն, որ ընկերութիւնները աւելի ազդեցիկ են։

Մեր նպատակները իրականացնելու համար, կը շարունակէ գործաւորը, կազմակերպութեան պէտքը ունինք։ Պէտք է որ ժողովուրդին գործակցութիւնը վայելենք, եթէ ոչ այսպիսի վիթխարի զօրութեան և ազդեցութեան մ'առջև բան մ'ալ չենք կրնար ընել։ Թէև միութիւններու, ևն.ի անունով կազմակերպուած ենք, սակայն ատիկա 'չի նշանակեր թէ մեր նպատակը անիշխանականութիւն կամ անարդարութիւն գործադրել է ո՛և է դասակարգի դէմ։ Մենք, ժողովրդային զանգուածներս, կը փափաքինք պարզապէս մեր ու մեր զաւակաց իրաւունքները պաշտպանել, պատշաճ սահմաններ գծելով անոնց համար, որոնց հարստութիւնն ու զօրութիւնը հակառակ պարագային կրնան մեզ ճզմել—հարստու-

թիւնը և զօրութիւնը թէ որ իմաստուն կերպով սահմանափակուին ու գործածուին, կրնան բոլորին ընդհանուր օրհնութիւն մ'ըլլալ։ Մէկ խօսքով՝ մենք ոսկեղէն կանոնին գործադրութիւնը պիտի ստիպենք անոնց—«Ինչ որ կ'ուզես որ ուրիշը քեզի ընէ, նոյնը դուն անոր ըրէ»։

Խիստ փափաքելի բան մը պիտի ըլլար այս խնդրոյն հետ կապ ունեցողներուն բոլորին համար ալ, եթէ հարուստները իրենց ներկայ ունեցածովը գոհ ըլլային, և ամեն դասակարգերու վիճակին ընդհանուր և տեւական բարւոքմանը համար ժողովուրդի մեծ զանգուածին հետ համագործակցէին. եթէ գործաւորները բանաւոր պահանջներով գոհ մնային. եթէ Սիրոյ և Արդարութեան Ոսկեղէն Կանոնը այս կերպով ի գործ դրուէր։ Բայց մարդը, իր ներկայ վիճակին մէջ, այս կանոնը չպիտի պահէ եթէ ստիպողական ոյժ մը չըլլայ։ Թէև աշխարհի արհեստաւորներէն ոմանք իրենց գաղափարներուն մէջ չափաւոր և արդար պիտի ըլլան, բայց ո՛չ մեծամասնութիւնը. անիկա չափէ աւելի ծայրայեղ ու զոռոզ պիտի ըլլայ իր գաղափարներուն և պահանջներուն մէջ։ Դրամատէրներու կողմէ ըլլալիք ամեն մէկ զիջում, ուրիշ պահանջներու և գաղափարներու դուռ պիտի բանայ. և ամեն անոնք որոնք փորձով տեսած են՝ գիտեն թէ տգէտ աղքատին զոռոզութիւնն ու իշխանութիւնը կրկնապատիկ ծանր ու խիստ է։

Այսպէս է նաև հարուստներուն մէջ—ոմանք բոլորովին կը կարեկցին գործաւոր դասակարգին վրայ, և ուրախ պիտի ըլլան իրենց կարեկցութիւնը գործնականացնելու, այնպիսի կարգադրութիւններ ընելով՝ որոնք աստիճանաբար ցանկալի բարեփոխութեանց առաջնորդեն. բայց անոնք խիստ փոքրամասնութիւն մը կը կազմեն, և բոլորովին անկա-

րող են թէ՛ միաբանութիւնները և թէ՛ նոյնիսկ իրենց անհատական առևտուրները իրենց ուզածին պէս կառավարելու։ Եթէ անոնք վաճառականներ կամ գործարանատէրներ են, չեն կրնար աշխատութեան ժամերը կարճեցնել, կամ գործաւորներուն թոշակները աւելցնել. ինչու որ մրցողները իրենցմէ աւելի աժան պիտի ծախեն, որով թէ՛ իրենք և թէ՛ իրենց պահանջատէրերն ու գործաւորները նիւթապէս պիտի տուժեն։

Այսպէս, ահա կը տեսնենք «Եհովայի Օր»ուան մեծ տառապանքին պատճառը։ Խնդրոյն երկու կողմը գտնուած ահագին մեծամասնութիւնները եսասիրութեամբ պիտի կառավարուին ու կոյր պիտի ձևանան միմեանց շահերուն նկատմամբ։ Գործաւորները պիտի կազմակերպուին համանման շահերու նկատումով, բայց եսասիրութիւնը պիտի ջնջէ իրենց միութիւնը. և ամեն մէկը, գլխաւորապէս այդ եսասիրութենէն մղուած, այդ ուղղութեամբ պիտի ծրագրէ ու դաւէ։ Տգէտ ու գոռոզ մեծամասնութիւնը պիտի տիրապետէ, իսկ լաւագոյն դասակարգը անզօր պիտի ըլլայ սանձելու զայն զոր իր իմաստութիւնը կազմակերպեց։ Դրամատէրները այն համոզմանը պիտի գան՝ թէ գործաւորին որքան զոհացում որ տան, այնքան աւելի պիտի պահանջուի իրենցմէ, և շատ չանցած հաստատապէս պիտի որոշեն ամեն պահանջ անտես ընել։ Որով լուրջ խռովութիւններ ծայր պիտի տան, և ընդհանուր շփոթութեան ու անվստահութեան մէջ՝ ժողովրդային ու անհատական ձեռնարկութիւններէն դրամը ետ պիտի քաշուի, ու առևտրական անկում և դրամական տագնապ յառաջ պիտի գայ։ Հազարաւորներ գործէ իյնալով՝ ի վերջոյ յուսահատութեան պիտի մատնուին. այն ատեն կարգ կանոն տոնակոխ պիտի ըլլայ —լեռները պիտի

*ընկղմին այս փոթորկայոյզ ծովուն մէջ։ Այսպէս, ընկերային երկիրը պիտի լուծուի, և կառավարական երկինքը (եկեղեցական ու քաղաքական իշխանութիւնը), պիտի անցնի․ ու բոլոր հպարտները և բոլոր ամբարիշտները յարդի պէս պիտի ըլլան։ Այն ատեն զօրաւոր մարդիկը դառնօրէն պիտի լան, հարուստները պիտի ոռնան, և ամբողջ բազմութեան վրայ վախ ու տագնապ պիտի տիրէ։ Ինչպէս որ մեր Տէրն ալ գուշակեց, նոյնիսկ հիմա իմաստուն և հեռատես մարդոց սրտերը կը նուաղին, երբ աշխարհի վրայ գալիք բաները կը նշմարեն։ (Ղուկ․ ԻԱ․ 26)։ Ս․ Գիրքը կը ցուցնէ մեզ թէ՝ այս ընդհանուր դըժտութեան մէջ անուանական եկեղեցին (որ ամբողջ յարանուանութիւնները կը պարունակէ) աստիճանաբար կառավարութեան և հարուստին կողմը պիտի հակի, որով ժողովուրդին վրայ ունեցած իր ազդեցութեան մեծ մասը պիտի կորսնցնէ, իսկ ի վերջոյ, կառավարութեանց հետ պիտի տապալուի։ Այսպէս, երկինքը (եկեղեցական իշխանութիւնը) կրակի մէջ ըլլալով՝ մեծ շառաչիւնով պիտի անցնի։*

*Այս սոսկալի նեղութիւնը ժողովուրդը այն գիտակցութեան պիտի բերէ թէ՝ հոգ չէ թէ ո՛րքան ընտիր և իմաստուն ծրագիրներ ունենան, անոնք բոլորն ալ ոչնչութեան դատապարտուած են, քանի որ իրենք տգիտութեամբ ու շահախնդրութեամբ կ'առաջնորդուին։ Ասիկա բոլորն ալ պիտի համոզէ թէ՝ դժուարութիւնը հարթելու ամենայարմար կերպը զօրաւոր և արդար կառավարութեան մը հաստատութիւնն է, որը հպատակեցնէ բոլոր դասակարգերը ու հարկադրելի ընէ արդարութեան սկըզբունքները մինչև որ նպաստաւոր ազդեցութեանց ներքև մարդուն քարացած սիրտը մարմնեղէն սրտի վերածուի, Աստուծոյ պատկերին մէջ վերահաս-*

տատուր։ Եւ արդարև, ճիշդ անիկա է որ գործադրել խոստացած է Աստուած բոլորին բարիքին համար, և որը պիտի իրականանայ Քրիստոսի Հազարամեայ Տիրապետութեան միջոցաւ, որը այս Նեղութեան Օրուայ պատիժներէն ու դասերէն յետոյ պիտի ներածուի Եհովային կողմանէ։—Եզեկ. ԺԱ. 19։ ԼԶ. 25, 36։ Երեմ. ԼԱ. 29—34։ Սոփ. Գ. 9։ Սաղմ. ԽԶ. 8—10։

Թէև այս Նեղութեան Օրը մարդուն ինկած ու եսասէր վիճակին բնական ու անխուսափելի արդիւնքն է, որը կատարելապէս նախատեսուած և քարոզուած էր Տիրոջմէն, Որը գուշակեց թէ բացի քիչերէն, մնացեալ ամբողջութիւնը պիտի անտեսէ Իր Օրէնքներն ու խրատները մինչև որ փորձառութիւնն ու բռնութիւնը զիրենք հնազանդութեան մղէ, սակայն ամեն անոնք որոնք գալիք վիճակներէն կը հասկընան, պէտք է որ իրենք զիրեք և իրենց գործերը անոնց համեմատ կարգի դնեն։ Բոլոր հեզերուն—Քրիստոսի Մարմնոյն և աշխարհի խոնարհներուն կ'ըսենք, «Տէրը փնտռեցէք, ով երկրիս բոլոր խոնարհները, դուք որ Անոր իրաւունքը (կամքը) ի գործ կը դնէք. արդարութիւն փնտռեցէք, խոնարհութիւն փնտռեցէք, գուցէ Տիրոջը բարկութեան օրը պահուիք»։—Սոփ. Բ. 3։

Ո՛չ ոք բոլորովին պիտի խուսափի գալիք նեղութենէն. բայց անոնք որ արդարութիւն կը փնտռեն և խոնարհութիւնը կը սիրեն, միւսներէն աւելի նպաստաւոր վիճակի մը մէջ պիտի ըլլան։ Իրենց ապրելու եղանակները, մտածելու և գործելու կերպերը, և արդարութեան հանդէպ տածած համակրութիւնը, որը կարող պիտի ընէ զիրենք իրերու կացութենէն հասկնալու, և այս նեղութեան ու վախճանին նըկատմամբ Ս. Գրոց ընծայած ծանօթութիւնները գը-

նահատակելու, այս բոլորը միասին պիտի օգնեն անոնց ուրիշներէն աւելի քիչ տառապելու—մանաւանդ որպէս հոգեհատապ վախերէն ու վտանգի նախազգացումներէն:

Այս Տիրոջը Օրուան դէպքերու ուղղութիւնը խիստ խաբէական պիտի ըլլայ անոնց՝ որոնք Ս. Գրոց ընծայած ծանօթութիւններէն զուրկ ու անգիտակ են: Բաղդատելով անցեալ երկար դարերուն և իրենց յամր ընթացքին հետ՝ անոր գալուստը յանկարծակի պիտի ըլլայ, կրակին յարդ այրելուն պէս (Սոփ. Բ. 2). բայց այդ արագութիւնը պայծառ երկնքի մէջ շողացող փայլակի պէս պիտի չըլլայ, ինչպէս որ ոմանք սխալմամբ կ՚ակնկալեն, խորհելով թէ Տիրոջը օրուան մասին գրուած բոլոր բաները քսանեւչորս ժամուայ օրուան մը մէջ տեղի պիտի ունենան: «Գիշերուայ գողի մը» պէս պիտի հասնի անիկա, այն նշանակութեամբ թէ՝ անոր մերձեցումը գաղտագողի և ընդհանուր աշխարհէն աննկատելի պիտի ըլլայ: Այս օրուան նեղութիւնը սարսուռներու և ցընցումներու շարք մը պիտի ըլլայ, որոնք աւելի յաճախ ու սաստկութեամբ պիտի գան ինչ համեմատութեամբ որ վախճանին կը մօտենան, իսկ վերջինը ամենէն ահաւորը պիտի ըլլայ. Առաքեալը այս գաղափարը կուտայ երբ կ՚ըսէ—«յղիին երկանցը պէս»: (Ա. Թես. Ե. 2, 3): Վիշտերը այն ատեն պիտի դադրին, երբ ՆՈՐ ՎԻՃԱԿԸ ծնանի—նոր երկինք մը (Քրիստոսի հոգեղէն իշխանութիւնը) և նոր երկիր մը (վերակազմեալ մարդկային ընկերութիւնը) որոնց մէջ արդարութիւն կը բնակի (Բ. Պետ. Գ. 10, 13)—երբ Արդարութեան և Սիրոյ Օրէնքը պիտի տիրապետէ, փոխան զօրութեան և եսասիրութեան:

Նոր Դարու աշխատաւորական այս տառապանքներուն իւրաքանչիւրը, պիտի սպառէ ներկայ քա-

ղաքական մարմնին ոյժն ու կորովը և սատկացնէ անոր ցաւերը։ Միակ բանը որ մարդկային ընկերութեան բժիշկները (քաղաքական տնտեսագէտները) պիտի կրնան ընել անոր համար, ըլլալու է, օգնել անոր և իմաստնօրէն ուղղել անխուսափելի ծննդեան ընթացքը—ճամբաները աստիճանաբար մաքրել ու պատրաստել վախճանին համար։ Անկարելի է որ դալիքը կարենան ետ վանել եթէ փափաքին իսկ. ինչու որ Աստուած վճռեց որ այնպէս տեղի ունենայ։ Սակայն նայնպէս մարդկային ընկերութեան շատ մը բժիշկները բոլորովին անտեղեակ պիտի ըլլան վիճակէն ու դարմաններէն և խնդրոյն ստիպողականութենէն։ Անոնք զսպողական միջոցներու պիտի դիմեն, և նեղութեան անցնող ամեն մէկ բորբոքումէն օգտուելով՝ տոկացող յատկութիւններուն ոյժ պիտի տան, որով տառապանքը պիտի զօրացնեն, բայց պիտի չկրնան ծնունդը երկարօրէն ուշացնել, ու իրենց խեղճ գործողութիւնը հիւանդին մահը պիտի փութացնէ. ինչու որ Նորերը ծնելու երկունքին մէջ Հին Կարգերը պիտի մեռնին։

Մէկ կողմ թողունք Առաքեալին թելադրած ազդու պատկերը և պարզօրէն խօսինք։ Դրամատէրներու և մեքենաներու ժանիքներէն ազատուելու համար ժողովուրդին թափած ջանքերը անզօր պիտի ըլլան. ո՛չ մէկ ծրագիր կատարեալ ու բաւարար պիտի ըլլայ, երբ ժամանակէ ժամանակ կը ջանան իրենց ճամբաները ընդունիլ տալ և խորտակել «հայթայթումի և պահանջի» կապերն ու շղթաները, որոնք աւելի ու աւելի կը կաշկանդեն զիրենք։ Ժողովուրդին ամեն մէկ անյաջող փորձերը՝ Նոր Կարգերը ներկայ սահմաններէն դուրս պահելու կարելիութեան մասին Դրամատէրներուն վստահութիւնը պիտի զօրացնեն, մինչև որ կազմակերպութիւններու և կառավարու-

*թեանց զսպելու զօրութիւնը այլեւս իր ամենայետին կէտին հասնի. ուր մարդկային ընկերութեան շըղթան մէջտեղէն պիտի խորտակուի, կարգն ու կանոնը պիտի անտեսուի, և լայնածաւալ անիշխանութիւնը պիտի իրականացնէ այն բոլոր տառապանքները, որոնց համար Մարգարէները ըսին՝ թէ «անոր նմանը ազգ ըլլալէ ի վեր եղած չէ»—և փառք Աստուծոյ Իր տուած ապահովութեանը համար՝ թէ— «ո՛չ ալ անկէ վերջը պիտի ըլլայ»։—Մատթ. ԻԴ. 21։*

*Եգիպտոսէն ու անոր վրայ եկած պատուհասներէն Իսրայէլի ազատիլը՝ այնպէս կը թուի թէ աշխարհի վերահաս ազատագրութիւնն է որ կը պատկերացնէ, որը տեղի պիտի ունենայ Մովսէսէն ա՛լ աւելի մեծ Մէկուն միջոցաւ, որուն Մովսէս միայն պատկերն էր։ Ասիկա ազատագրութիւն մը պիտի ըլլայ Սատանային ձեռքէն և այն ամեն գործա՛կալութիւններէն, զորս նա հնարած է մարդը մեղքին ու մոլորութեան գերիները ընելու համար։ Եւ ինչպէս որ Եգիպտոսի վրայ եկած հարուածները իրենց վերցուած պարագային ա՛լ աւելի խստասրտութեան կ'առաջնորդէին Եգիպտացիները, այսպէս ալ Տիրոջը Ներկայ Օրուան ցաւերուն առժամեայ բարձումը պիտի խստացնէ ոմանց սիրտը, ու պիտի ըսեն աղքատներուն՝ ինչպէս որ Եգիպտացիները ըսին Իսրայէլացիներուն՝ «Դուք ծոյլ էք» և ատոր համար դժգոհ էք. ու հաւանօրէն, Եգիպտացիներուն պէս ալ պիտի ջանան խեղճ ժողովուրդին բեռը ծանրացնել։ (Ելից. Ե. 4—23)։ Եւ ինչպէս որ Փարաւոն իր ամենավերջին պատուհասին կէս գիշերը, դառնապէս զղջաց, ասոնք ալ ի վերջոյ պիտի մեղմանան՝ ցաւելով որ աւելի մեղմօրէն և իմաստութեամբ չվարուեցան սկիզբէն։ (Ելից ԺԲ. 30—33)։ Ալ աւելի լաւ կերպով կարենալ նշմարելու համար յարևնմանու-*

թիւնը, դիտեցէք որ այս Տիրոջը Օրուան Նեղութիւնները «բարկութեան եօթը սկաւառակները» կամ «վերջին եօթը պատուհասները» կոչուած են, և մեծ երկրաշարժը (յեղափոխութիւնը) ատոնց ամենավերջինին մէջ պիտի պատահի, երբ ամեն լեռ (թագաւորութիւն) պիտի աներեւոյթանայ։— Յայտ. ԺԶ. 17—20։

Այս Նեղութեան Օրուան նկատմամբ ուրիշ բան մ'ալ որ կայ, այն է թէ՝ անիկա ճիշդ իր ժամանակին կուգայ—Աստուծոյ ժամանակին։ Այս աշխատասիրութեան երկրորդ հատորին մէջ (որ կոչուած է («ԺԱՄԱՆԱԿԸ ՄՕՏԵՑԱԾ Է»), Հին Կտակարանի Օրէնքներէն ու Մարգարէներէն և նաև Յիսուսի ու Նոր Կտակարանի Առաքելական մարգարէութիւններէն վկայութիւններ բերուած են, որոնք որոշ կերպով ու միաբանօրէն կը ցուցնեն թէ՝ այս Նեղութեան Օրը ժամանակագրապէս Մեսիայի Հազարամեայ փառաւոր տիրապետութեանը սկիզբը գետեղուած է։ Հազարամեայ Դարու Վերահաստատութեան գործին իբր անհրաժեշտ պատրաստութիւն մ'է որ այս Նեղութիւնը առաջուց տեղի կ'ունենայ։

Մեղքի վեց հազար տարուայ տևողութեանը, ու մինչև Քրիստոսի հզօր և արդար Կառավարութեան հաստատուիլը, եթէ ներկայ աշխատութիւն խնայող մեքենաները աւելի կանուխէն հնարուէին, ապահովաբար չարիք մը պիտի ըլլային, մարդոց պարապոյ երկար ժամեր հայթայթելով։ Փորձառութիւնը սա առածին ծնունդ տուած է թէ՝ «Ծուլութիւնը չարեաց մայրն է». որով կրնանք ըմբռնել Աստուծոյ վրճռին իմաստութիւնը երբ կ'ըսէր, «Երեսիդ քրտինքովը ուտես հացդ մինչև գետինը դառնալդ»։ Աստուծոյ բոլոր կարգադրութեանց պէս այս ալ բարենպա-

*տակ և իմաստուն է, և Իր արարածներուն ապագայ բարելաւութեանը համար է։*

*Տիրոջը Օրուան նեղութիւնը, որուն համախմբուումը այժմէն իսկ կը տեսնենք, Աստուծոյ կարգադրութեան իմաստութիւնը կը հաստատէ. որովհետև, ինչպէս որ տեսանք, անիկա վրայ կը հասնի երբ արդիւնք աշխատութիւն խնայող մեքենաներու պատճառած չափազանց արտադրութեանը, և իրենք զիրենք նոր պայմաններուն յարմարցնելու այն անկարողութեանը համար, զոր ի յայտ կը բերեն մարդկային ընկերութեան այլևայլ տարրերը, իւրաքանչիւրին մէջ եղած եսասիրութեան պատճառաւ։*

*Այն պարագան, թէ ըստ մարգարէութեանց, հիմակ է որ Աստուած տգիտութեան քօղը կը վերցնէ ու աստիճանաբար կը թոյլատրէ որ իմացականութեան լոյսը և հնարագիտութիւնները լուսաւորեն մարդկութիւնը՝ անհերքելի ապացոյց մ'է թէ այս է նոր կարգ ու սարքերու ներածման Աստուծոյ յարմար ժամանակը, որուն արդիւնքին մասին կանխաւ նախաձայնուած էր։ (Դան. ԺԲ. 4, 1)։ Եթէ գիտութիւնը աւելի կանուխէն գար, նեղութիւնն ալ այն ատեն տեղի պիտի ունենար. և իրաւ է թէ այն ժամանակ փոթորիկէն ու քայքայումէն յետոյ մարդկային ընկերութիւնը պիտի կրնար վերակազմուիլ, սակայն անիկա* ո՛չ թէ *նոր երկիր մը (ընկերային կարգ ու սարք մը) պիտի ըլլար, ուր արդարութիւնը պիտի բնակէր ու տիրէր՝ հապա այնպիսի նոր երկիր մը կամ կարգադրութիւն մը՝ ուր մեղքն ու ապականութիւնը հիմակուանէն շատ աւելի առատօրէն պիտի վխտային։ Աշխատանք խնայող մեքենաներու բարիքներուն հաւասարապէս բաժանումը, իր ատենին աւելի ու աւելի պիտի կարճեցնէր գործի ժամերը, և այսպէս՝ ինկած ու խեղճ հաճոյքներու տէր մարդը,*

*գերծ աշխատանքի սկզբնական հովանիէն, իր ազատութիւնն ու ժամանակը ո՛չ թէ մտաւորական, բարոյական և ֆիզիքական բարելաւման համար պիտի գործածէր, այլ՝ ինչպէս որ անցեալոյն պատմութիւնը կը հաստատէ, մոլորութեանց և ապականութեանց մէջ պիտի մխրճուէր։*

*Տգիտութեան ծածկոցին մասնակի բարձումը,* այժմ *հազարաւոր դիւրութեանց կ՚առաջնորդէ մարդկութիւնը, և Վերահաստատութեան Դարու սկսելէն առաջ միջոցներ կը հայթայթէ դաստիարակութեան, բարոյական և ֆիզիքական զարգացման, նաև սնունդի և հագուստի պատրաստութիւններ ընելու այն ամէն խումբերուն համար, որոնք ժամանակէ ժամանակ դուրս պիտի գան իրենց գերեզմաններէն։ Դարձեալ, Նեղութեան ժամանակը ա՛յնպիսի ժամանակի մը մէջ տեղի պիտի ունենայ, ուր պիտի կրնայ մարդկութեան օգտակար ըլլալ, անոնց լաւ դաս մը տալով՝ թէ մարդը անընդունակ է ինքնավարութեան. ու սակայն տեղի պիտի ունենայ ճիշդ այն պարագային, երբ Հազարամեայի Առաւօտը սկսած է, երբ Նա որ բոլորը փրկեց՝ պիտի սկսի օրհնել զանոնք երկաթէ գաւազանի անբեկանելի կանոնովը, և այն կատարեալ գիտութեամբն ու օգնութեամբը, որուն շնորհիւ կարող պիտի ըլլան վերահաստատուիլ սկզբնական կատարելութեան և յաւիտենական կենաց մէջ։*

## ՍՐԲՈՑ ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹԻՒՆՆ ՈՒ ՊԱՏԵՀՈՒԹԻՒՆԸ

*Կարևոր հարց մ՚է որ կը ծագի, այս Նեղութեան շրջանին մէջ սուրբերու ունեցած պարտականութեանց և այն պատշաճ վերաբերմունքին նկատմամբ,*

զօր պարտին ցուցադրել ներկայիս անցող երկու հակամարտ դասակարգերուն հանդէպ։ Հաւանական կը թուի թէ՝ սուրբերը այս տառապանքի շրջանին մէջ գոնէ ժամանակ մը անհատապէս ներկայ պիտի ըլլան։ Սակայն իրենց կացութիւնը միւսներէն պիտի տարբերի․ ո՛չ այնքան անոր համար որ հրաշքով մը պիտի պահպանուին (թէև բացորոշ կերպով խոստացուած է թէ իրենց հացն ու ջուրը անպակաս պիտի ըլլան), այլ այն պատճառաւ որ, Աստուծոյ Խօսքէն հրահանգուած ըլլալով՝ աշխարհածաւալ մտահոգութենէն և անյոյս սոսկումէն զուրկ պիտի ըլլան։ Անոնք տեղեկացած պիտի ըլլան թէ այդ նեղութիւնը Աստուծոյ Ծրագրին համաձայն է, և ապագային ընդհանուրին օրհնութեան պատրաստութիւնն է, և այս խորհուրդն ու հաւատքը միջոցը պիտի ըլլայ իրենց զուարթութիւն և սփոփանք ներշնչելու։ Ասիկա զօրաւոր կերպով արտայայտուած է Սաղմոսի ՂԱ․ ին և Եսայիի ԼԳ․ 2—14, 15—24 ին մէջ։

Այսպէս, Աստուծոյ ընծայած սիրոյ հաւաստիքէն մխիթարուած և օրհնուած՝ սուրբերուն գլխաւոր պարտականութիւնն է ցոյց տալ աշխարհին թէ համայնատարած բոլոր նեղութեանց և դժգոհութեանց մէջ, երբ նոյնիսկ իրենք ալ կը մասնակցին նեղութեան ու կը տառապին, դարձեալ յուսալից և զուարթ են, և Աստուծոյ Խօսքին միջոցաւ նախաձայնուած փառաւոր վախճանին ի տես կը հրճուին։

Առաքեալը գրած է թէ՝ «Աստուածպաշտութիւնը գոհունակութեամբ միասին մեծ շահ մ'է»։ Թէև ամեն ատեն ճշմարտութիւն մ'եղած է այս, բայց կրկնակ նշանակութիւն մը կ'ստանայ ներկայիս, Տիրոջը Օրուանը մէջ, երբ աշխարհի բոլոր դասակարգերուն գլխաւոր թերութիւնը դժգոհութիւնն է։ Սակայն սուրբերը միւսներէն աչքառու բացառու-

թիւն մը պէտք է կազմեն։ Ո՛չ մէկ ատեն դժգոհութիւնը այսքան ընդարձակածաւալ էր. մինչդեռ անցեալոյն մէջ չէ եղած ժամանակ մը, ուր մարդը ա՛յսքան շնորհներ և օրհնութիւններ վայելած ըլլար։

Ուր որ ալ նայինք, ըլլան անոնք հարուստին հանդըստաւէտ և շքեղ պալատները, որոնց նկատմամբ Սողոմոն իր ամբողջ փառքովը միասին ոչինչ դիտցաւ, ըլլայ այն յաջողակ ու միջին դասու գործաւորին խաղաղ բնակարանը, որը արտայայտականն է ճաշակի, հանդստաւէտութեան, դեղարուեստի և ճոխութեան, մենք կը տեսնենք որ ներկան իր յորդառատ արտադրութիւններովը, մարդկային գոյութեան անցեալ ամբողջ շրջանը մեծապէս և ամեն կերպով կը գերազանցէ։ Սակայն, այս բոլորով մէկտեղ, մարդը տակաւին ապերջանիկ ու դժգոհ է։ Խնդիրը այն է որ եսասէր և ստորին սրտի մը ցանկութիւնները չափ ու սահման չեն ճանչնար. չահախնդրութիւնը ա՛յնպէս մը տիրապետած է բոլորը որ, ուր որ ալ նայինք, կը տեսնենք որ ամբողջ աշխարհը հարստութեան տիրանալու յիմարական և խելագար խուճապին ու վազքին մէջն է։ Քիչերը միայն յաջողակ դուրս կուգան, իսկ մնացեալները անոնց վրայ կը նախանձին ու կը զայրանան որպէս անբաղդներ, և բոլորն ալ նախկին ո՛ևէ ժամանակէ աւելի դժգոհ ու ողորմելի վիճակ մը ունին։

Սուրբերուն անվայել է այս պայքարին մասնակցիլ. որովհետև իրենց նուիրումի ուխտը այն էր թէ՝ իրենք աւելի բարձր ու երկնային մրցանակին տիրացմանը համար պիտի վազեն. որով խզած են երկրային փառասիրութեանց կապերը, և պատշաճ ու պիտանի իրեր հայթայթելէ ի զատ, աշխարհային ուրիշ բաներու համար չեն աշխատիր։

*Անոնք իրենց աստուածպաշտութեան* գոհունակութիւն *ալ միացուցած են, որը սակայն չի նշանակեր թէ ոևէ փառասիրութիւն չունին. հապա թէ՝ իրենց փառասիրութիւնները երկնային իրերու վրայ դարձուցած են այլևս, և հոգւով ու սրտով կը ջանան երկնքի մէջ գանձ դիզել, և Աստուծոյ նկատմամբ հարուստ ըլլալ. նոյնպէս՝ չնորհիւ Աստուծոյ Խօսքին մէջ պարունակուած Ծրագրին գիտութեանը, գոհ են երկրային այն բոլոր բարիքներէն, զոր Հայրը կը հաճի ընծայել իրենց: Անոնք կրնան հրճուանօք երգել.*

«Գոհ՝ վիճակի մէջ ամենայն,
Երբ առաջնորդս է Եհովան»:

*Բայց աւա՜ղ, որ Աստուծոյ բոլոր զաւակները այս միևնոյն դիրքին մէջ չեն գտնուիր: Շատերը աշխարհը տիրապետող դժգոհութեան մէջ ինկած են, և իրենք զիրենք կենաց իրական հաճոյքներէն կը կողոպտեն, ինչու որ լքած են Տիրոջը ճամբաները, և աշխարհի մարդկութեան բաժնեկիցը ու բաղդակիցը կ'ըլլան*—որոնելով *աշխարհային բաներ, որոնց ձեռք ձգելուն իսկ վստահ չեն, և աշխարհի դժգոհութեանը կը մասնակցին, ու չեն ճանչնար այն գոհունակութիւնն ու խաղաղութիւնը, զոր աշխարհը ո՛չ կարող է ընծայել և ո՛չ ալ կորզել:*

*Ասոր համար կը թախանձենք սուրբերէն, որ մէկդի թողուն ծակաչքութիւնը և սնափառութիւնը ու ասոնց հետևանք դժգոհութիւնը, ու աշխատին բարձրագոյն հարստութեանց և անոնց ընծայած խաղաղութեան տիրացմանը համար: Ասոնց ուշադրութեանը կը յանձնենք Առաքեալին խօսքերը.—*

*«Գոհունակութիւնը աստուածպաշտութեամբ մէկտեղ մեծ շահ մ'է. վասնզի բան մը չբերինք աշխարհ,*

*ու յայտնի է որ չենք կրնար անկէ բան մը տանիլ. Հապա կերակուր ու հանդերձ ունենալով՝ անոնցմով բաւականանանք։ Բայց անոնք որ հարստանալ կ'ուզեն (ըլլայ յաջողութեամբ կամ ուրիշ կերպով), կ'իյնան փորձութեան ու որոգայթի և շատ յիմարական ու վնասակար ցանկութիւններու մէջ, որոնք սատակումի ու կորուստի մէջ* կ'ընկղմեն *(կը խորասուզեն) մարդիկ։ Վասնզի (թէ՛ հարուստին և թէ՛ աղքատին համար) ամէն չարեաց արմատը արծաթասիրութիւնն է.* որուն *մի քանիները* անձնատուր *ըլլալով՝ հաւատքէն մոլորեցան, ու ինքզինքնին շատ ցաւերով խոցեցին։ Բայց դուն, ո՛վ մարդ Աստուծոյ, փախի՛ր այս բաներէն, ու գնա՛ արդարութեան, աստուածպաշտութեան, հաւատքի, սիրոյ, համբերութեան և հեզութեան ետեւէն. պատերազմէ՛ հաւատքին* բարի պատերազմը, *բռնէ՛ յաւիտենական կեանքը, որուն կանչուեցար, և շատ վկաններու առջև դաւանեցար բարի դաւանութիւնը»։*
—*Ա. Տիմ. Զ.* 6—12։

*Եթէ սուրբերը այսպիսի գոհունակութեան տիպարներ են, և ուրախութեամբ կը տանին ներկայ տառապանքները ապագայ բարի օրերու յոյսովը, կրնան աշխարհի ընտիր դասեր ընծայել իրենց բարի օրինակովը։ Իրենց բարի օրինակէն ի զատ, երբ զիրենք շրջապատողներուն խորհուրդ ու խրատ կուտան, պէտք է որ իրենց հաւատացածին համաձայն ըլլան անոնք. այնպիսի խորհուրդներ, որոնք վիրաւոր ու հիւանդ հոգիներու օծանելիք մը՝ բուժիչ սպեղանի մը ըլլան։ Պատեհութիւններէն օգտուելով՝ սուրբերը պէտք է որ գալիք բարի ժամանակները ծանուցանեն աշխարհի մարդկութեան. Աստուծոյ Թագաւորութիւնը պէտք է որ քարոզեն, ու ցուցնեն ներկայ տառապանաց բուն պատճառը և ա-*

նոնց միակ դարմանը։—Ղուկ. Գ. 14։ Եբր. ԺԳ. 5։ Փիլիպ. Դ. 11։

Ներկայ աշխարհը կը հառաչէ (Հռովմ. Ը. 22, 19), ո՛չ միայն մարմնեղէն իրական հիւանդութիւններու՝ հապա նաև գաղափարական ախտերու ներքև ալ, և մասնաւորապէս շահախնդրութեան, գոռոզութեան ու փառասիրութեան արդիւնքը եղող դժգոհութեան տակ, որը կը մաշեցնէ ու կը չարչրկէ զիրենք, քանի որ իրենց ցանկութեանց յագուրդ չեն կրնար տալ։ Մենք որ խնդրոյն երկու կողմերն ալ կրնանք տեսնել, ամեն անոնց որ կ՚ունկնդրեն մեր խօսքերուն՝ խորհուրդ կուտանք որպէսզի իրենց ունեցածովը գոհ ըլլան և համբերութեամբ սպասեն, մինչև որ Աստուած Իր յարմար ատենին ու ճամբովը իրենց պարգևէ այն շատ մը օրհնութիւնները, զոր Իր սէրն ու իմաստութիւնը պատրաստած են։

Օգնութեան ձեռք կարկառելու և օրհնութիւն մ՚ըլլալու տեղ, եթէ այլոց իրական կամ երևակայական վէրքերն ու զրկանքները քրքրենք ու հրահրենք, անոնց չարիք մ՚ըրած պիտի ըլլանք ու պիտի աճեցընենք իրենց դժգոհութիւնը, և հետևաբար՝ տառապանքը։ Բայց երբ կատարենք մեր պաշտօնը, ԲՈԼՈՐ մարդոց համար տրուած Փրկանքի ուրախ լուրերուն և յետագայ օրհնութեանց մասին քարոզելով՝ այն ատեն Թագաւորութեան ճշմարիտ մունետիկները, Անոր խաղաղութեան դեսպանները պիտի ըլլանք։ Գրուած է թէ՝ «Ի՜նչ գեղեցիկ են լեռներուն (թագաւորութեանց) վրայ Անոր ոտքերը (Քրիստոսի Մարմնոյն վերջին անդամները), որոնք աւետիս կը բերեն»։—Ես. ԾԲ. 7։

Այս «Եհովայի Օր»ուան նեղութիւնները գալիք բարիքներու մասին աւետիսներ տալու պատուական ու հազուագիւտ պատեհութիւններ պիտի ընծայեն.

*և երանի անոնց որոնք իրենց Տիրոջ քայլերուն պիտի հետևին ու բարի Սամարացիին պէս վէրքերը պիտի կապեն, և սփոփանաց ու խրախուսանաց իւղովն և գինիովը պիտի օծեն։ Ասոնց այն ապահովութիւնը տրուած է՝ թէ իրենց աշխատանքը ապարդիւն պիտի չմնայ. ինչու որ «երբ Տիրոջը դատաստանները երկրի վրայ ըլլան, աշխարհի բնակիչները արդարութիւն* պիտի սորվին»։—*Ես. ԻԶ.* 9։

*Իրենց երկնաւոր Հօրը նման, Անոր զաւակներուն ալ համակրութիւնը հառաչող մարդկութեան դերութենէ ազատուելու ճիգերուն համեմատ պէտք է որ ըլլայ. Տիրոջը նման պէտք է կարեկցելով յիշեն թէ՝ հակամարտ ոյժերուն մէջ կան այնպիսիներ, որոնց ըղձանքները թէև արդար ու ազնիւ են, բայց իրենց ջանքերը սահմանափակ ու խափանման դատապարտուած. ո՛չ միայն իրենց անկեալ բնութեան տկարութեանցը՝ հապա նաև իրենց ամենօրեայ միջավայրին ու կրթութեանց, և ուրիշներու հետ ունեցած յարաբերութեանց պատճառաւ։ Սակայն Տիրոջը զաւակները պէտք չէ որ համակրութիւն արտայայտեն ո՛և է դասակարգի զօրոզ ու ծակաչք ցանկութեանց նկատմամբ։ Անոնց խօսքերը պէտք է որ մեղմ ու չափաւոր ըլլան, և խաղաղութեամբ պէտք է որ ապրին որքան որ սկզբունքները կը ներեն։ Անոնք պէտք է յիշեն՝ թէ ասիկա Տիրոջը պատերազմն է, և քաղաքական կամ ընկերական հարցերու նկատմամբ Աստուծոյ Խօսքին նախաձայնած լուծումէն զատ ուրիշը չեն ճանչնար։*

*Ուրեմն, ամեն բանէ առաջ, անձնազոհ հետևորդներուն պարտականութիւն կ՚ իյնայ վստահ ըլլալ՝ թէ իրենք Եհովային կառքին ճամբուն վրայ չեն կեցած, ընդհակառակը, պէտք է «կայնին ու Աստուծոյ փրկութիւնը տեսնեն», այն նպատակով ու գի-*

*տակցութեամբ՝ թէ իրենց չիյնար այդ պայքարին մասնակցիլ, թէ ատիկա Տիրոջ գործն է որ յառաջ կ՚երթայ տարբեր միջոցներով։ Ու մէկ կողմ թողելով այս բոլոր բաները, պէտք է որ իրենց պաշտօնը հաւատարմօրէն կատարեն, քարոզելով թէ մօտալուտ Երկնային Թագաւորութիւնը ամեն դասակարգերու անհրաժեշտ ու միակ դարմանն է, և նաև իրենց միակ յոյսը։*



# ԳԼՈՒԽ ԺԶ·

## ԾԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ

**Ճշմարտութեան Հանդէպ Մեր Ունեցած Պարտականութիւնը—Անոր Գինը, Անոր Արժէքը, Անոր Շահը ։**

*ՆԱԽՈՐԴ գլուխներուն մէջ մենք տեսանք թէ թէ՛ բնութեան և թէ՛ Յայտնութեան լոյսը պայծառ կերպով կը ցուցադրեն այն անժխտելի իրականութիւնը՝ թէ գիտակից, իմաստուն, ամենակարող և արդար Աստուած մըն է այս բոլոր բաներուն Արարիչը, և թէ՝ Նա բոլորին գերագոյն և օրինաւոր Տէրն է. թէ՝ բոլոր կենդանի ու անկենդան բաները Անոր իշխանութեան ենթակայ են. թէ՝ Ս. Գիրքը Անոր նկարագրին և Ծրագիրներուն յայտնութիւնն է, այն համեմատութեամբ՝ որ հաճած է յայտնել զանոնք մարդոց ։ Մենք անկէ սորվեցանք թէ՝ թէև ներկայիս չարը Իր արարածներէն ոմանց մէջ կը գերակշռէ, սակայն միմիայն որոշ ժամանակի մը համար և սահմանուած չափով մը գոյութիւն ունի, այն ալ Իր թոյլատրութեամբը, իմաստուն վախճաններու համար զորոնք Նա ի նկատի ունի ։ Մենք նաև սորվեցանք թէ՝ թէև ներկայիս երկիրը խաւար՝ ու ազգերը մառախուղ կը ծածկէ, սակայն որոշեալ ժամանակին Աստուծոյ լոյսը պիտի ցրուէ բոլոր խաւարը, ու ամբողջ երկիրը Իր փառքովը պիտի լեցուի ։*

*Մենք տեսանք՝ թէ Անոր մեծ Ծրագիրը այնքան ընդարձակ ՚էր, որ անոր ամբողջացմանը համար*

*մինչև ցարդ. դարեր պահանջուած են. և թէ՝ անցեալ բոլոր խաւար դարերուն, երբ այնպէս կը թուէր թէ Աստուած գրեթէ մոռցած էր Իր արարածները, Անոր՝ անոնց ապագայ օրհնութեան համար ունեցած Ծրագիրը անաղմուկ՝ սակայն հիանալի կերպով յառաջ տարուած է, թէև այս բոլոր դարերու տևողութեանը, Իր Ծրագրին գաղտնիքները իմաստուն կերպով ծածկուած են մարդոց աչքերէն։ Մենք նաև տեսանք՝ թէ այն Օրը կամ Դարը որ ներկայիս ծագելու վրայ է աշխարհիս վրայ, անոր համար դատաստանի կամ քննութեան օր մը պիտի ըլլայ. և թէ՝ անցեալի բոլոր պատրաստութիւնները, մարդկութեան ընդհանրապէս, կարելի եղածին չափ նպաստաւոր պատեհութիւն մը տալու նպատակաւ եղած են, երբոր,* որպէս անհատներ, *յաւիտենական կենաց տիրանալու փորձին պիտի ենթարկուին։ Անցեալ վեց հազար տարուայ երկար ժամանակաշրջանը մեծապէս բազմապատկած է մարդկութիւնը, ու անոնց չարիքի տիրապետութեան ներքև ստացած հարուածները և տառապանքները անոնց այն տեսակ փորձառութիւններ սորվեցուցած են, որոնք մեծապէս օգտակար պիտի ըլլան երբոր անոնք դատաստանի բերուին։ Ու թէև մարդկութիւնը ընդհանուր կերպով թոյլատրուած է այսպէս վեց հազար տարի տառապելու, սակայն որպէս անհատներ, անոնք իրենց տառապանքի կենաց շրջանը մի քանի կարճ տարիներու մէջ աւարտած են։*

*Մենք տեսանք՝ թէ երբ մէկ կողմէն մարդկութիւնը այս անհրաժեշտ դաստիարակութեան մէջէն կ'անցնէր, յարմար ատենին Աստուած Իր Որդին ղըրկեց, զանոնք փրկելու համար. և թէև մարդկութեան հսկայ զանգուածը չճանչցաւ Փրկիչը Իր խոնարհութեան մէջ, ու չհաւատաց թէ Տէրոջը Օծեալը* այս-

պէս *կուգար զիրենք փրկելու, սակայն սրտերնին առ Աստուած դարձուցած մարդոց մէջէն, որոնք կը հաւատային Անոր խոստումներուն՝ Աստուած այս դարերու տեւողութեանը երկու խումբեր ընտրած է, որոնք պիտի ստանան Թագաւորութեան պատիւները—Աստուծոյ Ծրագրին գործադրութեանը մէջ բաժին ունենալու պատիւները։ Այս երկու ընտրուած խումբերը, ինչպէս որ տեսանք, պիտի կազմեն Աստուծոյ Թագաւորութեան երկու մասերը։ Ու Մարգարէներէն կը տեղեկանանք՝ թէ այս Թագաւորութիւնը շուտով պիտի հաստատուի աշխարհի վրայ. և թէ՝ անոր իմաստուն ու արդար վարչութեան ներքև, աշխարհի բոլոր ազգերը պիտի օրհնուին, ինքզինքնին յաւիտենական կենաց արժանի ընելու ամենանպաստաւոր պատեհութեամբ մը. թէ՝ իրենց Քրիստոսի թանկագին արեամբը փրկուելնուն շնորհիւ, հիանալի սուրբ պողոտայ մը պիտի բացուի, որպէսզի Տիրոջը փրկուածները (ամբողջ մարդկութիւնը—Եբր. Բ. 9) անոր մէջ քալեն. թէ՝ անիկա հասարակաց ճամբայ մը պիտի ըլլայ, որը ներկայինէն՝ աւելի դիւրին պիտի ըլլայ ամեն անոնց, որոնք իսկապէս կը բաղձան մաքրուիլ և սրբանալ. և թէ՝ բոլոր գայթակղութեան քարերը անկէ պիտի ժողուըուին, ու բոլոր որոգայթները, նենգիչ հրապոյրները և ծուղակները պիտի վերցուին, ու պիտի օրհնուին ամեն անոնք, որոնք անկէ պիտի յառաջանան դէպի կատարելութիւն և յաւիտենական կեանք։*

*Որոշ է թէ այս դատաստանը կամ տիրապետութիւնը չի կրնար սկսիլ, մինչև որ Քրիստոս՝ զոր Եհովան նշանակած է աշխարհի Դատաւորը կամ Կառավարիչը ըլլալու՝ դարձեալ չգայ—ո՛չ թէ դարձեալ խոնարհութեամբ, հապա զօրութեամբ և մեծ փառքով. ո՛չ թէ դարձեալ աշ-*

խարհը փրկելու, այլ արդարութեամբ դատելու (հովուելու)։ Ո՛Ւէ դատ չի կրնար յառաջ տարուիլ մինչեւ որ դատաւորը ատեանը չբազմի եւ դատարանը չգումարուի որոշեալ ժամանակին, թէեւ անկէ առաջ կրնան նախապատրաստութեան մեծ գործեր տեղի ունենալ։ Այն ատեն Թագաւորը Իր փառաց աթոռը պիտի նստի. եւ Անոր առջեւ պիտի ժողովուին բոլոր ազգերը, ու Նա այն դարուն, զանոնք իրենց գործքերովը պիտի դատէ, բանալով անոնց առջեւ Ս. Գրոց գիրքերը, եւ լեցնելով աշխարհը Տիրոջը գիտութեամբը։ Ու այս բոլոր շնորհաց եւ օգնութեանց ներքեւ, Նա անոնց վարքովը պիտի որոշէ՝ թէ անոնցմէ ո՛վ արժանի է դալիք յաւիտենական կենաց փառքի եւ ուրախութեան դարերուն։— Մատթ. ԻԵ. 31։ Յայտ. Ի. 11—13։

Ուրեմն, կը տեսնենք թէ Մեսիայի երկրորդ գալուստը, ուր աշխարհի վրայ պիտի հաստատէ Իր Թագաւորութիւնը, այնպիսի եղելութիւն մ՚է, որուն մասին կրնայ ամեն մարդ յոյս տածել, այն տեսակ իրողութիւն մը՝ որ երբ լիուլի ըմբռնուի, ամեն սրտերու հրճուանք եւ ուրախութիւն պիտի պարգեւէ։ Ասիկա այն օրն է, երբ Տիրոջը ուխտուած սուրբերու «փոքրիկ հօտ»ը հրճուելու ամենէն մեծ պատճառը պիտի ունենայ։ Ասիկա այն ուրախ օրն է, երբ որ նշանուած կոյս Եկեղեցին հրճուանօք կը դառնայ Հարսը, Գառնուկին կինը. երբ նա անապատէն դուրս կուգայ իր Սիրելիին թեւին կռթնած, ու կը մտնէ իր փառաւոր ժառանգութիւնը։ Ասիկա այն օրն է, Երբ որ ճշմարիտ Եկեղեցին, իր Գլուխին հետ փառաւորուած, ու օժտուած Աստուածային իշխանութեամբ եւ զօրութեամբ, պիտի սկսի աշխարհին համար կանխորոշուած մեծ գործին, որուն արդիւնքը պիտի ըլլայ ամեն բաներուն լիակատար

վերահաստատութիւնը ։ Արդարև, անիկա աշխարհին համար ուրախ օր մը պիտի ըլլայ, երբ որ մեծ Հակառակորդը այլևս կապուած է, երբ որ գերութեան շղթաները՝ որոնք ամբողջ վեց հազար տարի կաշկանդեցին մարդկութիւնը, այլևս փշրուած պիտի ըլլան, և երբ Տիրոջը գիտութիւնը պիտի ծածկէ ամբողջ աշխարհը, ինչպէս որ ջուրերը ծովը կը ծածկեն ։

Այս բաներուն գիտութիւնը ու ապացոյցները՝ թէ անոնք մօտ են, նոյնիսկ դռներուն քովը, բոլորին վրայ զօրաւոր ազդեցութիւն մը պէտք է ընէ, մանաւորապէս Աստուծոյ ուխտուած զաւակներուն վրայ, որոնք կը փնտռեն Աստուածային բնութեան մրցանակը ։ Մենք կը թախանձենք այսպիսիներէն, որպէսզի մինչդեռ իրենց գլուխները կը վերցնեն և կ'ուրախանան, գիտնալով թէ իրենց ազատագրութիւնը կը մօտենայ՝ միւս կողմէն մէկդի ձգեն ամեն ծանրութիւն և արգելք, ու համբերութեամբ վազեն այն ասպարէզը, զոր սկսած են ։ (Եբր. ԺԲ. 1, 2) ։ Մի՛ վախնաք ձեր անձէն ու անոր անխուսափելի տկարութիւններէն և թերութիւններէն, գիտնալով թէ բոլոր այս կարգի տկարութիւնները բոլորովին ծածկուած են մեր Տէր Յիսուս Քրիստոսի տուած փրկագնին արժանիքովը. և թէ՝ ձեր զոհաբերութիւնները և անձնուրացութիւնները ընդունելի են Աստուծոյ՝ մեր Փրկչին և Տիրոջը միջոցաւ—ու միայն Անով ։ Պէտք է յիշենք՝ թէ պիտանի զօրութիւնը զոր Աստուած խոստացած է մեզի, և որուն գործածութեամբը մենք կրնանք «յաղթողներ» ըլլալ, Իր Խօսքին մէջ հայթայթուած է ։ Անիկա զօրութիւն մ'է, որը կը բղխի Իր նկարագրին և ծրագիրներուն **գիտութենէն**, նոյնպէս և այն պայմաններուն գիտութենէն՝ թէ անոնց միջոցաւ կրնանք մասնակցիլ Անոր

ծրագիրներուն: Այսպէս կը բացատրէ Պետրոս, ըսելով՝ «Շնորհք և խաղաղութիւն ձեր վրայ աւելնայ Աստուծոյ ու մեր Տէր Յիսուսի գիտութիւնովը: Ինչպէս որ Իր Աստուածային զօրութիւնը կենաց և աստուածպաշտութեան վերաբերեալ ամեն բաները մեզի տուաւ Անոր գիտութեամբը՝ որ մեզ փառքով և առաքինութեամբ հրաւիրեց. որոնցմով ամենամեծ ու պատուական խոստումներ տրուած են մեզի, որպէսզի ԱՍՈՆՑՄՈՎ Աստուածային բնութեան հաղորդ ըլլանք»:—Բ. Պետ. Ա. 2—4:

Սակայն, այս գիտութիւնը ու այս զօրութիւնը ստանալու համար (զորոնք Աստուած այս կերպով կ'առաջարկէ հայթայթել երկնային մրցանակը շահելու համար իւրաքանչիւր վազողին)՝ անտարակոյս, պիտի փորձէ ձեր նուիրման ուխտերուն անկեղծութիւնը: Դուք Տիրոջը նուիրած էք ձեր բոլոր ժամանակը ու ձեր բոլոր տաղանդները. արդ հարց կը ծագի՝ թէ անոնցմէ ո՞րքան կուտաք: Միթէ դեռ յանձն կ'առնէ՞ք ձեր նուիրման ուխտին համաձայն, զոհել բոլորը—զոհել ձեր անհատական ծրագիրներն ու մեթոտները, ձեր և ուրիշներուն տեսական ուսուցումները, ու ընդունիլ Աստուծոյ Ծրագիրը ու ճամբան և ժամանակը, ու գործել Իր մեծ գործը: Պատրա՞ստ էք աշխարհային բարեկամութեան և ընկերական կապերու խզման գնովը ընել ասիկա: Ու պատրա՞ստ էք ուրիշ շատ մը բաներ մէկդի դրած՝ անոնց ժամանակը այս փառաւոր բըներգին յատկացնել, որը իսկապէս նուիրուածներուն ա'յնքան հոգեպարար ու սիրտ ուրախացնող պատգամ մ'է. միեւնոյն ժամանակ քաջ գիտնալով՝ թէ այս քայլը քեզի այնքան անձնուրացութիւն կը նշանակէ: Եթէ բոլորը նուիրուած չէ, և կամ, եթէ դուն միայն կէսը ըսել ուզեցիր երբ բոլորը Տիրոջը

*տուիր, այն ատեն դու ես պահած պիտի ըլլաս այն ժամանակը ու ջանքը, որը պէտք է, ուսումնասիրելու համար Իր խօսքը որպէս թաղնուած գանձ մը, այս կերպով ստանալու համար այն զօրութիւնը, որը խիստ կարեւոր է բոլոր հաւատքի փորձութեանց, որոնք ուրիշ ժամանակներէ աւելի ներկայ (Հազարամեայի Արշալոյսին) չարակից են։*

*Սակայն, մի՛ խորհիր թէ տալը 'այս ուսումնասիրութեան պիտանի ժամանակի ու ջանքի տալովը պիտի վերջանայ. ո՛չ։ Քու անձիդ զոհաբերութեան անկեղծութիւնը լիուլի պիտի փորձուի, ու ցոյց պիտի տրուի՝ թէ դուն արժանի՞ ես թէ ոչ «փոքրիկ հօտ»ին, յաղթող Եկեղեցիին մէկ անդամը ըլլալու, որը պիտի ստանայ Թագաւորութեան պատիւները։ Եթէ ուշադրութիւն դարձնես Աստուծոյ Խօսքին, ու բարի, անկեղծ և նուիրուած սրտի մը մէջ ընդունիս անոր ճշմարտութիւնները, անիկա քու մէջդ Աստուծոյ ու Անոր Ծրագրին հանդէպ ա՛յնպիսի սէր մը պիտի յղացնէ, ու ա՛յնպիսի փափաք մը՝ խօսելու ուրախութեան աւետիսները, քարոզելու Աւետարանը, որ անկէ վերջը, ան քու կեանքիդ ամենահետաքրքրական նիւթը պիտի ըլլայ. ու ասիկա քեզ ո՛չ միայն աշխարհէն ու շատ մը անուանապէս Քրիստոնեաներէ* հոգևորապէս *պիտի բաժնէ, հապա՝ պիտի առաջնորդէ քեզ այսպիսիներէն բոլորովին բաժնուելու։ Անոնք պիտի խորհին թէ դու տարօրինակ ես, որով պիտի հեռացնեն քեզ իրենց ընկերակցութենէն, և դուն պիտի անարգուիս ու Քրիստոսի սիրոյն համար յիմար մը պիտի համարուիս. որովհետև անոնք մեզ չեն ճանչնար, ինչպէս որ Տէրն ալ չճանչցան։—Բ. Կորնթ. Դ. 8—10։ Ղուկ. Զ. 22։ Ա. Յովհ. Գ. 1։ Ա. Կորնթ. Գ. 18։*

*Յանձն կ'առնե՞ս, Տէրը ճանչնալու համար պարսաւանաց և զովութեանց ենթարկուելով նեղ ճամբէն յարատևելու։ Յանձն կ'առնե՞ս լքելու բոլորը, ու հետևելու այն շաւղին՝ որուն մէջէն թերևս Նա Իր Խօսքովը առաջնորդէ քեզ—անտեսելով բարեկամներուդ ըղձանքները, ինչպէս նաև քու անձնական բաղձանքներդ։ Կը յուսանք թէ նուիրուածներէն շատեր, որոնք կը կարդան այս հատորը, թերևս Աստուածային Ծրագրի պայծառագոյն ըմբռնումի մը միջոցաւ այնպէս պիտի վառուին հոգւոյ նոր նախանձով և եռանդով՝ որ կարող պիտի ըլլան ըսելու, «Տիրոջը շնորհքովը, պիտի յարատևեմ, ճանչնալու համար Զինքը ու Իրեն ծառայելու, հոգ չէ թէ ասիկա որքան սուղի պիտի նստի իմ վրաս»։ Ազնիւ Բերիացիներուն նման (Գործ. Ժէ. 11), թող այսպիսիները ուսումնասիրեն, ապացուցանելու համար այն բոլորը, որը ներկայացուած է նախընթաց էջերուն մէջ։ Թող ապացուցանեն զանոնք, ո՛չ թէ մարդոց հակասիչ նախապաշարումներովն ու հաւատոյ հանգանակներովը, այլ միայն ուղիղ և Աստուծոյ կողմանէ վաւերացուած չափանիշներովը—Աստուծոյ բուն Խօսքովը։ Այսպիսի քննութիւն մը դիւրացնելու համար է որ այսքան համարներ յիշած ենք Ս. Գրքէն։*

*Անօգուտ պիտի ըլլայ փորձել, այս հատորին մէջ ցոյց տրուած Աստուածային Ծրագիրը անցեալին մէջ ընդունուած շատ մը գաղափարներուն հետ հաշտեցընել, որոնք կը կարծուէր թէ Ս. Գրոց հետ համաձայն էին, և որոնք սակայն չէին։ Պիտի տեսնուի թէ Աստուածային Ծրագիրը ամէն տեսակէտէ ինքն իր հետ ամբողջ և ներդաշնակ է, և թէ՝ ան կատարելապէս ներդաշնակ է այն նկարագրին հետ, զոր Աստուածաշունչը կը վերագրէ իր մեծ Հեղինակին։*

Անիկա Իմաստութեան, Արդարութեան, Սիրոյ և Զօրութեան հիանալի արտայայտութիւն մ'է։ Ան իր հետ կը կրէ գերմարդկային Ծրագրի մը փաստերը, որը մարդուն հնարամտութեան կարողութեան սահմանէն անդին կ'անցնի, ու գրեթէ մարդկային ըմբռնումի զօրութենէն ալ անդին։

Յաջորդ հատորները (որոնց հայերէն թարգմանութիւնը չունինք) խնամքով պիտի ուսումնասիրեն այս Ծրագրին զանազան մասերը, ամեն քայլի քօղազերծելով այն անզուգական ներդաշնակութիւնը, որուն համար միմիայն Ճշմարտութիւնը կրնայ պարծիլ։ Գիտցէք՝ թէ ուրիշ ո՛չ մէկ Աստուածաբանական սիսթէմ երբեք կը հաւաստէ, կամ երբեք փորձած է ինքն իր մէջ համաձայնեցնելու Ս. Գրոց ամէն մէկ ասացուածքները. մինչդեռ այս տեսութեանց համար ասկէ պակաս ոչինչ կրնանք երաշխաւորել։ Ո՛չ միայն Ս. Գրոց, հապա նաև Աստուածային նկարագրի և մաքուր ողջամտութեան հետ այս ներդաշնակութիւնը, արդէն խղճահար ընթերցողին ուշադրութիւնը գրաւած՝ ու զայն յարգանքով լեցուցած պիտի ըլլայ, նոյնպէս և յոյսով ու վստահութեամբ։ Արդարև, ասիկա հիանալի է, և սակայն ճիշդ այս է որ պէտք է ակնկալենք ՃՇՄԱՐՏՈՒԹԵՆԷՆ, ու Աստուծոյ անհունօրէն իմաստուն և բարերար Ծրագրէն։

Երբ Աստուածաշունչը այս տեսակէտէ այսպէս կը բացուի, ու զարմանալի ճշմարտութիւններ կը քօղազերծէ (Սաղմ. ԾԺԹ. 18), միւս կողմէն, մարդոց զանազան հանգանակներուն ու նախապաշարումներուն վրայ սփռուող այս օրուայ լոյսը, բոլորովին հակառակ կերպով կ'ազդէ անոնց վրայ։ Անոնց անկատար և այլանդակ ըլլալը նոյնիսկ զանոնք պաշտողներէն ըմբռնուած է, որով անոնք խղճալի կեր-

*պով անտեսուած են․ և թէև դեռ անոնց կառչած կը մնան, սակայն շատ քիչ անգամ ուսումնասիրած են, որովհետև կ'ամչնան անոնցմէ։ Սակայն, մարդկային հաւատոյ հանգանակներու և նախապաշարումներու վրայ ծանրացող այս ամօթը Աստուածաշունչին ալ կը վերագրուի, ենթադրելով՝ թէ ան կը պաշտպանէ մտածումի այս այլանդակութիւնները որպէս Աստուածային հեղինակութիւն։*

*Որքան ուշագրաւ է ուրեմն Աստուծոյ նախախնամութիւնը, որը այս ժամանակիս, Իր որդւոցը առջև կը բանայ ճշմարտապէս փառաւոր և ներդաշնակ Ծրագիրը—Ծրագիր մը՝ որը ո՛չ մէկը կը մերժէ, հապա կը համաձայնեցնէ Անոր Խօսքին ամէն մասերն ու հատուածները։ Ճշմարտութիւնը, իր յարմար ժամանակին՝ հաւատքի ընտանիքին* ՍՆՈՒՆԴ *կը դառնայ, որպէսզի անոնք անոր միջոցաւ աճին։—Մատթ․ ԻԴ․ 45։*

*Ով որ ճշմարտութեան հետ կը ծանօթանայ, ըմբռնելով անոր նկարագիրը, որոշ պատասխանատուութեան մը տակ կ'իյնայ։ Կա՛մ անիկա պիտի ընդունուի ու ըստ այնմ շարժուի, և կա՛մ, մերժուի ու անարգուի։ Զայն անտեսելը պատասխանատուութենէ չ'ազատեր։ Թէ որ զայն ընդունինք, մենք ալ ԱՆՈՐ ՆԿԱՏՄԱՄԲ պատասխանատուութիւն մ'ունինք, որովհետև անիկա ԲՈԼՈՐ հաւատքի ընտանիքին համար է․ և իւրաքանչիւր անհատ որ կ'ստանայ զայն, անոր պարտական կ'ըլլայ․ և եթէ հաւատարիմ վերակացու մ'է, պէտք է զայն Ած․ոյ ընտանիքի միւս անդամներուն ալ ջամբէ։ Թո՛ղ քու լոյսդ փայլի։ Եթէ ան դարձեալ խաւարի, որքան մեծ պիտի ըլլայ այն խաւարը։ Վե՛ր Բարձրացուցէք Լոյսը։ Դրօ՛շ մը բարձրացուցէք ժողովուրդին։*

# ՑԱՆԿ

## ՀԱՏՈՐԻՍ ՄԷՋ ՅԻՇՈՒԱԾ Ս. ԳՐՈՑ ՎԿԱՅՈՒԹԵԱՆՑ*


**ԾՆՆԴՈՑ**

Ա. 26, 31 ..251
Ա. 27.... 248
Բ. 4 .... 498
Բ. 9, 16 ..301
Բ. 17 200, 221
Գ. 15, 79, 134
Գ. 22 168, 301
Ե. 1 .... 289
Է. 13 .... 318
ԺԲ. 13 .. 81
ԺԳ. 14—17 427
ԺԸ. 1, 2 263
ԺԸ. 18 .. 81
ԺԹ. 24 ....152
ԺԹ. 36—38 57
ԻԲ. 18 .. 81
ԻՁ. 4 .... 81
ԼԸ. ...... 58
ԽԹ. 10 .... 58
ԽԹ. 28 .. 107

**ԵԼԻՑ**

Ե. 4—23 490
ԺԲ. 30—33 490
ԺԲ. 49 .. 69
ԺԸ. 13—26 64
ԺԹ. 17—25 75
ԻԱ. 26, 27 72
ԻԲ. 21—24 72
ԻԲ. 25 .... 68
ԻԳ. 4, 5 .. 70
ԻԳ. 9 .... 72
ԻԳ. 12 .... 70
ԻԴ. 12 .... 74
ԻՁ. 30 .... 74

**ՂԵՒՏԱՑՒՈՑ**

Ա. 1 .... 74
ԺԹ. 13 .. 72
ԺԹ. 14, 32 73
ԺԹ. 17 .. 75
ԺԹ. 33, 34.. ...... 69, 72
ԻԴ. 22 ....69
ԻԵ. 9, 13—23, ..27—30 .. 68
ԻԵ. 36, 37.. 68
ԻՁ. 14—16 176

**ԹՈՒՈՑ**

ԺԱ. 16—17, 24 —30 .... 64
ԻՁ. 52—56 68

**Բ. ՕՐԻՆԱՑ**

Ա. 15 .... 64
Ա. 16, 17 65, 67
Ե. 1—5 .. 75


* Անոնք որ կը փափաքին Ս. Գրոց այլևայլ համարներու շուրջ լուսաբանութիւն, կրնան աչքէ անցնել այս ցանկը, ու երբ հոն կը գտնեն իրենց փնտռած համարը՝ ճիշդ անոր դիմացը պիտի գտնեն նաև էջին թիւը ուր բացատրուած է համարը ։

Թ. 9—11 ..74
ԺԲ. 19 .... 71
ԺԴ. 27 .. 71
ԺԸ. 15 .. 107
ԺԸ. 15,19 81
ԻԲ. 10 .. 70
ԻԴ. 14,15 ..72
ԻԵ. 4 .... 70
ԻԶ. 5 .. 107
ԻԸ. 1—32 176
ԼԱ. 9—27 59
ԼԱ. 10—13 69

**ՅԵՍՈՒԱՅ**

ԻԳ. 6—16 176

**ԴԱՏԱՒՈՐԱՑ**

Գ. 9—11 .. 204
Զ. 11—22 264
ԺԳ. 20 .. 264

**Ա. ԹԱԳ.**

Ը. 6—22 .. 66
ԺԵ. 3 .... 155

**Գ. ԹԱԳ.**

ԺԸ. 4, 10, 17, 18 ...... 75
ԺԸ. 40 ....76
ԺԹ. 10 ....75

**Ա. ՄՆԱՑ.**

ԺԶ. 16,17 106
ԺԶ. 31—34 210
ԻԹ. 23 .. 359

**Բ. ՄՆԱՑ.**

ԺԳ. 8 .... 359

**ՆԷԵՄԵԱՅ**

Բ. 17 .... 175
Զ. 7 .... 76

**ՅՈԲԱՅ**

ԺԴ. 10,21 302
ԼԸ. 7 ......317

**ՍԱՂՄՈՍԱՑ**

Ա. 1 .... 34
Բ. 1—6,10—12 ...... 393
Բ. 8—12 .... 370,448
Ե. 4 .... 165
Ը. 5,6 .. 358
Ը. 5—8 ...... 251,252
Ժ. 6 .... 175
ԺԱ. 5—7 442
ԺԷ. 15 .. 320
ԺԹ. 10 .. 80
ԻԲ 26,29 277
ԻԴ. 3,4 ..438
ԻԵ. 14 .. 247
Լ. 5 ...... 10
ԼԴ. 7 .... 263
ԼԴ. 13,14 450
ԼԴ. 19 .. 175
ԼԴ. 20 .... 80
ԼԷ. 9 .... 93
ԼԷ. 35 .... 93
ԼԹ. 11 .. 301
ԽԱ. 1 ....175
ԽԵ. 7 ....441
ԽԵ. 16 .. 428
ԽԶ. 1—5 472
ԽԶ. 6 .... 471
ԽԶ. 8,10 .... .... 472,487
ԽԸ. 2.... 429
ԽԹ. 7,15 248
ԽԹ. 14 83,440
Ծ. 3 ...... 471
ԿԷ. 2—7 ..277
ՀԲ. 1—19 .... .... 104,277
ՀԲ. 7 .... 92
ՀԲ. 8 .... 410
ՀԶ. 10 .. 363
ՀԷ. 18 .. 247
ՀԸ. 70,71 359
ՁԶ. 9 .... 22
ՁԹ. 32 .. 441
ՂԷ. 2—6 ..471
ՂԷ. 11 .... 25
ՂԸ. 9 .... 204
ՃԷ. 26 ....175
ՃԷ. 39 ....175
ՃԺ. 1 ....125
ՃԺ. 2—6..471
ՃԺ. 5 ....449

ՃԺԲ. 6 .. 424
ՃԺԲ. 18 .. 509
ՃԽԱ. 5 .. 175
ՃԽԹ. 4—9 209
ՃԽԹ. 8,9 378
ՃԽԹ. 105 ..25

**ԱՌԱԿԱՑ**

Դ. 18 .... 25
Դ. 34 .... 441
ԺԵ. 3 ....207

**ԺՈՂՈՎՈՂԻ**

Ա. 4 ...... 94
Է. 14 .... 175
Է. 29 .... 248
Թ. 10 146,302
ԺԱ. 3 .... 145
ԺԲ. 14 ....207

**ԵՍԱՅԵԱՑ**

Ա. 18 .. 25,80
Ա. 19 .... 93
Ա. 26.... 428
Բ. 3.. 371,432
Ը. 20 .... 234
ԺԱ. 9 103,313
ԺԳ. 1—11 473
ԺԴ. 14 .. 270
ԺԴ. 24,27 90
ԺԹ. 22 .. 371
ԻԱ. 12 .... 26
ԻԵ. 6—9 .... 11,27,277,446
ԻԶ. 9 .... 499
ԻԸ. 17 ....441
ԻԸ. 21 .... 85
ԼԲ. 1—5.. 104
ԼԳ. 2—14,15—24 ......494
ԼԵ. 1—6 ..232
ԼԵ. 1—10 ...... 295,310,312
Խ. 5...... 81
ԽԲ. 1—7.. 81
ԽԲ. 7 .... 34
ԽԵ. 7 .... 175
ԽԵ. 11,12,18 ........ 275
ԽԶ. 9—11.. 90
ԽԹ. 6.... 81
ԾԲ. 7.... 498
ԾԲ. 9.... 432
ԾԳ. 3—6 ..80
ԾԳ. 8,9,11 ...... 80,187
ԾԳ. 12.... 80
ԾԵ. 8,9 .. 11
ԾԵ. 8—13 158
ԾԵ. 11 .. 130
Կ. 2,3 .... 22
ԿԱ. 1 .... 156
ԿԱ. 2 314,449
ԿԱ. 11 ....446
ԿԲ. 10 .... 313
ԿԳ. 1—4 ..449
ԿԵ. 18 .. 432
ԿԵ. 20 206,350
ԿԵ. 25 ....440
ԿԶ. 10—12 432

**ԵՐԵՄԵԱՑ**

Գ. 17..277,432
Գ. 22,23.. 371
ԺԶ. 19.... 81
ԺԹ. 5.... 180
ԻԳ. 6—7 ..151
Լ. 18 .... 428
ԼԱ. 28 .... 151
ԼԱ. 29,30 .......... 205,487
ԼԱ. 34 103,310
ԼԲ. 40—42 151
ԼԳ. 6—16 151
ԼԸ. 6 .... 75
ԽԸ. 16 .... 175
ԾԱ. 2 .... 175

**ՈՂԲՔ ԵՐԵՄ.**

Ա. 21.... 175

**ԵԶԵԿԻԷԼ**

Գ. 5,6 .. 322
Է. 10—19 459
ԺԱ. 19 ....19
ԺԶ. 48—63 ...... 153,156
ԺԸ. 4 181,205
ԻԱ. 25—27 360
ԼԶ. 25,36 487
ԼԶ. 26.... 452
ԼԷ. 11—14 150

### ԴԱՆԻԷԼ

Բ. 31—45 365
Բ. 35 .... 377'
Բ. 37—43 365
Բ. 44 ........ 379,391,448
Դ. 32 .... 397
Է. 2—7....373
Է. 7,8 ....373
Է. 11 .... 376
Է. 13,14,27 .. 378,391,410
Թ. 24—27 321
Թ. 26 .... 80
Ժ. 6,10,15,17 ........ 264
Ժ. 13 .... 265
ԺԲ. 1,4,10 .. ...... 242,448
ԺԲ. 3 424,425
ԺԲ. 4,1 ..492
ԺԲ. 10.... 25

### ՈՎՍԷԱՑ

Զ. 1...... 371
ԺԴ. 4.... 371

### ՅՈՎԵԼԵԱՑ

Բ. 9—16 ..473

### ԱՄՈՎՍ

Գ. 2 133,319
Գ. 6...... 175

### ՄԻՔԻԱՅ

Դ. 1—18 ..277
Ե. 2 ...... 80

### ԱՄԲԱԿՈՒՄ

Բ. 1—3,13,14 ........ 85
Գ. 2—11 .. 85

### ՍՈՓՈՆԻԱՅ

Ա. 7—9,14—18 ........460
Բ. 2...... 488
Բ. 3 .... 487
Գ. 9 .... 487

### ԱՆԳԷԱՑ

Բ. 7 .... 385

### ԶԱՔԱՐԻԱՅ

Թ.11 .... 156
ԺԱ. 12 ....80
ԺԴ. 1,6,7 85
ԺԴ. 9 .... 442

### ՄԱՂԱՔԻԱՅ

Ա.11 22,81,277
Գ. 1—3 .. 467
Գ. 15...... 92
Գ. 15,18 .... .... 313,372
Դ. 1 .. 95,466
Դ. 2.. 302,471

### ՄԱՏԹԷՈՍ

Ա. 2—16 .. 58
Ա. 21 .... 148
Գ. 2...... 396
Գ. 16,17 ..258
Դ. 9...... 364
Դ. 17.... 396
Ե. 35.... 429
Է. 13,14.. 295
Է. 15...... 76
Ը. 16,17.. 332
Ը. 22 214,421
Ժ. 5,6 99,133
Ժ. 7 .... 396
Ժ. 26.... 441
ԺԱ. 23.... 152
ԺԱ. 24 .. 153
ԺԲ. 40 .... 85
ԺԳ. 39 .. 344
ԺԳ. 41—43 .. .... 346,425
ԺԳ.43 118,471
ԺԳ. 38,41,49 ...... 344
ԺԳ. 52 .... 32
ԺԴ. 5 .... 76
ԺԵ. 2—9 ..76
ԺԵ. 24 99,133
ԺԶ. 27 .. 142
ԺԹ.27,28 378
ԺԹ. 28....209
ԺԹ. 30....426

ԻԲ.37—39 451
ԻԲ.37—40 357
ԻԳ.38 99,321
ԻԴ. 14 .. 124
ԻԴ.21,22 .... 448,490
ԻԴ.38,39 ..85
ԻԴ.45,46 466
ԻԵ.31 .... 504
ԻԵ.34 .... 444
ԻԵ.31—46 .... 197,206
ԻԵ.46 .... 424
ԻԶ.64 ....126
ԻԸ.18 203,419
ԻԸ.20 .... 121

### ՄԱՐԿՈՍ

Գ.22—27 .. 94
Ե.30 .... 332
Ժ.23 .... 412
ԺԲ.30,31 ..61

### ՂՈՒԿԱՍ

Բ.1 ...... 367
Բ.10 .... 144
Բ.10,11 .. 148
Բ.32 .... 81
Գ.14 .... 498
Գ.17,21,22 .. ........ 331
Գ.22 .... 223
Գ. 23,31,33,34 ........ 58
Գ.38 .... 325
Դ.1,18 ....223
Դ.19 .... 314
Դ.47 .... 396
Զ.19 .... 332
Զ.22 .... 507
Ը.1 ...... 396
Ը.10 .... 180
Թ.2 ......396
Ժ.27 .... 193
ԺԲ.32 ...... 100,341,397
ԺԲ.42 .... 32
ԺԲ.47,48 441
ԺԲ.47,48 441
ԺԳ.28 .. 423
ԺԴ.11 ....273
ԺԶ.16 401,426
ԺԷ.26 .... 85
ԺԷ.29 .... 152
ԺԹ.10 256,259
ԺԹ.11 ....396
ԺԹ.11—15 411
ԺԹ.12 ....361
ԺԹ.20—30 400
ԺԹ.44 ....109
ԻԱ.26 458,486
ԻԱ.34,35 123
ԻԲ.29,30 397
ԻԴ.21 .. 109
ԻԴ. 21,25—27 ........397

### ՅՈՎՀԱՆՆԷՍ

Ա.9 ...... 143
Ա.14 .... 256
Ա.18 .... 419
Ա.29 141;226
Գ.5 ...... 403
Գ.6 .... 262
Գ.8 ......333
Գ.16 .... 143
Գ.17 .... 370
Գ.36 .... 148
Ե.18 .. 283
Ե.22 ..193,203
Ե.26 269,303
Ե.28,29 .. 211
Ե.44 .... 308
Ե.46,47 .. 59
ԺԲ.31 .. 363
ԺԴ.3 .... 122
ԺԴ.26 ....110
ԺԴ.30 93,363
ԺԵ.5 .... 112
ԺԶ.8—11 450
ԺԶ.12,13 .... 28,110
ԺԶ.13 .... 12
ԺԶ.33 ....309
ԺԷ.7 .... 293
ԺԷ.22 .... 304
ԺԹ.36 .... 80
Ի.19,26 ..333

**ԳՈՐԾ.**

Ա.6 ...... 127
Ա.6,7 109,398
Բ.31 ...... 80
Գ.19—21 ....
100,149,233
Գ.20,21 .. 121
Գ.21...... 129
Գ.22 .... 107
Գ.23 149,442
Դ.12 .... 138
Դ.19 .... 386
Ե.29 .... 386
Ե.31 .... 203
Է.5 ...... 426
Թ.4,5 .... 305
Թ.7 ...... 264
Ժ.28 .... 35
Ժ.37,38
....321,223
Ժ.38 .... 111
Ժ.45 .... 322
ԺԱ.1—3 .. 35
ԺԱ.1—18 ..81
ԺԱ.9 .... 110
ԺԵ.6 .... 403
ԺԵ.14 .... 125
ԺԵ.14—16 110
ԺԷ.11 .... 508
ԺԷ.31 195,199
ԻԴ.25 .. 450
ԻԶ.9 .... 14

**ՀՌՈՎՄ.**

Ա.28 ..381,449
Բ.6,10,11 ....
...... 434
Բ.14 .... 138
Գ.10 .. 25,139
Գ.10 .... 139
Գ.19 .... 138
Գ.20 .... 139
Ե.1,8,9 .. 335
Ե. 10, 12, 17—
19,21 .. 233
Ե.12,17—19 ..
173, 185, 248,
...... 437
Ե. 12,18,19 ..
149,181,224 ..
Ե.14 .... 173
Ե.17 ...... 85
Ե.17—19... 81
Զ.8 .. 291,307
Զ.10,11 .. 284
Զ.23 .... 181
Ը.9 ...... 328
Ը.11 .... 284
Ը.13,14 .. 307
Ը.17 .... 82,
118, 128, 283
Ը.18 .... 425
Ը. 19—22 ....
.. 120,446
Ը.21 .... 440
Ը.21,22 .. 211
Ը.22—19 . ..
.... 135,364
Ը.23—25 ..284
Ը.24 .... 148
Ը.28—31 ..279
Ը.30 .... 280
Ը.31—34 ..430
Ը.33—34 ..226
Թ.16 .... 274
Թ.20 .... 270
Թ.20,21 .. 274
Ժ.13 .... 138
ԺԱ.2 .... 150
ԺԱ. 17 .. 425
ԺԱ.22 ....403
ԺԱ.23,24 435
ԺԱ.25—28 437
ԺԱ.25,26 150
ԺԱ.26—29 157
ԺԱ.28—33 150
ԺԲ. 1........
283, 326, 343,
ԺԲ.2 .... 285
ԺԳ.1 362,365
ԺԳ.1—7 ..386
ԺԳ.10 .. 357
ԺԴ.9 203,214
ԺԵ.4 .... 365
ԺԶ.20 .. 134

**Ա. ԿՈՐՆԹ.**

Բ.6—14 ....

.... 115,263
Բ.7 ...... 445
Բ.8 .... 116
Բ.14 .... 261
Գ.11 .... 430
Գ. 12—15 ....
.... 468,469
Գ.18 .... 507
Դ.5 ...... 27
Դ.8 414
Դ.10—17 ..415
Ե. 5 .... 308
Զ.2 ...... 209
Զ.3 ...... 419
ԺԱ.14 .. 375
ԺԲ.11—28 112
ԺԴ.1—6 .. 76
ԺԵ.13—22 84
ԺԵ.21 .... 257
ԺԵ.22 146,183
ԺԵ. 24 .. 444
ԺԵ.25 .... 206
ԺԵ.25,26 ....
170, 277, 320
ԺԵ.25—28 ..
.... 443,449
ԺԵ.27 .. 378
ԺԵ.38,49 ....
261, 275, 285
ԺԵ.44 .... 289
ԺԵ.44,52 340
ԺԵ.52 ....289
ԺԵ.53,54 269

Բ. ԿՈՐՆԹ.

Ա.21 .... 111
Գ.26 .... 444
Դ.8—10 .. 507
Ե.14 .... 421
Ե.17 .... 328
Զ.1 ...... 342
Զ.2 ...... 198
Է.17 .... 304
Ը.9 ...... 293
Ը.12 .... 205
ԺԱ.3 ......85
ԺԲ.2—4 .. 96
ԺԲ.7 ...... 93

ԳԱՂԱՏ.

Ա.4 ...... 91
Բ.11—14 .. 35
Բ.12,14 .. 110
Գ.15—18 ..115
Գ.27,29 .. 115
Գ.29 ..112,132
Դ.28 .... 116

ԵՓԵՍ.

Ա.4,5 .... 278
Ա. 9, 10,17,18
........ 34
Ա. 10 ........
316, 351, 419
Ա.11 .... 101
Ա.13,14 ......
284, 291, 358

Ա.20,21 .. 190
Ա.22 .... 112
Բ.2 .. 93, 363
Բ.7 ...... 316
Բ.7—12 .. 425
Բ.8 ...... 138
Բ.19 .... 386
Գ.4—6 .... 34
Գ.9 ...... 120
Դ.11—16 .. 13
Ե.25—30 ..112
Զ.12 ...... 93

ՓԻԼԻՊ.

Բ.7,8 .... 256
Բ.8,9 .. 114,
.... 256,259
Բ.10 ..410,419
Գ.8—15 .. 314
Գ.21 .... 126
Դ.11 .... 498

ԿՈՂՈՍ.

Ա.18 ..112,284
Ա.20 .... 419
Ա.24 .... 305
Ա.27 .... 304
Գ.4 ...... 118

Ա. ԹԵՍԱՂ.

Ե.23 .... 488

Բ. ԹԵՍԱՂ.

Բ.13 ... 435
Բ.14 .... 304

Բ․16 .... 331

Ա․ ՏԻՄՈԹ․

Բ․3—6 178,185
Բ․4 ...... 146
Բ․5,6 144,257
Բ․14 .. 85,173
Դ․10 .... 147
Ե․24...... 207
Զ․6—12 .. 497
Զ․14—16 ..303
Զ․15 .... 199
Զ․16.. 269,419

Բ․ ՏԻՄՈԹ․

Ա․ 10 .. 28,294
Բ․11,12 ..118,
....128,283
Բ․13 .... 165
Բ․14 .... 172
Գ․1—4,13 123
Գ․1,13 .. 103
Գ․12 ...... 93
Գ․15 ...... 26
Գ․15—17 .. 33
Դ․8 .. 309,415

ՏԻՏՈՍ

Ա․12 ...... 76

ԵԲՐԱՅ․

Ա․3 ...... 289
Ա․3—5 ......
..254,294,303
Ա․9 ...... 441
Ա․14 .... 263
Բ․5 .. 92,317
Բ․7 ...... 252
Բ․7—9 .. 258
Բ․9 ..........
..133,143,437
Բ․14.. 170,269
Բ․16 .... 256
Գ․1 ...... 319
Գ․5,6 .... 208
Գ․8,9 .... 198
Դ․1 ...... 281
Ե․14 ...... 32
Զ․4—8 ....469
Զ․6 ...... 285
Զ․18 .... 164
Է․19 .... 324
Թ․11 .... 438
Թ․11—20 108
Ժ․1 .. 319,331
Ժ․4 ...... 319
Ժ․8—18 .. 108
Ժ․16,29 .. 203
Ժ․20 .... 297
Ժ․26—31 469
Ժ․31 .... 444
Ժ․38,39 .. 149
ԺԱ․ 13, 39, 40
........427
ԺԱ․19 ....223
ԺԱ․32—38 75
ԺԱ․39,40 419
ԺԱ․40 ....127
ԺԲ․1 ...... 34
ԺԲ․1,2 .. 505
ԺԲ․26—29 469
ԺԳ․5 .... 498
ԺԳ․20,21 203

ՅԱԿՈԲՈՍ

Ա․18 ..280,283
Բ․5 ...... 411
Բ․10...... 139
Բ․23 .... 330
Դ․4 ...... 308
Ե․ ....441,458

Ա․ ՊԵՏՐՈՍ

Ա․2 ...... 435
Ա․3 ...... 283
Ա․10.. 109,114
Ա․10,11 .. 412
Ա․10—13 .. 35
Ա․11 .... 109
Ա․12 ....16,79
Ա․19 .... 141
Բ․2 ...... 32
Բ․4—6 ....113
Բ․9 ...... 111
Բ․21 .....282
Գ․15 ...... 33
Գ․18 .... 224
Գ․20 ...... 85
Դ․12,13 .. 305
Ե․4 ...... 309
Ե․5,6 .... 114
Ե․10 ......304

### Բ. ՊԵՏՐՈՍ

Ա.2—4 .. 506
Ա.4 ........ ..282,294,320
Ա.5—11 .. 468
Ա.19 ...... 33
Բ.1 ...... 76
Բ.9 ...... 142
Բ.16 ...... 85
Գ.6 ...... 91
Գ. 6, 7,10—13 ........ 465
Գ.7 ...... 91
Գ.10,13 .. 488
Գ.13 ...... 92
Ե.1 ...... 403

### Ա. ՅՈՎՀ.

Ա.9 ...... 225
Բ.1 ...... 195
Բ.2 . .. 226
Բ.27...... 111
Բ.29 .... 403
Գ.1 .. 116,403
Գ.2 .. 262,289
Գ.9 .... 403
Դ.7 ...... 403
Դ.8 ...... 143

### ՅՈՒԴԱՅ

23 ........379

### ՅԱՅՏ.

Ա.3 ...... 37
Ա.7 ...... 123
Բ.2 ...... 417
Բ.10 ......411
Բ.26,27 .. 370
Գ.17,18 .. 418
Գ.21 .... 124, ..321,370,418
Ե.12 ...... 83
Է.9—17 .. 308
Է.14,15 .. 348
Ժ.7 ...... 118
ԺԱ.15 .... 94
ԺԱ.15,18 104
ԺԱ.17,18 473
ԺԱ.18 ....129
ԺԲ.1 .... 417
ԺԲ.9 ..85,374
ԺԴ.1 .... 281
ԺԴ.14 ....345
ԺՁ.17—20 491
ԺԷ.2 .... 391
ԺԷ.3—5 ..388
ԺԷ.14 281,392
ԺԸ.7 .... 388
ԺԸ.21 .... 457
ԺԹ.6,7 .. 384
ԺԹ.7 118,134
ԺԹ.11—19 392
ԺԹ.15,19 473
ԺԹ.17 .. 460
Ի.1—3 ....104
Ի.2 .... 85,94
Ի.3 ...... 209
Ի.4 .. 100,124
Ի.5 ...... 419
Ի.6 .... 284, .... 414,418
Ի.9 ...... 350 .... 442,466
Ի.11—13 ..504
Ի.15 .... 206
ԻԱ.1 ...... 96
ԻԱ. 3—5 .... .... 233,277
ԻԱ.4 .... 101
ԻԱ.8 149,206
ԻԱ.14 .... 417
ԻԱ.24 .... 431
ԻԱ.24—26 431
ԻԲ.12,20 ..122
ԻԲ.17 .. 132, ....134,226

## «ԴՈՒՔ ԱԼ ԱՅԳԻՆ ԳԱՑԷՔ»

«Այն որ կը հնձէ՝ վարձք կ'առնէ, ու յաւիտենական կենաց համար պտուղ կը ժողվէ»:—Յովհ. Դ. 36:

*Այս հատորին մէջ պարզաբանուած նիւթերով բոլոր հետաքրքրուողները, որոնք այս ճշմարտութիւնները ժամանակայարմար սնունդ կը նկատեն՝ քիչ թէ շատ հարկադրուած պիտի զգան ճշմարտութեան ծառաները դառնալու, ու այս «Հին և Նոր բաները» «Հաւատքի ընտանիքին» ուրիշ անդամներուն ծանօթացընելու: Այս ծառայութեան հանդէպ ցուցադրած քու նախանձդ ու եռանդդ անշուշտ ցոյց պիտի տան ծառայութեան մէջ քու ունեցած գործունէութեանդ աստիճանը, ու վճռեն թէ անոր տարածմանը համար ո՛րքան ժամանակ, ազդեցութիւն, նիւթական, ևն. պիտի յատկացնես: Մենք ուրախ պիտի ըլլանք բոլորին հետ գործակցելու:*

*Ասոր համար կը փափաքինք յայտնել ձեզ թէ մասնաւոր կարգադրութիւն մը ըրած ենք, որով դուք ալ կրնաք այս գործին մէջ համա-գործակից ըլլալ, առանց նկատի առնելու թէ գործին յատկացնելու նիւթական կարողութիւն ունի՞ք թէ ոչ: Մենք զանազան տեսակ թերթի ձևով տպագրուած քարոզներ ունինք, զորոնք ձրիաբար կրնանք հայթայթել ամեն անոնց, որոնք կը խոստանան իմաստուն կերպով ցրուել զանոնք Հայ հասարակութեան մէջ:*

### ՀԵՏԵՒԵԱԼ ՆԻՒԹԵՐԸ ՎԵՐԼՈՒԾՈՂ

**Տետրակներ ՁՐԻ ԿԸ ՂՐԿՈՒԻՆ Ամեն Անոնց Որոնք քարտով մը կը դիմեն մեր հասցէին**

«Ազգերու Ապշութեամբ Տառապիլը». «Արմագեդոնի Պատերազմը». «Ամենաթանկագին Բնաբանը». «Ո՞ւր են Ննջեցեալները». «Ի՞նչ է Հոգին». «Գիտէ՞ք». «Մեծատունը և Աղքատ Ղազարոսը».

## ՇՐՋԻԿ ԳՐԱՎԱՃԱՌՈՒԹԻՒՆ

*Ոմանք շատ մը բարեկամներ ունին, որոնց հաճոյքով կը նուիրեն* ՀԱԶԱՐԱՄԵԱՅԻ ԱՐՇԱԼՈՅՍԸ *ձրիօրէն․ ուրիշներ ասոնցմէ մի քանի օրինակներ ունին, որոնք կարդալու համար շարունակաբար փոխ կուտան իրենց բարեկամաց, շրջիկ գրադարանի մը նման․ իսկ ուրիշներ՝ շրջիկ գրավաճառութեան կը ձեռնարկեն, որը իրենց համար ամենանպաստաւոր պատեհութիւններէն մին է ճշմարտութիւնը ուրիշներու ջամբելու համար, որոնք քաղաքէ քաղաք և գիւղէ գիւղ կը ճամբորդեն արդարութեան և ճշմարտութեան ծարաւիներուն ներկայացնելու այս «Ս․ Գրոց Բանալին», անոնցմէ ապսպրանքներ խնդրելով ու հատորներ ծախելով։ Մեր Միութիւնը իր կրցածին լաւագոյնը կ'ընէ դիւրացնելու համար ճշմարտութիւնը տարածելու այս մեթոտները, քաջալերելով իւրաքանչիւրը՝ իր նախանձին ու կարողութեանը չափովը ծառայելու Տիրոջը դատին, իր պատշաճ դատած կերպովը․ գործին մէջ նիւթապէս ալ կ'օգնէ, գրքերը խիստ աժան գնով հայթայթելով։ Եթէ շրջիկ գրավաճառի գործը ձեզի բանաւոր կը թուի, գրեցէք մեզի «շրջիկ գրավաճառաց թելադրութիւններ» ստանալու համար։*

*Ուրախ պիտի ըլլանք լսելու ձեզմէ այս մասին, ու ձեզ հետ գործակցելու․ և կը վստահացնենք ձեզ թէ՝ դուք ճշմարտութեան սիրոյն համար ըրած իւրաքանչիւր զոհաբերութեան համար օրհնութիւն մը պիտի ստանաք։ Անկեղծօրէն, ձեր ծառայակիցը*

INTERNATIONAL
BIBLE STUDENTS ASSOCIATION

BROOKLYN, N. Y., U. S. A.

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԵԱՆ
## ՊԱՏԿԵՐԱՏՐԱՄԸ

*Ստեղծագործութեան Պատկերա-Տրամը իր տեսակին մէջ աննման է, որը ոչ միայն կուռ կերպով կը բացատրէ իր հետազօտած գաղափարները, հապա նաև իր ընթերցողներուն աւելի դիւրըմբռնելի ընելու համար զանոնք ընտիր նկարներով կը պատկերացնէ: Հատորը ինքնին պատկերներու հաւաքածոյ մ'է, 370 նկարներով զարդարուած, որոնք կ'ըսկսին մեր երկրագունդին կազմութենէն, ցոյց տալով թէ մեր երկրագունդին կազմութենէն մինչև առաջին մարդուն ստեղծումը 42,000 տարիներ անցած էին. ապա՝ հարևանցի կերպով ակնարկ մը կը նետէ մարդուն անցեալ 6000 տարուայ պատմութեանը վրայ, ու կը յառաջանայ դէպի ապագան՝ կենդանի գոյներով նկարագրելով այն երանաւէտ ՈՍԿԵԴԱՐը որ ի մօտոյ պիտի հաստատուի ներկայ անօրէն ու անարդար բռնակալ թագաւորութեանց աւերակներուն վրայ, ուր չարը խստիւ պիտի պատժուի ու արդարութիւն գործողը առատապէս պիտի վարձատրուի, ուր այլևս վերջ պիտի գտնէ ցաւն ու տառապանքը, լացն ու կոծը, արիւնն ու արտասուքը, և այսպէս՝* «բոլոր ազգաց ցանկալի բաները պիտի գան»:

**Այս հատորը երեք ձևերով լոյս տեսած է.**

| | | | |
|---|---|---|---|
| ԼԱԹԱԿԱԶՄ. | Ճանապարհածախսով | միասին | 25 ս. |
| ԹՂԹԱԿԱԶՄ | » | » | 15 ս. |
| ԹԵՐԹԻ ձևով 3 բիւ | » | » | 5 ս. |

